Հրատարակութիւն Գ. Գալստեանի № 12.



# ՁԵՌՆԱՐԿ

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

կազմեց

ՊԱՒԵԼ ՎԻՆՕԳՐԱԴՕՎ

*ՄՕՍԿՒԱՅԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՊՐՕՖԵՍՍՕՐ*

*Հայերէն թարգմանեց* Գ. Խաժակ

*ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ*

## ՀԻՆ-ԱՇԽԱՐՀ

*Երկրորդ տպագրութիւն*

**Ժողովրդական լուսաւորութեան նախարարութեան ուսումնական յանձնաժողովը ռուսերէն բնագիրն ընդունել է իբր դասագիրք եւ իբր օժանդակ ձեռնարկ գիմնազիաների եւ ռէալական դպրոցների համար։**

*ԹԻՖԼԻՍ*

Էլէկտրաշ. տպ. օր. Ն. Աղանեանցի, պօլից. 7.

1912

# ՑԱՆԿ

Երես

## ԹԱՐԳՄԱՆՉԻ ԿՈՂՄԻՑ

Առաջարկելով այս ձեռնարկի թարգմանութիւնը հայ ուսուցիչներին, հարկաւոր ենք համարում հետևեալ երկու խօսքն ասել սրա առիթով։

Այս դասագիրքը գրուած է սեղմ ու հակիրճ լեզուով․ նրա ամենագլխաւոր արժանիքն այն է, որ ընդհանուր պատմութիւնը չէ դարձնում հէքիաթ, առասպելների հաւաքածու, այլ միշտ քննում է երևոյթների պատճառները, նրանց հետևանքները, կարճ՝ այս դասագիրքն աշխատում է աշակերտին զարգացնել, նրա ուղեղը վարժեցնել քննական հայեացքի և ոչ լոկ գիտելիքներ տալ, սանի գլուխը դարձնել «պիտանի և անպիտան գիտելեաց մի պարկ»։

Դժուար է այս դասագրքով պարապելը, որովհետև նա պահանջում է ուսուցչից մեծ համբերութիւն ու տոկունութիւն։ Աշակերտն սկզբում, վարժուած լինելով հայերէն դասագրքերի անմիտ ու թութակային ուղղութեանը, չէ կարողանում վարժուել, իւրացնել այս դասագրքի քննական ոգին, նրա պատմելու «դատողական» ձևը․ բայց դա տևում է 2—3 ամիս միայն․ այնուհետև դասարանի ընդունակ աշակերտներն իրանք իրանց սկսում են սիրել սրանում գործ ածւող մէթօդը, քննական հայեացքը։

Սա բթացնող դասագիրք չէ, այլ զարգացնող, այդ պատճառով էլ մենք թարգմանեցինք և սրանով էլ պարապում էինք մեր աշակերտների հետ։

Խաժակ

1905 թ. Թիֆլիզ։

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Վայրենի և կուլտուրական ժողովրդները։

Երկրագնդի մակերևոյթի մեծ մասը բնակութեան համար անմատչելի ջրային տարածութիւններից է կազմուած. ցամաքի վրայ էլ ամեն տեղ մարդիկ չեն ապրում. բևեռային երկրների ցուրտը, Սահարայի անջրդիութիւնը խանգարում են մարդուն այդ տեղերում բնակութիւն հաստատելու։ Թէև սիբիրական և հիւսիս-ամերիկեան սառցադաշտերի (տունդրա) ահագին տարածութիւնների վրայ բնակութիւն գոյութիւն ունի, բայց նա էլ շատ սակաւ է և զբաղուած բացառապէս ուտելու, հագնելու և բնակութեան ամենաանհրաժեշտ կարիքներով։ Բնական է, որ մարդիկ խմբւում են եւ անում պտղաբեր եւ մեղմ կլիմայով տեղերում:

Բայց չէ կարելի ասել, որ մարդկանց բարեկեցութիւնն անպատճառ աճում է այնտեղ, որտեղ բնութեան բարիքները ձեռք են բերւում առատօրէն։ Օրինակ՝ Ամերիկայի կուսական անտառներում և խոտաւէտ դաշտերում (պրէրի) ապրում են շատ վայրենի ցեղեր, որոնք հեշտ կերպով սնունդ են ձեռք բերում որսորդութիւնով և դրա համար էլ չեն լարում ու չեն զարգացնում իրանց մտաւոր ուժերը։ Մենք նրանց անուանում ենք վայրենի, որովհետև նրանք բաւականանում են նրանով, ինչ որ տալիս է բնութիւնը և չեն աշխատում բարելաւել իրանց դրութիւնն արհեստի միջոցով։ Դրանց հակառակ՝ եւրոպացիները, հնդիկները, չինացիները կոչւում են կուլտուրական ժողովրդներ։ Կուլտուրա բառը նշանակում է «մշակութիւն», իսկ երբ նա գործ է ածւում մարդկանց կենցաղի վերաբերութեամբ, այն ժամանակ նշանակում

է մարդկանց աշխատանքը շրջապատ բնութեան և իրանց վրայ։ Իսկապէս մարդիկ աշխատում են իրանց հպատակեցնել բնութիւնը, օգտուել նրանից իրանց կարիքների համար, բայց նրանց համար ոչ պակաս անհրաժեշտ է հոգ տանել իրանց սեփական կատարելագործութեան վրայ՝ գիտութիւն ձեռք բերելու, բնաւորութիւնը մշակելու, իրար մէջ լաւ յարաբերութիւններ ստեղծելու մասին։ Մարդկանց ջանքն ուղղուած է կեանքն ուսումնասիրելու, նրան անվտանգ, օգտաւէտ և հաճելի դարձնելու վրայ։ Վայրենիներն անգամ չեն կարող ապրել առանց այդպիսի մի փոքր աշխատանքի. օրինակ՝ բոլոր մարդիկ օգտուում են կրակով, այն ինչ նրա հետ վարուել չեն կարող ամենախելացի կենդանիներն անգամ։ Բայց մի քանի ցեղեր այդ աշխատանքը կատարում են ամենասահմանափակ չափերով, ապրում են օրէ ցօր և, հասնելով մի չնչին դիրքի, մնում են միևնոյն վիճակի մէջ հարիւրաւոր և հազարաւոր տարիներ. իսկ միւսները՝ հասնելով որոշ յաջողութեան, ձգտում են գնալ աւելի հեռու և քայլ առ քայլ իւրացնում են շատ գիտելիքներ, սովորութիւններ ու կարգեր, որոնք նպաստում են կեանքի բարելաւմանը։

Այդ ուղղութիւնով դէպի առաջ արած ամեն մի քայլը մի մեծ գործ է, որն ուժեղ տպաւորութիւն է անում ժամանակակիցների վրայ և յիշատակ թողնում յետնորդների մէջ։ Պատմական գիտութիւնն իր համար գլխաւոր խնդիր է դնում հետեւելու մարդու աշխատանքին իր եւ բնութեան վրայ: Դժբաղդաբար նա ստիպուած է գրի առնել ոչ միմիայն յաջողութիւններ, այլ և թշուառութիւններ և անկման շրջաններ։ Բայց ընդհանրապէս նա վկայում է, որ մարդկութիւնն առաջ է շարժւում, աւելի խելացի և աւելի լաւ դառնում։

Ցեղերը. Բարձր կուլտուրայի հասած ժողովրդները երկ-

րագնդի վրայ համեմատաբար քիչ են։ Նրանց առաջանալը, ինչպէս արդէն ասացինք, յաճախ կախուած էր աշխարհագրական բարեյաջող պայմաններից։ Բայց այդպիսի պայմաններից օգտուելու համար պէտք են ընդունակութիւններ, այն ինչ բոլոր մարդիկ միևնոյն կերպով չեն օժտուած բնութիւնից։ Պատմաբանն ամենից առաջ պէտք է ուշք դարձնէ ցեղերի տարբերութեան վրայ: Որոշ ընտանիքների մէջ մենք միշտ նկատում ենք արտաքին տեսքի և բնաւորութեան ազգակցական նմանութիւն. նոյնպէս էլ միևնոյն ցեղի անդամները նման են իրար և զանազանւում են օտարներից։ Ծննդոց գիրքը մեզ հաղորդում է, որ ամբողջ մարդկային ցեղը սերուել է նախահօր առաջին ընտանիքից, որի սերունդը միշտ աճում էր, տեղափոխւում և ցեղական տարբերութիւններ ձեռք բերում, թէև մենք ճշտօրէն չը գիտենք, թէ ինչպէս կատարուեցին տեղափոխութիւնները։ Ներկայումս մարդիկ՝ իրանց կաշու գոյնով՝ բաժանւում են երեք հիմնական ցեղերի—սպիտակ, դեղին և սև։ Առաջնին պատկանում են Եւրոպայի, Ասիայի և Աֆրիկայի արիական և սեմական ժողովրդները։ Բացի կաշու սպիտակութիւնից՝ այդ ցեղն աչքի է ընկնում իր գանգի և անդամների համաչափ զարգացումով։ Դեղին ցեղն ամփոփում է իր մէջ Հին-Աշխարհի մոնղոլական, ֆիննական, թուրքական և մալայեան ժողովրդներին։ Նրա հետ միանում են Ամերիկայի բնիկները, որոնց կաշին արդէն դառնում է աղիւսի կարմիր գոյնի (պղնձագոյն)։ Այս ցեղի ներկայացուցիչների մեծամասնութեան դէմքի բնորոշ յատկութիւններն են դուրս պրծած այտերը և նեղ ու փոս աչքերը։ Վերջապէս՝ սև ցեղին պատկանում են աֆրիկեան նեգրները և աւստրալական պապուասները. սրանց գլխի կազմի մէջ ամենից շատ աչքի է ընկնում դէպի առաջ դուրս պրծած ծնօտը։

Կուլտուրական ժողովրդների մեծ մասը ծագել է սպիտակ ցեղից։ Դեղին ցեղն արտադրել է չինական ինքնուրոյն կուլտուրան։ Սեւ ամփոփում է միայն վայրենի ժողովրդներ։ Բայց որովհետեւ մարդիկ սերել են միեւնոյն ընտանիքից, դրա համար էլ չըկան անյաղթելի արգելքներ կուլտուրայի տարածման նոյն իսկ ներկայ վայրենիների մէջ։ Պատմութիւնը յաճախ ցոյց է տալիս, թէ ինչպէս քիչ օժտուած կամ անբարեյաջող դրութեան մէջ գտնուող ժողովրդները դուրս են գալիս վայրենի դրութիւնից և ձեռք են բերում բարձր կուլտուրա՝ երբ փոխւում են նրանց կեանքի պայմանները։

Մինչև այժմ մարդկային պատմութեան մէջ դեր են խաղացել համեմատաբար սակաւ թւով ժողովրդներ, որոնք կամաց-կամաց ազդեցութիւն են ձեռք բերել դրացիների վրայ։ Ամենից առաջ կուլտուրան առաջացաւ արևելքում և այն էլ իրարից բոլորովին բաժանւած երկու շերտերում։ Մոնղոլները Չինաստանում և արիները Հնդկաստանում կազմեցին նշանաւոր պետութիւններ և հասան մեծ յառաջադիմութիւնների կրթութեան մէջ։ Միւս կողմից՝ Միջերկրականի մօտերում առաջացան եգիպտական և ասորո-բաբելոնեան կուլտուրաները։ Արդէն այս վերջինների ազդեցութեան տակ ծնունդ առաւ Յունաստանի և Իտալիայի զարգացումը, որը կամաց-կամաց տարածւեց ամբողջ Եւրոպայի մէջ։ Ներկայումս այդ եւրոպական կուլտուրան անցել է և աշխարհի միւս մասերը և դարձել մարդկութեան կեանքի կենտրոնակէտը։ Չինական և հնդկական կուլտուրաների մասին բաւական տեղեկութիւններ հաղորդւած են աշխարհագրութեան մէջ։ Մենք պէտք է զբաղւենք այն ժողովրդների պատմութիւնով, որոնք բնակւում են Միջերկրական ծովի մօտերում։

---

# ԱՌԱՋԻՆ ՄԱՍ

# Արևելք

---

### ԳԼՈՒԽ Ա.

## ԵԳԻՊՏՈՍ

**Երկիրը.** Հներն անւանում էին եգիպտական երկիրը «Նեղոսի պարգև»։ Դա մի օազիս է, որ ձգւում է անբերրի անապատի մէջ՝ Նեղոսի երկարութիւնով, գետի նուբիական ժայռերից դուրս գալուց յետոյ։ Գետի վերին մասերը կարևոր են նրանով, որ այն տեղերում պատրաստւում է հեղեղումը, որին Եգիպտոսը պարտական է իր պտղաբերութիւնով և կուլտուրայով։ Բար-էլ-Աբիադը կամ սպիտակ Նեղոսը բերում է արևադարձային երկրներից ահագին քանակութիւնով բուսական մնացորդներ, որ թանգագին են հողի պարարտացման համար. բայց նրա հոսանքը, որ ձգւում է դէպի ծովը հազարաւոր վերստերով շատ աննշան թեքութիւնով՝ հեղեղ առաջացնելու համար չափազանց ծոյլ և դանդաղ է։ Հեղեղներն առաջանում են կապոյտ Նեղոսից կամ Բար-էլ-Ազրէկից, որ վայր է վիժում Հաբէշական սարահարթից և, արևադարձային անձրևներից ջրեր հաւաքելով, կարծես մի տեսակ դուրս է շպրտում Նեղոսն իր ափերից։ Մարդիկ, անասուններն ու բոյսերն սպասում են հեղեղին՝ յունիսեան երաշտից ազատւելու համար, երբ շա-

բաթներով փչում է անապատից տաք քամին։ Ցունիսի վերջում Նեղոսն սկսում է բարձրանալ, փոխում է գոյնը և, վերջապէս, դուրս է թափւում ափերից։ Հեղեղման շրջանը տևում է մօտաւորապէս չորս ամիս։

Գետի թողած տիղմն ու խոնաւութիւնը Եգիպտոսի հողը դարձնում են երկրագնդի ամենապտղաբեր հողերից մէկը. բայց անհրաժեշտ է հեղեղին ուղղութիւն տալ, որպէսզի կարելի լինի օգտուել նրա բարիքներից։ Եթէ գետը թողնուի իր գլխի, նա մի քանի տեղեր ներս կը վիժէ կործանիչ ուժով, ուրիշ տեղերում կը կազմէ կանգնած ջրի վնասակար լճակներ և ճահիճներ, իսկ շատ տեղեր էլ երբէք չի թափանցի։ Եթէ կարելի է այսպէս ասել՝ հեղեղներին կառավարելու հասար բնութիւնը դրդում է բնակիչներին դէպի միահամուռ եւ անդուլ աշխատանք:

Եգիպտոսի ազգաբնակութիւնը կազմուել է սև ցեղի և սեմիտական սպիտակ ժողովրդի խառնուրդից։ Նա կարողացաւ օգտուել բնական պայմաններից և, գետին տիրելու համար, շինեց ոռոգման ջրանցքների մի ամբողջ ցանց, պատնէշներ, ջրամբարներ։ Այդ շէնքերից ամենանշանաւորն էր Ֆաումի արհեստական մեծ լիճը, մի քիչ հարաւ Մեմֆիսից (Մէօրիս)։ Հեղեղման ժամանակ այդտեղ էին հաւաքում աւելորդ ջուրը և յետոյ նրանից օգտւում էին իբրև պահեստի ջրից՝ երբ պէտք էր լինում գետի մակերևոյթը բարձրացնել։

Կառավարութիւնը։

Որպէս զի այդպիսի աշխատանքները յաջող լինէին, անհրաժեշտ էր կատարել նրանց միահամուռ ջանքերով և ընդհանուր ծրագրով, ոչ թէ առանձին-առանձին։ Դրա համար էլ եգիպտացիները շատ շուտ միացան և կազմեցին մի մեծ պետութիւն, որ

*բովանդակում էր իր մէջ գետի վերին հոսանքից մինչև ծովը եղած երկիրը։*

Ամբողջ հասարակութիւնը ենթարկւում էր մի այնպիսի կարգապահութեան, որպիսին այժմ թագաւորում է զօրքերի մէջ: *Բոլորի գլխին կանգնած էր* փարաւոնը, *որին պաշտում էին ինչպէս՝ երկրային աստծու, արևի որդու։ Նրան ողջունում էին երեսի վրայ գետնին փռւելով. Նրան ներկայացնում էին, ինչպէս և աստւածներին, հսկայի նման, սովորական մարդուց մի քանի անգամ աւելի մեծ։ Փարաւոններն աշխատում էին փառաւորել իրանց ոչ միայն լաւ կառավարութիւնով, երկրի ոռոգման վրայ տարած հոգսերով ու Նրան թշնամիներից պաշտպանելով, այլ և իրանց իբր թէ գերընական կարողութիւնն ապացուցանող շէնքերով։ Քէոպսի գերեզմանի բուրգի * վրայ 30 տարի շարունակ աշխատում էին 100,000 մարդ, որոնց փոփոխում էին երեք ամիսը մի անգամ։ Եւ մինչև օրս էլ այդ բուրգը, որ հասնում է 70 սաժէն բարձրութեան, մարդկային ճարտարապետութեան ամենահսկայական յիշատակարանն է։* Զինւորականների եւ քուրմերի դասակարգերում *պաշտօնները իրաւունքներն ու արտօնութիւնները հաղորդւում էին ժառանգաբար. ժողովրդի մնացած բազմութիւնն զբաղւում էր ծանր երկրագործական և արդիւնագործական աշխատանքներով։ Բայց փարաւոնին արած ծառայութիւնը կարող էր բարձրացնել նոյն իսկ հասարակ մարդիկներին մինչև ամենաբարձր աստիճանների։ Հարկաւոր էին բազմաթիւ կառավարիչներ, աշխատանքների*

---

** Եթէ իբրև հիմք վերցնենք մի քառակուսի և Նրա վրայ դասաւորենք աստիճանաբար փոքրացող նման քառակուսիներ՝ մինչև որ ծայրը մի կէտ կազմէ—կը ստանանք բուրգ։*

վերահսկողներ, հարկահաւաքներ, հաշւետեսներ, գրագիրներ։ Այս բոլոր զբաղմունքների համար պէտք էր գրագիտութիւն և գրագէտ մարդու կամ «գրագրի» ծառայութիւնը Եգիպտոսում համարւում էր բոլոր պաշտօններից ամենաձեռնտուն և ամենայարգին։

Գիրը 3000 թ. Ք-ից առաջ։

Եգիպտացիները գիրը հնարել են ինքնուրոյն կերպով և չափազանց շուտ՝ աւելի քան 3,000 տարի Ք-ից առաջ։ Նրանց ամենահին նշանագրերը կոչւում են հիերօգլիֆներ։ Սկզբում նա միայն այն առարկաների պատկերներն էր, որոնց մասին խօսւում էր։ Օրինակ՝ որպէսզի գրեն «րօտ» (մարդ) բառը, նկարում էին նստած մարդու պատկերը։ Յետոյ սկսեցին նոյն պատկերը գործածել «րօտ» վանկը նշանակելու համար, ինչ բառի մէջ էլ նա պատահելիս լինէր։ Բացի դրանից՝ պայմանաւորւեցին որոշ նշաններով նշանակել այն մտքերն ու հասկացողութիւնները, որոնց տեսնել, ուրեմն և նկարել չէ կարելի։ Օր. Թակարդի մէջ ընկած ոտքը նշանակում էր խաբէութիւն:

Կրօնը.

Ժողովրդի կեանքում մեծ նշանակութիւն ունէր կրօնը։ Սկզբում նա ներկայացնում էր կոպիտ բազմաստուածութիւն, բնութեան ուժերի եւ երեւոյթների երկրպագութիւն: Սնոտիապաշտական երկիւղն ու աստւածացումը տարածւում էին նոյն իսկ մի քանի կենդանիների վրայ. շատ տեղերում երկրպագում էին կոկորդիլոսին. Մեմֆիսում պահում էին սրբազան Եզին (Ապիս), որի մէջ տեսնում էին աստւածներից մէկի մարմնացումը։ Եգիպտացիները յաճախ երևակայում էին աստւածներին կենդանիների ձևով կամ մի մասը մարդկային, միւս մասը գազանի մարմնով։ Օրինակ՝ Անուբիսը, մեռածների հոգիների հովիւը, ներկայացւում էր չաղալի գլխով։ Գիզէհի դաշտում բուրգերի մօտ՝ մինչև այսօր էլ կարելի է տեսնել սփինքսը՝—մի հրէշի արձան, մարդկային գլխով և կրծքով,

առիւծի մարմնով,—դա արեւի աստծու պատկերացումն էր։ Բազմաթիւ հաւատալիքների միջից կամաց-կամաց ջոկւեց գլխաւորը—արեւի երկրպագութիւնը։ Արեւի աստծուն անուանում էին Ռա կամ Ամոն։ Օզիրիսը, Ռայի որդին, կռւում է չար Սէթի, գիշերային խաւարի աստծու հետ։ Երբ ցերեկը տեղի է տալիս գիշերին, Օզիրիսը յաղթւում է Սէթից և իջնում հանդերձեալ աշխարհը, մահւան թագաւորութիւնը, բայց յետոյ վերածնւում է և իր հերթին յաղթում է իր թշնամուն։

Եգիպտացիները ենթադրում էին, որ հոգու բաղդը մահից յետոյ կախում ունի մարմնի բաղդից։ Որպէսզի հոգին չը կորչի, անհրաժեշտ է պաշտպանել մարմինը նեխւելուց. դրանից էլ ծագեց մումիա պատրաստելու սովորութիւնը. հանգուցեալի մարմնից հանում էին փորոտիքը, դիակը փաթաթում էին անուշահոտ նիւթերում թաթախած կտորների մէջ, դնում փայտէ արկղում. մարմինը չորանում, դառնում էր «մումիա», որ չէր ենթարկւում նեխման։ Յետոյ պէտք էր հոգ տանել հանգուցեալի համար կանոնաւոր բնակարան, նրան կերակուր, ամաններ, ծառաներ մատակարարելու մասին։ Եւ ահա նրա համար շինում էին ընդարձակ հանգստատեղի, նկարում էին նրա պատերի վրայ մարդուն անհրաժեշտ բոլոր առարկաները, կամ գոնէ յիշում էին նրանց անունն արձանագրւող աղօթքների մէջ, որ կրկնում էին գերեզմանին այցելութեան եկողները։ Այդքանը բաւական էր համարւում, որպէսզի հանգուցեալն օգտւել կարողանար յիշւած առարկաներից։ Այդ տեսակէտով հարուստները մահից յետոյ էլ պահպանում էին իրանց առաւելութիւններն աղքատներից, որովհետև նրանց մարմիններն աւելի լաւ էին զմռսւում և գերեզմանները կարող էին աւելի լաւ սարքւել։ Բայց եգիպ-

*տացիները կանգ չառան հանդերձեալ կեանքի այդ կոպիտ, նիւթապաշտական հասկացողութեան վրայ։ Դրա հակառակ* առաջանում է Օզիրիսի հանդերձեալ աշխարհի դատաստանի վարդապետութիւնը․ *ամէն մարդ ենթարկւում է քննութեան իր բարի գործերի և մեղքերի համար, և հոգու ապագան կախւած է արդէն ոչ թէ հարստութիւնից և կամ ազգականների խնամքներից, այլ անաչառ և ամէնագէտ դատաւորից։*

*Արուեստը.* Եգիպտացիները բնաւորութիւնով լուրջ եւ կենտրոնացած ժողովուրդ էին․ *այդ բանին նպաստում էին շրջապատ բնութեան միօրինակութիւնը և վեհութիւնը, հասարակութեան մէջ տիրող խիստ կարգը, մեծ աշխատասիրութիւնը և կրօնականութիւնը։ Նրանց բնաւորութիւնն արտացոլւում է և նրանց արւեստագիտութեան ուշարձանների մէջ, որոնք մինչև օրս վկայում են այդ հին կուլտուրայի նշանակութեան մասին։ Նրանք ամէնից շատ բան են արել գերեզմանները զարդարելու համար։ Նրանց բոլոր քաղաքների մօտ կային մի-մի «մեռելների քաղաք»։ Աստւածների փառահեղ տաճարներից կարելի է յիշել Ամօնայի տաճարը Թէբէյում, ուր այժմ գտնւում է Կարնակ գիւղը։ Պալատներից հների առանձին զարմանքն էր շարժում Լաբիւրինթոսը՝ Ֆայումի լճի ափին, իր 3,000 սենեակներով, որոնց կէսը տեղաւորւած էր գետնի տակը։ Այդ բոլոր շէնքերի գլխաւոր զարդերը կազմում էին պատերի վրայ քանդակւած ուռուցիկ պատկերները և նկարները։ Նրանք ներկայացնում էին ինչպէս աստւածների և թագաւորների քաջագործութիւններն, այնպէս էլ սովորական կեանքի տեսարանները։ Մեզ խիստ զարմացնում է նկարիչների դիտողութեան ձիրքը և միաժամանակ նրանց ճարպկութեան պակասութիւնը․ բոլոր դէմքերը դրւած են պրօֆիլ (կողքից), իսկ իրականութեան մէջ մէկը միւսի ետևը*

դրւած առարկաները ներկայացւած են մէկը միւսի վրայ: Ք.-ից դեռ 3,000 տարի առաջ եգիպտացիներն արւեստի մէջ արդէն շատ առաջ էին գնացել, բայց յետոյ նրանք կանգ առան միեւնոյն դիրքում և սկսեցին աշխատել եղած օրինակներով, խուսափելով շեղումներից և նորմուծութիւններից: Նոյն բանը նկատւում է եգիպտական կեանքում ամեն տեղ. սկզբում նրանց կեանքի ենթարկւելը խիստ եւ որոշ կանոնների ունէր բարեյաջող հետեւանքներ, իսկ յետոյ անփոփոխ կանոնները սկսեցին անշարժ պահել, կանգնեցնել ձեռներեցութեան ոգին եւ զարգացումը:

*3,000 թ. Ք.-ից առաջ:*

*Գլխաւոր դէպքերը: Մինչև 3,000 թւականը:*

Դեռ 3,000 թւից շատ առաջ Մեմֆիս քաղաքի թագաւորներին յաջողւեց միացնել ամբողջ երկիրը՝—ծովից մինչև գետի ակունքները— և կազմել մի պետութիւն: Զօրաւոր IV հարստութեան կամ դինաստիայի ուշարձաններն են երեք բուրգերը և սֆինքսը Գիզէհեան դաշտում: Յետոյ երկրի մէջ գլխաւորութիւնն անցաւ Թէբէ քաղաքին, որ տեղաւորւած էր գետի հոսանքի աւելի վերին մասում: Այդ ժամանակ առաւելապէս շատ բան արւեց երկրի ոռոգման և բարեկեցութեան համար: Օրինակ՝ XII հարստութեան ժամանակ շինւեց Մէօրիս լիճը: Ժողովրդի բարգաւաճմանը խիստ հարւած հասցրեց Հիքսոսների՝ սեմական ցեղի թափառական հովիւների արշաւանքն Ասիայից (մօտ 2000 թւին): Նրանք իշխեցին մի քանի հարիւր տարի, բայց վերջապէս դուրս քշւեցին եգիպտացիներից: Փարաւոնները, խրախուսւած հիքսոսների կըռւում ունեցած յաջողութիւններով, անցան յարձակողական շարժման. XVIII և XIX հարստութիւնների թագաւորները կատարեցին մի շարք յաղթական արշաւանքներ առաջաւոր Ասիայի ժողովրդների դէմ: Մանաւանդ նրանք ջանացին գրաւել ասորական ափերը: Սկզբում նրանք հեշտ յաղթութիւններ էին

*2,000 Ք. առաջ:*

*տանում ասիական բաժան-բաժան ժողովրդների վրայ, որոնց ժամանակ առանձնապէս հռչակւեցին Թութմէս*
1300 թ. *Գ և Ռամսէս Բ (1300 թւին) փարաւոնները։ Բայց այդ յաջողութիւնները չէին տալիս հաստատուն նւաճումներ. նրանք միայն աւերում էին թշնամիների երկրները և հարստութիւն բերում Եգիպտոս։ Երբ Ասիայում առաջացաւ Ասորեստանի զօրաւոր պետութիւնը, գործը փոխւեց. եգիպտական զօրքերն սկսեցին յաղթւել և* ասորեստանցիները գրաւեցին նոյն իսկ Եգիպտոսը։ *Նրանց լուծը թօթափելու համար՝ վերջին հարստութիւնների փարաւոնները* սերտ յարաբերութեան մէջ մտան յոյների հետ, *որոնցից նրանք վարձկան զօրքեր էին հաւաքում։ Այդ բանի շնորհով Պսամետէք և Նեքաւով * փարաւոններին յաջողւեց ժամանակաւորապէս վերականգնել իրանց պետութեան զօրութիւնը։*

*Բայց Եգիպտոսի այս վերածնութիւնը կարճօրեայ եղաւ. տեղացիների մեծամասնութիւնը թշնամաբար էր նայում երկւոր յոյների և պալատում տիրող յունական կարգերի վրայ։ Ներքին խռովութիւնները նպաստեցին թշնամիներին և արդէն նոյն իսկ Նեքաւովը*
525 թ. *(Նեխօ) ջարդւեց Բաբելացիներից։ Իսկ 525 թւին Փսամենէտ փարաւոնը վերջնականապէս յաղթւեց պարսիկներից, որոնք Եգիպտոսը միացրին իրանց պետութեան հետ։*

---

** Սրա թագաւորութիւնը, ի միջի այլոց, նշանաւոր է նրանով, որ կարմիր ծովից նրա ուղարկած նաւատորմիղը շրջեց ամբողջ Աֆրիկայի ափերը և երեք տարի յետոյ վերադարձաւ Նեղոսի գետաբերաններով։*

ԳԼՈՒԽ Բ.

## ԲԱԲԵԼԱՍՏԱՆ ԵՒ ԱՍՈՐԵՍՏԱՆ

Առաջաւոր Ասիայում կուլտուրան ամենից առաջ զարգացաւ Միջագետքում։ Տիգրիսն ու Եփրատը՝ Նեղոսի նման, պտղաբեր են դարձնում այդ տեղերն իրանց հեղեղներով, միայն թէ դա պահանջում է ժողովրդից եռանդուն աշխատանք գործ դնել երկրի ոռոգումը կանոնաւորելու համար։ Այն դաշտերը, որոնք հին ժամանակներում Ասիայի հացի ամբարներն էին՝ ներկայումս — Թուրքերի անգործունեայ տիրապետութեան օրով՝ դարձել են անապատներ։ Միջագետքը բաժանւում է երկու մասի. գետերի միջին հոսանքների երկրներում բաւական անձրևներ են գալիս, իսկ ներքին հոսանքն անցնում է բոլորովին հարթ դաշտերով, որոնց ոռոգումն ամբողջապէս կախուած է գետերի ջրից։ Հիւսիսային կէսը՝ Նինուէ մայրաքաղաքով՝ կազմում էր Ասորեստանցիների թագաւորութիւնը, հարաւայինը՝ Բաբելոն մայրաքաղաքով՝ Քաղդէան։ Սրա գլխաւոր տարբերութիւնը Եգիպտոսից նրանումն է, որ Նեղոսի հովտի նման սա էլ բնութեան ձեռքով չէ առանձնացած, այլ ընդհակառակը՝ միաւորում է մի շարք բազմազան երկրների հետ: Տիգրիսի և Եփրատի ակունքը դնում են նրան յարաբերութեան մէջ Հայաստանի հետ։ Տիգրիսից դէպի արևելք գտնւում էին պատերազմասէր Պարսիկները և Մարք, որ միշտ ըսպառնում էին այդ երկրի ազգաբնակութեան ապահովութեանը։ Եփրատից դէպի արևմուտք բացւում է դժւարանցանելի անապատը, որի մէջ թափառում էին արաբական աւազակ ցեղերը, իսկ հիւսիս-արևմուտքից Եփրատը մօտենում է ասորական (սիրիական) Օրօն- Երկիր.

թօի հովտին, և այդտեղում են կատարւում Միջերկրականի ափերի և Եգիպտոսի հետ յարաբերութիւնները։

Աստղաբանութիւնը և կրօնը։

Միջագետքում կուլտուրան ծնունդ առաւ հարաւում, հեղեղմունքների նահանգում, այն ցեղերի մէջ, որոնք իրանց անւանում էին Ակկադացիներ և պատկանում էին դեղին ցեղին։ Ինչպէս Եգիպտոսում, այնպէս էլ այստեղ՝ անյիշատակ ժամանակներում երևաց գիրը. սկսեցին առարկաների նշանագրական (հիերօգլիֆական) ձևակերպութիւնից, բայց Քաղդէայում այդ պատկերները շուտով կորցրին իրանց բոլոր նմանութիւնն առարկաների հետ և ստացան գծերի կամ սեպերի ձև, որ միանում էին իրար հետ զանազան անկիւններով։ Դրա համար էլ այդ գրերը կոչւում են սեպաձեւ գրեր։

Հնագոյն Քաղդէացիների կրօնի մէջ նշանաւոր է հաւատը դէպի դևերը կամ դէպի ամեն տեսակ ոգիները, որոնցով լցւած է տիեզերքը։ Դրանց գլուխ են կանգնած երեք աստւածային էակներ, որոնցից մէկը կառավարում է երկինքը, միւսը՝ երկիրը, երրորդը՝ հանդերձեալ աշխարհը։ Քաղդէացիները հաւատում էին, որ կեանքում ամեն բան կախուած է ոգիների օգնութեան կանչելուց եւ նրանց չար ազդեցութիւնը հեռացնելուց. հիւանդութիւնը, դժբաղդութիւնը կարելի է հեռացնել կախարդական խօսքերով, կամ թալիսմաններով, այսինքն՝ կախարդական առարկաներով, որ մարդիկ կրում են իրանց վրայ։

3,000 թ.Ք.-ից առ.

Դեռ 3000 թւից առաջ երկիրը գրաւեցին սեմական ցեղերը: Նրանք խառնւեցին ակկադացիների հետ և իւրացրին այն ամենը, ինչ որ նրանք արել էին։ Շատ բան էլ իրանք աւելացրին։ Եկւորները բերին հաւատ, որ նման էր Աստուածաշնչի վարդապետութեանը, օրինակ՝ նրանց մէջ պահպանւած էր Ջրհեղեղի

մասին մի աւանդութիւն, որ ամենայն մանրամասնութիւնով յիշեցնում էր Աստուածաշնչի պատմութիւնը։ Բայց փոխանակ հրեաների նման մի աստուածութեան մէջ հաստատուելու, այս սեմիտներն ընդունեցին ակկադացիների հաւատալիքները և լրացրին նրանց երկնային լուսաւորների երկրպագութիւնով: Նրանք ճանաչում էին հինգ մոլորակներ և նրանց աստուածացնում էին։ Ի հարկէ ամենից բարձրն էր արևի աստուած Բէլը։ Բէլն էր և՛ կառավարիչ տիեզերքի, որ բաշխում էր մարդիկներին բարօրութիւն, և՛ մահաբեր կործանիչ, որին կարելի էր մեղմացնել միայն արիւնալի զոհերով։ Իշտարը (Աստարտէն) երկրային պտղաբերութեան, սիրոյ և պատերազմի աստուածուհին էր։ Հաւատացեալները եգիպտացիների նման մըշտապէս չէին մտածում հանդերձեալ կեանքի մասին, այլ աստուածներից խնդրում էին յաջողութիւն երկրային կռիւների մէջ։ Կրօնը համապատասխանում էր ժողովրդի բնաւորութեանը, որ եռանդուն էր եւ տրամադիր բռնութեան եւ խստութիւնների:

**Ասորեստանի թագաւորութիւնը.**

Այդ գծերը մասնաւորապէս աւելի նկատելի են Ասորեստանում, այսինքն Եփրատի և Տիգրիսի միջին հոսանքի նահանգում։ Ասորեստանցիներն այնքան էին ոգևորւում իրանց ժողովրդի փառքով ու մեծութիւնովը, որ վերագրում էին իրանց կարողութեան տարածւելն Իշտար աստուածուհուն։ Իբր թէ նա ժամանակաւորապէս ընդունել է Շամիրամ թագուհու կերպարանքը, մի շարք արշաւանքներ ու յաղթութիւններ է արել, պատերազմել է հնդիկների և սկիւթացիների հետ և վերջը դարձել է աղաւնի ու երկիրը թողել։ Իսկապէս ասորեստանցիներն ստիպւած եղան իրանց շրջապատող բոլոր ցեղերի հետ կամակոր կռիւ մղել։ Վեց դար շարունակւում էին արիւնահեղ պատերազմները Հայաստանում և Փոքր-Ասիայում, Մարաստա-

նում, Պարսկաստանում և Բաբելոնում, Ասորիքում, Փիւնիկէում և Պաղեստինում։ Այդ ժամանակ ասորեստանցիները կարծես գնում էին դիմաւորելու եգիպտացիներին—արևելքից դէպի արևմուտք։ Նրանք ամենից քիչ ուշադրութիւն էին դարձնում Հնդկաստանի և Պարսից Ծոցի վրայ, թէև այդտեղ էին թափւում Եփրատն ու Տիգրիսը։ Գլխաւոր նպատակն էր դուրս գալ Միջերկրականի ափն Ասորիքի վրայով։ Ը դարի վերջում Սարգոնը միացրեց իր իշխանութեան տակ ամբողջ առաջաւոր Ասիան՝ Միջերկրականից մինչև Իրանի բարձրավանդակը և Կասպից ծովից մինչև Պարսից Ծոցը։ Նրա թոռ Ասսարգադոնը հպատակեցրեց Եգիպտոսը։ Բայց այդ ահագին թագաւորութեան ժողովրդներից մեծ մասի հպատակութիւնը շատ անհաստատ էր։ Տարի չէր անցնում, որ պատերազմ կամ ապստամբութիւն չլինէր։ Ասորեստանցիները չէին էլ մտածում յաղթւածներին հաշտեցնել իրանց լծի հետ։ Մեզ հասած երկար արձանագրութիւնների մէջ նրանց թագաւորները պարծենում են նրանով, որ թշնամիներին կոտորում էին հազարներով, գետերը լցնում էին արիւնով, երկիրը ծածկում էին դիակներով, այրում էին քաղաքները, ամայացնում դաշտերը։ Յաղթւածներին յաճախ ամբողջ խմբերով քշում էին օտարութիւն։ Այդպէս վարւեց Սարգոնը, Սամարան առնելուց յետոյ, հրէաների մնացորդների հետ։

Ը դարի վերջը

Կուլտուրան

Այդ ժամանակ յաղթողների երկիրը հասաւ չըլսւած հարստութեան և շռայլութեան, որոնց մասին վկայում են մինչև օրս մնացած շինութիւնների հետքերը, որ կառուցել են յաղթական թագաւորները։ Այդ աւերակներից ամենանշանաւորներն աստւածների տաճարներ կամ գերեզմանների ուշարձաններ չեն, այլ պալատների աւերակներ, ինչպէս օրինակ՝ Սարգոնի՝ դղեակը Նինւէից դէպի հիւսիս-արևելք (այժմ Խոր-

*տապատ)*։ Այդ շինութիւնների պատերը զարդարող արձանները եւ ուռուցիկ քանդակները աւելի քիչ բռնազբօսիկ են, քան եգիպտականները, բայց եւ աւելի կոպիտ են շինւած: *Պատկերների գլխաւոր նիւթը կազմում են պատերազմական կեանքի, որսի, յաղթական թափորների և թագաւորների ընդունելութեան տեսարանները։ Բայց չէ կարելի ասել, որ այն ժամանակ հետաքրքրւում էին միայն արտաքին փառքով ու շքով։ Վերջին թագաւորներից մէկը՝ Ասուրբանիպալը՝ թագաւորական հրամանագրերից, պայմանագրերից, բաբելոնեան և ասորեստանեան գրականութեան նշանաւոր արտադրութիւններից կազմեց* մի ահագին գրադարան: *Այդ գրադարանը կազմւած էր ոչ թէ գրքերից, այլ կաւէ տախտակներից, որոնց վրայ փորագրւած էին հեղինակութիւնները սեպաձև գրերով։ Ասուրբանիպալի պալատի պեղումների ժամանակ, որ կատարեցին անգլիացիները* XIX *դարի. կէսերին, գտնեցին այդ տախտակների մեծ մասը․ Նրանք ծառայում են իբր թանգագին ուշարձաններ այդ հին կուլտուրայի պատմութեան։*

**Բաբելոնեան թագաւորութիւնը.**

*Ասորեստանի տիրապետութիւնը հիմնւած էր շըրջապատ ժողովրդների անխնայ ճնշման և կողոպտման վրայ։ Նինուէի թագաւորն ամբողջ Առաջաւոր Ասիան պահում էր սարսափի մէջ, բայց ամեն տեղ գաղտնի կերպով նրան ատում և անիծում էին։ Պէտք էր միայն մի քիչ խախտել նրա զինւորական ոյժը, որպէսզի նրա չորս կողմում մի անգամից ոտքի կանգնէին բոլոր ստրկացած ազգերը։ Վրէժի ժամը հնչեց, երբ Ասուրբանիպալի յաջորդ Սարակի օրով պայթեց մի ծանր պատերազմ մարաց հետ։ Բաբելացիները չէին կարողանում ներել ասորեստանցիներին Սարգոնի որդու ձեռքով Բաբելոնի կործանումը․ Նրանք միացան մարաց հետ։ Դաշնակիցները, կատաղի կռւից յետոյ՝ Նին-*

ւէն առան։ Սարակը չըսպասեց և չըխնդրեց իրան խը-
նայել, այլ այրեց իր պալատը և ինքն էլ իր մտերիմ-
606 ների հետ միասին ոչնչացաւ (606 թ.)։ Ցաղթողները
Նինուէն հիմքից կործանեցին և համարեա երկրի բո-
լոր բնակիչներին ստրկութեան վարեցին։ Ասորես-
տանցիների դէմ վարած կռւում դաշնակիցներին
միացնում էր միայն ընդհանուր ատելութիւնը. յաղ-
թութիւնից յետոյ նրանք իսկոյն իրար հետ կռւեցին։
Ասորեստանի փառքի յաջորդները մի քիչ ժամանակ
եղան բաբելացիները: Նրանց Նաբուգոդոնոսոր թա-
գաւորի օրով Քաղդէան դարձաւ առաջաւոր Ասիայի
համար մի այնպիսի կենտրոն, ինչպիսին առաջ Ասո-
րեստանն էր։ Նա յաջող կերպով կարողացաւ սահմա-
նափակել մարաց տարածւելը։ Իսկ նրա գլխաւոր
ջանքը դարձած էր դէպի արևմուտք։ Նա պատժեց
արաբներին իրանց արած արշաւանքների համար, Ա-
սորիքում յաղթեց Նախօ (Նեքաւով) փարաւոնին, եր-
կու անգամ գրաւեց Երուսաղէմը և երկրորդ անգա-
586 մին կործանեց Սողոմոնի տաճարը (586). պաշարեց
Տիւրոսը և հպատակեցրեց Փիւնիկիան. վերջապէս մի
յաղթական արշաւանք արեց դէպի Եգիպտոս։ Զընայե-
լով այդ մշտական պատերազմներին, Նաբուգոդոնո-
սորը ժամանակ և ոյժ էր գտնում երկրի ներսում
մեծամեծ ձեռնարկութիւններ անելու համար։ Նա վե-
րաշինեց Բաբելոնն իր նախկին փառահեղութիւնով, շըր-
ջապատեց նրան համարեա 60 վերստ երկարութիւն ու-
նեցող պարսպով և Եփրատի վրայ կամուրջ շինեց։ Յետոյ
նա կանոնաւորեց ոռոգման վերաբերող աշխատանք-
ները, որ քայքայւել էին Ասորեստանի տիրապետու-
թեան ժամանակ և փորեց մի ջրանցք, որով կարող
էին Բաբելոնին մօտենալ հաց բարձած մեծ նաւերը։
Նրա մահից յետոյ նորոգւեցին արևելեան դրացիների
հետ պատերազմները։ Այժմ դուրս եկաւ մի նոր ժո-

դաւթարդ, որ Զ դարում գերակշռութիւն ստացաւ մարաց վրայ՝ Պարսիկները։ Նրանք առանց մեծ դժուարութեան յաղթեցին Նաբուգոդոնոսորի յաջորդ Նաբոնեդին (Վալտասարին) և 538 թւին գրաւեցին Բաբելոնը։ 538

---

Գ Լ Ո Ւ Խ Գ.

## ՄԱՐԱՍՏԱՆ ԵՒ ՊԱՐՍԿԱՍՏԱՆ

Տիգրիսից դէպի արևելք բարձրանում է Իրանեան · Երկիրը· բարձրաւանդակ սարահարթը։ Այս երկիրը չէ միացւում եւ չէ կենդանանում մեծ մեծ գետերով, ինչպէս Եգիպտոսը կամ Ասորո-Բաբելոնը։ Ազգաբնակութիւնն այստեղ տեղաւորուեց սկզբում ցրւած ձևով՝ աւելի եզրներում, քան կենտրոնում. մի մասը տեղաւորուեց Ամու-Դարիայի և Սիր-Դարիայի վերին հոսանքներում և կռւի մէջ մտաւ հիւսիսային անապատի թափառականների հետ. մի մասը շարժուեց դէպի հիւսիս-արևմուտք — Մարաստան, և դէպի հարաւ-արևմուտք — Պարսկաստան և յարաբերութիւն սկսեց Ասորեստանի և Քաղդէայի հետ։ Հեղեղները չեն նպաստում հողի պտղաբերութեանը և հացի մշակութիւնն աւելի կախւած է առանձին հողատէրերի ջանքերից, քան ոռոգման ճարտար կազմակերպութիւնից։

Արիական ցեղերի երևալովը նստակեցութիւնը Բնակիչները կամաց-կամաց հաստատուեց. այդ ցեղերը կռւի մէջ մտան սկզբնական թուրքական ցեղի ազգաբնակութեան հետ և մասամբ տիրեցին նրանց, մասամբ էլ դէպի հիւսիս քշեցին։ Այս գրաւումը կապւած էր արիական ցեղի տեղափոխութեան հետ. այդ ցեղը դուրս եկաւ իր սկզբնական հայրենիքից՝ Միջին-Ասիայից՝ և ցրը-

ւեց բոլոր ազգությիւններով։ Երբ մարք և պար-սիկները բռնում էին Տիգրիսի արևելեան սարահարթը, նոյն ցեղի մի մասն էլ իջաւ դէպի Փէնջափ։ Այդ ցե-ղից ծագեցին հնդիկները։ Արիների մեծ-մեծ խմբեր զանազան ժամանակներում չուեցին դէպի Եւրոպա. նախ՝ յոյները և իտալացիները, յետոյ՝ կելտերը և գերմանները, վերջապէս՝ լիտւանները և սլաւօնները։ Որքան էլ այս ժողովրդների բաղդը տարբեր եղաւ, այնուամենայնիւ նրանց մօտիկ ազգակցութիւնը ե-րեւում է նրանց սովորութիւնների եւ մանաւանդ լե-զուների նմանութեան մէջ։ Հնդիկների հին արիական բարբառը՝ սանսկրիտերէնը, պարսիկների հին արիա-կան բարբառը՝ զենդերէնը և բոլոր եւրոպական հիմ-նական լեզուները ոչ միայն ունեն բազմաթիւ նոյ-նատեսակ արմատներ ու նման բառեր, բայց և քե-րականական կազմով կազմում են մի մօտիկ ըն-տանիք, որ էապէս զանազանւում է միւս խմ-բերից։

Կրօնը. Ընդհանուր արիական ծագումը երևում է և կրօ-նական հաւատալիքների մէջ. թէև աւելի քիչ չափով, քան լեզուներում։ Հնդիկների նման՝ իրանական արի-ները բոլոր աստուածներից բարձր էին դասում երկ-նային թագաւորութեան տիրոջը և արևը համարում էին նրա աչքը։ Այդ բարի և հզօր աստուածը — Հնդիկների Վարունան և իրանցիների Որմիզդը — մշտական կռիւ է մղում չար դևերի հետ, յաղթահարելով նրանց կայ-ծակի որոտագին հարուածներով։ Սակայն այն ինչ՝ հնդիկների կարծիքով՝ բարի աստուածը հպատակեցնում է իրան ամբողջ բնութիւնը և յետ մղում չար ոգի-ներին, իրանի բնակիչներն ընդունում էին, որ չարն ունի ահագին ոյժ. Որմիզդի դէմ դուրս է գալիս Ահ-րիմանը, մութ սկզբունքի գլխաւորը։ Մի խիստ եր-կուութիւն (դուալիզմ) թագաւորում է ամբողջ բնու-

թեան մէջ։ Լոյսը և խաւարը, կեանքը և մահը, ճշմարտութիւնը և ստութիւնը, բարիքն ու չարիքը վիճում են իրար հետ տիրապետութեան համար աշխարհի ստեղծագործութեան սկզբից սկսած։ Արդար մարդը հանդիսանում է բարութեան աստծու զինւոր և ամէն մարդ պէտք է ձգտի երկրի վրայ արդար կեանքի, որովհետև դրանից է կախւած մարդու հանդերձեալ կեանքը։ Մեռածների հոգիներն անցնում են մի կամրջով, որի մի ծայրը տանում է Որմզդի բնակութեան տեղը՝— երկինք, իսկ միւսն իջնում է դժոխք։

Պարսկական աւանդութեան համաձայն այս հայեացքը բաց է արել մարդիկների առաջ Զորոաստր (Զարադուշտրա) մարգարէն։ Նրանք մեզ հասել են իրանական քուրմերի կազմած սրբազան գրքերից, որ կոչւում են Զենդ-Աւեստա։ Քրմական դասակարգը բաժանուած էր միւսներից եւ խիստ հզօր էր, մանաւանդ Մարաց մէջ, ուր նա կրում էր մօգ անունը։ Դրանց միջավայրում Որմզդի կրօնը դարձաւ մի բարդ վարդապետութիւն, որից բղխում էին բազմաթիւ խիստ բարոյական պատւէրներ։ Հասարակ ժողովուրդը չէր կարող հետևել բոլոր մանրամասնութիւններին, բայց բարու և չարի սկզբունքների մշտական կռւի գաղափարը խոր կերպով թափանցեց նրա հոգու մէջ։ Ամենախեղճ գիւղացին անգամ կարծում էր, որ իր տոկուն աշխատանքով հողը մշակելը Որմզդին ծառայել է նշանակում, այնինչ անօրէն թալանիչը, թափառական թիւրքմէնն Ահրիմանի գործն է կատարում։

Մարաց կամ Մեդացիների թագաւորութիւնը։

Այդպիսով ընդհանուր արիական հաւատալիքներից իրանցիների մէջ զարգացաւ մի կրօն, որն ունեցաւ մեծ նշանակութիւն այդ ժողովրդների կեանքի համար։ Կեանքի ուրիշ կողմերի վերաբերութեամբ նրանք ենթարկւեցին ասուրօ-բաբելոնեան բարձր կուլտուրային, որի հետ շփւեցին արևմուտքում։ Այդտեղից նրանք

փոխ առան սեպաձև գիրը, ճարտարապետութեան և
քանդակագործութեան ձևերը։ Ասորեստանցիների պե-
տութեան տարածման շրջանում մարք և պարսիկները
նոյն իսկ քաղաքականապէս կախում ունեցան Ասո-
րեստանի թագաւորութիւնից։ Այդ երկրորդական վի-
ճակից նրանց դուրս գալու հարուածը տուեց սկիւթա-
Է դ. ցիների արշաւանքը Է դարում Ք-ից առաջ։ Հարա-
ւային Ռուսաստանում բնակւող թափառական ցեղերը,
որոնց մէջ իրար էին խառնւել արիական և թիւրքական
ծագում ունեցող ժողովրդներ, Է դարում ուժեղ ալէ-
կոծութեան մէջ ընկան։ Նրանց մի մասն ընկաւ Իրանի
և Փոքր-Ասիայի վրայ։ Երկար և սկզբներում անյաջող
կռւից յետոյ՝ մարաց թագաւոր Կիաքսարը դաւաճա-
նութիւնով բռնեց և կոտորեց սկիւթացիների առաջ-
նորդներին, յետոյ էլ գլուխ ելաւ մնացածների հետ։
Սկիւթացիներին տուած այս հարուածը բարձրացրեց
մարաց նշանակութիւնը։ Նրանք այլ ևս չուզեցին հպա-
տակւել Ասորեստանին, և նոյն Կիաքսարը, բաբելա-
ցիների հետ դաշնակցելով, Նինուէի դէմ արշաւանքի
ելաւ, որ վերջացաւ Ասորեստանի պետութեան կոր-
ծանումով։ Վաթսուն տարի մարք իրանց ձեռքում
պահեցին իրանական ժողովրդների գերիշխանութիւ-
նը։ Նրանց մայրաքաղաքը — Եկբատան (Համատան)
շինւեց և զարդարւեց այդ ժամանակում Նինուէի և
Բաբելոնի նման։

Կիւրոս.550թ։ Մօտաւորապէս 550 թւին Ք. ա. Իրանում գե-
րակշռութիւն ստացան պարսիկները։ Պարսկական
զօրքը Կիւրոսի առաջնորդութիւնով ապստամբւեց
և իշխանութիւնն անցաւ պարսկական Աքեմե-
նեան հարստութեանը և մայրաքաղաքը դարձաւ
Սուզը (Շոշ)։ Բայց մարք եւ պարսիկները շարունա-
կում էին գործել միասին և հաւասարապէս աջակ-

ցում էին նոր թագաւորութեան տարածւելուն ու հաստատւելուն։

Այս ցեղերին իր իշխանութեան տակ միացնելով՝ Կիւրոսն ամենից առաջ Լիւդիայի դէմ դարձաւ։ Այս երկրի թագաւորներին յաջողւել էր միացնել Փոքր-Ասիայի ցրւած ժողովրդներին։ Նրանք իրանց հպատակեցրին նոյն իսկ Եգէական ծովի ափերին հիմնւած յունական գաղութները։ Լիւդիական թագաւոր Կրէսոսի պալատը Սարդայում դարձաւ հարստութեան և շքեղութեան կենտրոն. Նրա ժամանակ կենդանի յարաբերութիւն սկսւեց ոչ միայն Ասորիքի, առաջաւոր Ասիայի և Եգիպտոսի ժողովրդների, այլ և եւրոպական յոյների հետ։ Բայց արագ բարձրանալն անբարեյաջող կերպով ազդեց լիւդիացիների վրայ. Նրանք ընկան քնքշութեան և փափկութեան մէջ և չըկարողացան դիմանալ աւելի վարժ և քարացած պարսիկների ընդհարումին։ Կիւրոսը չըվախեցաւ նրանց վրայ արշաւել ձմեռ ժամանակ և գրաւեց Սարդան։ Նրա զօրավարները շարունակեցին նրա գործը և նւաճեցին ամբողջ Փոքր-Ասիան՝ մինչև ծովը։ Բացի դրանից նւաճւեցին և Քաղդէան ու Ասորիքը։

Դարեհ-Վըշտասպեան 529 թ.

Մահւան օրերում (529 թ.) Կիւրոսին պատկանում էին Քաղդէան, Ասորեստանը, Փոքր-Ասիան և Իրանը, իսկ նրա որդի Կամբիւսը նւաճեց Եգիպտոսը։ Անժառանգ Կամբիւսի մահից յետոյ ներքին կռիւներ սկսւեցին, բայց Աքեմենեաններից մէկը՝ Դարեհ Վըշտասպեանը՝ խեղդեց այդ ներքին կռիւները և վերջացրեց պարսկական ահագին թագաւորութեան կազմակերպութիւնը, որը նրա ժամանակ ամփոփում էր արեւելքում Թուրքեստանը և հիւսիս-արևմտեան Հնդկաստանը, իսկ արևմուտքում տարածւում էր Թրակիայի վրայ։ Դարեհի թագաւորութեան մեծ մասն անցկացաւ իր լայնածաւալ տիրապետութեան երբեմն մի, երբեմն

*միւս մասում պայթած ապստամբութիւնները զսպելու համար ձեռնարկուած արշաւանքներում: Դարեհն, Ասորեստանի թագաւորների նման, չէր բաւականանում տիրուածներին բոլորովին կողոպտելով և գաղթեցնելով. Նա փորձեց կազմակերպել իր թագաւորութիւնը կանոնաւոր և միևնոյն ժամանակ իր հպատակների համար ոչ նեղիչ կերպով:* Այդ նպատակով նա բաժանեց իր երկիրը 23 նահանգների: *Նրանցից ամեն մէկի մէջ նշանակեց մի-մի նահանգապետ—Սատրապ,— որ պէտք է հոգ տանէր պարսիկների շահերի համար: Նուաճուած ժողովրդներն իրանց ներքին գործերում շարունակում էին օգտուել տեղական սովորութիւններով և սեփական կառավարութիւններ ունէին. իսկ սատրապն առնում էր նրանցից հարկեր, նրանցից զօրք էր հաւաքում թագաւորին օգնելու համար, վերահսկում էր, որ դաւադրութիւններ չծագեն: Սատրապները նշանակւում էին թագաւորից և մնում էին իրանց իշխանութեան մէջ այնքան ժամանակ, որքան թագաւորն էր բարեհաճում: Նրանց վրայ հսկելու համար՝ Դարեհն ուղարկում էր նահանգները հաւատարմատարներ, որոնց կոչում էին «թագաւորի աչքեր և ականջներ»: Ընդհանրապէս՝ որքան էլ սատրապներն իրանց նահանգներում զօրաւոր լինէին, նրանք ամբողջովին կախուած էին իրանց հրամայողից Սուզայում, և բաւական էր այնտեղից մի հասարակ հրաման, որ զրկէր սատրապին իշխանութիւնից, երբեմն էլ նոյն իսկ կեանքից: Այսպիսով՝* պարսից պետութեան ամբողջ կարգը հիմնուած էր «մեծ արքայի» բացարձակ տիրապետութեան վրայ:

---

## ՓԻՒՆԻԿԻԱ

Ե՛ւ ասորեստանցիները, և՛ բաբելացիները, և՛ պարսիկները միշտապէս ձգտում են արևելքից արևմուտք, իսկ բոլոր արևմտեան երկրներից առաւելապէս նրանց գրաւում է միջերկրականի փիւնիկեան ափը։ Բանը հողի պտղաբերութեան մէջ չէ. Փիւնիկիայի ափը մի նեղ շերտ աւազոտ և ժայռոտ հող էր։ Բայց Փիւնիկիայի սեմիտական ազգաբնակութիւնը կարողացաւ օգտուել մի քանի բարեյաջող հանգամանքներից. ափերի վրան ու մօտերը գտնուած ժայռերը կազմում են լաւ պատւար նաւերի համար քամու եւ ալէկոծութեան դէմ. նրանց վրայ կարելի էր հեշտութեամբ ամրանալ և ցամաքից եղած յարձակումների դէմ. աչքի առաջ բացւում էր ընդարձակ ծովը, որով կարելի էր մուտ գործել և՛ Եւրոպայի, և՛ Աֆրիկայի մէջ. Նրա անմիջապէս ետևում՝ Ասորիքում (Սիրիա)՝ իրար էին հանդիպում երկու մեծ կուլտուրական երկրների՝—Եգիպտոսի եւ Ասորո-Բաբելոնի ճանապարհները: Եգիպտական առևտուրը դիմում էր դէպի հիւսիս, և նրա գլխաւոր պահեստատեղիները գտնւում էին սիրիական Դամասկոսում և փիւնիկեան քաղաքներում։ Այնտեղ էին դիմում նոյնպէս բաբելական և ասորական ապրանքներն—առաջ Եփրատով դէպի վեր, իսկ յետոյ՝ Օրոնթօյով դէպի վար։ Այդ դիրքը չափազանց ձեռնտու էր ամբողջ Սիրիայի (Ասորիք) համար, բայց առաւելապէս օգտւում էին դրանով փիւնիկեան նաւահանգստները—Սիդոնը և Տիւրոսը։

Փիւնիկեան գաղթականութիւնները

Չբաւականանալով իրանց ձեռքի տակ եղածովը, փիւնիկեան ծովագնացները մտան Միջերկրական ծովը և հիմնեցին իրանց գաղութները բոլոր ափերի վրայ։ Նրանց ձեռք բերած առաջին տեղն էր Կիպրոս կղզին.

նրանք այնտեղից հանում էին պղինձ, և հէնց կղզու անունն էլ դարձաւ այդ մետաղի հասարակ անունը շատ արևմտեան—եւրոպական լեզուներում (cyprium, cuprum, cuivre, Kupfer)։ Գրաւելով Կիթերա կղզին, նրանք ազդեցութիւն ձեռք բերին հարաւային Յունաստանի վրայ։ Այստեղ նրանք հաւաքում էին մի տեսակ խեցիներ, որոնցից պատրաստում էին կարմիր ներկ։ Թասոս կղզուց, Արխիպելագոսի հիւսիսում, նրանք հանում էին ոսկի։ Մինչև անգամ միջին Յունաստանում շատ քաղաքներ կրում էին փիւնիկեցիների ազդեցութեան հետքերը (Կորնթոս, Արգոս, Թէբէ)։

Փիւնիկեցիներն Իտալիային համարեա ձեռք չըտուին—նրանք իրանց բնակութիւններով գրաւեցին միայն Սիկիլիան և Սարդինիան։ Դրա փոխարէն նրանց գաղթականութիւնն ուղղւեց աւելի ուժեղ չափերով դէպի Իսպանիա և հիւսիսային Աֆրիկա։ Գադերը (Գադիքս)՝ Ջիբրալտարի նեղուցի մօտ և Կարթագէնը (Նոր քաղաք)՝ այժմեան Թունիսում, նրանց գլխաւոր յենակէտերն էին։ Իսպանիայում նրանք գտան արծաթի հանք և սկսեցին այնտեղից այնքան արծաթ արտահանել, որ այդ մետաղի գինը, որ առաջ ոսկուց աւելի թանգ էր, խիստ կերպով ընկաւ։ Վերջապէս փիւնիկեցիները կանգ չառան նոյն իսկ Ատլանտեան Ովկիանոսի առաջ. նրանք գաղութներ հիմնեցին Աֆրիկայի արևմտեան ափերի վրայ և առևտուր սկսեցին Բրիտանական կղզիների հետ, որտեղից ձեռք էին բերում կլայէկ։ Բացի նրանից որ Փիւնիկիա էին հոսում ասիական կարաւանային առևտրի արդիւնքներն, այնտեղ ստացւում էին Արաբիայից անուշահոտ իւղեր, քաղցրեղէններ և ոսկի, հիւսիսային Իրանից՝ թանգագին քարեր, Հայաստանից՝ ձիաներ և երկանիւ կառքեր, Սիրիայից՝ հաց և

ձիթապտղի իւղ. շռայլութեան առարկաններն ստացւում էին Եգիպտոսից և Բաբելաստանից և, վերջապէս, այն ժամանակի աշխարհի բոլոր ծայրերից ստացւում էին ստրուկներ։ Փոքրիկ, անշուք Փիւնիկիան դարձաւ այն ժամանակի աշխարհի առեւտրական կենտրոնը:

Փիւնիկեցիները միմիայն առևտրով չէին զբաղւում. նրանք սովորում և փոխ էին առնում իրանց պատահած զարգացած ժողովուրդներից և իրանք էլ սովորեցնում էին բարբարոսներին։ Եգիպտացիներից նրանք սովորեցին ապակի շինել, պատրաստել և ներկել կտորներ, մշակել քարը և մետաղները։ Նրանք ձեւափոխեցին եգիպտական գիրը, պարզ ձևի վերածեցին նրան և կազմեցին առանձին տառերով այբուբեն, իսկ այս փիւնիկեան այբուբենից դուրս եկան յունական, լատինական և բոլոր եւրոպական, նոյնպէս և հրէական, արաբական և ուրիշ արևելեան այբուբենները։ Այդպիսի գործունէութեան համար հարկաւոր էր մեծ ձեռներէցութեան ոգի, համարձակութիւն եւ ճկունութիւն, հանգամանքներից օգտուելու շնորհք: Փիւնիկեցիները լիովին կենտրոնացել էին կենսական գործունէութեան մէջ և շատ քիչ էին զբաղւում հանդերձեալ կեանքին վերաբերւող հարցերով, որոնք այնքան հետաքրքրում էին եգիպտացիներին. նրանք ասորեստանցիների նման զինուորական փառք էլ չէին որոնում։ Կուլտուրան.

Նրանց կրօնը շատ բանով նման էր քաղդէականին. գլխաւոր աստուածներն էին Բաալը և Աստարտէն, ինչպէս Բէլը և Իշտարը Բաբելոնում։ Փիւնիկեան աստուածներն ունէին բարկացոտ և դաժան բնաւորութիւն. նրանց սիրտը փափկացնելու համար՝ մարդկային զոհեր էին մատուցանում նրանց։

Ժողովրդի բաղդն արտափայլում էր այն աւան-

դութեան մէջ, որի համեմատ Բաալը՝ Մելկարտ հերոսի կերպարանքով՝ ման եկաւ ամբողջ երկիրը, ամեն տեղ քաջագործութիւններ անելով՝ հասաւ Ջիբրալտարի նեղուցին և դրեց այնտեղ երկու սիւն իբր նշան այն բանի, որ այդտեղ երկիրը վերջանում է։ Յետոյ յոյները Մելկարտը փոխեցին Հերկուլէսի և այդպիսով առաջացաւ «Հերկուլէսեան սիւներին հասնել» առածը, որ նշանակում է հնարաւորութեան ծայրին հասնել։

Փիւնիկեցիների հարստութիւնը և ոյժը բոլորովին հաստատուն չէին։ Նրանց երկիրը կազմուած էր մի շարք քաղաքներից, որոնց մէջ շատ քիչ կապ կար։ Գաղթավայրերում փիւնիկեցիները չէին աշխատում նուաճումներ անել և բնակիչներով լցնել այն նահանգները, ուր իրանք երևում էին, այլ որեւ է կղզու կամ ափի վրայ շինում էին իրանց պահեստատեղիներն ու գրասենեակները տեղացիների հետ յարաբերութեան մէջ մտնելու համար։ Բայց և այնպէս հազար տարուց աւելի նրանք իրանց ձեռքում պահեցին համաշխարհային առևտուրը։ Նրանց ուժեղ հարուած հասցրին ասորեստանցիները, որոնք VIII և VII դարերում մի քանի անգամ պաշարեցին Տիւրոսը։ Բայց Փիւնիկեցիների վերջնական անկումն առաջացաւ նրանից, որ այն բարբարոսները, որոնց հետ նրանք գործ ունէին, նրանցից շա՛տ բան սովորեցին և սկսեցին դուրս քշել եկւորներին։ Երբ Յունաստանում զարգացաւ կուլտուրան եւ ծովագնացութիւնը, յոյները փակեցին փիւնիկեցիների առաջ Միջերկրականի ճանապարհները։

# ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

# Յունաստան

---

## ԳԼՈՒԽ Ա.

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԱԿՆԱՐԿ

*Միջերկրական ծովը հիւսիս-արևելքից ներս է* Ներկէբբ·
*մտնում մայր ցամաքի մէջ և կազմում Եգէական և Մարմարա ծովերը, որոնցով միանում է Սև ծովի հետ։ Այս վերջինս բաւական հեռացնում է Ասիան Եւրոպայից. բայց Մարմարա ծովում աշխարհի երկու մասերը համարեա իրար շփւում են, իսկ Եգէյեան ծովում նրանց միաւորում են Արշիպելագոսի կղզիները։* Այս կղզիները, Բալկանեան թերակղզին արեւմուտքում եւ Փոքր-Ասիայի ափերն արեւելքում՝ պատմութեան մէջ կազմում են մի ամբողջութիւն. *այդ բոլոր նահանգները բռնւած էին յոյն ցեղի ժողովրդներով և ապրում էին իրար հետ մշտական յարաբերութեան մէջ։*

*Փոքր-Ասիայի մէջ բարձրանում է մի բարձր և միակտուր սարահարթ, որ յիշեցնում է Իրանը. դէպի արևմուտք նա ցածրանում է և բաց է թողնում մի քանի բաւական մեծ գետեր։* Ափերը կտրտւած են խորշերով եւ շատ յարմար են ծովագնացութեան հա-

մար: *Նրանց առաջին ընկած են մի շարք կղզիներ, որոնցից ամենակարեւորներն են Լեսբոսը, Քիոսը, Սամոսը եւ Ռոդոսը։ Կրետէն կարծես փակում է Եգէյեան ծովը հարաւից, իսկ եւրոպական ափի երկարութիւնով դասաւորուած են Կիթերան, Եւբէան, Թասոսը եւ ուրիշները։*

*Պատմութեան մէջ գլխաւոր նշանակութիւն ունեցաւ բուն Յունաստանը կամ՝ այսպէս կոչուած՝— Հելլադան, Բալկանեան թերակղզու հարաւային մասը։ Նրա սահմանն է հիւսիսից՝ Բալկանեան շղթան, որ խիստ դժուարացնում է Դունայի մօտակայ երկրների հետ հաղորդակցութիւնը։* Այսպիսով կարծես Յունաստանը դարձել եւ սեղմել են ծովին։ *Նա կտրտուած է բազմաթիւ թերակղզիներով եւ կղզիներով, հրուանդաններով, խորշերով եւ,* որքան աւելի դէպի հարաւ է գալիս, այնքան աւելի բազմազան են ափերը: Ուրեմն զարմանալի չէ, որ նրա բնակիչները դարձան լաւ ծովագնացներ: *Արեւմտեան ափերը, ծանծաղուտների եւ ստորջրեայ քարերի պատճառով՝ աւելի անյարմար են եւ արեւելեան ափերն ունեն նրանցից անպայման առաւելութիւններ։ Այստեղ լեռներն այնքան էլ շատ չեն մօտենում ափերին, գետերը կազմում են մշակութեան համար յարմար հովիտներ եւ, որ գլխաւորն է, ափերը կտրտուած են բազմաթիւ խորշերով եւ դարձած են դէպի Եգէյեան ծովի կղզիներն ու հանդիպակաց Փոքր-Ասիան։* Արեւելեան կիսումն էին գտնւում հելլենական բոլոր գլխաւոր պետութիւնները եւ այդ մասումն էին տեղի ունենում երկրի պատմութեան գլխաւոր դէպքերը:

*Յունաստանը բաժանւում է երեք մասի. հիւսիսային՝—բալկաններից մինչեւ Թերմոպիլեան կիրճը, միջին՝ մինչեւ Կորնթոսի պարանոցը (Իսթմ) եւ հարաւային կամ Պելոպոնէս։*

Հիւսիսային Յունաստանը *լեռնաշղթաներով բաժանւում է չորս մասի. հիւսիսային կիսում գտնւում են վայրենի Իլլիրիան և Մակեդոնիան՝ բնակւած բարբարոսներով,** *հարաւում Պինդոս շղթան և իր ճիւղերն իրարից բաժանում են Եպիրոսն ու Թեսալիան: Թեսալիան միանում է Միջին-Յունաստանի հետ Թերմոպիլեան կիրճով:*

Միջին-Յունաստանը *գտնւած է Պառնասի բարձունքի շուրջը: Դէպի արևմուտք տեղաւորւում են դաժան և սակաւաբնակ լեռնական նահանգները (Ակառնանիա, Էտոլիա, Լոկրիդա): Արևելքում ընկած են Ֆոկիդան, Բէօվտիան և Ատտիկան:*

*Միջին Յունաստանից դէպի Պելոպոնէս անցքը կազմում է Իսթմը (Պարանոցը): Պելոպոնէսի մէջ տեղում ընկած է լեռնային Արկադիա գաւառը, որի շուրջը գտնւած են միւս նահանգները. Էլիդան՝ դէպի հիւսիս-արևմուտք, Աքէան՝ դէպի հիւսիս, Արգոլիդան՝ դէպի հիւսիս-արևելք, Լակոնիան և Մեսսենիան- հարաւում:*

Այսպէս ուրեմն՝ Յունաստանը դժուար անցանելի լեռնաշղթաներով եւ ափերի կտրտուածքներով բաժանուած էր բազմաթիւ ինքնուրոյն նահանգների: *Դրանցից ամեն մէկը կազմակերպուեց իր ուզածի պէս և դարձաւ մի առանձին պետութիւն:*

*Հելլադայի հողը բաւական աղքատ է և զգացւում է ռռոգման պակասութիւն, որովհետև տեղ չկայ մեծ գետերի համար:* Ազգաբնակութեան աճելու հետ միասին պէտք էր, ինչպէս Փիւնիկիայում, դիմել առեւտրին եւ որոնել բնակութեան նոր վայրեր:

*Յունաստանի և Փոքր-Ասիայի ափերի առաջին ցեղերը.*

---

* *Անզարգացած ազգեր: Սկզբում յոյներն այդպէս էին անւանում բոլոր յունարէն չխօսող ցեղերին:*

բնակիչներին անուանում էին պելազգներ: Մոտաւորապէս 1100 թւին տեղի ունեցաւ ժողովրդների տեղափոխութիւն՝ հիւսիսային ցեղերի տւած հարւածի պատճառով։ Դորիական ցեղը, որ գտեղւած էր Ոլիմպոսի մոտերում, շարժւեց դէպի Պելոպոնէս։ Ըստ աւանդութեան՝ նրանց գլուխ էին կանգնած երեք Հերակլեաններ—Հերակլէս հերոսի սերնդից։ Այդ ժամանակից Յունաստանի և փոքր-ասիական ափերի բնակիչներն սկսեցին կոչւել հէլլէններ: Նրանք բաժանւում էին երեք ցեղի—դորէացիք; աքէացիք եւ յոնիացիք: Դորէացիները տիրում էին Արգոլիսին, Մեսսենային, Լակոնիային և պարանոցին (Իսթմ)։ Աքէացիները (Էօլիացիներ) բռնել էին գլխաւորապէս Պելոպոնէսի հիւսիս-արևմտեան ափը—Աքէան, Բէովտիան և Թեսալիան։ Յոնիացիների գլխաւոր բնակավայրերն էին Ատտիկէն և Եւբէան։

1100 թ.

Գաղթավայրերը.

Շարժումը չբաւականացաւ Բալկանեան թերակղզով, այլ անցաւ ծովի այն կողմը. XI-ից մինչև VI դարը յունական նահանգները մշտապէս ահագին թւով բնակիչներ են դուրս ուղարկում բաղդ որոնելու օտար երկրներում և այդպիսով Միջերկրականի բոլոր ափերում ստեղծւում է գաղթականութիւնների մի ամբողջ աշխարհ։ Սկզբում շարժումն ուղղւում է դէպի արեւելք՝ Արշիպելագոսի կղզիների վրայ և Փոքր-Ասիա. յետոյ ուղղւում է գլխաւորապէս դէպի հիւսիս՝ դէպի Սև ծովի և Հելլեսպոնտոսի ափերը. վերջապէս՝ գաղթականները դիմում են դէպի արեւմուտք—Իտալիա և Սիկիլիա։ Դորիական բնակութիւնները հիմնեցին Արշիպելագոսի հարաւային կղզիների վրայ (Կրետէ, Ռոդոս) և հիւսիսային Աֆրիկայում (Կիրենա)։ Փոքրասիական ափերի վրայ դորիացիների գլխաւոր կայանն էր Հալիկարնասը։ Թրակիան նոյնպէս գրաւեց նրանց. Կորնթոսը հիմնեց այնտեղ Պոտիդէան, իսկ Մեգարոսը՝

Բիւզանդիան, որին վիճակուած էր ապագայում դառնալ
աշխարհի մայրաքաղաքներից մէկը։ Դորիացիների
գաղթականութիւնն աւելինշանաւոր էր արևմուտքում։
Կորնթոսն ուղարկեց գաղթականներ Կորկիրա (Կորֆու)
կղզին։ 723 թւին կորնթացիները Սիկիլիայում հիմնե- 723 թ.
ցին Սիրակուզան։ Իտալիայում Լակոնացի գաղթա-
կանները հիմնեցին Տարենտոնը։

Ամենից ձեռներէց և յաջող կերպով գործում էին Յոնիացիները։ Նրանք բռնեցին Արշիպելագոսի ամենանշանաւոր կղզիները (Սամոս, Քիոս, Դելոս) և փոքրասիական ափերի միջին մասը (Միլէտ, Եփեսոս, Ֆոկէա)։ Այդտեղից գաղթականութիւնը գնաց դէպի հիւսիս։ Միլէտն իշխանութիւն ձեռք բերեց Սև ծովի վրայ (Օլբէան՝ Բուղի բերանում, Պանտիկապէան՝ այժմեան Կերչը, Սինոպը՝ հարաւային ափի վրայ), Թրակիայում մեծ նշանակութիւն ունէր Եւբէա կղզու Խալկիդա քաղաքի գաղթականութիւնը։ Այդտեղից հիմնուել էին 32 քաղաքներ Խալկիդիական թերակղզու վրայ։ Դէպի արևմուտք նոյնպէս գլխաւորաբար Խալկիդացիները գնացին. նրանց գաղթականութիւններն էին՝—Նակսոսը Սիկիլիայում, Րէգիոնն՝ Իտալիայում և այլն։ Ֆոկէացիներին յաջողուեց հիմնել Մասսիլեան (այժմեան Մարսէյլը) հարաւային Գալլիայում։ Սակաւ էր պատահում, որ գաղութների քաղաքները երկար ժամանակ մնային մետրոպոլի (գաղթականութիւն ուղարկող քաղաքի) իշխանութեան տակ։ Սովորաբար նրանք ձեռք էին բերում ինքնուրոյնութիւն և իրանց ծնունդ տուող տեղերի հետ պահպանում էին միայն կրօնական կապ—օրինակ՝ ուղարկում էին պատգամաւորներ նրանց տօներին մասնակցելու։ Բայց և այնպէս գաղութների հիմնարկութիւնն ունէր ահագին նշանակութիւն մետրոպոլների համար, որովհետև նա հնար էր տալիս ազգաբնակութեան անբաւական եւ

անհանգիստ մասերին տեղաւորուելու եւ ստեղծում էր մի շարք յենակէտեր հեռու երկրների հետ ունեցած առեւտրական յարաբերութիւնների համար:

---

### ԳԼՈՒԽ Բ.

## ՅՈՅՆԵՐԻ ԱՄԵՆԱՀԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Կրօնը. *Յոյները հաւատում էին, որ Յունաստանի ամենաբարձր սարի՝ Ոլիմպոսի վրայ հաւաքւում են երկնային աստուածները. Նրանց գլուխ կանգնած է տիեզերքի թագաւորը, աստուածների և մարդիկների հայրը, ամպրոպային Զևսը։ Երբ նա կիտում է յոնքերը, հաւաքւում են մութ-մութ ամպերը. Նրա ձեռքը զինուած է կայծակով։* Սակայն նա ամենազօր չէ: *Նա́ չէ ստեղծել աշխարհն ու մարդուն։ Աշխարհի ստեղծագործութիւնը յոյների համար մութն էր մնում։ Նրանց կարծիքով՝ մարդիկ սկզբում սոսկ անասուններ էին։ Նրանց աստուածային կրակի կայծ, հոգի ներշնչեց Պրոմեթէոս աստուածը, որին Զևսն, իբր պատիժ այդպիսի կամայական վարմունքի, մեխեց Կովկասի գագաթներից մէկի վրայ։ Զևսն առաջինը չէ. նա միայն կառավարում է աշխարհը. Նրանից առաջ իշխում էին նրա պապը՝—Ուրանոսը (երկինքը) և հայրը՝ Քրոնոսը (ժամանակը), որոնք երկուսն էլ յաղթուած և յետ են քշուած նոր աստուածներից։ Վերջապէս նոյն իսկ իր թագաւորելուց յետոյ էլ Զևսն ամենազօր տէր չեղաւ. մարդկանց և նոյն իսկ աստուածների վիճակը կախուած է անդէմ և անգութ բաղդից (մօյրա)։ Զևսին շրջապատում են զանազան աստուածներ*—բնութեան ուժերի եւ մարդկային յատկութիւնների ներկայացուցիչները. *Նրա կինը—Հերան՝ ընտանեկան կեանքի պաշտ-*

պանը, եղբայրը — Պոսէյդոնը՝ գեղեցկութեան և սիրոյ աստուածուհին։

Զևսի պատուիրակը, Նրա հրամանների գործադրողը հանդիսանում է Հերմէսը, առևտրի ճարպիկ, արագաշարժ, ճկուն պաշտպանը։ Զևսի սիրելի զաւակները են Աթենասը և Ապոլլոնը։ Առաջին աստուածուհին մարմնացնում է իմաստութիւնը, այնպէս՝ ինչպէս այդ հասկանում էին յոյները։ Նա ոչ միայն տալիս է գիտութիւն, այլ և սովորեցնում է օգտուել նրանից կեանքի մէջ, զգուշացնում է կուրօրէն տարուելուց (գրաւուելուց), տալիս է մարդկանց հայեացքի պարզութիւն, ինքնազսպում, ոգու զգաստութիւն, վճռականութիւն։ Ապոլլոնը (Հելիոս, Ֆեբ՝ փայլուն) արևի աստուածն է, որ կատարում է երկնքի վրայով իր ճանապարհը՝ կառքի վրայ նստած։ Նրա ճառագայթները մահաբեր նետեր են, որոնցով նա յաղթահարում է աստուածների և մարդկանց թշնամի հրէշներին, նոյնպէս և իրան անախորժ մարդկանց։ Նա է ուղարկում հիւանդութիւններն ու մահը և միևնոյն ժամանակ բուժելու ձիրք ունի։ Միայն մարմնային հիւանդութիւնների համար չէ, որ դիմում են նրան. նրանից է նոյնպէս խնդրում սրբացում այն մարդը, որ իրան պղծել է ոճիրով։ Վերջապէս Ապոլլոնն է ուղարկում մարդկանց ներշնչում (ոգևորութիւն). Ապոլլոնից են առաջանում նախագուշակութիւնները, և նա հանդիսանում է առաջնորդ մուսաների, որոնց նուիրուած են գեղարւեստները։ Գինու աստուածն է Դիոնիսը (Բաքոսը)։ Նրա տօները, որ կատարւում էին աշնանը՝ այգեկութից յետոյ՝ առանձնապէս սիրուած էին հասարակ ժողովրդից։ Նրանց ժամանակ թագաւորում էր սանձարձակ ուրախութիւն. գինին ստիպում էր մոռանալ ամենօրեայ կեանքի դառնութիւններն ու հոգսերը։ Բայց երբեմն բանը հասնում էր մինչև կատաղի գժութեան։

Ըստ աւանդութեան՝ Դիոնիսի հետեւողները (մէնադները) կտոր-կտոր արին նոյն իսկ աստծուն, բայց Զեւսը հաւաքեց կտորները և յարութիւն տուեց նրա մարմնին։ Աւելի պարկեշտ և արժանավայել ձևով տօնւում էր՝ հացի հնձից յետոյ՝ Դէմէտրայի (Դէ-մէտէր—մայր հող), երկրի պտղաբերութեան աստուածուհու տօնը։ Ատտիկայում նրա տօնի հետ միացրել էին խորհրդաւոր սրբագործող ծէսեր և Եղիւսեան խորհըրդաւորութեան թափորները։

Որովհետև երկրի կեանքը չէ կատարւում միմիայն նրա մակերևոյթի վրայ՝ այլ և նրա խորքում, որտեղից ամեն կենդանի էակ ստանում է սնունդ և ուր դառնում են մեռածները, դրա համար էլ յոյներն ասում էին, որ Դէմէտրայի աղջիկը՝ Պերսեֆոնան, յափշտակւել է ստորերկրեայ աշխարհի թագաւորից—Հադէսից՝ և ամեն ամառ վերադառնում է այնտեղից իր մօր հետ տեսութեան համար։

Հանդերձեալ կեանքը.

Ստորերկրեայ աշխարհում են ապրում մեռածների հոգիները։ Այս վերջինների մասին յոյների գաղափարները երկար ժամանակ շատ աղօտ և հակասական էին. մի կողմից նրանք ողբում էին բոլոր հանգուցեալներին, ինչպէս խաւարի թագաւորութիւնը մտածների, ուր ոչ ոք խնդութիւն չունի. միւս կողմից նրանք աշխատում էին զանազանութիւն դնել արդարների, որոնք անհեղ դատաստանից յետոյ Եղիւսեան դաշտերում երջանկութիւնով պիտի վարձատրուեն, և մեղաւորների մէջ, որոնք պէտք է նետուեն Տարտարոսը և ենթարկուեն զանազան տանջանքների։ Իսկ դրա հետ միասին ամեն մի ընտանիք և ամեն մի տոհմ հաւատում էր, որ մեռած նախնիքները կենդանիների հետ հաղորդակցութեան մէջ են մնում։ Վերջինները պարտաւոր էին յիշատակել հանգուցեալներին, նրանց գերեզմանները օծել և զոհեր մատուցանել և դրա փոխարէն յոյս ունէին մեռածների օրհնութեան և պաշտպանութեան վրայ։ Նախնիքների այս պաշտամունքը

սերտ կերպով կապված էր ընտանեկան օջախի պաշտամունքի հետ, որի մեջ արտահայտվում էր ընտանիքի միությունը՝ փոխանցվելով սերունդների ընթացքում։ Մարդիկ ծնվում և մեռնում են, իսկ ընտանիքը շարունակում է ապրել այնպես, ինչպես օջախում միշտ վառվում է կրակը, թեև վառելիքը փոխվում է։ Եվ երբ մեկը հեռանում գնում էր տնից մի նոր տեղ, նա պետք է իր հետ տաներ հայրենի օջախից վառվող ածուխ, որպեսզի իր նոր տեղում կրակ վառեր նախկին աղբյուրից։

**Ընդհանուր պաշտամունքները**

Հույների կրոնական հայացքները խիստ կերպով փոխվում էին տեղի համաձայն. ամեն մի քաղաք ուներ իր սիրած աստվածները, որոնց համարում էր իր պաշտպանները։ Դրա համար էլ Զևսի, Ապոլլոնի և ուրիշ աստվածների մասին եղած միթերը պատմվում էին շատ տարբեր կերպով և միայն կամաց-կամաց կազմվեցին մի քանի հայացքներ՝ ընդհանուր բոլոր հույների համար։ Այսպիսի միացման շատ նպաստեց այն հանգամանքը, որ մի քանի տեղական պաշտամունքներ դրացիների մոտ հռչակ ստացան: Օրինակ՝ Միջին Հունաստանում բարձրացավ Ապոլլոնի սրբավայրը Դելֆիում (Ֆոկիդայում)։ Նրա գլխավոր ձգող ույժն էր, այսպես կոչված՝ Պյութիա քրմուհու գուշակությունները։ Նա նստում էր իր եռոտանու վրա՝ ժայռի պատռվածքի մոտ, որից դուրս էին գալիս շշմեցնող գազեր. նա ուշագնաց էր լինում և ներկա եղող քրմերը գրում և մեկնաբանում էին նրա անկապ խոսքերը։ Որովհետև Հունաստանի բոլոր ծայրերից միշտ դիմում էին այդ տաճարը խորհուրդ հարցնելու, դրա համար էլ քուրմերը հնարաւորութիւն ունէին շատ լաւ իմանալու բոլոր յունական գործերը, եւ սովորաբար նրանց ցուցմունքներն աչքի էին ընկնում իրանց խելացիութիւնով: Բացի դրանից՝ տաճարի մոտ կազմվեց շըր-

*ջակայ ժողովրդների դաշնակցութիւնն ինչպէս սրբավայրի պաշտպանութեան, այնպէս էլ դաշնակցութեան անդամների մէջ եղած վիճելի հարցերը վճռելու համար։ Այս «Անֆիկտիոնիայի» մէջ մտնում էին դորիացիք, յոնիացիք, բէովտիացիք, թեսալացիք և մի քանի մանր ժողովրդներ Միջին Յունաստանից (ընդամենը 12 անդամներ)։*

**Խաղերը.** *Յոների կեանքի մէջ կար մի միաւորող պայման էլ. այդ խաղերն էին, որոնք սարքւում էին մեծ տօների ժամանակ և գրաւում էին շրջակայ նահանգներից հանդիսականներ և մասնակցողներ։ Ընդհանուր ազգային նշանակութիւն ստացան Ոլիմպիայի, Դելֆիի (Պիւթիական), Նեմէայի (Արգօլիդայում) և Կորնթոսի պարանոցի (Իսթմական) մրցումները։ Ամենահռչակաւորներն էին 4 տարին մի անգամ Էլիդայում, Ոլիմպական Զևսի տաճարի մօտ կատարւող խաղերը։ Այստեղ գալիս էին Յունաստանի ամեն ծայրերից մրցելու մարմնական վարժութիւնների մէջ — վազելու, ձիավարելու և կառավարելու, գօտեմարտելու, շեփոր (դիսկ) և տեգ նետելու մէջ։* Յաղթողների վարձատրութիւնը լինում էր հասարակ մի պսակ, բայց ստանալ այդպիսի մի պսակ՝ համարւում էր ամենամեծ պատիւ թէ մրցութեան մասնակցողի եւ թէ նրա
776 հայրենի քաղաքի համար: *776 թւին Ք. Ա. առաջին անգամ սկսեցին ցուցակագրել վազելում յաղթողների անունները. այդ ցուցակները եղան համայունական տարեգրութեան հիմքը**։ Այդ հաւաքումների նշանակութիւնը մեծ էր, որովհետև նրանք էին յոյների մէջ ազգային հաղորդակցութիւն պահպանելու գլխաւոր միջոցը։*

---

** Օրինակ՝ 700 թիւը Ք. առաջ համարւում է 20-դ ոլիմպիադի Ա տարին (Ոլ. 20, 1).*

Կրոնական միթերի հետ շփվում են հեռու ան- Հերոսները
ցյալի հերոսների մասին եղած աւանդութիւնները—այն հերոսների՝ որոնք աստուածների մասնակցութիւնով զանազան քաջագործութիւններ են արել։ Այդ աւանդութիւնները չէ կարելի ընդունել իբր իրապէս պատահած դէպքերի իսկական պատկեր։ Եթէ մի քանիսի մէջ պատմական ճշմարտութեան որև է կորիզ կայ, այն էլ չափազանց դժւար է ջոկել ժողովրդական երևակայութեան զարդարանքների միջից։ Առասպելական հերոսներից ամենաերևելին էր Հերակլէսը (Հերկուլէս)—կէսաստուածը, Զևսի և մի մահկանացու կնոջ զաւակը։ Նա ստիպւած է լինում ծառայելու իր երէց եղբօրը և նրա հրամանով կատարում է մի շարք մեծամեծ քաջագործութիւններ. սպանում է մի հսկայական առիւծ և մի բազմագլխանի օձ—հիդրա, յաղթում է հսկայ Անթէային, երկրի որդուն, աշխարհի ծայրում ձեռք է բերում ոսկէ խնձորները, վերջապէս ուղևորւում է դժոխք և այնտեղից բերում է դժոխքի պահապան շանը՝—երեք գլխանի Ցերբերին։ Վերջապէս Հերկուլէսը Թունաւորում է իր սպանած Կենտաւրոսի (կէս մարդ-կէս ձի) Թունաւոր զգեստով և յուսահատութիւնից պատրաստ է լինում ինքն իրան խարոյկի վրայ այրելու, բայց Զևսը տանում է նրան երկինք և նա անմահ է դառնում։ Ատտիկայում կազմւեց մի միթ Թէզէոսի մասին, որն ազատեց այդ երկիրը Կրետէի Թագաւոր Մինոսի դրած զարհուրելի հարկից։ Ժամանակ առ ժամանակ պէտք է Կրետէ ուղարկէին մի նաւ լիքն ընտրւած երիտասարդներով և աղջիկներով, որոնց լափում էր հրէշաւոր Եզը—Մինոտաւրոսը։ Մի անգամ միւսների հետ միասին ուտւելու ուղարկւած Թէզէոսն սպանում է Մինոտաւրոսին և ազատում է իր հայրենիքը կրետական իշխանութիւնից։ Արգոնաւորդաց արշաւանքի Թեսալական աւանդութիւնը պատճառ եղաւ միա-

ցնելու մի ձեռնարկության մեջ զանազան տեղական հերոսների։ Ցասոնը Իոլկոսից — Թեսալիայում, ուղևորվում է Կողքիս (Կոլխիդա — այժմյան Վրաստանը), այնտեղ գտնված ոչխարի ոսկե մորթը կամ ոսկե գեղմը ձեռք բերելու։ Իր դժվարին գործը գլուխ հանելու համար՝ նա շինում է Արգո նավը և հավաքում իր համար 50 զինակիցներ, որոնց թվում են լինում և՝ Հերակլեսը, և Թեզեոսը, և ուրիշ շատ նշանավոր հերոսներ։ Կողքիսում Ցասոնն այնտեղի թագավորի կախարդ աղջկա — Մեդեայի օգնությունով ձեռք է բերում գեղմը։ Այս կախարդական արկածները կազմում էին բանաստեղծական հեքիաթների նյութ, որոնք երգում էին քնարի ձայնակցությամբ գեղասացակ երգիչներից (աէդներ-աշուղներ)։ Յոյների համար չէր կարող լինել ավելի մեծ զվարճություն, քան երեկոներն այս առասպելները լսելը՝ որև է ազնվականի կամ իշխանի սեղանի շուրջը նստած։

Հոմերոսի դյուցազներգությունները

Մեզ հասել են այդպիսի երկու ընդարձակ պատմվածքներ, որ վերագրվում են կույր երգիչ Հոմերոսին — Աքիլլեսի բարկության և Ոդիսևսի վերադարձի մասին դյուցազներգություն (պոեմա) (Իլիական և Ոդիսական)։ Թե մեկը, թե միւսը կապված են մի պատմական անցքի հետ, որը դարձավ ավանդություն, առասպել. այդ անցքն է յոյների արշավանքը փոքրասիական Տրոյա քաղաքի դեմ։ Համաձայն ավանդության՝ այդ արշավանքը ձեռնարկվել էր յոյների միացած ուժերով՝ վրեժ առնելու Տրոյայի թագավոր Պրիամոսից, որի որդիներից մեկը — Պարիսը՝ փախցրել էր Սպարտայի Մենելաւոս թագավորի կնոջը՝ Հեղինեին։ Յոյների գլուխն էր անցել Արգոսի թագավոր Ագամեմնոնը, արշավանքին մասնակցում էին յոյների ամենաքաջ առաջնորդները — Դիոմեդեոսն Արգոլիդայից։ Ոդիսևսի Իթաքիա կղզուց, Այաքսը Սալամինա կղզուց, ծերունի

Նեստորը Պիլոսից և այլն։ Բայց արշաւանքի բախտը կախւած էր գլխաւորապէս Թեսալական թագաւոր Աքիլլէսից՝ Պելէայի և Թետիսի աստուածուհու որդուց, որովհետև միայն նա ունէր այնքան ոյժ, որ կարող էր յաղթել Տրոյայի գլխաւոր պաշտպանին—Հեկտորին։ Ագամեմնոնը վիրաւորում է Աքիլլէսին, խլելով նրա ստրկուհուն։ Աքիլլէսը հրաժարւում է այլ ևս պատերազմին մասնակցելուց և քաշւում է իր վրանը։ Հետևեալ ճակատամարտերում, չը նայելով մի շարք փայլուն քաջագործութիւններին՝ աքէացիներն անյաջողութիւն են կրում։ Տրոյացիները քշում են նրանց դէպի բանակը և քիչ է մնում, որ այրեն նրանց նաւերը։ Թըշւառութիւնը կանգնեցնելու համար անհրաժեշտ է լինում Աքիլլէսի միջամտութիւնը, բայց նա յամառ կերպով մեկուսանում է և միայն ամենավտանգաւոր րոպէին ուղարկում է իր փոխարէն իր ընկեր Պատրոկլէսին։ Հեկտորն սպանում է Պատրոկլէսին, և այն ժամանակ Աքիլլէսն, ընկերոջ վրէժն առնելու համար, մոռանում է Ագամեմնոնի հասցրած վիրաւորանքը։ Նա գիտէ, որ Հեկտորից յետոյ ինքն էլ է մեռնելու, բայց այդ նրան յետ չէ կանգնեցնում. Նա հասնում է Հեկտորին և սպանում։ Հեկտորի մահովն ու թաղումովը վերջանում է Իլիականը։ Արշաւանքի միւս դէպքերը—Աքիլլէսի մահը Պարիսի նետից, Ոդիսևսի խորամանկութիւնը, որը շինում է մի հսկայական փայտէ ձի տրոյացիներին իբր նուէր և լցնում նրա փորը կռւողներով, Տրոյայի առումն ու աւերումը—այս ամենը կազմում էին այնպիսի հէքիաթների նիւթ, որոնք մեզ չեն հասել։ Ճիշտ այդպէս էլ յոյն հերոսների տուն վերադարձի մասին եղած բազմաթիւ պատմւածքներից պահպանւել է, իր գրական գեղեցկութեան շնորհով, միայն Ոդիսականը։ Հերոսը կատարում է իր հրաշալի արկածներն Աթենասի պաշտպանութեան տակ։ Նը-

րա մեալը կախարդուհի Ցերցէայի մոտ, որը Ոդիսևսի ընկերներին խոզ էր դարձրել, նրա գերութիւնը մարդակեր Պոլիֆեմ ցիկլոպի (միակնանի հսկայ) մոտ, որից հերոսն ազատւում է նրանով, որ հանում է նրա միակ աչքը, վտանգաւոր նաւագնացութիւնը Սցիլլա և Քարիբդա հրէշների մօտով, նրա անցնելը Սիրէնների մօտով, որոնք գրաւում էին ճամբորդներին կախարդական երգեցողութիւնով՝ նրանց տանջելու համար, նաւաբեկութիւնը, որ կործանում է և՛ նաւը, և՛ նրա ուղեկիցներին — այս բոլորը մի քիչ ժամանակով յետաձգում են Ոդիսևսին։ Նա ամեն վտանգներից անվնաս դուրս է պրծնում և վերջապէս վերադառնում է իր կնոջ մօտ, որը միշտ սպասում էր նրան, չը նայելով Իթաքիա կղզու ազնուական երիտասարդութեան մշտական խնամախօսութեան։ Պատմուածքը կամ պօէման վերջանում է այդ յանդուգն համհարդների (փեսացուների) ջարդովը։

Յունական էպոսի, այսինքն բանաստեղծական պատմուածքի արտադրութիւնները ծառայում են իբր մեծ ուշարձաններ յոյների լուսաւոր, կենդանի ոգու և նրանց արտասովոր ձիրքերի համար։ Բովանդակութեան հետաքրքրելիութիւնը, բնաւորութիւնների և հոգեկան շարժումների նկարագրութեան մէջ ցոյց տուած գիտողութեան շնորհքը, նկարագրութիւնների պատկերաւորութիւնը՝ դնում են այդ պօէմաները մեծ արտադրութիւնների շարքում, որոնցով բաւականութիւն է ստանում, զւարճանում է ոչ թէ մի դարաշրջան, ոչ թէ մի ժողովուրդ, այլ ամբողջ մարդկութիւն։ Պէտք է աւելացնել, որ այդ պօէմաները, բացի դրանից՝ ունեն պատմական նշանակութիւն, որովհետև տալիս են հին յոյների կեանքից բազմաթիւ պատկերներ։

Արևելեան ազդեցութիւնը.

Ժողովուրդն իր բանաստեղծութեան մէջ յաճախ վերադառնում է երկու գլխաւոր իրերի — արեւելքի ժո-

ղովրդների հետ վարած կռիւն եւ յոյների արած ծովային արշաւանքներին: *Իսկապէս՝ մենք գիտենք, որ յոյները, կղզիների և Փոքր Ասիայի վրայ տարածուելու ժամանակ՝ պէտք է հանդիպէին իրանց ցեղակից բընիկների և փիւնիկեցի վաճառականների հետ։ Թէ առաջինները և թէ երկրորդներն արդէն սնուած էին ասորական քաղդէական արևելեան կուլտուրայի ոգով։ Յոյներն սկզբներում սովորում էին նրանցից, իսկ յետոյ ինքնուրոյն դարձան։ Յունաստանի վրայ մնացել են արևելքի ազդեցութեան շա՜տ շատ հետքեր։ Յոյները հաստատեցին իրանց այբուբէնը փիւնիկեանի օգնութիւնով։ Արևելքից վերցրին նոյնպէս իրանց ծանրութեան և բովանդակութեան չափերը և փող կտրելը. այս վերջինիս իբր հիմք ծառայում էր բաբելական տաղանդի հաշիւը. մի տաղանդն ունէր 60 մինա։ Հին Տրոյայի, Արգոլիդայի Միքէն և Բէովտիայի Օրքոմէնա քաղաքների տեղերում եղած պեղումների ժամանակ գտնուել են բազմաթիւ մետաղէ և կաւէ իրեր, որոնք պատրաստուած են արևելեան ձևով, նոյնպէս և մի քանի զարդեր՝ եգիպտական և բաբելական ծագումից, որ բերել էին փիւնիկեցի վաճառականները։* Փոխառութիւնը երեւում է նոյնպէս եւ կրօնի մէջ: *Աֆրոդիտէի պաշտամունքը Կիպրոսում, Կիթերայում, Կորնթոսում և այլ տեղերում կատարւում էր այնպիսի ծէսերով, որոնք փոխ էին առնուած ասորական Աստարտէի պաշտամունքներից։ Հերկուլէսի մասին եղած առասպելը կազմուեց փիւնիկեցի Մելկարտի առասպելի ազդեցութեան տակ։ Թէզէոսի պատմութեան մէջ արդէն երևում է օտարներին դիմադրելը. հերոսը յաղթում է կրետական եզին, որ էր Բաալի մարմնացումը։ Ընդհանրապէս յոյն ժողովուրդը կարողացաւ յաջող կերպով վճռել իր ունենալիք յարաբերութիւնների հարցը դէպի օտարերկրեայ բար-*

ձըր կուլտուրան։ Նա չըմեկուսացաւ, չըքաշուեց նրանից և նոյն իսկ մի առժամանակ մի քիչ ենթարկուեց նրան։ Բայց վերջ ի վերջոյ նա կարողացաւ դարձնել նրան իր սեփականութիւնը եւ սկսեց ինքնուրոյն կերպով զարգանալ, մշակելով մի աւելի ինքնուրոյն կուլտուրա։

Տոհմական կազմը

Ներկայումս բոլոր զարգացած ժողովրդներն ապրում են պետութիւնների մէջ։ Ամեն մի պետութեան մէջ իշխանութիւնը տրուած է մի կամ մի քանի անձերի, որոնց պէտք է ենթարկուեն բոլոր մնացածները. դիմադրութեան դէպքում՝ իշխանութիւնը կամ կառավարութիւնն ունի իր տրամադրութեան տակ զինուած ոյժ: Այդպէս է տրւում՝ առաջին՝ նրա համար, որ մարդիկ չըկարողանան իրար ճնշել, այլ իրար հետ վէճ ունեցած ժամանակ դիմեն պետական դատարանին. երկրորդ՝ նրա համար, որ բոլորը միասին կարողանան պաշտպանել ուրիշ ժողովրդների յարձակումներից։ Թէև այս կազմը շատ պարզ է և մենք այնպէս ենք սովորել նրան, որ մեզ համար դժուար է երևակայել մի այլ կազմ, բայց իսկապէս նա մշակուեց մեծ դժուարութիւնով և աստիճանաբար։ Արևելեան պետութիւններն այնքան վաղ են ծնունդ առել, որ մենք համարեա ոչինչ չըգիտենք նրանց կազմուելու մասին։ Դրա փոխարէն մենք Յունաստանում տեսնում ենք մի այլ տեսակի կազմութիւն, որը կոչւում է տոհմական: Առանձին մարդկանց պաշտպանութիւնը բռնութիւնից երկար ժամանակ պատկանում էր ազգականներին և ոչ քաղաքների վարչութիւններին, որոնց մէջ էր բաժանուած յոյն ժողովուրդը։ Հեռու եւ մօտիկ ազգականները կազմում էին մի համայնք, որ կոչւում էր տոհմ: Նա կառավարւում էր ամենահասակաւորի կամ աւագի ձեռքով, որի իշխանութիւնը նմանում էր հօր ընտանիքի վրայ ունեցած իշխանու-

*թեանը։ Աւագի ձեռքումն էր դատարանը, որ դատում էր ազգակիցների մէջ ծագած վէճերն ու վիրաւորանքները։ Նրա տրամադրութեան տակն էր տոհմի զինուած ոյժը, որը կազմւում էր զէնք կրելու ընդունակ բոլոր տղամարդկանցից. նա էր կառավարում տոհմի համայնական, անբաժան սեփականութիւնը— հողը և հօտերը. վերջապէս նա էր հոգում աստուածներին, և հերոսներին և տոհմի յարգած նախնիքներին արւելիք պաշտամունքների և զոհերի մասին։ Բոլոր դէպքերում էլ նա ինքնիշխան կերպով չէր գործում, այլ* առանձին ընտանիքների գլխաւորների կամ նոյն իսկ տոհմի բոլոր հասակաւոր տղամարդկանց ժողովի համաձայնութիւնով: Ազգականութիւնը հաշւում էր միայն տղամարդկանց գծով: *Եթէ որ և է մէկը կին էր առնում մի օտար տոհմից, կինը հրաժարւում էր իր նախկին ազգականների ու նրանց աստուածների հետ յարաբերութիւն ունենալուց, ընդունում էր ամուսնու կրօնը և ենթարկւում էր նրա տոհմական իշխանութեանը։ Երբ ընդհարում էր պատահում տոհմի անդամի և մի կողմնակի անձի մէջ, տոհմն օգնում էր իր անդամին, պաշտպանում նրան, իսկ հարկաւոր դէպքում իր անդամին հասցրած վիրաւորանքի կամ մահւան համար վրէժ էր առնում կամ դրանց համար համապատասխան տուգանք էր պահանջում։*

*Քաղաքային համայնք*

*Եթէ ամէն մի տոհմ հնար ունենար բոլորովին առանձին ապրելու և առանց միւսների կառավարւելու, այն ժամանակ նա կը լինէր մի փոքրիկ պետութիւն։ Բայց տոհմերը չըկարողացան բոլորովին առանձին ապրել. նրանք չափազանց փոքր ու թոյլ էին և անխուսափելի կերպով պէտք է ենթարկւէին օտարների բռնութեան և ստրկացման.* դրա համար ամեն տեղ առանձին տոհմերը միանում են իրար հետ քաղաքների մէջ, կազմում քաղաքային համայնքներ: *Այդպիսի միու-*

թեան առաջին գործն է ընդհանուր գործի կազմութիւնը։ Բայց միութիւնը կազմելուն պէս չէր կարող այլևս սառնասրտութիւնով թոյլատրել իր մէջ մտած տոհմերի վէճերն ու կռիւները։ Տոհմական դասարաններին իբր լրացուցիչ՝ հանդէս են գալիս ֆաղաֆային դասարանները, որոնք աշխատում են հարթեցնել միևնոյն քաղաքի զանազան տոհմերի անդամների մէջ ծագած վէճերը։ Այսպիսով տոհմական իշխանութիւնների վրայ կազմւում է կարծես մի երկրորդ յարկ—դաշնակցական քաղաքային կառավարութիւնը։ Թէև խիստ շատ էին Յունաստանում ինքնուրոյն քաղաքները, բայց և այնպէս այդ ձևի կառավարութիւնը նրանց մէջ սկզբում ամեն տեղ միատեսակ կազմւեց։ Մի քանի տոհմերի աւագները (հերոնտներ) կազմում էին խորհուրդ, որը խորհում և վճռում էր բոլոր ընդհանուր գործերը և դատ էր անում այն դէպքում, երբ զանազան տոհմերի պատկանող անդամների մէջ վէճ էր ծագում։ Պատերազմում առաջնորդ լինելու համար առաջ էր անցնում գլխաւոր աւագը—թագաւորը (վասիլէոս)։ Նա մի տեսակ հայր էր համարւում ամբողջ քաղաքի և դրա համար էլ զոհ էր մատուցանում և կատարում էր քաղաքի համայնքի աստուածների պաշտամունքը։ Ամենակարևոր դէպքերում հրաւիրում էին զէնք կրելու ընդունակ բոլոր տղամարդիկների ժողովը։ Նրան հաղորդում էին ընդունւած վճիռները և երբեմն ուշադրութեան էին առնում նրա տրամադրութիւնը. բայց այդ ժողովում ոչ մի կանոնաւոր խորհրդակցութիւն չէր լինում։ Շա՛տ կանուխ առաջացան անհաւասարութիւններ այդ հասարակութիւնների անդամների մէջ։ Պատերազմում առնւած գերիները դառնում էին ստրուկներ—մի իր կամ մի գործիք տէրերի ձեռքին։ Այն ընտանիքները, որ միանում էին առաջուց արդէն կազ-

*մուած տոհմերի միութեան հետ, ընկնում էին անձեռնտու վիճակի մէջ. Նրանց անդամները քաղաքային վարչութեան մէջ մասնակցութիւն չէին ունենում։ Մինչև անգամ գլխաւոր տոհմերում առաջ էին անցնում այնպիսի ընտանիքներ, որոնք առաւելապէս վարում էին պաշտամունքները և վարչական իշխանութիւնը։ Կրտսեր եղբայրների սերունդն աւելի և աւելի յետ էր մնում երէց եղբայրների սերնդից։* Այսպիսով արդէն հին ժամանակներում յունական քաղաքների ազգաբնակութիւնը բաժանուեց ազնուականների (արիստոկրատիա) եւ ժողովրդի (դէմոս), որը պետութեան մէջ քիչ նշանակութիւն ունէր:

---

## ԳԼՈՒԽ Գ.

## ՍՊԱՐՏԱ.

*Դորիացիների զինուորական կազմութիւնը.*

*Դորիացիների հիմնած պետութիւններից ամենազօրեղը և նշանաւորն էր Սպարտան կամ Լակեդեմոնիան։ Որովհետև դորիացիները պէտք է ուժով ճանապարհ բաց անէին իրանց համար արդէն տեղաւորուած ժողովրդների մէջ, դրա համար նրանք իւրացրին զինուորական սովորութիւններ և կարգեր։* Մինչեւ անգամ խաղաղ ժամանակներում նրանց քաղաքներից մի քանիսը բանակներ էին: *Տղամարդ ազգաբնակութիւնը, համաձայն վրանների թւի, խմբերի էր բաժանւում, որոնց անդամները միասին էին ճաշում (սիսսիտիա), կազմում էին երդուեալ ընկերութիւններ (էնօմօթիա) և շարքերի մէջ կանգնում էին առանձին խմբակներով։ Սպարտայում պատերազմական վիճակն առանձին խստութիւնով էր գործադրւում, որովհետև Լակոնիան գրաւելուց յետոյ՝ սպարտական դորիա-*

ցիները չըխառնւեցին յաղթւած աքէական ազգաբնակութեան հետ, այլ նրան հպատակութեան մէջ էին պահում ուժով։ Նրա մի մասն ստրկացւած էր, միայն չէր տրւել առանձին-առանձին սպարտացիների տիրապետութեան, այլ ամբողջ պետութեան։ Այդ «հելոտները» մշակում էին հողը և տուրքերը վճարում էին հացով, որով պահպանւում էին սպարտացի ընտանիքները։ Եթէ սպարտական կառավարութիւնը կասկածում էր, թէ հելոտների մէջ անբաւականութիւն կամ դաւադրութիւն կայ, ոչնչացնում էր նրանց անխնայ կերպով։ Ամեն տարի սպարտացի երիտասարդների խմբեր (կրիպտիա) էին ուղարկւում, որոնք պէտք է հսկէին հելոտների տրամադրութիւնների վրայ և սպանէին կասկածաւորներին։ Նւաճւած աքէացիների մնացած մասը կազմեց պերիէկների դասակարգը։ Նըրանք ապրում էին քաղաքային համայնքներով մի քիչ ինքնավար ձևով, բայց կարևոր գործերում կախւած էին Սպարտայից. արշաւանքների ժամանակ նրանք օգնական զօրք էին տալիս և հարկ էին վճարում։

*Սպարտայի կառավարութիւնը.*

Պերիէկները և մանաւանդ հելոտները չէին սիրում իրանց ստրկացնողներին և պատրաստ էին թօթափելու նրանց լուծը, եթէ չըվախենային սպարտացիների պատերազմասիրութիւնից և զօրեղ կազմակերպութիւնից։ Վերջիններիս բոլոր ջանքը գործ էր դըրւում այդ յատկութիւնները զարգացնելու վրայ. դրանց համար նրանք զոհում էին մնացած բոլոր բաները— երկրի հարստութիւնը, գիտութիւնների եւ արւեստների զարգացումը, առանձին անհատների ազատութիւնն ապրելու այնպէս՝ ինչպէս ամեն մէկն ուզում է եւ կարող է: Աւանդութեան համեմատ՝ Լիկուրգոս անունով մի մարդ, թագաւորներից մէկի խնամակալը, դելֆեան պատգամախօսի օժանդակութիւնով, սահմանեց Սպարտայում խիստ օրէնքներ, որոնք մօտ 7 դար գո-

*յութիւն ունեցան, մինչև հռոմայեցիների գրաւումը։* Քաղաքի գլուխ կանգնած էին երկու թագաւորներ *(թագաւորական իշխանութեան երկուութիւնը առաջացաւ նրանից, որ սկզբնական երկու բաժան-բաժան համայնքները միացան և այդ ժամանակ պահպանւեցին երկու թագաւորական տոհմերն էլ)։ Համաձայն հների սովորութեան՝ թագաւորները քաղաքի ներկայացուցիչներն էին աստուածների առաջ և առաջնորդներ պատերազմի ժամանակ. Խացած դէպքերում նրանք միայն երկու երեք անդամներ էին* Գերուսիայի —երեսուն աւագների խորհրդի: *Սկզբներում այդ խորհուրդն Սպարտայի ամենանշանաւոր պետական հիմնարկութիւնն էր։* ժողովրդական ժողովը *թէև հաւաքւում էր, բայց մեծ նշանակութիւն չունէր, ինչպէս որ էր բոլոր յունական պետութիւնների մէջ ամենահին շրջանում։ Մօտաւորապէս* VIII *դարի կէսերին երևան եկաւ* էֆորոսների ընտրողական սիստեմը: VIII դ. կէսը
*Նրանք 5 հոգի էին, և ժողովը ընտրում էր նրանց մի տարով։ Այսպիսով նրանք հանդիսանում էին քաղաքի ընտրւած ներկայացուցիչները՝ հակառակ թագաւորների և աւագների (վերջիններս նոյնպէս ընտրւում էին, բայց մինչև մահ)։ Էֆորոսները կամաց-կամաց իրանց ձեռքն առան պետութեան բոլոր գլխաւոր գործերը։ Նրանք էին քննութիւն անում ոճրագործութիւնների մասին, վճռում էին քաղաքացիների մէջ եղած վէճերը, հսկում էին բոլոր պաշտօնատար և մասնաւոր անհատների բարոյականութեան վրայ, նոյն իսկ իրաւունք ունէին դադարեցնելու թագաւորների իշխանութիւնը և նրանց դատի ենթարկելու։ Այսպիսով թէև Սպարտան չըվերացրեց թագաւորական իշխանութիւնը, բայց իրապէս նա դարձաւ հասարակապետութիւն։* Նա մի օլիգարխիական հասարակապետութիւն էր, այսինքն մի խմբակի տիրապետութիւն, *ո-*

*բովանդակ ժողովրդական ժողովը ինքնուրոյն նշանակութիւն չունէր և իշխանութիւնը միշտ մնում էր մի փոքրիկ խումբ մարդկանց ձեռքին։ Բայց քաղաքացիական յարաբերութիւններում* բոլոր սպարտացիները հաւասար էին, *չկար ոչ մի դասակարգային բաժանում։*

*Կեանքի եղանակը*

*Իրանց կեանքի եղանակով սպարտացիները խիստ կերպով տարբերւում էին միւս պետութիւններից։ Սպարտայում ոչ ոք իրան չէր պատկանում, բոլորը պատկանում էին պետութեանը, որը տանում էր քաղաքացիներին դէպի մի նպատակ—զինւորական կատարելութիւն։ Հազիւ մարդ ծնւում էր, տանում էին նրան աւագներին ցոյց տալու, և միայն առողջ երեխաներին էին թոյլ տալիս ապրելու. թոյլերին անողորմ կերպով դէն էին շպրտում։ Տղային 7 տարեկան հասակից խլում էին ընտանիքից և մինչև 18 տարեկանը դաստիարակում էին հասակակիցների հետ միասին պետական գիմնազիաներում։ Մանուկ սպարտացիները սովորում էին մարմնամարզութիւն, պատերազմական կարգ և կռւի վարժութիւններ, սրնգի վրայ ածել և երգ։ Սպարտացիները յատկապէս աշխատում էին զարգացնել կամքի ոյժը և տոկունութիւնը։ Տղաները բոլոր եղանակներին թեթև թիկնոցով, բոկոտն և բաց գլխով էին ման գալիս. նրանց պահում էին միշտ կէս-կուշտ։ Ցաւից բղաւելը կամ լաց լինելը խայտառակութիւն էր համարւում, և երիտասարդ սպարտացիներն առանց տնքալու տանում էին ռազմական վարժութիւնների ժամանակ ստացած հարւածներն ու վէրքերը և այն գանակոծութիւնները, որոնց ենթարկում էին նրանց Արտեմիսի սեղանի առաջ։ Կանայք, տղամարդկանց նման, մարմնամարզութիւն էին սովորում։* Հասակաւորները մինչեւ գերեզման մնում էին պետութեան խիստ հսկողութեան տակ։

*Ընդհանուր ճաշերը խանգարում էին ուտելիքի շռայլութեան զարգացումը. որպէս զի տնական զարգարանքներից հեռացնեն գեղասիրութիւնը՝ շինութեան ժամանակ արգելված էր բանեցնել որ և է գործիք, բացի սղոցից և կացնից: Կահ-կարասիքի բարելաւումն արգելվեց նրանով, որ սպարտական կառավարութիւնն անհնար դարձրեց քիչ ու շատ նշանաւոր առևտուրը. նա ոսկուց և արծաթից փող չէր կտրում, այլ պահպանում էր երկաթէ և բրօնզէ հին, կոպիտ դրամը: Օտարներին, առանց ծայրայեղ կարևորութեան՝ չէին թողնում Լակոնիա, իսկ սպարտացիներին չէին թողնում արտասահման: Հողատիրութիւնը նոյնպէս սահմանափակված էր. սպարտացիները խիստ կերպով պահպանում էին հին օրէնքը, որի համաձայն հողը պատկանում էր ոչ թէ մասնաւոր մարդու, այլ ամբողջ ընտանիքին և խիստ կերպով որոշված էր հողի այն քանակութիւնը կամ հողաբաժինը, որը չէ կարելի բաժան-բաժան անել, ծախել կամ կտակել: Այսպիսի կազմութեան շնորհով սպարտացիներն՝ իսկապէս՝ շատ բաներում դարձան իրար սաստիկ նման և շատ բաներում էլ միւս յոյներից տարբերվեցին:* Նրանց մէջ հազուագիւտ էին տաղանդաւոր մարդիկ. դրա փոխարէն բոլորն էլ աչքի էին ընկնում իրանց առողջ խելքով եւ երկաթէ կամքով: *Ամբողջ Յունաստանում յայտնի էր նրանց արտայայտութեան ճիշտ և կարճ ձեւ (Լակոնական ոճ): Աւելորդ է ասել, որ նրանք դառնում էին օրինակելի կռւողներ: Բացի մարմնական (աթլետական) նախապատրաստութիւնից և կարգապահութիւնից, նշանաւոր էր և նրանց* մտերիմ ընկերակցութիւնը. *Էնոմոտիայի անդամների համար, որոնք ամբողջ կեանքերը միասին էին անցկացնում, պատերազմի դաշտում անհնար էր իրարից բաժանել և փախչել:*

*Տիրապետութիւններ VIII դարի վերջը և VII-ի կէսը*

*Բայց հեշտութիւնով գլուխ չեկան սպարտացիների պատերազմական յաջողութիւնները։ Երկու անգամ նրանք յամառ պատերազմ մղեցին մեսսենացիների հետ—VIII դարի վերջում և VII-ի կէսերում։ Բանը մեսսենական պետութեան հասարակ հպատակեցման մէջ չէր, այլ նրանց հողերը խլելում և նրանց անձնականապէս կախման մէջ դնելում։ Զունենալով առևտուր և ծովագնացութիւն՝ սպարտացիները համարեա գաղթականութիւններ չունէին* [1]*։ Նրանք պէտք է նւաճումներ որոնէին հէնց նրա համար, որ պէտք էր որև է կերպով տեղաւորել ազգաբնակութեան աւելորդ մասը։ Մեսսենայի գրաւումն ստիպեց նրա բնակիչների մեծ մասին փախչել, իսկ մնացածներին՝ հելոտ դառնալ։ Փոքր առ փոքր Սպարտայի հետ միացան, իբր դաշնակիցներ՝ Պելոպոնէսի պետութիւնների մեծ մասը մի քանի պետութիւններ էլ պելոպոնեսից դուրս։ Առաջին հայեացքից՝ դաշնակցութեան պայմանները չափազանց ձեռնտու էին. ընդհանուր գործերը վճռւում էին մի խորհրդում, որի մէջ Սպարտան ունէր միայն մի ձայն և նախագահութիւնը. նրան էր տրւած նոյնպէս և պատերազմական ձեռնարկութիւնների առաջնորդութիւնը։ Իրապէս՝ Սպարտայի ազդեցութիւնն անհամեմատ աւելի մեծ էր,* ամեն մի դաշնակից քաղաքում նա պաշտպանում էր մի յայտնի կուսակցութիւն—«Սպարտայի բարեկամների կուսակցութիւնը» (*սովորաբար աւագներից՝ օլիգարխները*) *և նրա օգնութիւնով առաջ էր քշում իր ծրագիրները։ Եթէ «Սպարտայի բարեկամները» պարտութիւն էին կրում իրանց քաղաքում, այն ժամանակ Սպարտան մէջ էր խառնւում զէնքով և երբեմն դաշնակից հա-*

---

[1] *Սպարտացիների միակ գաղթականութիւնը Տարէնտոնն էր, որ հիմնել էին* VIII *դարի վերջում։*

մայնքն էր ուղարկում մի «հարմոստ» (գործ շինող), որը սարքում էր գործերն իր բարեհայեցողութեան համեմատ։ Պելոպոնէսեան դաշնակցութեան շնորհով VI դարում Սպարտան դարձաւ յունական պետութիւններից ամենազօրեղը։

---

### ԳԼՈՒԽ Դ.

## Ա Թ Է Ն Ք.

Յոնիական առաջնակարգ պետութիւնն Աթէնքն էր։ Ատտիկայի բնակիչները պարծենում էին նրանով, որ նրանց նահանգը երբէք չը նուաճւեց—դորիական գաղթականութիւնը կանգ առաւ նրա սահմանի մօտ։ Ատտիկայի մի քանի փոքրիկ համայնքները կազմեցին մի ընդհանուր կառավարութիւն. նրանց բնակիչների մի մասը հաւաքւեց մի քաղաքում՝ Աթէնքում։ Փոքր համայնքների այդ տեսակ միացումը և մի մեծ համայնք կազմելու գործողութիւնը շատ անգամ է պատահում յունական պատմութեան մէջ և կոչւում է սինօյկիզմ (միասին բնակւել)։ Կառավարութիւնը գտնւում էր թագաւորի և արէոպագոսի ձեռքում, որ կազմւած էր գլխաւոր տոհմերի աւագներից։ Ինչպէս Սպարտայում թագաւորները դարձան գերուսիի երէց անդամներն, այդպէս էլ Աթէնքում չոչնչացաւ թագաւորական իշխանութիւնը, այլ աստիճանաբար ենթարկւեց արէոպագոսին։ Եւպատրիդների տիրապետութիւնը

Սկզբում պատերազմի ժամանակ թագաւորին իբր օգնական սկսեցին ընտրել մի զօրավար—պոլէմարքոս. յետոյ դատական գործերի մի մասը տւին արէոպագոսի նշանակած արքոնտին. յետոյ էլ՝ կրկին դատավարութեան համար, միացրին 6 թեսմոթէտներ։ Վերջացաւ նրանով, որ թագաւորին մնաց միայն համայնքի կրօնական ներկայացուցչութիւնը և մարդասպանութեան գործերի քննութիւնը. ժառանգական առաջնորդից նա դարձաւ ընտրովի պաշտօնատար մի անձ։

Մի թագաւորի փոխարէն նշանակւեցին 9 ար-

քոնտներ կամ առաջնորդներ։ Առաջինը (Էպոնիմոս), որի անունով նշանակում էին ատտիքեան տարին, գլխաւոր դատաւոր էր և, ի միջի այլոց, վճռում էր ժառանգութեան վերաբերւող գործերը։ Արքոնտներն ընտրւում էին մի տարով. ծառայութիւնը լրացրած արքոնտին թոյլ էր տրւում արէոպագոս մտնել։ Անզգալի կերպով Ատտիկան միապետութիւնից դարձաւ հասարակապետութիւն, բայց ժողովրդի մեծամասնութեան—դէմոսի համար այդ փոփոխութիւնից օգուտ չեղաւ։ Իշխանութիւնն ամբողջապէս անցաւ ազնուական հարուստ ընտանիքների կամ եւպատրիդների (ազնուազարմ) ձեռքը, որոնք իրանց անդամներով գրաւել էին արէոպագոսը եւ արքոնտութիւնը: Իբր լրացումն այս ամենի, մանր սեփականատէրերն ընկան եւպատրիդներից փոխ վերցրած պարտքերի տակ: Եւպատրիդներն իրանց սեփականացրին ամենալաւ հողերը և տիրապետում էին որոշ քանակութեամբ դրամական պահեստների կամ դրամագլուխների։ Հնձի վատութեան, կենդանիների ջարդի, սնանկացնող պատերազմի դէպքերում խեղճերն ստիպւած էին նրանցից փոխ վերցնել ահագին տոկոսներով. պարտքերը վճարւում էին դժւարութիւնով, մանր հողատէրերի մեծ մասն ստիպւած էր մշակել իր հողաբաժինը պարտատէրերի օգտին, պահելով հնձի միայն մի վեցերորդ մասն իր սեփական ընտանիքը կերակրելու համար։ Այն պարտապաններին, որոնք հող չունէին, ճորտ էին դարձնում և նոյն իսկ ծախում էին իբր ստրուկ։

Աթէնքի դէմոսի անտանելի դրութիւնը մշտական ալէկոծութիւն էր առաջացնում պետութեան մէջ։ Դէմոսն աշխատում էր կառավարութեան մէջ մաս-
621 նակցութիւն ունենալ և պարտքերը թեթևացնել։ 621
թւին Եւպատրիդները վճռեցին մի քանի զիջումներ անել. նրանք յանձնեցին թէսմոթէթ Դրակոնին կազ-

մել գրաւոր օրէնքներ այն անորոշ սովորութիւնների փոխարէն, որոնցով մինչեւ այն ժամանակ առաջնորդւում էին եւպատրիդ արխոնտները: Դրակոնի գրածների մի մասը պահեց իր նշանակութիւնը և ապագայում, օրինակ՝ նրա օրէնքները մարդասպանութեան մասին։ Բայց Դրակոնը չըփոխեց պարտքային դաժան օրէնսդրութիւնը։ Դրա համար էլ ժողովուրդն անբաւական մնաց նրա գործունէութիւնից, և գրգռումը հասաւ այնպիսի չափերի, որ վերջապէս ստիպւած եղան փոխել հին կարգը։ Անհրաժեշտ բարենորոգութիւնը կատարւեցաւ 594 թւին Սոլոնի ձեռքով։ 594

Հասարակ ժողովուրդն այնքան էր խճճւել պարտքերի մէջ, որ Սոլոնն ստիպւած էր դիմել ծայրայեղ միջոցի. նա ոչնչացրեց գոյութիւն ունեցող բոլոր պարտքերը եւ արգելեց այնուհետեւ պարտապանների անձնական ճորտութիւնը: Նա փոփոխեց կառավարութեան կազմն էլ։ Արէոպագոսի հետ միասին նա հաստատեց 400 հոգուց կազմւած մի խորհուրդ, որը պէտք է հետևէր պաշտօնեաների գործողութիւններին և օգնէր նրանց իր ցուցմունքներով։ Խորհրդի անդամներին ընտրում էր ժողովուրդը. նրան էր յանձնւած նոյնպէս և արքոնտների թեկնածուների ընտրութիւնը։ Այն պաշտօնատար անձերը, որոնք վերջացնում էին իրանց ծառայութեան ժամանակը, հաշիւները ներկայացնում էին հասարակական ժողովին. նա էլ դատում և ընդունում էր ամենախոշոր վճիռները և օրէնքներ էր դնում։ Պաշտօնեաների վրայ եղած բողոքները քննելու համար ժողովրդի միջից ընտրւած մարդիկներից կազմւած մի երդւեալների դատարան (գելիէա) հիմնւեց։ Պետութեան առանձին քաղաքացիների մասնաւոր կեանքի ընդհանուր հսկողութիւնը մնաց արէոպագոսին, որն իր բարեհայեցողութեան համաձայն կարող էր պատժել ամեն մի մարդու վատ

Սոլոնի բարենորոգութիւնը.

*վարքի համար և իրավունք ունէր մինչև անգամ հասարակական ժողովի վճիռները փոխել, եթէ նրանք իրան թւում էին հակառակ պետութեան հիմնական օրէնքներին։*

*Բացի դրանից Սոլոնը հիմնեց, այսպէս կոչւած,* տիմոկրատիան. ամեն մարդու տրված էին պետության մեջ իր պարտականություններին համապատասխան իրավունքներ. ով շատ ծառայություն էր մատուցանում, նա շատ էլ ազդեցություն էր ձեռք բերում: *Իրաւունքների և պարտականութիւնների բաշխման համար բոլոր քաղաքացիները բաժանւած էին 4 դասակարգերի*[1]*։ Ամենացած*—չորրորդ *դասակարգի (թեթեր) մէջ էին հաշւում այն քաղաքացիները, որոնք իրանց հողերից 200 և աւելի պակաս* մեդիմն[2] *գարի էին ստանում տարեկան։ Նրանք զօրքի մէջ ծառայում էին թեթև կերպով զինւած, այսինքն պատերազմի էին դուրս գալիս վահանով, աղեղով և նետերով, կամ նաւերի վրայ թիավար էին լինում։ Նրանց մասնակցութիւնը կառավարութեան գործերում սահմանափակւում էր նրանով, որ նրանց թոյլ էին տալիս մասնակցելու հասարակական ժողովին և գելիային։* Երրորդ *դասակարգի անդամները (զէվգիտներ) ունէին 200—300 մեդիմն տարեկան եկամուտ. ծառայում էին ծանրազէն հետևակ զօրքի մէջ իբր* հոպլիտներ*—պատերազմի էին դուրս գալիս կրծքի ու սրունքների վահաններով, սաղաւարտով, ձեռքի վահանով և տէգով։ Նրանք կարող էին ընտրւել 400-ի խորհրդի անդամ։* Երկրորդ *դասակարգն (ասպետները) ստանում էր*

---

[1] *Դասակարգերը գոյութիւն ունէին և դրանից առաջ, բայց Սոլոնը բաժանման իբր հիմք դրեց կարողութեան ճիշտ գնահատութիւնը և դրա համեմատ էլ բաշխեց քաղաքացիների իրաւունքը։*

[2] *Մեդիմնը մի քիչ պակաս է կէս չետվերիկից։*

*300—500 մեդիմն եկամուտ և ծառայում էր հեծելազորի մէջ։ Նրանք պաշտօններ վարելու իրաւունք ունէին։* Առաջին *դասակարգի մարդիկ (պենտակոսիոմեդիմներ) ունէին 500 և աւելի մեդիմն եկամուտ։ Բացի պատերազմական ծախքերից՝ նրանք անում էին և ուրիշ զանազան ծախքեր հասարակական կարիքների համար, զինում էին՝ օրինակ՝ նաւեր, մասնակցում էին տօներ սարքելու ծախքերին և այլն։ Նրանք առանձին յարգանք էին վայելում պետութեան մէջ և մեծ մասով վարում էին գլխաւոր պաշտօնները։*

Պիսիստրատ.

*Սոլոնի բարենորոգութիւնը գցեց եւպատրիդների նշանակութիւնը, բայց չըբաւականացրեց ժողովրդին, որովհետև գլխաւոր ազդեցութիւնը կրկին տրուած էր հարուստներին։ Մէկ էլ որ՝ թէև պարտքերի մասին եղած օրէնքներն զգալի չափով մեղմացրել էին և պարտքերն էլ միաժամանակ ոչնչացրել,* բայց իրանց լիակատար ոյժը պահպանել էին այն պատճառները, որոնք ծնունդ էին տալիս պարտքերին—ստացուածքի անհաւասար բաժանումը եւ էժան վարկի բացակայութիւնը, *այսինքն՝ դժւար ժամանակը հնար չըկար չափաւոր տոկոսով փոխ առնել։ Դրա համար էլ այն շարժումը, որ արագացրեց Սոլոնի բարենորոգութիւնը, չըդադարեց նրանից յետոյ էլ։ Քաղաքի կուսակցութիւնների խռովութիւններից օգտւեց ամենանշանաւոր աթէնացիներից մէկը—Պիսիստրատը։ Սա մի ընդունակ և փառասէր մարդ էր, որի համար քիչ էր ուրիշ շատ քաղաքացիների հետ հաւասարապէս ունեցած իր նշանակութիւնը։ Նա ձգտում էր մենակ իշխելու և հասկացաւ, որ կարող է իշխանութեան հասնել, եթէ կարողանայ իր կողմը գրաւել ստորին դասակարգերը և հանել նրանց դժւար դրութիւնից. Նա հեռացաւ իր ազնուական ընկերներից և միացաւ դէմոսին։ Շուտով նա ձեռք բերեց ժողովրդի*

սէրը և, յարմար րոպէ գտնելով՝ տիրեց Ակրոպոլի-
սին[1]։ Երկու անգամ արտաքսեցին նրան Աթէնքից
և երկու անգամն էլ նա վերադարձաւ։ Երրորդ ան-
գամ յաջողւեց նրան ամուր կերպով հաստատել իր
իշխանութիւնը—բռնապետութիւն (տիրանիա) Աթէն-
540 քում (540 թւին)։

Պիսիստրատը բռնապետ չէր այդ բառի ներկայ մտքով՝ այսինքն մի դաժան ճնշող։ Ճշմարիտ է, նրա թշնամիներից շատերը փախան քաղաքից, մնացած ազնւականների ներկայացուցիչներից նա խլեց երեխաներին իբր պատանդ, բայց այսպիսով ապահովելով իր անվտանգութիւնը, նա չդիմեց սպանութիւնների և դաժանութիւնների և թողեց նոյն իսկ Սոլոնի կարգադրութիւններն իրանց ուժի մէջ։ Որովհետև գլխաւոր պաշտօնները տրւում էին նրա ազգականներին և կուսակիցներին, իսկ նրա հակառակորդներն աքսորւած կամ ուժաթափ էին արւած, դուրս էր գալիս, որ իրապէս կառավարում էր միայն Պիսիստրատը։ Նա իրան շրջապատեց Թրակիացի վարձկան թիկնապահներով, բայց և այնպէս նրա նշանակութիւնը հիմնւում էր նախ եւ առաջ ժողովրդի համակրութեան վրայ, որը հրաժարւեց կառավարութեան մէջ մասնակցելուց, որպէս զի բարելաւէ իր նիւթական դրութիւնը: Պիսիստրատի առաջին հոգսը եղաւ ժողովրդի դրութեան հիմնական բարելաւման հասնելը. Նրա համար նա բաց արեց էժան վարկ կարիք ունեցող հողագործների համար և Աթէնքում արած իր մի ամբողջ շարք շինութիւններով հազարաւոր աղքատների աշխատանք տւեց։ Նրա օրով Աթէնքն առաջին անգամ հանդէս եկաւ իբր նշանաւոր ծովային պետութիւն. Նա յարաբերութիւն սկսեց Եգէական ծովի կղզիների հետ և ջանում

[1] Աթէնքի բերդը։

*էր հաստատել Տրովադայում։ Վերջապէս Պիսիստրադը չէր մոռանում և հոգեկան շահերը. Նա դէպի Աթէնք գրաւեց իր ժամանակի մի քանի երևելի բանաստեղծներին և հոգ էր տանում, որ հաւաքւեն և ճըշտօրէն արձանագրւեն Հոմերոսի դիւցազներգութիւնները։ Մի խօսքով՝ նա ամեն կողմից հանդիսացաւ իբր մի խոշոր. բազմակողմանի և կայուն պետական գործիչ։ Նրա տիրապետութեան օրից սկսւում է Աթէնքի ծաղկումը։*

*Պիսիստրադի որդիները 527 թ.*

Բայց նրա մահից յետոյ (527-ին) Աթէնացիները ծանօթացան եւ բռնապետութեան հակառակ կողմի հետ: *Պեսիստրադի մեծ որդին՝ նոյնպէս գործունեայ և եռանդուն կառավարիչ էր, բայց նրա իշխանութիւնը, բազմաթիւ պատճառներով, ծանր եղաւ աթէնացիների համար. առաջին՝ նրանք ձանձրացան վճարել այն հարկը, որ դրել էր նրանց վրայ դեռ Պիսիստրադը իր թանգ նստող վարչութեան ծախքերը ծածկելու համար. երկրորդ՝ նոր աճած քաղաքացիների սերունդն այլ ևս չէր յիշում կուսակցութիւնների անհանգիստ կռիւները և հարուստների ճընշումները և անբաւական կերպով էր նայում պիսիստրադեանների վրայ, որոնք հասարակ քաղաքացուց դարձան քաղաքի տէրեր և հեռացնում էին միւս բոլորին քաղաքական գործերի մասնակցութիւնից։ Պիսիստրադեաններն իրանք էլ սկսեցին մոռանալ իրանց դրութեան խախուտութիւնը և հօր զգուշութեան փոխարէն՝ ցոյց էին տալիս հպարտութիւն, թոյլ էին տալիս իրանց բռնութիւն գործ դնել առանձին քաղաքացիների վրայ։ Հիպպիասի եղբայր Հիպարքոսի հասցրած վիրաւորանքը մի ազնուական աթէնացու քրոջը՝ դաւադրութիւն առաջացրեց. Հիպարքոսին սպանեցին, բայց Հիպպիասը զսպեց դաւադիրներին և դաժան կերպով վրէժ հանեց նրանցից։ Տանջանքներ ու սպանու-*

թիւններ սկսեցին։ Ժողովրդի դէպի բռնապետն ունեցած նախկին հպատակութեան տեղը բռնեցին երկիւղն ու ատելութիւնը։ Այդ տրամադրութիւնից օգտւեցին աթէնացի աքսորականները, որոնք հաւաքւեցին Ատտիկայի սահմանի վրայ և միայն յարմար առթի էին սպասում, որ հայրենիք վերադառնային և տապալէին ստրկացնողին։ Առանձին եռանդով գրգռում էր աթէնացիներին բռնապետի դէմ Ալկմէոնիդների ազնուական տոհմը։ Նրանց յաջողւեց իրանց կողմը գրաւել Դելֆիսի պատգամախօսին և նրա օգնութիւնով էլ սպարտացիներին։ Բայց և այնպէս Հիպպիասը դեռ երկար ժամանակ դիմադրում էր թշնամիներին։ Վերջապէս՝ ինքնասիրութիւնները վիրաւորւած՝ ըսպարտացիներն ուղարկեցին նրա դէմ Կլէոմէնէս Թագաւորին, որին յաջողւեց գերել բռնապետի որդիներին և դրանով ստիպել դրան յանձնել Աթէնքը։

Կլիսթենէսի բարենորոգութիւնները

Հիպպիասը փախաւ Պարսից Թագաւորի մօտ, և նրա թշնամիները հնար ունեցան վերակազմելու Աթէնքը համաձայն իրանց բարեհայեցութեան։ Սկզբում՝ սպարտական զօրքի ազդեցութեան տակ՝ գերակշռութիւն ստացան ազնուականները. Նրանք մտածեցին վերադառնալ ոչ միայն Պիսիստրատից առաջ եղած գործերի դրութեանը, այլ եւ Սոլոնից էլ առաջ տիրող կարգերին: Ի հարկէ Աթէնքի ժողովուրդը չէր կարող հաշտւել այդպիսի անմիտ ձգտումների հետ. ապստամբութիւն ծագեց Ալկմէոնեան Կլիսթենէսի առաջնորդութիւնով, դուրս արին օլիգարխներին և սպարտացիներին, և Կլիսթենէսը մտցրեց իր բարենորոգութիւնները
506 (506), որոնք դարձան Աթէնքի հետևեալ պետական կեանքի հիմքը։

Դրակոնի և Սոլոնի օրէնքները վերաբերում էին միայն քաղաքային համայնքին, այսինքն Աթէնքի հասարակութեան կարծես միայն երկրորդ՝ բարձր յար-

*կին։ Ներքին յարկում, տոհմերի մէջ, որոնցից կազմուած էր քաղաքը, շարունակում էին կառավարել եւպատրիդները։* Որպէսզի վերջնականապէս փշրէ ազնուականների ազդեցութիւնը, Կլիսթենէսը ժողովուրդը դասաւորեց նոր բաժանմունքներով եւ այդ բաժանմունքների մէջ խլեց եւպատրիդների իշխանութիւնը:

*Առաջ քաղաքացիները բաժանւում էին 4 Փիլաների, ամեն մի ֆիլան 3 Փրատրիայի, իսկ ամեն մի ֆրատրիան որոշ թւով տոհմերի։ Բոլոր երկրորդական գործերը, որ չէին համնում քաղաքային իշխանութիւններին, վճռւում էին եւպատրիդների ձեռքով, որոնք վարում էին բոլոր գործերը տոհմերի, ֆրատրիաների և ֆիլաների մէջ։ Կլիսթենէսը բոլորովին չոչնչացրեց այդ բաժանմունքն, այլ պահեց նրանց նշանակութիւնը կրօնական արարողութեան գործում և մի քանի ընտանեկան բնաւորութիւն ունեցող խնդիրներում, օրինակ՝ նորածինների ընդունելութիւնն ընտանեկան ցուցակի մէջ։ Քաղաքական տեսակէտից, այսինքն դատարանի, զինուորական կազմի, պաշտօնատար անձերի ընտրութեան համար և այլն՝ նա բաժանեց ժողովուրդը 10 նոր ֆիլաների և ամեն մի ֆիլան էլ կազմակերպեց տեղական շրջաններից —դէմերից։ Դէմերի մէջ տոհմական ազնուականութիւնը ոչինչ նշանակութիւն չունէր—հաւաքւում էին ժողովի ոչ թէ հեռու կամ մօտ ազգականներն, այլ պատահական դրացիները, որ պատկանում էին զանազան տոհմերի։ Կլիսթենէսի գործադրած երկրորդ միջոցն էր՝ հաշւել իբր քաղաքացի բաւական մեծ թւով մեթէք կոչւածներին, այսինքն Աթէնքում իբր օտարերկրացի ապրող մարդկանց։ Նրանք չէին պատկանում քաղաքային համայնքին, զրկւած էին նրա գործերի մէջ որ և է մասնակցութիւնից, և ենթարկւում էին զանազան ճընշումների դատավարութեան և հարկերի առթով։ Մեթէքների ընդունելով քաղաքացիների թւի աճելն՝ ուժեղացրեց դէմոկրատական կամ ժողովրդական կուսակցութիւնը, որովհետև նոր ընդունւած քաղաքացիները ոչ մի յարաբերութիւն չունէին ատտիկեան տոհմային կարգերի հետ և չէին կարող ենթարկւել ազնւական ընտանիքների ազդեցութեանը։*

Պետական բոլոր հաստատութիւնները փոփոխութիւնների ենթարկւեցին՝ համաձայն 10 նոր ֆիլաների կազ-

մութեան: *400-ի խորհրդի փոխարէն երևաց 500-ի խորհուրդը՝ 50-ական ամեն մի ֆիլայից։ Նրա պարտականութիւնն էր առաջուայ նման օգնել պաշտօնեաներին կառավարելու գործում, նոյնպէս և նախապատրաստել հասարակական ժողովի վճիռները՝ կազմելով օրէնքների ծրագիրներ։ Ամբողջ մի շարք պաշտօններ եթէ ոչ նոր ստեղծւեցին Կլիսթենէսից, գոնէ ընկան տասն անդամների ձեռքը, համապատասխան 10 ֆիլաներին։ Ամէնանշանաւորն էր զօրապետի պաշտօնը (*ստրատէգ*):* *Նրանցից ամեն մէկն առաջնորդում էր մի ֆիլայի զինւորներին։ Ստրատէգներին ընտրում էին ձայնտւութիւնով (ձեռք բարձրացնելով) մի տարւայ համար։*

*Վերջապէս Կլիսթենէսը հաստատեց* աստրակիզմը: *Նա առաջարկում էր հասարակական ժողովին աքսորել պետութիւնից այն մարդկանց, որոնք կասկածելի էին երևում՝ գաղտնի քւէարկութիւնով, առանց որևէ կանոնաւոր մեղադրութեան կամ դատի։* Այդ միջոցը հնարուած էր նրա համար, որ հեռացնէին քաղաքական խռովութիւններ սերմանողներին: *Ատտիկայում՝ դառն փորձից խրատւած, վախենում էին կուսակցութիւնների դաւերից, մանաւանդ բռնապետների փորձերից՝ իրանց իշխանութեանը վերադառնալու։* Ընդհանրապէս Կլիսթենէսի բարենորոգութիւնը դարձրեց Աթէնքը դէմոկրատիական տիրապետութիւն, այսինքն իշխանութիւնը յանձնեց ժողովրդին: *Նա մի քիչ ընդարձակեց հասարակական ժողովի իրաւունքները, իսկ, որ գլխաւորն է՝ վերջնականապէս կոտրեց Եւպատրիդների նշանակութիւնը։*

*Շուտով պէտք եղաւ զէնքով պաշտպանել նոր կարգը. իրանց զօրքերի վռնտւելուց վիրաւորւած՝ սպարտացիները Աթէնքի վրայ բաւական մեծ զօրք ուղարկեցին, որի հետ միացան Բէովտիացիները և Եւբէական քաղաքները։ Թւում էր, թէ դիմադրելու հնար չըկար։ Բայց դաշնակիցների բանակի մէջ չըկար յաջողութեան գլխաւոր պայմանը—*

համաձայնութիւնը։ Սպարտական թագաւորները կուած էին իրար հետ. պելոպոնէսեան դաշնակիցները սրտով չէին օգնում Սպարտային Աթէնքի դէմ, և կորթացիները տուն դարձան առանց կուին սպասելու. նրանց ետևից քաշուեցին և ուրիշները և, վերջապէս, սպարտացիններն էլ յետ նահանջեցին։ Այն ժամանակ աթէնացիններն ընկան բէովտիացիների և Եւբէացիների վրայ և կոտրիգլուխ ջարդեցին նրանց։ Այդ պատերազմն այն պատճառով շատ օգտակար եղաւ Աթէնքի համար, որ աթէնացինները՝ դրա շնորհով՝ հնար ունեցան ուղարկելու իրանց ազգաբնակութեան ամէնաաղքատ մասը Եւբէա—իբր գաղթականներ (կլէրուխա), իսկ դա շատ բանով թեթևացրեց նրանց ներքին վիճակը։

Կուսակցութիւնների խռովութիւնները և վէճերը, որ տևում էին առնուազը 150 տարի, վերջապէս վերջացան։ Աթենացինները պարծենում էին իրանց նոր կազմակերպութիւնով և զգում էին իրանց մէջ ազատութիւն վայելելու ու նրան պաշտպանելու համար անհրաժեշտ ոյժը։

---

ԳԼՈՒԽ Ե.

## ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐ

*Երկրորդական պետութիւնները.*

VI դարի վերջում վերջնականապէս որոշուեց Յունաստանի երկու գլխաւոր քաղաքների—Սպարտայի և Աթէնքի կազմակերպութիւնը։ Միւս քաղաքներն էլ նոյն տեսակ պատմութիւնով էին անցնում. ամեն տեղ թագաւորական իշխանութիւնը ոչ այնքան ոչնչացուեց, որքան ենթարկուեց ազնուական տոհմերին. ամեն տեղ կռիւ սկսուեց այդ տոհմերի և դէմոսի մէջ։ Ամենաշատ դէպքերում ազնուականութեան պարտութիւնը տեղի ունեցաւ ոչ թէ իշխանութիւնը ժողովրդի ձեռքն անցնելով, այլ բռնապետութեան հաստատուելով, այսինքն կառավարութիւնը մի քաղա-

քացու յանձնելով, որը հոգ էր տանում ժողովրդի կեանքի նիւթական բարելաւութեան վրայ։ Բայց բռնապետութիւնը հազիւ էր յարատև լինում. քաղաքացիների համար դժւար էր լինում վարժւել իրանց միջից մէկի կամայական իշխանութեանը. բռնապետները պէտք է յենարան որոնէին բռնութեան մէջ. աքսորականները և դրացի քաղաքները բորբոքում էին ժողովրդի անբաւականութիւնը և օգնում էին լուծը թօթափելուն։ Ժողովրդական վարչութեան վերականգման ժամանակ նկատւում էր բաւական մեծ տարբերութիւն. մի քանիսը թեքւում էին Սպարտայի նման օլիգարխիական կարգերի կողմը, միւսները Աթէնքի վարչութեան ձեւով՝ դէմոկրատիայի կողմը։

Այն ժամանակ, երբ այդպիսով կազմւում էր պետական կարգը յունական քաղաքներում, կրիզիս (ճգնաժամ) առաջացաւ արևելքում, պարսկական թագաւորութեան քաղաքականութեան մէջ։ Դարեհը ձեռնարկեց մի արշաւանք Սև-ծովի միւս ափերը, դէպի Սկիւթացիների երկիրը, որպէսզի ստիպէ այդ թափառականներին այլ ևս չըյարձակւել իր տիրապետութիւնների վրայ։ Նրա զօրքն անցաւ Թրակիայով և Դանուբով, բայց հարաւային Ռուսաստանի դաշտավայրերում չըհասաւ հաստատուն յաջողութիւնների։ Թշնամիներին բռնել չէր կարելի։ Նրանք անհանգստացնում էին պարսիկներին, ջարդում էին յետ մնացածներին, դժւարացնում էին պաշար բերելը, բայց մեծ ճակատամարտեր չէին տալիս, այլ փախչում էին անապատ դաշտերը։ Ստիպւած եղան դատարկաձեռն վերադառնալ։ Այս անյաջողութիւնը եղաւ մի պատրւակ, որ փութացրեց վաղուց պատրաստւող դէպքերը։ Ասիական յոյները չէին կարողանում սառնասրտութիւնով տանել պարսկական լուծը։ Նրանք ճնշւում էին իրանց վրայ դրւած հարկերից, հեռաւոր արշաւանք-

ներին մասնակցելուց, սատրապների կամայականութիւններից, բռնապետների տիրապետութիւնից, որ նրանց վզին էին փաթաթում պարսիկները։ Արդէն Դարեհի դէպի Դանուբը նահանջած ժամանակը նրանց միջից ձայներ էին լսում, թէ պէտք է քանդել Դանուբի կամուրջը և դրանով փչացնել պարսկական բանակը հիւսիսային անհաց անապատներում։ Արշաւանքի վերջանալուց յետոյ՝ շարժման գլուխ անցաւ Արիստագորաս Միլէտացին։ Նա կարողացաւ ապստամբութիւն առաջացնել։ Բալկանեան յոյներից օգնութիւն ստանալու փորձը միայն այն օգուտն ունեցաւ, որ Աթէնքն և Էրիտրէան (Եւբէայում) ուղարկեցին ամեն մէկը մի քանի նաւ։ Սկզբում ապստամբների գործերը լաւ էին գնում։ Նրանք շարժւեցին դէպի Փոքր-Ասիայի ներսերը, գրաւեցին Սարդան և այրեցին։ Այս վերջին քայլը մի անհագին սխալ էր. լիւդիացիները, որ չէին սիրում պարսիկներին և կարող էին միանալ յոյների հետ, իրանց մայրաքաղաքի այրումից յետոյ դարձան թշնամիներ։ Երբ պարսկական զօրքերը եկան յոյների դէմ՝ վերջիններս ստիպւած էին յետ նահանջել դէպի ծովափը։ Եւ այստեղ նրանց գործը բոլորովին փչացաւ այն պատճառով, որ քաղաքները չկարողացան միահամուռ կերպով գործել։ Ամեն մէկն ուզում էր միայն իրան պաշտպանել։ Վըճռական ճակատամարտում (496 թ.) սամոսցիներն 496
առաջինը թողին (լքան) ընկերներին. նրանց օրինակին հետևեցին և ուրիշները։ Պարսիկները լիակատար յաղթութիւն տարան և մէկը միւսի յետևից գրաւեցին բոլոր ապստամբւած գաղութները։

Բայց Դարէհը չըսահմանափակւեց ապստամբներին Դարէհի արշաւանքները.
նւաճելով։ Նա վճռեց վրէժ հանել աթէնացիներից ապստամբներին ցոյց տւած օգնութեան համար և միաժամանակ ընդարձակել իր պետութեան սահման-

ները, ենթարկելով իրան Բալկանեան Թերակղզին։ Պարսիկներն արդէն այնքան նւաճումներ էին արել, որ այս վերջին ձեռնարկութիւնը չէր կարող սարսափեցնել նրանց։ Յունական կազմի թոյլ կողմը՝ բաժան բաժան վիճակը՝ լիակատար կերպով երևաց փոքր ասիական ապստամբութեան ժամանակ, և Դարեհը չէր սպասում մի առանձին զօրեղ դիմադրութեան։

Յոյների առաջին գործողութիւնները կարող էին միայն ամրապնդել նրա յոյսերը։ Երբ թագաւորն ուղարկեց պատւիրակներ (հերոլդ) Յունաստան «հող և ջուր» պահանջելու, այսինքն երկրի հպատակութիւնը միայն սպարտացիները և աթէնացիները ցոյց տւին դիմադրելու լիակատար պատրաստականութիւն. երկու քաղաքներում էլ պարսկական պատւիրակներն սպանեցին։ Մնացած յոյները մասամբ տատանւում էին, մասամբ էլ ուղղակի հպատակութիւն էին յայտնում։ Սկզբում Դարեհը մտածում էր Յունաստանի վրայ գնալ հիւսիսից՝ Թրակիայից։ Ստիպւած եղաւ այդ ծրագիրը թողնել, որովհետև պարսկական նաւատորմը խորտակւեց, իսկ առանց նաւատորմի չէր կարելի առաջ գնալ, որովհետև նրանով էին պաշար տանում։ Այդ ժամանակ կազմակերպւեց մի երկրորդ նաւատորմ, և նրա վրայ զօրք դրւեց Դատի և Արտափերնէսի առաջնորդութեան
490 տակ (490)։ Այս արշաւանքը, որին միացաւ Աթէնքի նախկին բռնապետ Հիպպիասը, գնաց ուղղակի Եգէյեան ծովով, յաջող կերպով գրաւեց Եւբէան, այրեց Էրիտրէա քաղաքը և նեղուցով շարժւեց դէպի Ատտիկա։ Պարսկական 100 հազարանոց բանակի մեծ մասը դուրս եկաւ Մարաթոնի դաշտը։ Աթէնացիները մենակ մնացին պարսիկների դէմ։ Սպարտացիները դանդաղում էին, չընդունելով օգնութեան հասնելու սաստիկ խնդիրներին։ Աթէնական 10,000 հետևակների հետ

միացաւ միայն պլատէացիների մի հազարեակը։ Առաջնորդութիւնը, զօրապետների ընդհանուր համաձայնութիւնով՝ տուեց փիլաներից մէկի ստրատէգոս Միլթիադէսին, որը մի ժամանակ բռնապետ էր Թրակիայի Քերսոնէս քաղաքում պարսիկների տիրապետութեան տակ և լաւ գիտէր նրանց առանձնայատկութիւնները։ Ճակատամարտի մէջ երևացին ոչ միայն աթէնացիների քաջութիւնն ու հայրենասիրութիւնը, այլ և յունական զինուորական կազմի մեծ առաւելութիւնը։ Պարսիկները շարժւում էին անկանոն խմբերով․ նրանց հետևակ զօրքը զինուած էր աղեղներով և վատ կերպով մատակարարուած պաշտպանողական գործիքներով։ Ընդհակառակը՝ յոյներն առաջ էին գնում տիգակիրների խիտ, միաւորուած շարքերով, որոնք սովոր էին գործել մի մարդու պէս։ Աթէնացիների յաղթութիւնը միաժամանակ եւ սերտ կերպով միաւորուած քաղաքային համայնքի յաղթութիւնն էր ասիական ցեղերի պատմական խառնիճաղանջ հաւաքածուների դէմ:

*Յոյների պատրաստութիւնը նոր պատերազմի համար։*

Անսպասելի կերպով վտանգից ազատուելը յոյներին չէր խաբում ապագայի վերաբերութեամբ։ Բոլորն էլ հասկանում էին, որ հարկաւոր կլինի պարսիկների նոր ու աւելի սարսափելի յարձակման հետ գործ ունենալ։ Ամենից շատ պատերազմի պատրաստւում էին Աթէնքում, ուր պատրաստութեան ոգին էր հանդիսանում Թեմիստոկլէսը։ Նա հռչակուեց իր խորամանկութիւններով և թշնամիների թոյլ կողմերից օգտուելու ձիրքով։ Բայց և պակաս նշանաւոր չէր նրա մտքերի ինքնուրոյնութիւնը․ նրա վրա ազդեցութիւն չունէին տարածուած սովորութիւնները, որոնք ուրիշներին խանգարում են մի նոր բան հնարելու․ Նա նախատեսում էր ճշմարիտ ճանապարհը, երբ դեռ ոչ ոք չէր կարողանում ըմբռնել այդ։ Այսպէս՝

նոր պատերազմի պատրաստութիւնների ժամանակ նա դուրս եկաւ մեծամասնութեան կարծիքի դէմ: Մեծամասնութիւնը հպարտանում էր Մարաթոնի յաղթութիւնով և բոլոր յոյսը դնում էր հետևակ զօրքի վրայ: Թեմիստոկլէսը հասկանում էր, որ ցամաքի վրայ աթէնացիները պէտք է խուսափեն բացարձակ կռւից, որպէսզի թւի շատութիւնից չճզմուեն: Ծովի վրայ աւելի լաւ կարելի է դիմադրել նեղուցների մէջ: Եւ նա գործ դրեց իր բոլոր ճիգը, որ ստիպէ աթէնացիներին մի մեծ նաւատորմ շինել:

Նրան յաջողեց այդ անել՝ շնորհիւ արէոպագոսի օգնութեան, որն այդ դժւարին ժամանակներում քաղաքային միւս բոլոր հաստատութիւններից աւելի էր առաջ անցել: Արէոպագոսը կազմւած էր երբեմն արքոնտ եղած մարդիկներից և դրա համար էլ կարող էր ծագած հարցերը քննել գործին աւելի տեղեակ, ձեռնհաս կերպով: Քաղաքացիներն այնքան խոհեմ էին, որ պարսկական պատերազմների ընթացքում ենթարկւում էին նրա ղեկավարութեանը:

Բացի իրանց զինւելուց՝ աթէնացիներն ամեն ջանք գործ դրին, որ միւս յոյներից դաշնակիցներ ճարեն: Վտանգն այնքան ահռելի էր երևում, որ յունական քաղաքները յետաձգեցին իրանց վէճերը և պայմանաւորւեցին դաշնակցութիւն կապելու մասին: 481 թւին Կորնթոսի պարանոցում համաձայնութիւն կայացաւ սպարտացիների, աթէնացիների և միւս քաղաքներից մեծ մասի միջև: Վճռւած էր հաւաքել մի ընդհանուր զօրք, իսկ առաջնորդութիւնը (հեգեմոնիա) տալ սպարտացիներին:

Քսերքսէսի արշաւանքը 480 թ.

480 թւին երևացին ասիական խոշոր գնդերը: Առաջին արշաւանքից յետոյ Դարէհը մեռել էր, և պարսիկ զօրքը գալիս էր նրա որդու՝ Քսերքսէսի առաջնորդութիւնով: Բարբարոսներն անց-

նում էին Հելլես-Պոնտոսով. այդտեղ կային ահագին պետութեան ամեն ծայրերից հաւաքւած գնդեր. անցնելու ժամանակ հաշւեցին 1,700,000 կուող։ Քսերքսէսը կարծես յաղթանակի համար էր գնում, որբան էր անլուր ուժովը։ Այն ինչ ձեռնարկութիւնը դժւարացաւ նոյն իսկ բանակի բազմաթիւ լինելու պատճառով: Հացով աղքատ յունական նահանգներում ոչինչ չըկար նրանց կերակրելու համար. բանակի համար չափազանց դժւար էր նոյն իսկ առաջ շարժւելը Հելլադայի վատ ճանապարհներով, լեռնաշղթաների մէջ ընկած նեղ հովիտներում։ Յամենայն դէպս՝ առաջ գնալ կարելի էր միայն միահամուռ գործակցութեամբ ցամաքային զօրքի և նաւատորմի, որ նրա համար պաշար էր բերում. եթէ որև է բան պատահէր նաւատորմին, ցամաքային զօրքին կը մնար միայն հեռանալ։ Այս բոլոր առանձնայատկութիւնները սովորեցրին յոյներին պատերազմի ծրագիրը. պէտք էր օգտւել նեղ-նեղ անցքերով – լեռնային կիրճերով և նեղուցներով, որպէս զի չըթողնեն թշնամուն ամբողջ բանակը գործի դնելու. պէտք էր դժւարացնել նաւատորմի շարժումը։ Առաջին նպատակի համար յոյները բռնեցին Թերմոպիլեան կիրճը, որ տանում է Թեսալիայից դէպի միջին Յունաստան։ Զնայելով որ այնտեղ դրւած էին աննշան ուժեր, այնուամենայնիւ նըրանք յաջող կերպով դիմադրում էին պարսիկներին, որոնք այդ նեղ անցքում չէին կարող օգտւել իրանց թւի գերակշռութիւնից։ Բայց գտնւեց մի դաւաճան, որը ցոյց տւեց պարսկական զօրաբաժնին մի կածան, որով կարելի էր անցնել յոյների թիկունքը։

Յունական զօրքի առաջնորդը՝ սպարտական Լէոնիդաս թագաւորը՝ տեսնելով, որ անցնում են իր թիկունքը, արձակեց զօրքի մեծ մասը և մնաց միայն սպարտացիների և բէովտացիների մի մասի հետ։

Նրանք բոլորն էլ ընկան մինչև վերջին մարդը։

Թերմոպիլէի կրճի առումով Թագաւորի գնդերի առաջ բացւեց միջին Յունաստանը։ Բէովտիացիներն ընդունեցին նրանց հնազանդութիւնով, ատտիքական ազգաբնակութիւնը փախաւ։ Քսերքսէսը կործանեց Աթէնքը և պատրաստւում էր գործելու Կորնթական պարանոցի դէմ, որը բռնւած էր յունական դաշնակից զօրքով։ Պարանոցը կարելի էր պաշտպանել, բայց միայն այն դէպքում, երբ պարսկական նաւատորմին թոյլ չը տրւէր առաջ խաղալու, որովհետև հակառակ դէպքում նա կարող էր միշտ զօրք ափ հանել յոյների թիկնակողմում։ Այսպիսով՝ ամեն բան կախւած էր ծովի վրայի գործերի դրութիւնից։ Պարսկական նաւատորմը խիստ կերպով վնասուել էր փոթորիկներից, բայց թւով կրկին շատ անգամ աւելի մեծ էր յունականից, և նրանց սիրտը կազմում էին փորձառու ծովագնաց փիւնիկեցիների նաւերը։ Թէև յոյների թիւը շատ քիչ էր, բայց նրանք տեղի հետ լաւ էին ծանօթ և կարող էին դիրքից օգտուել վարպետութեամբ։ Նրանք մի շատ լաւ դիրք ընտրեցին—նեղուցի մէջ, փոքրիկ Սալամինա կղզու և ցամաքի միջավայրում. այստեղ էլ ասիացիները չըկարողացան գործադրել իրանց բոլոր ուժերը։ Բայց և այնպէս յունական առաջնորդները արդէն պատրաստւում էին թողնել այդ դիրքը և գնալ դէպի Իսթմը (պարանոցը), ուր, հաւանօրէն՝ նրանց կը ճզմէին պարսիկները։ Միայն Թեմիստոկլէսը, որ առաջնորդում էր աթէնական զօրաբաժինը, հասկացաւ դրութիւնը և համոզում էր յոյներին կուել նեղուցում։ Երբ իր ասածը չընդունւեց առաջնորդների խորհրդում, նա մարդ ուղարկեց նախազգուշացնելու Քսերքսէսին, որ յոյները պատրաստւում են փախչելու։ Քսերքսէսը չուզեց ձեռքից թողնել յունական նաւատորմի հետ հաշիւը վերջացնելու յարմար առիթը

*և շտապեց կտրելու նրա դուրս գալու ճանապարհնե-րը։ Սկսւեց ճակատամարտը, որին Թագաւորը նայում էր ափից, ինչպէս տօնական մրցութեան։ Յոյները կռւում էին յուսահատական քաջութիւնով. Նրանց փոքրիկ նաւերն աւելի լաւ էին դառնում ու շարժւում իրանց լաւ ծանօթ նեղուցի ժայռերի և ծանծա-ղուտների մէջ։ Ասիացիներն իրար ճնշում էին իրանց շատութիւնով. Նրանց նաւատորմում գտնւում էին այնպիսի ժողովրդների զօրաբաժիններ, որոնք ոչ մի ընդհանուր բան չունէին իրար հետ և նոյն իսկ թըշ-նամի էին իրար. դժւար էր ստիպել փոքր-ասիական յոյներին համերաշխ գործել փիւնիկեցիների հետ։* Ժողովրդների այս ամբողջ պատահական խուժանը անտարբեր կերպով էր վերաբերւում դէպի իր թա-գաւորի իշխանասէր ձեռնարկութիւնը: *Այդ պայ-մաններում յոյների վարպետութիւնը և ոգևորութիւնը լիակատար յաղթանակ տարան, պարսկական նաւա-տորմի նշանաւոր մասը ոչնչացաւ։ Այդ մի հարւածը բաւական էր ստիպելու ասիական ահագին զօրքին յետ փախչելու։ Քսերքսէսը չը յանդգնեց յար-ձակւել պարանոցի վրայ, և նա ոչինչ չունէր իր զօր-քին կերակրելու համար աւերակ դարձած միջին Յու-նաստանում։ Նա Ասիա վերադարձաւ, Բէովտիայում թողնելով 300 հազարանոց մի բանակ Մարդոնիոսի առաջնորդութեան տակ։*

*479 թւին յոյներն սկսեցին պատերազմական* 479 *գործողութիւնները միանգամից երկու ուղղութիւնով. Ցամաքային ուժերը (մօտ 100,000 մարդ), որոնց առաջնորդում էր սպարտացի Պաւսանիասը, շարժւե-ցին Մարդոնիոսի դէմ։ Սպարտական թագաւոր Լէոն-տիքիդոսը և աթէնացի Քսանտիպպոսն էլ նաւատոր-մով գնացին ծովով դէպի փոքր-ասիական ափերը, որ-պէսզի այնտեղ ոտի կանգնեցնեն յունական գաղութ-*

Թեմիստոկլէսը. Նրա անհանգիստ ուղեղը նորից զբաղուած էր անծանօթ ճանապարհներ որոնելով։ Նա արդէն նախազգում էր Սպարտայի հետ ունենալիք կռիւը և մեծ ծառայութիւն արեց իր մայրենի քաղաքին, յաջողեցնելով արագ կերպով նրան ամրութիւններով պատել, չընայելով սպարտացիների դժգոհութեանը և հակաճառութեանը։ Յետոյ նա սկսեց խնամարկել մեթէքներին[1] և յարաբերութիւններ սկսեց Պաւսանիասի հետ, որը փորձում էր հելոտներին ոտի հանել սպարտացիների դէմ։ Երկու հռչակաւոր զօրապետները զոհ գնացին իրանց փառասիրութեանը. սպարտացիները Պաւսանիասին փակեցին տաճարում և սովամահ արին, Թեմիստոկլէսն աքսորուեց աստրակիզմով և փախաւ պարսից Արտաշէս թագաւորի մօտ։

Կիմոնը և Էֆիալտը։

Այն ինչ Աթէնքում կրկին կազմուեցին երկու կուսակցութիւններ. մէկը Կիմոնին գլուխ ունենալով՝ պահպանում էր պարսկական պատերազմների աւանդները, պնդում էր թէ պէտք է յարմարուել Սպարտայի հետ, որպէսզի յաջող կերպով պատերազմին Ասիայում, իսկ ներքին գործերում դէմ էր պետական կազմը փոխելուն և ընտրութիւնների ժամանակ պաշտպանում էր ազնուական ընտանիքների անդամներին։ Միւսը, դէմոկրատ կուսակցութիւնը, որ հետևում էր Էֆիալտին և Պերիկլէսին, բաց և արձակ պատրաստում էր Սպարտայի դէմ կռւի, ամեն տեսակ միջոցներով յարձակւում էր արիստոկրատների վրայ—կռիւ էր մղում նրանց դէմ ընտրութիւնների ժամանակ, դատարաններում մեղադրանքներ էր յարուցանում նրանց դէմ. վերջապէս նա խորհում էր նորանոր փոփոխութիւններ մտցնել քաղաքային կարգերի մէջ դեմոկրատիայի օգտին։ Ժողովուրդը հաւատարիմ էր մնում իր սիրելի զօրապետին, չընայելով որ հնարաւորութիւն էր բացւում արիստոկրատների հաշւով նոր օգուտներ ձեռք բերելու. վերջապէս Կիմոնի նշանակութիւնն ընկաւ Սպարտայի վերաբերութեամբ նրա

[1] Մեթէքներ—օտարերկրացիներ, որ գաղթել էին Ատտիկա։

բռնած քաղաքականութեան շնորհով։ Նա փակում էր աչքերը լակեդեմոնացիների ակներև չարակամութեան առաջ և, թէև մեծ դժւարութիւնով, յաջողեցրեց, որ աթէնացիներն իրան ուղարկեն զօրքով Սպարտային օգնութեան, երբ այնտեղ պայթեց հելոտների և մեսսենացիների սարսափելի ապստամբութիւնը։ Սպարտացիներն ի հարկէ շատ բաւական էին գործերի այդ կերպարանքն ընդունելուց. դա ցոյց էր տալիս ապստամբներին, որ Աթէնքից երբէք չըպէտք էր օգնութիւն սպասել։ Բայց նրանք հեռու էին պահում աթէնական զօրաբաժինը գործունէութեան վայրից և հէնց առաջին հնարաւորութեան ժամանակ յետ ուղարկեցին նրան։ Ամբողջ արշաւանքը մի մեծ քաղաքական սխալ էր. սպարտացիները պատասխանեցին աթէնացիներին ոչ թէ երախտագիտութիւնով, այլ վիրաւորանքով։ Այդ սխալի տպաւորութեան տակ՝ աթէնացիներն աստրակիզմով աքսորեցին Կիմոնին։ Թէ և յետոյ նա վերադարձաւ և նոյն իսկ ըստրատէգ եղաւ, բայց նրա քաղաքական ազդեցութիւնն ընկաւ։

**Էֆիալտի և Պերիկլէսի բարենորոգութիւնները**

Բարենորոգութիւններն սկսւեցին Էֆիալտի ձեռքով։ Նա զրկեց արէոպագոսն իր իշխանութեան մեծ մասից։ Նա միակ հիմնարկութիւնն էր, որ կախում չունէր ժողովրդից։ Նրա անդամները նշանակւում էին իր՝ արէոպագոսի կողմից մինչև մահ և այն էլ բացառապէս նախկին արքոնտներից։ Արէոպագոսին էր պատկանում միւս բոլոր իշխանութիւնների վրայ հսկելու իրաւունքը և, իմիջի այլոց, հասարակական ժողովների վրայ հսկելու իրաւունքը։ Պարսկական պատերազմների ժամանակ նա ձեռք բերեց և ցոյց տւեց մեծ ոյժ։ Էֆիալտը վերջ դրեց այդ ուժին, խլելով արէոպագոսից հաստատումների եւ օրէնքների վերահսկողութիւնը: Նրան թողնւեց մասամբ դատական իշ-
462 խանութիւնը և բարքերի վերահսկողութիւնը (462-ին)։ Էֆիալտի բարենորոգութիւնն այնպիսի կատաղութիւն առաջ բերեց արիստոկրատների կուսակցութեան մէջ, որ սպանեցին բարենորոգչին։ Բայց Պերիկլէսը շարունակեց նրա գործը։

Արէոպագոսից խլած պարտականութիւնները պէտք էր յանձնել որեւ է մէկին. Նրանք բաժին ընկան հելիային, այսինքն աթէնական երդուեալների այն մասնաժողովներին, որոնց ընտրում էին ամեն տարի—6000 հոգուց կազմուած՝ արդարադատութեան գործը վարելու համար։ Հէլիէան հիմնուել էր դեռ եւս Սոլոնի ժամանակ, բայց միայն այժմ նա մեծ նշանակութիւն ստացաւ պետութեան մէջ։ Նրան յանձնուեց հասարակական ժողովի վերահսկողութիւնը, խլելով արէոպագոսի ձեռքից. արգելուած էր նոր օրէնք մտցնել՝ առանց նախապէս հերքելու հին օրէնքը երդուեալների մասնաժողովի առաջ։ Այս կանոնը զանց առնողները ենթարկւում էին քրէական պատասխանատւութեան օրինազանցութեան համար։

Միեւնոյն ժամանակ հելիէային յանձնուեց համարեա բոլոր դատական գործերը։ Արքոնտները դարձան դատարանների հասարակ նախագահներ։ Այսպիսով հելիէան բարձրացաւ Աթէնքի բոլոր հիմնարկութիւններից, նոյն իսկ հասարակական ժողովից։ Այս լայն դատական եւ քաղաքական բարենորոգութիւնը մտցնելու համար միայն հրամանը քիչ էր. պէտք էր ժողովրդին հնարաւորութիւն տալ իսկապէս մասնակցելու դատարաններում։ Անդամներն այնքան շատ էին, նրանցից պահանջւում էր այնքան ժամանակ եւ աշխատանք գործ դնել, որ չէր կարելի պահանջել այդ ծառայութիւնը, առանց ապահովելու այդ աշխատանքը որ եւ է վարձատրութիւնով: Պերիկլէսը մտցրեց մի փոքրիկ վարձատրութիւն—օրական 2 օբոլ (մօտ 8 կոպէկ). այդ գումարով կարելի էր ճաշել, թէեւ շատ պարկեշտ կերպով։ Եւ այդ գումարը բաւարար երեւաց գրաւելու ժողովրդին դատական պարտաւորութիւններ կատարելու. աթէնացիները նախապատւում էին դատական քննութեան հետաքրքիր աշխատանքն

ավելի արդյունավետ առևտրական գործից։ Որովհետև դեմոկրատ կուսակցութիւնը նպատակ էր դրել ժողովրդին տալու վարչական ազդեցութիւնը, այսինքն նրա աղքատ մեծամասնութեանը՝ պէտք էր մտածել թոշակ, վարձատրութիւն տալ պետական պարտականութիւնների համար։ Հարուստ մարդիկ կարող են ծառայել առանց ռոճկի, այն պատուի և իշխանութեան համար, որ կապւած է պաշտօնի հետ։ Աղքատ մարդիկ անկարող են այդպէս զոհել իրանց ժամանակը և աշխատանքը։ Թէև հին քաղաքացիները, նոյն իսկ աղքատները, բացառիկ դրութեան մէջ էին, այնուամենայնիւ նրանց համար էլ անհրաժեշտ էր գոնէ մի փոքրիկ վարձատրութիւն։ Պերիկլեսի օրով դեմոկրատիայի ներմուծումն անհրաժեշտաբար առաջացնում է խորհրդի եւ հասարակական ժողովի այցելուի, նոյնպէս եւ նաւաստուի ծառայութեան համար թոշակ նշանակելը։ Բացի դրանից՝ պետութիւնը տալիս էր փող՝ թատրոնում տեղ գնելու համար. փողի այդ բաշխումն սկսեցին մեծացնել նրա համար, որ հնար տան տօնական օրերին կերակուր գնելու։

Ո՞րտեղից էին ճարում փողն այդ բոլոր բաշխումների և վճարումների համար։ Անմիտ կլինէր ռոճկի ձևով քաղաքացիներին տալ այն փողը, որը նրանցից վերցնում էին հարկի ձևով։ Եւ իսկապէս՝ Աթէնքի քաղաքացին հարկեր չէր տալիս. պետութիւնը լցնում էր իր գանձարանն առեւտրի առարկաների մաքսերով, մեթեքների տուած հարկերով, իսկ գլխաւորը՝ դաշնակիցների տուրքով։ Այդ տուրքերը ծախսւում էին ոչ միայն պարսից դէմ պատերազմելու համար, այլ և մայրաքաղաքի բոլոր կարիքների վրայ. նրա քաղաքացիներին վարձատրելու, տօնախմբութիւններ կատարելու, տաճարներ շինելու վրայ։ Աթէնացիներն իրանց արդարացնում էին նրանով, որ իրանք պաշտպանել էին

*Յունաստանն արշաւանքի ժամանակ և որ կրկին իրանք են շարունակում կրել դաշնակցական վարչութեան և արշաւանքների բոլոր ծանրութիւնը։*

*Բացի ռոճկից և հասարակական շէնքեր շինելու համար ստացւող վարձատրութիւնից՝ ամենաաղքատ աթէնացիները կարող էին գաղթական գրւելու յոյս ունենալ, գաղթական՝ որոնց պետութիւնը տալիս էր բարբարոսներից կամ դաշնակիցներից խլած հողերը։ Այդ ձևով Կիմոնի և Պերիկլէսի ժամանակ տեղաւորւեցին մի քանի տասնեակ հազար ընտանիքներ։*

*Սկզբում Պերիկլէսն առաջ էր քշում իր միջոցները՝ անդադար կռիւ մղելով արիստոկրատիական կուսակցութեան ներկայացուցիչների հետ։ Բայց 445 թւին* *Պերիկլէսի իշխանութիւնը։*
*ժողովուրդն աստրակիզմով աքսորեց նրա գլխաւոր հակառակորդին—Թուքիդիտէսին (Մելէսայի որդուն), և* 445
*այդ ժամանակից Պերիկլէսն օգտւում էր անվիճելի իշխանութիւնով համարեա մինչև մահը։ 15 տարի շարունակ նրան ընտրում էին ստրատէգ, և թէև նա այդ պաշտօնը բաժանում էր 9 ուրիշ առաջնորդների հետ, բայց միւս բոլորը հպատակւում էին նրան, որովհետև* բոլոր ժողովուրդը նայում էր նրա վրայ իբրեւ պետութեան մէջ գլխաւոր, առաջնորդող եւ պատասխանատու անձնաւորութեան վրայ: *Այս բացառիկ դրութիւնն ստեղծւեց անհրաժեշտութեան ուժով. ոչ հասարակական ժողովը, ոչ նոյն իսկ խորհուրդը չէին կարողանում յաջող կերպով վարել դաշնակցական և օտարերկրեայ քաղաքականութեան բարդ և դժւարին գործերը։ Նրանք իրանց էին վերապահում այդ գործերի ընդհանուր հսկողութիւնը, և գլխաւոր ձեռնարկութիւնների համար պէտք էր ստանալ խորհրդի և ժողովի հաւանութիւնը, բայց գործադրութեան մանրամասնութիւններն աւելի լաւ էր թողնել մի վստահելի անձի։ Այդպիսի մի վստահելի անձ, աթէնական*

դէմոկրատիայի կարծես գլխաւոր նախարարն էր Պերիկլէսը, և ժողովուրդը, նրան ցոյց տուած այդ նախապատուութիւնով՝ արտայայտեց քաղաքական մեծ հասկացողութիւն։ Պերիկլէսը հաւատ էր ներշնչում ամենքին իր դէպի քաղաքն ունեցած հպատակութիւնովը, բնաւորութեան ազնուութիւնովը և դատողութեան զօրութիւնովը, իր էականը տեսնելու և լաւագոյնը ջոկելու ընդունակութիւնովը։ Շարժուն, աղմկոտ աթէնացիների մէջ այդ միշտ լուրջ, միշտ զբաղուած, միշտ ինքն իրան զսպող մարդը մի քիչ ճնշող տպաւորութիւն էր գործում։ Կատակի համար նրանք նրան անուանում էին «ամպրոպային», բայց բաւականաչափ խելք և ճաշակ ունենալով, գնահատում էին և նրա խելացի քաղաքականութիւնը, և նրա ծանրակշիռ, խորիմաստ խօսքը։

Պերիկլէսը միայն քաղաքական գործիչ և զօրավար չէր. Պիսիստրատի նման, բայց նրանից աւելի մեծ չափով, նա կարողացաւ իր շուրջը կենտրոնացնել այն ժամանակի Յունաստանի գրական և գեղարւեստական կեանքի մէջ եղած այն ամենը, ինչ լաւ էր։ Քաղաքը զարդարւեց մի ամբողջ շարք փառաւոր շէնքերով, որոնցից առանձնապէս նշանաւոր են՝ Աթէնք քաղաքի պաշտպան աստուածուհու տաճարը (Պարթէնոն), Ակրոպոլիսի մուտքի մօտ եղած սիւնազարդ սրահը (Պրոպիլէա) և Օդէոնը՝ թատրոնը, նւիրւած բանաստեղծական և նւագածուական մրցումներին։ Պերիկլէսի ամենամօտ բարեկամներն էին Անաքսագորաս փիլիսոփան և Փիդէաս գեղարւեստագէտը, բոլոր ժամանակների ամենանշանաւոր քանդակագործներից մէկը։ Նոյն բարձր զարգացման հասած աթէնացիների մէջ գրում էր իր ողբերգութիւնները Յունաստանի ամենամեծ ողբերգակ Սոփոկլէսը։ Աթէնք տեղափոխւեց անորոշ ժամանակով Փոքր-Ասիացի

*պատմաբան Հերոդոտը։ Մի խօսքով՝ դա յունական զարգացման ոսկէ դարն էր, և* Պերիկլէսը լիակատար իրաւունքով կարող էր ասել, որ Աթէնքը Յունաստանի մայրաքաղաքը եւ ուսուցիչն է: *Որպէս զի այդ ժամանակը և մեծ առաջնորդի նշանակութիւնը լիապէս գնահատուի, անհրաժեշտ է աչքի անցկացնել յոյների հոգեկան կեանքի այն պատմութիւնը, որ կատարուել է հոմերական դիւցազներգութիւնները գրելու ժամանակի և V դարի՝ նրա ամենաբարձր ծաղկման մէջ եղած շրջանի ընթացքում։*

---

**Գ Լ Ո Ւ Խ Է.**

# ԾԱՂԿՄԱՆ ՇՐՋԱՆԻ ՅՈՒՆԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ (VIII – V ԴԱՐԵՐՈՒՄ)

*Դիւցազներգութեան անկումը։ Քնարերգութիւնը։*

*Երբ յոյները քիչ ու շատ տեղաւորուեցին և լրացաւ ցեղական շարժումների հերոսական շրջանը՝ դիւցազներգական բանաստեղծութիւնը, որ ծնունդ էր առել այդ թափառումների և կռիւների ազդեցութեան տակ, սկսեց վերանալ։ Կիկլիկ կոչուածները շարունակեցին մշակել տրովական պատերազմի շուրջը կազմուած հէքիաթների «շրջանը», բայց նրանց դիւցազներգութիւնները չէին դիմանում Ոդիսականի և Եղիականի համեմատութեանը։ Նրանց մէջ չըկային հոմերական երգերի սրամտութիւնը, թարմութիւնը և պարզութիւնը։ Ակներև էր, որ անցել էր ժամանակը անհոգ բանաստեղծական պատմուածքի, որը չէր ճնշւում կրկնութիւններից, միջնադէպերից, մանրամասնութիւններից և սիրով կանգ էր առնում նկարագրութիւնների վրայ։ Բէովտիական Հեզիոտէսը* (VIII *դ.) խորհրդածութիւններ է անում և սովորեցնում է. Նրա «Թէոգոնիան» ներկայացնում է որոշ կարգ աստուածների մասին եղած առասպելները վերականգնելու, աստուածների մէջ սերունդներն ու յարաբերութիւնները որոշելու մի փորձ։ «Գործեր և օրեր» գրութեան մէջ նա տալիս է օգտակար, բայց բաւական ձանձրալի խորհուրդներ մանր հողատէրերին,*

որոնք զբաղւած էին դաշտային աշխատանքներով։ Բնորոշ է միայն պատերազմական արկածներից խաղաղ գործունէութեան անցնելը, այլ և դասակարգային փոփոխութիւնը։ Եղիականն ու Ոդիսականը պատկանում են բոլորովին արիստոկրատիական սարք ու կարգին. նրանց հերոսներն առաջնորդներն են, իսկ հասարակ ժողովուրդը երկրորդական տեղ է բռնում։ Հեզիոդէսը դառնում է քիչ կարողութեան տէր և կեանքում համեստ նպատակներ ունեցող մարդիկներին։

Փոփոխւած հանգամանքների երկրորդ նշանն էր քնարերգութեան—անձնական զգացմունքների բանաստեղծութեան զարգացումը։ Դիւցազներգական պատմւածքը ենթադրում է համերաշխ կերպով ապրող մի հասարակութիւն, որի մէջ մարդիկ քիչ թէ շատ իրար նման են մտածում։ Բայց երբ քաղաքներում սկսւեց կատաղի կռիւ ազնւականների և դեմոսի մէջ՝ դիւցազներգութեան խաղաղ անկողմնակալութիւնն այլևս անտեղի դարձաւ։ Բանաստեղծներն օգտւել սկսեցին իրանց երևակայութեան ուժով և խօսքի սրութիւնով, որպէսզի բարձրացնեն իրանց գործը և նետեր արձակեն հակառակորդի վրայ։ Օրինակ՝ Թէոգնիդ Մեգարացին գրում է ոտանաւորներ, որպէսզի արտայայտէ իր դառն զգացմունքները դեմոսի բռնութեամբ արած գրաւումների մասին։ Մի անգամ արդէն այդ ճանապարհն ընկնելով՝ բանաստեղծութիւնը գրաւեց անձնական զգացմունքների բոլոր տեսակները. Պինդարոսի փառահեղ ներբողը արտայայտում էր հելլենական մրցումների մէջ յաղթողի հպարտութիւնը. Սաֆօն և Անաքրէօնը զանազան ձևերով սէրն էին երգում...

Դրամա (ողբերգութիւն)։

Գրականութեան մէջ աթէնացիները առաջ քշեցին դրաման—գործողութեան բանաստեղծութիւնը։ Դրաման սկիզբն առաւ Դիոնիսի տօներին երգող խմբի երգերից։ Խմբի անդամները այծի մորթերով[1], հագնւած՝ ինչպէս աստւծու ուղեկիցներ—սատիրաներ՝ նկարագրում էին ամեն տեղ ման եկած և բոլոր

[1] Տրագօս աօիդոս՝ այծ—երգիչ. այդ տեղից էլ առաջացել է տրագեդիա—ողբերգութիւն բառը։

ցեղերին յաղթած Դիոնիսի արկածները։ Սկսեցին երգերի համար վերցնել և ուրիշ նիւթեր, ընտրելով նրանց գլխաւորապէս այն առասպելներից, որոնք ընդունակ էին յուզել լսողներին, ներշնչել նրանց երկիւղ կամ ցաւակցութիւն։ Սոլոնի ժամանակ այդպիսի երգեր կազմող Թեսպիսը մտածեց խմբից դուրս գալ և ներկայացնել այն գլխաւոր անձին, որի մասին խօսւում էր։ Այստեղից մինչև մի քանի դերակատարներ մտցնելը և ամբողջ գործողութիւններ կատարելը մի քայլ էր։ Այս քայլն արեց Էսքիլեսի և Սոֆոկլեսի վերջին ժամանակների աթէնական ողբերգութիւնը։ Այսպիսով պատմւածքը դառնում էր կարծես թէ նոյն ինքը գործողութիւնը։ Ներկայ եղողները ոչ միայն լսում էին վաղուց պատահած գործերի մասին, այլ և աչքով դիտում էին հերոսներին և նրանց վիճակը։

Դրաման իր մէջ պարունակում էր և քնարերգութեան, և՛ դիւցազներգութեան գծերը, աւելացնելով նրանց վրայ մի քիչ էլ իր սեփականը։ Դէպքերն ընտրւում էին ոչ թէ պատահաբար և կամովին, ինչպէս դիւցազներգութեան մէջ, այլ լսողներին հնար եղածին չափ աւելի ուժեղ կերպով գրաւելու, նրանց գործողութեան մէջ քաշելու և այնպիսի զգացմունքներ ներշնչելու նպատակով, որոնք ոգևորում էին գործող անձերին։ Ի հարկէ մանրամասնութիւնները տարբեր էին, բայց բոլոր թատրոնական գրւածքների մէջ մի գլխաւոր միտք էր հանդիպում. մարդկանց կեանքը ղեկավարւում է ճակատագրական բաղդի ձեռքով, որի վճիռների վրայ նրանք ազդեցութիւն չունեն. բայց նրանց ներքին աշխարհում, նրանց խղճի մէջ կայ մի ոյժ, որը նրանց դարձնում է ազատ, որը բարձրացնում է նրանց կեանքի դժբաղդութիւններից եւ թշւառութիւններից։ Եթէ հանդիսականը բաւականութիւն էր զգում երկիւղի և տանջանքի այդ նմանողութիւնից, որ թողնում էր նրա վրայ ողբերգութիւնը, պատճառն այն ազնւացնող զգացմունքի մէջն էր, որն ասում է, թէ իսկապէս մարդուն պատժում է միայն խիղճը, իսկ անմեղութեան գիտակցութիւնը փրկում է նրան նոյն իսկ դժբաղդութեան մէջ։ Ողբերգութիւնն ընտրում էր մարդկային փորձութիւններից

ամենածայրայեղ օրինակները, որովհետև դրանց ժամանակ աւելի ուժեղ կերպով էր արտայայտւում ներքին ճշմարտութեան ոյժը։ Էսքիլէսի «Պարսիկներ»-ի մէջ երևում էր յոյների արևելքի դէմ վարած մեծ կուի ազդեցութիւնը։ Գրուածքը ներշնչւած է այն ողբերգական սարսափով, որ թափում է հանդիսականի վրայ պարսից թագաւորի բաղդի փոփոխականութիւնը. Նա դուրս է գալիս աննման, անլուր ուժով և վերադառնում է փշրւած և ոչնչացած։ Եւ հանդիսականներին բաւականացնում է այս ելքը, որովհետև նրանց խիղճը դատապարտում է Քսերքսէսի անյագ իշխանասիրութիւնը։ Էսքիլէսի «Օրէստիա» տրիլօգիայի[1] մէջ վերցւած է մի այնպիսի դրութիւն, որի ժամանակ չէ կարելի մի անգամից ասել, թէ ինչումն է ճշմարտութիւնը. դրա համար ելքը երկար ժամանակ մութն է մնում։ Օրէստն սպանում է իր Կիտէմնեստրա մօրն իբր վրէժ, որովհետև նա սպանել էր Օրէստի հօրը։ Նա կատարում է իր սարսափելի գործը պարտքի զգացմունքից դրդւած. բայց և այնպէս նրան հալածում են Եւմէնիդները—պատժող խղճի մարմնացումը։ Աթէնքը և արէոպագոսը գործը վճռում են նրա օգտին։ Ցոյն հանդիսատեսների զգացմունքը պարտականութիւնների այս ընդհարման մէջ արդարացնում էր որդուն, որը վճռել էր վրէժ առնել իր սեփական ծնող-մօրից։ «Շղթայւած Պրոմեթէոս»-ի մէջ բախտի արտաքին զօրութեան և մարդու հոգեկան ազատութեան մէջ եղած կռիւն էր արտայայտւում Պրոմեթէոսի ցնցող կերպարանքում. Զևսն իշխանութիւն ունի, կարող է նրան շղթայել և տանջել, բայց ոյժ չունի նրա արդար լինելու ինքնագիտակցութեան և անհնազանդ կամքի վրայ բռնանալու։ Սոփոկլէսի «Էդիպոսի» մէջ հերոսըն աստւածներից դատապարտւած է կատարել մի պատահական ոճիր. նա՝ առանց գիտենալու՝ սպանել է հօրը և ամուսնացել է մօր հետ։ Բաղդը նրան խճճել է սարսափելի վիճակի մէջ, բայց նա նրանից ելք է գտնում, իր վրայ կամաւոր պատիժ նշանակելով. նա կուրացնում է ինքն իրան, թողնում թագաւորութիւնը, գնում է թափառելու աշխարհից

---

[1] Տրիլօգիա կոչւում էին 3 դրամաներ, որ ներկայացւում էին մէկը միւսի ետևից և պատկերացնում էին իրար հետ սերտ կերպով կապւած դէպքեր։

*աշխարհ, ազատութիւն և հանգստութիւն է գտնում մահւան մէջ։ Ամեն տեղ նրան հետևում է իր դուստրը, ոչնչով չըմեղանչած՝ անմեղ Անտիգոնան, մասնակցում է նրա տանջանքներին և մահը յանձն է առնում, որպէսզի իր վերջին պարտքը կատարէ—թաղէ սպանւած հօրը։ Բարութիւնը յաղթանակում, բայց ոչ պատահական արտաքին յաջողութեան մէջ, այլ հանդիսականների պարզ համակրութեան և բաւականութեան մէջ։*

*Պլաստիկական արուեստները։*

*«Պլաստիքական»*[1] *կոչւած արուեստները ևս հասան բարձր կատարելութեան։ Ճարտարապետութեան մէջ յոյները չէին աշխատում տպաւորութիւն գործել չափերի մեծութիւնով կամ մանրամասնութիւնների կուտակումով։* Նրանց շէնքերի գեղեցկութիւնը կախւած էր ամբողջութեան ճաշակաւոր բաժանման մէջ: *Նրանք սկսեցին աւելի օգտւել սիւներից, քան այդ անում էին արևելքում։ Դորիական և յոնիական ցեղերն այստեղ էլ մշակեցին երկու տարբեր ձևեր. դորիական պարզ սիւնը վերջաւորւում էր մի ոչ մեծ գաւաթով, յոնիական գեղաճաշակ սիւնը՝ խոյի եղջիւրներով։ Աւելի ուշ կազմւեց նոյնպէս կորնթական ձգձգւած սիւնը ակնթի տերևների ձևն ունեցող վերջաւորութիւնով։ Առանձնապէս շատ բան արին յոյները քանդակագործութեան մէջ։ Սէրը դէպի մարմնական (ատլետական) վարժութիւնը և նրանց նշանակութիւնը կրթութեան մէջ՝ ուժեղ կերպով նպաստում էին դրան։ Մարմնամարզութեան և զանազան տեսակ մրցումների համար հարաւի երկնքի տակ հանւում, մերկանում էին, որի շնորհով հնարաւոր էր լինում լաւ ուսումնասիրել մերկ մարմնի ձևերն ու շարժումները։ Ամենահին քանդակագործութեան արդիւնքները դեռ*

[1] *Այն արուեստները, որ ձևափոխում էին նիւթը (պլաստոս)—ճարտարապետութիւնը և քանդակագործութիւնը, որովհետև նրանք քարից կազմում էին շէնքեր և արձաններ։*

են վկայում էին արեւելեան վարպետների ազդեցութեան մասին։ Բայց շուտով յոյներն ընթացան սեփական ճանապարհով, ուսումնասիրելով բնութիւնը եւ աշխատելով, որքան կարելի է, ճշտօրէն վերարտագրել նրան։ Սակայն նրանց գեղարուեստը չըդարձաւ բնութեան հասարակ ընդօրինակութիւն, ինչպէս եւ չըմնաց օտար վարպետներից վերցւած օրինակներից կախման մէջ։ Յունական քանդակագործութիւնն սկըզբում ծառայում էր առաւելապէս կրօնական նպատակների եւ նրա արտադրութիւնները ստացան իդէալականացնող [1] բնաւորութիւն։ Գեղարուեստագէտները ձըգտում են դարձնել իրանց արձաններն աստւածներին եւ հերոսներին արժանի պատկերներ. Նրանք արտայայտում են աստւածայնութիւնն ու հերոսութիւնը ոչ թէ հսկայական չափերով եւ ոչ էլ մարդկային ու անասնական ձեւերի միացումով, ինչպէս որ այդ անում էին արեւելքում, այլ իդէալական գեղեցկութիւնով եւ վեհութիւնով։ Այս կրօնական քանդակագործութեան ամենաբարձր արտայայտութիւն կարող են համարւել Փիդիասի ստեղծագործութիւնները։ Նրա Զեւսի արձանը Ոլիմպոսում եւ Աթէնաս Պալլասինն Աթէնքում՝ մարդկային կերպարանքը հասցնում էին մարդու համար մատչելի ամենաբարձր արժանաւորութեանը եւ կարողութեանը։ Բնական է, որ այդ ժամանակի քանդակագործութիւնն ստեղծում էր խաղաղ կերպարանքներ. Նրա աստւածներին եւ հերոսներին անվայել կըլինէր դիմագծերն այլանդակող վրդովմունքը։ Նրանք երջանիկ են եւ դրա համար էլ ներդաշնակութիւն—ոգու երջանիկ հաւասարակշռութիւն ունեն։

[1] Իդէալ կոչւում է մարդու «ամենալաւի» մասին ունեցած գաղափարը—օրինակ՝ բարձրագոյն գեղեցկութեան, ոյժի, իմաստութեան մասին եւ այլն, որին կարելի է հասնել որոշ չափով ու ձեւով։

*Փիլիսոփայութիւնը և պատմութիւնը.*

Տաղկման շրջանի յոյները գիտութեան համար այնքան շատ բան չարին, որքան գեղարուեստների բաժնում. Թէև այստեղ էլ նրանց ծառայութիւններն ահագին են։ Յոնիական գաղութներում ծնունդ է առնում ինքնուրոյն մի փիլիսոփայութիւն—«որոնումն իմաստութեան»։ Արևելեան ժողովրդների՝ Եգիպտացիների, հնդիկների, պարսիկների մէջ չէին պակասում խորիմաստ դատողութիւններ աշխարհի և մարդկանց կեանքի նպատակի մասին, բայց այդ դատողութիւնները խառնւում էին կրօնական առասպելների հետ։ Առաջինը յոյները եղան, որ զբաղուեցին փիլիսոփայութիւնով նոյն իսկ փիլիսոփայութեան համար։ Յոնիական իմաստունները, յետոյ էլ հարաւային իտալականները կանգ չէին առնում ամենամեծ դժւարութիւնների առաջ, փորձում էին բացատրել աշխարհում գոյութիւն ունեցող ամեն բան և քննում էին մարդկային մտածողութեան օրէնքները։ Նրանցից մէկը՝ Պիւթագորէսն սկսեց մտածել հանդերձեալ կեանքի խնդրի մասին, որ այնքան մութ կերպով էր վճռւած յունական կրօնում, և կանգ առաւ այն մտքի վրայ, որ մահից յետոյ հոգին մըտնում է մի ուրիշ մարմնի մէջ՝ աստիճանաբար կատարելագործւելու, մեղքերից մաքրւելու և յանցանքների պատճառով պատժւելու համար։ Բացի դրանից նա Կրոտոնում կազմեց փիլիսոփաների մի դաշնակցութիւն, որն ամեն միջոցով պիտի ազդէր իրական կեանքի վրայ, տարածէր իր վարդապետութիւնը և հնար եղածին չափ իր ձեռքը պէտք է առնէր յունական պետութիւնների վարչութիւնները, որովհետև պէտք է կառավարեն երկիրը փիլիսոփայութեան մէջ դաստիարակւած լաւագոյն անձերը։

Այն նշանաւոր դէպքերը, որ կատարւել էին առանձին քաղաքներում,—ասիացիների հետ ունեցած հերոսական կռիւը, յունական աշխարհի բաժան-բաժան մասերը միացնելու փորձերը—այս բոլորը չէին կարող հետաքրքրութիւն չըզարթեցնել դէպի պատմութեան ուսումնասիրութիւնը։ Եւ իսկապէս՝ V դարում առաջ է գալիս Հերոդոտը, որն արժանացել է «պատմութեան հայր» տիտղոսին։ Նրա պատմութիւնը ներկայացնում է այն ժամանակի յայտնի աշխարհի բոլոր երկրների մասին մի շարք տեղեկութիւններ և վեր-

ջանում է պարսկական պատերազմների նկարագրութիւնով։ Լինելով Փոքր-Ասիայի Հալիկառնաս քաղաքից՝ Հերոդոտը ճանապարհորդել էր այն երկրների մեծ մասը, որոնց մասին ինքը խօսում է. եղել էր Բաբելոնում և Եգիպտոսում, յետոյ երկար ապրեց Աթէնքում և հարաւային Իտալիայում։ Այսպիսով նա ման էր եկել ամբողջ հելլենական աշխարհն արևելքից արևմուտք և ծանօթ էր Յունաստանի հետ կռւի մտնող պետութիւնների կեանքի հետ։ Նա իր պատմութեան մէջ պէտք եղած յարգանքները տւել է օտարականներին, թէև նա լիքն է դէպի Յունաստանը և դէպի նրա ազատ հիմնարկութիւնները տածած սիրով։ Նա ժամանակ և ախորժակ չունէր իր պատմութեան համար խնամքով հետազօտութիւններ անելու՝ այլ հոգ էր տանում գլխաւորապէս փաստերը հետաքրքրաշարժ ձևով հաղորդելու վրայ։ Ամբողջ պատմւածքի մէջ կարմիր թելի նման երևում է այն միտքը, որը երևում է և Էսքիլէսի «Պարսիկներ»-ի մէջ. աստւածները շուտ կամ ուշ պատժում են մարդկանց չափազանց յաւակնութիւնները եւ փորձերը։ Առանձին անհատների մեծութիւնը, յանդըգնութիւնը, նոյն իսկ անչափ յաջողութիւնները զինում են աստւածներին նրանց դէմ։ Այդպէս էլ պարսիկները խայտառակ կերպով ջարդւեցին, որովհետև դուրս եկան կարողութեան կամ ուժի հնարաւոր սահմաններից և ուզեցին գրաւել ամբողջ աշխարհը։

Այս գաղափարի մէջ երևում է յունական ժողովրդական բնաւորութեան հիմնական յատկութիւններից մէկը—չափի զգացմունքը։ Իրանք՝ յոյներն էլ լաւ էին հասկանում այդ բանում իրանց և շրջապատ ազգերի մէջ եղած տարբերութիւնը։ Նրանք զզւում էին միակողմանիութիւնից և կոյր յափշտակութիւնից։ Բայց ամեն տեղ միակերպ չէին իրականացնում այս իդէալները. Սպարտայի զօրանոցային կեանքն այլակերպում էր մարդկանց, խլում էր նրանցից

*հոգեկան բարձր ձգտումները, դարձնում էր նրանց պատերազմի արհեստաւորներ։ Յունական զարգացման համար ամենից շատ բան արեց Աթէնքը։ Նրա քաղաքացիները հոգ էին տանում իրանց ուժերի և ձգտումների բազմակողմանի, գեղարւեստական զարգացման մասին։ Հանգամանքները նրանց համար այնպէս ձեռնտու կերպով դասաւորւեցին, որ նրանք լիապէս բաւարարութիւն էին գտնում իրանց քաղաքի կենդանի, բազմազան կեանքի մէջ։ Աթէնական ընդունակութիւնների եւ ծգտումների ներդաշնակութեան մասին շատ նշանաւոր են Պերիկլէսի խօսքերը. «մենք սիրում ենք գեղեցկութիւնը, բայց չենք ընկնում ծոյլ փափկութեան մէջ. սիրում ենք իմաստութիւնը, բայց չենք տանջւում կամքի թուլութիւնից»։*

---

## ԳԼՈՒԽ Ը.

# ՊԵԼՈՊՈՆԷՍԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Պատերազմի պատճառները

*Ե դարի Յունաստանում՝ բոլոր փառահեղութիւնների հետ միասին՝ կային մի քանի անձեռնտու պայմաններ, որ վտանգի էին ենթարկում ժողովրդի կեանքը։ Այնտեղ ամեն բան կատարւում էր քաղաքային համայնքի՝ քաղաքացիների մի փոքր խմբակի համար։ Այդ պատճառով ամեն մի պետութեան մէջ յաջողութիւնն ու անկումը կախւած էր շատ աննշան թւով մարդիկների վարմունքից։* Այդպիսի փոքրիկ խմբակներն արագ էին հասնում բարձրագոյն զարգացման, բայց դժուար էր նրանց յետ պահել բարոյապէս փչանալուց—եսականութիւնից եւ անբարոյականութիւնից: *Աթէնքում, որի շուրջը կազմւեց մի մեծ պետութիւն, բոլոր շահերը ենթարկւած էին ընդամենը 30,000 ընտանիքի օգուտներին և ցանկութիւններին։ Միւս կողմից՝* քաղաքային ջոկ ջոկ համայնքները անկարող էին ձուլւել, մի ժողովրդական ամ-

բողջութիւն կազմել։ Զանազան միջոցներով (մասամբ բռնի) յաջողւեց կազմել երկու մեծ դաշնակցութիւններ, բայց աւելի հեռաւոր միացման խանգարում էին ոչ միայն աթէնացիների և սպարտացիների շահերի, այլ և բնաւորութիւնների անհաշտ հակադրութիւնը։ Մէկը կեանքի և հիմնարկութիւնների մէջ կայունութեան, անշարժութեան ներկայացուցիչ էր, միւսըն աչքի էր ընկնում իր շարժունութիւնով ու ձեռներէցութիւնովը։ Շուտ կամ ուշ պէտք է ընդհարում առաջանար, և աթէնական դէմոկրատների արժանիքը նրանումն է, որ նրանք այդ հասկանում էին և հնար եղածին չափ պատրաստւում էին պատերազմի։ Հակառակորդների ուժերն իրար հաւասարակշռում էին։ Սպարտան յենւում էր Պելոպոնէսի պետութիւնների և Բէովտիայի վրայ (բացի Պլատէայից), Աթէնքն ունէր իր տրամադրութեան տակ Եգէական, Սև և Մարմարա ծովերի քաղաքներն ու կղզիները։ Սպարտան կարող էր դուրս բերել համարեա երկու անգամ աւելի հետևակներ, քան Աթէնքը. դրա փոխարէն վերջինս անպայման գերակշռում էր ծովի վրայ։ Սպարտական պետութիւնն աւելի հաստատուն և աւելի դիմացկան էր. աթէնացիներն ունէին իրանց տրամադրութեան տակ խոշոր նիւթական (ֆինանսական) միջոցներ և մի բարդ ֆինանսական վարչութիւն։

Այս պայմանների համաձայն Պէրիկլէսը կազմեց իր պատերազմական նախագիծը։ Նա վճռեց ցամաքի վրայ գործել Սպարտայի գլխաւոր ուժերի դէմ պաշտպանողական կերպով, զոհել ատտիքական նահանգը և դիմադրել Աթէնքի պարիսպների ետևից։ Այս նպատակով Աթէնքը և նրա մօտի նաւահանգիստը (Պիրէոն) շրջապատւեցին ընդարձակ ամրութիւններով, որոնց դէմ անզօր էին բերդերի դէմ պատերազմելու անվարժ

սպարտացիները։ Տիրապետելով ծովերին, Պերիկլէսն
աչքի առաջ ունէր իր կողմից անհանգստացնելու
Սպարտային, յարձակւելով նրա նահանգի և դաշնակ-
ցութեան բոլոր թոյլ կէտերի վրայ։ Նա յոյս չունէր
արագ յաջողութեան վրայ, բայց յոյս ունէր վերջա-
պէս յաղթել խոշոր դրամական միջոցների շնորհով:
Միայն պահեստի դրամագլուխը (ֆօնդ) կամաց-կամաց
հասցրել էին մինչև 6,000 տաղանդի (մօտ 10 միլիօն
ոսկի ռուբլի). այն ժամանակի համար դա մի անհա-
գին գումար էր։

Պերիկլէսի վարչութեան օրով 3 անգամ պատերազմ
ծագեց Սպարտայի հետ։ Առաջին անգամ նա բաւական
ձեռնտու կերպով ընթացաւ աթէնացիների համար, բայց
նրանք ստիպւած եղան հնգամեայ խաղաղութիւն կնքել
(451), որովհետև ցրւեցին իրանց ուժերը, սկսեցին օգնել 451
Եգիպտոսում պարսիկների դէմ ծագած ապստամբութեանը
և անյաջողութիւն կրեցին այնտեղ։ Երկրորդ ընդհարումն՝
ընդհակառակը սպարտացիների օգտին եղաւ. երևան եկաւ
Աթէնքի համար մի չարագուշակ նշան—ոտքի ելան Եւբէայի
մէջ Աթէնքի դաշնակից քաղաքները, և սպարտացիները,
դրա շնորհով՝ խիստ նեղը լծեցին աթէնացիներին։ Սակայն
445 թւին յաջողւեց խաղաղութիւն կնքել 30 տարով։ Պե- 445
րիկլէսն օգտւեց այդ ընդհատումից՝ դաշնակցութեան մէջ
գործերը կարգաւորելու համար։ 440 թւին նա խեղդեց Սա- 440
մոս կղզու ապստամբութիւնը։ Երեսնական թւերին կրկին
այնքան բռնկիչ նիւթեր էին հաւաքւել, որ պատերազմը
պէտք է բռնկէր նախ քան խաղաղութեան 30 տարին լրա-
նալը։ Հակառակորդների շահերն ամեն տեղ իրար էին զար-
նւում։ Միացնելով իր իշխանութեան տակ յունական արևելքն,
աթէնացիներն սկսեցին դիմել դէպի արևմուտք և յարաբե-
րութիւններ սկսել Սիկիլիայի և հարաւային Իտալիայի հետ,
ուր մինչև այն ժամանակ գերակշռում էր դորիական ցեղը։
Աթէնացիներն օգնում էին Սիցիլիայում աքէական և յոնիական
քաղաքներին դորիական Սիրակուզայի դէմ։ Մեծ-Յունաստա-
նում նրանք հիմնեցին Թուրիա գաղութը, իսկ գլխաւորը—
իրանց հովանաւորութեան տակ առան իլլիրական ափի կո-
րընթական գաղութ Կորկիրան, որն արդէն վաղուց դէն էր

գցել մետրոպոլի իշխանութիւնը և երեսնական թւերի վերջում մտել էր նրա հետ բացարձակ պատերազմի մէջ։ Միւս կողմից՝ կորնթացիներն ապստամբութիւն ծագեցրին աթէնացիների դաշնակից Թրակիական Պոթիդէա քաղաքում։ Գարանոցի վրայ Մեգարան երբեմն Սպարտայի, երբեմն էլ Աթէնքի հետ էր միանում, իսկ Բէովտիայում պատերազմ սկսւեց Աթէնքի կողմը բռնող Պլատէայի և Սպարտայի կողմը բռնող Թէբէի մէջ։

431 **431** թւին պայթիւն առաջացաւ գլխաւոր պետութիւնների մէջ. սկսւեց պելոպոնէսեան կործանարար պատերազմը։

Պատերազմը՝ մինչև Նիկիական խաղաղութիւնը։

Պատերազմական գործողութիւններն ընթանում էին Պերիկլէսի ծրագրի համաձայն. սպարտացիներն ամեն տարի մտնում էին Ատտիկա, աւերում էին երկիրն ու բնակիչներին քշում դէպի քաղաք։ Աթէնացիներն էլ յաճախ զօրք էին հանում Պելոպոնէսի ափերը։ Սակայն այդ ծրագրի գործադրութիւնը շատ ծանր եղաւ աթէնացիների համար։ Աթէնքում կուտակւած և մի կերպ տեղաւորւած ազգաբնակութեան մէջ ժանտախտ սկսւեց, որը տանում էր հազարներով զոհեր։ Քաղաքում թագաւորում էր երկիւղը և յուսահատութեան անբարոյականութիւնը։ Խուլ կերպով տրտնջում էին, որ Պերիկլէսն անօգուտ կերպով փչացնում է բազմաթիւ մարդկանց, որոնք աւելի լաւ կը լինէր մեռնէին կռւի դաշտում։ Պերիկլէսի թշնամիներն օգտւեցին այդ անբաւականութիւնից։ Նրան ատում էին ինչպէս արիստոկրատներն, այնպէս էլ դէմոկրատների կուսակցութեան մի քանի անդամները, որոնք նախանձում էին նրա ազդեցութեանը։ Արդէն մի քանի անգամ նրա բարեկամների դէմ հանել էին մի քանի անմիտ մեղադրանքներ. Անաքսագորաս փիլիսոփան փախաւ Աթէնքից, Ֆիդիաս իրան սպանեց բանտում։ Վերջապէս վճռեցին դուրս գալ իր՝ Պերիկլէսի դէմ։ Նրան մեղադրում էին պետական գանձա-

րանից փող գողանալու մէջ, և դատարանը մեծ տու-
գանքի դատապարտեց նրան։ Այդ ամօթալի վճռից
յետոյ ժողովուրդը շուտով խելքի եկաւ։ Պերիկլէսին
նորից ստրատէգ ընտրեցին, բայց նրան այլ ևս վի-
ճակւած չէր շարունակել սկսած գործը. 429 թւին ժանտ- 429
ախտը տարաւ նրան։

Դէմոկրատիայի առաջնորդութիւնն անցաւ գըլ-
խաւորապէս Կլէոնին—մի կոպիտ և մշտապէս դէպի
բռնաբարութիւն դըդող անձի։ ժողովի եւ խորհրդի
մէջ իր ճառերով եւ առաջարկութիւններով նա գրգռում
էր ժողովրդին զօրապետների դէմ: Նա միշտ ապացու-
ցանում էր, որ պատերազմը բաւական եռանդով չէ
տարւում։ Նրա ազդեցութեան տակ դաշնակիցների
անդամավճարները կրկնապատկւեցին, իրանց՝ քաղա-
քացիների վրայ հարկ դրւեց։

Շուտով կրկին նշաններ երևացին, որոնք ցոյց
էին տալիս, որ դաշնակիցների վրայ վստահել չէ կա-
րելի. ապստամբւեց կարևոր Լեսբոս կղզին։ Երբ ապըս-
տամբութիւնը զսպւեց, Կլէոնը պահանջեց, որ սրի
անցկացնեն բոլոր տղամարդկանց, և քիչ էր մնում իր
նպատակին հասնէր, միայն հետևեալ օրը չափաւոր կու-
սակցութիւնը կարողացաւ համոզել, որ գլխատեն
միայն 1000 մարդ։

425 թւին աթէնացիներին յաջողութիւն բաժին 425
ընկաւ. Նրանց ստրատէգներից մէկը՝ Դեմոսթէնէսը
գրաւեց Պիլոսը Մեսսենայում, իսկ դրանից իսկոյն առա-
ջացան մեսսենացիների և հելոտների ապստամբու-
թիւնները։ Սպարտացիները գործն աւելի վատացրին,
ուղարկելով մի զօրաբաժին Սֆակտերիա կղզին՝—պե-
լոպոնէսեան ծոցի մուտքի մօտը։ Աթէնացիները ջար-
դեցին պելոպոնէսեան նաւատորմը և կտրեցին սպար-
տական զօրաբաժնի ճանապարհը. յետոյ՝ որովհետև
Կլէոնը պնդում էր, թէ ստրատէգները գործը ձգձգում

 են, թէ շրջապատուած սպարտացիների հետ վաղուց կարելի էր հաշիւը վերջացնել, ժողովուրդը հէնց նրան ուղարկեց Սփակտերիա: Այդ ժամանակ սպարտացիներին հասցրել էին վերջին ծայրայեղութեան, և նրանց մնացորդներն իսկապէս անձնատուր եղան Կլէոնին: Ընդամենը 120 մարդ անձնատուր եղաւ, բայց նրանք պատկանում էին սպարտական ամենաազդեցիկ ընտանիքներին, իսկ աթէնացիները նրանց պահում էին իբր պատանդ: Սպարտացիներն ստիպուած եղան արշաւանքները դադարեցնել Ատտիկայի վրայ և բաւականացան Բրասիդաս զօրավարին Թրակիա ուղարկելով: Բրասիդասը հանդիսացաւ մի նշանաւոր զօրապետ: Բրասիդասը ջարդեց աթէնական զօրքը, բայց կռւում ընկան և՛ ինքը, և՛ Կլէոնը: Սպարտացիների անյաջողութիւնը Սփակտերիայում մի կողմից, աթէնական իշխանութեան խորտակումը Թրակիայում միւս կողմից՝ երկու կողմին էլ թեքեցին
421 դէպի հաշտութիւն: 421 թուին կնքուեց Նիկիական խաղաղութիւնն այն պայմանով, որ երկու կողմն էլ վերադառնան այն դրութեան, որի մէջ գտնւում էին մինչեւ պատերազմը:

*Ալկիբիադէսը և Սիկիլական արշաւանքը:*

Բայց այդ խաղաղութիւնը շատ անհաստատ էր: Հակառակորդների գրաւած քաղաքները վերադարձնելու ժամանակ երկու կողմն էլ աշխատում էին իրար խաբել: Յարաբերութիւններն առանձնապէս սրուեցին, երբ Կլէոնից յետոյ Աթէնքում ժողովրդի սիրելին դարձաւ Ալկիբիադեսը: Նա երիտասարդ էր, գեղեցիկ, արտակարգ տաղանդի տէր, բայց չունէր ոչ մի համոզմունք և ամեն բանից բարձր էր դասում սեփական անձի օգուտն ու փառքը: Նա երազում էր փայլուն յաղթութիւններ և դրա համար էլ դրդում էր ժողովրդին վերանորոգել պատերազմը: Սկսելու համար նա Սպարտայի դէմ ոտքի հանեց նոյն իսկ

պելոպոնէսի մէջ Արգոսը և միքանի արկադիական համայնքներ։ Սպարտացիները ջարդեցին ապստամբ-ներին, բայց այդ անյաջողութիւնն Ալկիբիադէսին յետ չըպահեց իր հետևեալ ձեռնարկութիւններից։ Նա համոզեց աթէնացիներին սկսել մի խիզախ արշա-ւանք Սիրակուզայի դէմ, դրանով յոյս ունենալով սկսել արևմուտքի գրաւումը։ Այս փորձը բոլորովին հակասում էր Պերիկլէսի ծրագրին, որն զգուշացնում էր չափազանց հեռաւոր ձեռնարկութիւններից: Բայց այդ մտադրութիւնները չափազանց գրաւիչ էին աթէ-նացիների համար որոնք չէին սիրում շատ զգոյշ և դանդաղ գործել։ Նրանք մեծ զօրք և նաւատորմ կազմեցին և առաջնորդ նշանակեցին Ալկիբիադէսին
(415)։ Չւելուց անմիջապէս առաջ մի գործ պատա- 415
հեց, որը միանգամից սառեցրեց նրանց պատերազ-մական ոգևորութիւնը։ Անյայտ չարագործներ մութ գիշերով ջարդեցին Հերմէսի արձանները, որ դրւած էին փողոցների խաչաձև կտրւածքներում։ Ժողովուր-դը վրդովւեց, այդպիսի սրբապղծութիւնը թւում էր վատ նախագուշակութիւն և մերկացնում էր քաղա-քացիների մէջ անօրէն և անհաւատ մարդկանց գոյու-թիւնը։ Սկսւեց քննութիւն, և սկսեցին, ի միջի այլոց, կասկածներ յայտնել նոյն իսկ Ալկիբիադէսի մասին, որ յայտնի էր իր ազատամտութիւնով։ Սակայն նրան բաց թողին իր արշաւախմբի հետ, բայց նրա չւե-լուց յետոյ իր բազմաթիւ թշնամիները և նախանձորդ-ները նրա դէմ գործը տարան այնպիսի ճարպկու-թիւնով, որ նրա ետևից մի նոր նաւ ուղարկեցին, հրամայելով թողնել հրամանատարութիւնը և Աթէնք վերադառնալ դատւելու։ Ալկիբիադէսն այդ հրամա-նին չը հնազանդւեց և փախաւ գնաց Սպարտա։

Նրա բացակայութեան ժամանակ Սիկիլիական արշաւանքը վատ ընթացաւ։ Սիրակուզայում դիմա-

դրութիւնը կազմակերպեց սպարտացի Հիլիպպոսը։
Աթէնքի հետ յարաբերութիւնները դժուար էին։ Երկրի
ներսում տեղական ազգաբնակութիւնը համակրում էր
աթէնացիներին, բայց նրանք չը կարողացան՝ ինչպէս
պէտքն էր օգտուել նրանց օժանդակութիւնից։ Արշա-
ւանքին ակամայ մասնակցող զգուշաւոր Նիկէաս և
ձեռներէց Դեմոսթենէս ստրատէգների մէջ համաձայ-
նութիւն չըկար։ Գործը վերջացաւ կատարեալ պարտու-
թիւնով։ Սիրակուզացիներին յաջողուեց փակել աթէ-
նական նաւատորմի ելքը ծոցից դէպի ծով։ Ցամա-
քային զօրքը փորձ արեց նահանջել դէպի երկրի ներ-
սը, բայց շնորհիւ Նիկիասի սնոտիապաշտութեան (նա
վախեցաւ լուսնի խաւարումից), նահանջը չափազանց
ուշ ձեռնարկուեց, երբ սիրակուզացիներն արդէն գը-
րաւել էին ճանապարհի լեռնային կիրճերը։ Մի ամ-
բողջ շարք ուժասպառ անող ճակատամարտերից և
արագ ճամբորդութիւններից յետոյ՝ աթէնական զօրքն
անձնատուր եղաւ Հիլիպպոսին։ Գերիների հետ վարուե-
ցին չափազանց դաժան կերպով. մեծ մասն ուղար-
կուեց քարհանքները, ուր և ոչնչացաւ զրկանքնե-
րից և հիւանդութիւններից, իսկ մի քանիսներին,
413 որոնց մէջ և զօրապետներին, գլխատեցին (413)։ Ա-
թէնացիներն այս դժբաղդ արշաւանքի մէջ կորցրին
10,000 միայն հոպլիտներ, չը հաշուելով թեթևազէն-
ներին և նաւաստիներին։ Իսկ մի և նոյն ժամանակ
Սպարտան օգտուում էր Ալկիբիադէսի խորհուրդնե-
րից և սկսում էր վճռական գործողութիւններ։ Պե-
լոպոնէսցիները գրաւեցին Դեկելէան Ատտիկայում,
ամրացան այնտեղ և հանգիստ չէին տալիս ազգա-
բնակութեանը, որն ստիպուած էր ապահովութիւն ո-
րոնել Աթէնքի պատերի ետևում։ Յետոյ նրանք դաշ-
նակցութիւն կապեցին պարսիկների հետ, որպէսզի

նրանցից ստացան այն, ինչ որ նրանց պակասում էր մինչեւ այդ ժամանակ—փող եւ նաւեր։

*Աթէնքում ժողովուրդը յուսահատւեց։ Արիստակրատ կուսակցութիւնը, որը բոլորովին ոչնչացած էր երևում, գլուխը բարձրացրեց։ Ամեն տեղ ասում էին, որ գործերի վատ վարելու պատճառը դէմոկրատիան է. ժողովրդական ամբոխը բաւարար պատրաստութիւն չունի պետութիւնը կառավարելու համար. Նա ենթարկւում է շողոքորթ և անազնիւ դեմագոգների*[1] *ազդեցութեան, որոնք դրդում են նրան դէպի շուտափոյթ վճիռներ։* Աթէնացիների յուսահատութիւնն այնքան մեծ էր, որ *411* թւին, համարեա առանց դիմադրութեան նրանք ենթարկւեցին օլիգարխիական դաւադրութեան։ *Հասարակական ժողովն ինքը հրաժարւեց դէմոկրատիայից և իշխանութիւնը յանձնեց այն մասնաժողովին, որը պէտք է նոր կազմ մըշակէր։ 500-ի խորհուրդն արձակւեց, իսկ նրա փոխարէն կազմւեց 400-ի խորհուրդը, որը կենտրոնացրեց բոլոր գործերն իր ձեռքում։ Հասարակական ժողովին մասնակցելու իրաւունք ունեցող քաղաքացիների թիւը սահմանափակւեց 5,000 հոգի ամենահարուստներով, և նրանց անգամ չէին հրաւիրում ժողովի։ Ամեն բան կառավարում էին մի քանի օլիգարխներ (Պիսանդրոսը, Ֆրինիկոսը, Անտիֆոնէսը, Թերամէնոսը)։ Իրանց դուր չեկող մարդիկներին գլխատում էին կամ ուղղակի սպանում։*

*Յեղաշրջումներ Աթէնքում.*

*411*

*Այդ տեսակ մի կարգ երկար ժամանակ կանգուն մնալ չէր կարող։ Արդէն մի քանի ամսից յետոյ Օլիգարխներին վայր գլորեց ցամաքային զօրքը, իսկ նաւատորմը, որ կանգնած էր Սամոս կղզու մօտ, սկըզ-*

---

[1] *Այսպէս էին կոչւում ժողովրդի առաջնորդները։ Այժմ այդ բառը նշանակում է խառնակութիւն գցող։*

բից հրաժարուեց նրանց հրամաններին հնազանդուել.
ընտրեց սեփական ստրատէգներ և հրաւիրեց Ալկի-
բիադէսին։ Վերջինիս վերադարձը հռչակուեց Պելոպո-
նէսեան նաւատորմի դէմ մի քանի յաղթութիւններով։
410 Արդէն 410 թւին դէմոկրատիան լիովին վերականգնել
էր Աթէնքում, և Ալկիբիադէսին յաղթականի փառքով
ընդունեցին քաղաքում։ Բայց աթէնացիների տրամա-
դրութիւնը բոլորովին փչացնելու եւ նրանց խոհեմու-
թիւնից զրկելու համար բաւական էր մի պատերազ-
մական անյաջողութիւն: Ալկիբիադէսի բացակայու-
թեան ժամանակ նրա փոխարէն զօրքը վարող առաջ-
նորդը պարտութիւն կրեց. աթէնացիները զայրացան
իր՝ Ալկիբիադէսի վրայ, և նա ստիպուած եղաւ երկ-
րորդ անգամ փախչել։

Պատերազմի վերջը. Դրանից յետոյ գործերն աւելի և աւելի վատ
ընթացան։ Աթէնքի ձեռքից խիստ նեղուած դաշնակից-
ները մէկը միւսի ետևից բաժանուեցին. պելոպոնէսեան
նաւատորմը, որի գլուխն էր անցել հմուտ զօրավար
Լիսանդրը, խիստ կերպով նեղում էր աթէնական նա-
ւերին. փոքր-ասիական սատրապ Փոքր Կիւրոսը ե-
ռանդով օգնում էր սպարտացիներին, յուսալով այդ
միջոցով վերադարձնել պարսկական պատերազմներում
կորցրածը։ Մի անգամ էլ բաղդը ժպտաց աթէնացի-
ներին, բայց նրանք շատ վատ կերպով օգտուեցին դը-
րանից։ Պելոպոնէսցիների կողմից Լեսբոսի մօտ փակ-
ուած զօրաբաժնին փրկելու համար ուղարկուեց վերջին
միջոցներով կազմուած մի նաւատորմ, որ ջարդեց
թշնամուն Արգինուզեան կղզիների մօտ տեղի ունե-
406 ցած ճակատամարտում (406)։ Թւում էր, թէ պէտք էր
ուրախանալ այս յաջողութիւնով։ Բայց ստրատէգները
չը կարողացան սպանուածներին թաղել և վիրաւորնե-
րին հաւաքել ջարդուած նաւերի վրայ, որովհետև շտա-
պում էին դէպի Լեսբոս, իսկ այդ նպատակով թողնուած

*նաւերը յանձնարարութիւնը չը կատարեցին բարձրա-
ցած փոթորիկի պատճառով։ Ժողովուրդը սաստիկ
գրգռուած էր ստրատեգների դէմ. մեռելներին չը յար-
գելը նրա աչքում աւելի ծանր յանցանք էր, քան դէ-
պի վիրաւորները եղած անուշադրութիւնը։ Սպան-
ւածների ազգականները վրէժ էին պահանջում, որով-
հետև անթաղ մնացածների հոգիները, այն ժամանակի
հայացքների համեմատ, պէտք է թափառէին ստոր-
երկրեայ թագաւորութեան մուտքի մօտերը։* Կրօնա-
կան զայրոյթի ազդեցութեան տակ՝ ժողովուրդը ծայ-
րայեղ անարդարութիւնով գործեց: *Ստրատեգների
գործում բոլոր օրինական ձևերը ոտի տակ տրւեցին,
հասարակական ժողովի առանձին անդամների և, ի միջի
այլոց, նրա նախագահ Սոկրատէսի հակաճառութիւն-
ները բռնի կերպով մերժւեցին, և ստրատեգները մահ-
ւան դատապարտւեցին։ Ժողովուրդը խելքի եկաւ, երբ
զօրապետներն արդէն սպանւած էին։*

Արգենուզեան գործի վախճանը ցոյց տւեց, որ
աթէնական դէմոկրատիան բոլորովին քայքայւել էր
ուժասպառ անող պատերազմներից: *Ընդհանրապէս
նրա համար դժւար էր անձամբ ղեկավարել պատերազ-
մական ձեռնարկութիւնները, այն ինչ նա չէր կարող և
չէր ուզում ոչ ոքի յանձնել ղեկավարութիւնը։ Այդպի-
սի պայմաններում ստրատեգները գործում էին դան-
դաղ, առանց եռանդի և անհամաձայն կերպով։ 405* 405
*թւին Լիւսանդրը յանկարծակի բերեց աթէնացիներին
Հելլէս-Պոնտոսի ափերում, Եգոս Պոդամոս աւանի մօ-
տերը և կոր իգլուխ ջարդեց նրանց, իսկ 404 թւին* 404
*նա քաղցով ստիպեց նոյն իսկ Աթէնքին անձնատուր
լինել։ Խաղաղութեան պայմանները ծանր էին. դաշ-
նակցութիւնը ցրել, պարիսպները քանդել, նաւատորմը
յանձնել, բացի 16 հասարակ նաւերից։ Պատերազմի
այս տեսակ վախճանը բացատրւում է ոչ միայն սի-*

կիլական վտանգաւոր արշաւանքի անյաջողութիւնով, պարսիկների միջամտութիւնով, դէպի Աթէնքը վատ տրամադրուած դաշնակիցների դաւաճանութիւնով, ըսպարտացիների պատերազմական դիմացկանութիւնով, այլ անվիճելի ազդեցութիւն ունէր նաեւ զինուորական գործողութիւններ ղեկավարելու համար անպէտք դէմոկրատիական ժողովի մեծական միջամտութիւնը գործերի մէջ եւ այն բարոյական անկումը, որ արագ կերպով տեղի ունեցաւ քաղաքացիների սակաւաթիւ դասակարգի մէջ մտաւոր և բարոյական անսովոր զարգացումից յետոյ։

---

ԳԼՈՒԽ Թ.

## ՍՊԱՐՏԱՅԻ ԵՒ ԹՆԲԷԻ ԳԵՐԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ

*Սպարտան և Պարսկաստանը։*

Պելոպոնէսեան պատերազմն ընդմիշտ ոչնչացրեց եթէ ոչ Աթէնքի կենսունակութիւնը, գոնէ նրա ուժը։ Որքան նա ստոր ընկաւ, այնքան աւելի առաջ անցաւ Սպարտան։ Յունաստանում նա այլ ևս մրցակիցներ չունէր։ Յունական բոլոր պետութիւնները ճանաչեցին նրա գերիշխանութիւնը (հեգեմոնիա), և ամեն տեղ նա հիմնեց կամ ամրապնդեց օլիգարխիական կառավարութիւն։ Աթէնքում իշխանութիւնն ընկաւ, այսպէս կոչուած՝ երեսուն բռնապետների ձեռքը, որոնց գլուխն էին Կրիտիոսը և Թերամենոսը. աթէնական նախկին դաշնակցութեան գլխաւոր քաղաքներում հիմնեցին դեկարխիաներ՝ տասն անձերի կառավարութիւններ։ Ամեն տեղ սկսեցին գլխատումներ, հալածանքներ, ստացուածքների գրաւումներ (կոնֆիսկացիա)։ Սպարտական բերդապահները և հարմոստները կարգ էին պահպանում։ Բայց ընդունակ էք արդեօք

Սպարտան ղեկավարելու յունական աշխարհի գործերը։ Նա բաւական ուժ ունեցաւ աթէնական պետութիւնը կործանելու համար, բայց նրան սպասում էր մի աւելի ծանր խնդիր՝—կազմել իր սեփական պետութիւնը։ Այնինչ պատերազմը սաստիկ ուժասպառ էր արել այդ քաղաքը: Լիազօր իրաւունքների տէր քաղաքացիների թիւը հասել էր ընդամենը 2,000 ընտանիքի, որոնք նախանձախնդիր կերպով պահպանում էին իրանց արտօնութիւնները և իրանց շարքերը լցնելու և հասարակութեան միւս դասակարգերի բարօրութիւնը բարձրացնելու համար ոչինչ չէին անում։ Քաղաքների հետ ունեցած յարաբերութիւնների մէջ արտայայտում էր միայն յանդուգն ոյժը: Սպարտացու խօսքն օրէնք էր համարւում, եթէ նոյն իսկ նա լինէր մի մասնաւոր անձ, առանց որ և է պաշտօնի կամ յանձնարարութեան։

Աթէնքի ժառանգութիւնն ստանալով՝ Սպարտան ըստիպւած էր իր վրայ առնել և նրա արևելեան քաղաքականութեան շարունակութիւնը։ Պելոպոնէսեան պատերազմի վերջը նրան մօտեցրեց փոքրասիական սատրապ փոքր Կիւրոսի հետ, առանց որի օգնութեան հազիւ թէ կարելի լինէր աթէնական նաւատորմի հետ գլուխ ելնել։ Յենւելով սպարտացիների վրայ, Կիւրոսը հաւաքեց յունական վարձկանների մի խոշոր բանակ և վճռեց մի համարձակ գործ անել։ Նա ապստամբւեց իր Արտաշէս եղբօր դէմ և շարժւեց դէպի Ասիայի խորքերը, նրանից թագաւորութիւնը խլելու համար։ Բաբելոնից ոչ հեռու, Կունաքսի մօտերը տեղի ունեցաւ ճակատամարտ, որի մէջ Կիւրոսն սպանւեց, նրա զօրքը մի անգամից քայքայւեց և յոյները, որ իրանց թևի կողմում յաղթել էին, մենակ մնացին։ Իբր լրացումն վտանգի, պարսկական Տիսափերնէս զօրավարը՝ բանակցութիւնների պատրւակով՝ խաբելով տարաւ յունական առաջնորդներին՝ թակարդի մէջ գցեց և կոտորեց նրանց։ Այս յուսահատ դրութեան մէջ յոյները մի անգամ էլ փայլուն կերպով ապացուցեցին իրանց զինւորական կազմի անհամեմատ առաւելութիւնն ասիականից։ Ամբողջ Առաջաւոր Ասիայի միջով,

Բաբելոնից մինչև Տրապիզոն՝ Սև ծովի ափին՝ անցան
նրանք, ճանապարհ բանալով իրանց քիչ ծանօթ երկրների
և թշնամական ցեղերի միջով և մշտապէս պաշտպանուելով
401 իրանց վրայ յարձակուող պարսկական զօրքից (401 թ.)։
Նրանց առաջնորդներից մէկը՝ Աթէնացի Քսենոֆոնը նը-
կարագրեց «տասը հազարի» այս քաջագործութիւնն իր Ա-
նաբասիսի (Նահանջի) մէջ։

Արտաշէսի յաղթութիւնը Կիւրոսի դէմ, յունական
վարձկաններին հետապնդելը, պարսիկների յարձակումը
փոքրասիական ափերի վրայ՝ պարսից թագաւորին հանեցին
երես երեսի սպարտացիների հետ։ Վերջիններս Ասիա ու-
ղարկեցին Ագեսիլլա թագաւորին, և նա Կիմոնին արժանա-
ւոր յաջորդ հանդիսացաւ։ Նա մի շարք յաղթութիւններ
գործեց պարսիկների դէմ, վերականգնեց յունական տիրա-
պետութիւնը ափի երկարութիւնով և պատրաստւում էր
արդէն դէպի երկրի ներսը շարժուելու, բայց պարսիկները
միջոց գտան նրան կանգնեցնելու. Նրա ետևում, նոյն իսկ
Յունաստանում, նրանք կազմեցին Սպարտային թշնամի
քաղաքներից մի դաշնակցութիւն և ցոյց տուին նրանց ե-
ռանդուն օգնութիւն փողով և նաւատորմով։

Քաղաքների ինքնուրոյնութեան վերականգնումը։

Պելոպոնէսեան պատերազմը վերջանալուց յետոյ
յունական քաղաքներում իսկոյն սկսուեց սկզբում խուլ
և ապա բացարձակ կռիւ Սպարտայի դէմ։ Մինչև
այժմ նրա կողմը բռնող Թէբէն վախեցաւ իր ան-
կախութեան համար և ապաստարան տուեց Աթէն-
403 քից փախած դէմոկրատներին։ Արդէն 403 թւին
այս աքսորականները, Թրասիբուլոսի առաջնորդու-
թիւնով ներս խուժեցին Ատտիկա, ուր 30 բռնապետ-
ները խժդժութիւններ էին անում մշտապէս աճող
դաժանութիւնով։ Որովհետև իրանց՝ օլիգարխների
մէջ սկսուել էին երկպառակութիւններ և ծայրայեղ
միջոցների կուսակից Կրիտիոսը ոչնչացրել էր աւելի
չափաւորների առաջնորդ Թերամենոսին՝ Թրասիբու-
լոսը և իր ընկերներն առանց մեծ դժուարութեան՝
բռնապետների հետ գործը վերջացրին և վերականգ-
նեցին դէմոկրատիան Աթէնքում։ Սպարտացիները

հարկաւոր չըհամարեցին միջամտել, որովհետև ուզում
էին խուսափել Յունաստանում նոր պատերազմ սկսե-
լուց. բայց այս անսպասելի գիջողութիւնը միայն
սիրտ տւեց նրանց հակառակորդներին, և 395 թւին 395
Պարսիկների հետ միասին նրանց դէմ դաշնակցու-
թիւն կազմեցին Աթէնքը, Թէբէն, Արգոսը և մինչև
անգամ Կորնթոսը։ Սպարտան ազատւեց Ագեսի-
լայի ձեռքով, բայց նրա հարմոստներին և բարեկամ-
ներին՝-օլիգարխներին ամեն տեղից դուրս քշեցին. նրա
նաւատորմը ջարդեցին պարսիկները, որոնց առաջնոր-
դում էր Պելոպոնէսեան պատերազմի աթէնական
ստրատէգներից մէկը՝ Կոնոնը, իսկ պարանոցում՝ Կո-
րընթոսի մօտ՝ ձգձգւեց յոգնեցնող պատերազմը, որի
մէջ յաջողութիւն էր ունենում երբեմն մի, երբեմն
միւս կողմը։ Սպարտացիներն իրանց երջանիկ համա-
րեցին, երբ այդ պայմաններում նրանց յաջողւեց
ձեռք բերել Անտալկիդեան կոչւած խաղաղութիւնը
(387). յունական բոլոր քաղաքային համայնքները 387
ինքնուրոյն հրատարակւեցին, յունական ասիական
գաղութները տրւեցին պարսից թագաւորին. այս նոր
կարգը դրւեց Սպարտայի պաշտպանութեան եւ մեծ
արքայի նովանաւորութեան տակ: Սպարտական 17
ամեայ իշխանութեան արդիւնքը եղաւ մի չըլսւած
խայտառակութիւն. յունական պատերազմներից յաղ-
թող դուրս եկան պարսիկները: Նրանք համարեա
առանց կռւի հասան այն բանին, որին չըհասան Դա-
րէհն ու Քսերքսէսը լարելով բոլոր ուժերը, արևե-
լեան գաղութները կրկին դարձան պարսկական թա-
գաւորութեան նահանգներ, իսկ Եւրոպական Յունաս-
տանում ճանաչւեց պարսիկների եթէ ոչ տիրապե-
տութիւնը, գոնէ նրանց գերակշռութիւնը։

Բայց և այնպէս Սպարտացիները այդ խաղաղու-
թիւնը համարում էին ձեռնտու, որովհետև նա ի-

րանց հնար էր տալիս խառնւելու քաղաքների գործերի մէջ որևէ մէկի ինքնուրոյնութիւնը պաշտպանելու պատրւակի տակ.
382 382-ին նրանք դաւաճանութիւնով խլեցին Թէբէի Կադմէա բերդը, քաղաքում հաստատեցին իրանց սիրած օլիգարխիան և կարծում էին, որ յաջողւեց ազատւել այն վտանգաւոր հակառակորդից, որն իրանց խանգարեց օգտւելու պելոպոնէսեան պատերազմներից լիակատար չափով. բայց հէնց այդ նոր բռնաբարութիւնը դարձաւ նրանց նոր դժբաղդութիւնների աղբիւր։

Թէբէի բարձրանալը։ Ինչպէս աթէնքը գրաւելուց յետոյ Թէբէն ընդունեց Թրասիբուլոսին և իր ընկերներին, այդպէս էլ այժմ Աթէնքն ապաստան տւեց Թէբէից աքսորւած
379 ու փախած հայրենասէրներին։ 379 թւին Պելոպիդէսը և մի քանի ուրիշ Թէբէցի աքսորականներ մի կերպ տուն դարձան։ Պարող կանանց հագուստով ծպտւած, նրանք մտան այն տունը, ուր խնջոյք էին անում օլիգարխները և սպանեցին նրանց։ Սպարտական բերդապահները յանձնեցին Կադմէան այն պայմանով, որ իրանց ազատ բաց թողնեն Սպարտա գնալու։ Աթէնացիներն օգտւեցին իրանց թշնամու անյաջողութիւնից և կազմեցին մի երկրորդ դաշնակցութիւն, որի հետ միացրին Եգէյեան ծովի ամենանշանաւոր կղզիները։ Բայց քանի դեռ սպարտացիները պահում էին իրանց առաջնութիւնը ցամաքի վրայ, նրանց գերիշխանութիւնը թօթափելու բոլոր փորձերը շատ անհաստատ հետևանքներ էին տալիս։ Թէբէցիներին յաջողւեց խորտակել սպարտական հոպլիտների անյաղ-
371 թելի անունը։ 371 թւին Բէովտիայի Լևկտրիա քաղաքի մօտ Թէբէական զօրքը՝ Էպամինոնդի առաջնորդութիւնով՝ ջարդուփշուր արեց սպարտական բանակը, չնայելով նրա թւական առաւելութեանը։ Դա մի չափազանց նշանաւոր երևոյթ էր։ Երեւաց որ

սպարտական քայքայուող եւ մեռնող քաղաքային համայնքն այլ եւս հնար չունէր պահելու նախկին բարձրութեան վրայ իր ֆալանգների թիւը եւ դիրքը։ Իսկ միւս յոյների նման քաջ և ուժեղ, բայց ուրիշ ոչնչով աչքի չընկնող Թէբէցիներն ունէին Էպամինոնդի նման մի զօրապետ, որը կարողացաւ կատարելագործել ֆալանգի պատերազմական կազմը։ Նա զօրացրեց նրան յարձակողական հարուածների համար այն բանով, որ նրա առաջատար թևի շարքերի թիւը շատացրեց, այն ինչ աւելի թոյլ թևը մի քիչ յետ էր մնում։

Սպարտայի պարտութիւնը Թէբէցիների գերիշ-
խանութեան սկիզբն էր։ Էպամինոնդը մի քանի
անգամ արշաւանքներ արեց դէպի Պելոպոնէս և մի-
այն Ագէսիլայոսի ռազմագիտական արհեստը խան-
գարեց նրան առնել Սպարտան։ 362 թւին տեղի ու- 362
նեցաւ Արկադիայում, Մանտինէայի մօտ, Թէբէցինե-
րի և սպարտացիների երկրորդ գլխաւոր ճակատա-
մարտը։ Կռւի ժամանակ Էպամինոնդը մահացու վէրք
ստացաւ, բայց սպարտացիները կրկին ջարդւեցին։
Էպամինոնդի արշաւանքների արդիւնքը եղաւ Մե-
սենայի ազատութիւնը, արկադիական քաղաքների
դաշնակցութեան կազմուելը եւ Սպարտայի ուժի վերջ-
նական խորտակումը: Բայց Էպամինոնդի հետ միա-
սին Թէբէցիները կորցրին իրանց յաջողութիւնների
գլխաւոր պայմանը։ Նրանց յաջողութիւնների պատ-
ճառն էր ոգու ժամանակաւոր բարձրացումը և ա-
ռաջնորդի պատահական տաղանդը։ Յունաստանին ղե-
կավարելը նրանց ուժից աւելի բարձր էր, քան
սպարտացիների ուժից։

---

ԳԼՈՒԽ Ժ.

## ՄԱԿԵԴՈՆԱԿԱՆ ՄԻԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

Փիլիպպոս Մակեդոնացին։

Թէբէցիները բաւարար ուշադրութիւն չը դարձ-
րին հիւսիսային Յունաստանում կազմւող մի նոր
ուժի վրայ, որն սպառնում էր ամբողջ Թերակղզու
ապահովութիւնը։ Պելոպոնէսեան պատերազմի ժա-
մանակ մակեդոնական ժողովուրդը, որ խառնուրդ էր
Իլլիրական ու Թրակիական բարբարոսների և յոյների,
սկսեց դուրս գալ վայրենի վիճակից և խառնւել յու-
նական գործերի մէջ։ Մակէդոնական լեռներում տի-
րող խաշնարած դրութիւնն սկսեց կամաց կամաց
տեղի տալ երկրագործութեան. խոշոր կուլտուրական
ազդեցութիւն էին գործում Խալկիդական Թերակղզու
քաղաքները։ Մակեդոնիան կառավարում էին ժառան-
գական թագաւորներ յունական հարստութիւնից, որն
իր սկիզբն առած էր համարում Արգոսի Հերակլիան-
ներից։ Բայց թագաւորների իշխանութիւնն աննշան
էր. նրանք յաճախ պէտք է կռւէին առանձին նա-
հանգների անհնազանդ առաջնորդների հետ, և նոյն
իսկ թագաւորող տան մէջ միշտ խառնակութիւններ
էին լինում։ Մակեդոնիայի համար նոր դարագլուխ
359 սկսւեց 359 թւին, երբ թագաւորեց Ամինտաս
II-ի որդի Փիլիպպոսը։ Նա ստացաւ յունական լաւ
կրթութիւն Թէբէում, ուր՝ ինչպէս աւանդութիւնն
ասում է՝ ապրում էր Էպամինոնդի տանն իբրև պա-
տանդ։ Յունական քաղաքների մէջ եղած յարաբերու-
թիւնները և նրանց թուլութիւնները նրան լաւ յայտ-
նի էին. նա ուշադրութեամբ հետևում էր պատե-
րազմական գործերում կատարւող նոր գիւտերին և

կատարելագործություններին։ Իսկ որ գլխավորն է՝ նա խորամանկ էր և ուներ յարատև կամք, որը, չը նայելով անյաջողություններին ու յետաձգումներին, երբեք չէր շեղւում մի անգամ դրւած նպատակից։

Փիլիպպոսը Մակեդոնիայում արագ յաղթեց իր բոլոր հակառակորդներին և պինդ կերպով ամրացրեց իր իշխանությունը։ Նա շատ բան արեց ազգաբնակչության բարօրությունը և զարգացումը բարձրացնելու համար, բայց նրա գլխավոր հոգսն էր առաջնակարգ բանակ պատրաստելը։ Մակեդոնական թագավորի ձեռքում յունական զինվորական կազմը չէր կարող մնալ առաջւայ պէս քաղաքացիական կամավորների գրնդեր։ Փիլիպպոսը մշտական զօրք հաստատեց, հավաքելով կամավորներ Մակեդոնիայի պատերազմասէր երիտասարդներից։ Արդէն յունական վարձկանները ցոյց էին տւել, թէ որպիսի ռազմական կատարելութեան կարող են հասնել մասնագէտ[1] զինվորները։ Փիլիպպոսն աւելի ևս զարգացրեց Էպամինոնդի միտքը և ձևափոխեց ֆալանգը. որպէս զի այդ միապաղաղ և ծանր գանգւածի ոյժը հասցնէ իր ամենաբարձր աստիճանին, նա դասավորեց նրան երկարաձիգ քառանկյունու ձևով, որի մէջ իրար ետև կանգնած շարքերի թիւը հասնում էր երբեմն 25-ի. իսկ զինվորներին նա զինեց երկար նիզակներով (սարիսսա) փոխանակ կարճ տէգերի, այնպէս որ ստացւում էր նիզակների մի խիտ անտառ, որին ճակատից ջարդել անհնար էր։ Ֆալանգի թոյլ կողմերն էին կողքերը և թիկունքը. բացի դրանից նա դիւրաշարժ չէր և կարող էր շարժւել միայն հարթ տեղերով։ Նրան օժանդակելու և գործակցելու համար Փիլիպպոսը մեծ ուշա-

---

[1] Մասնագէտ (սպեցիալիստ)—մի մարդ, որն ամբողջապէս նւիրում է իրան մի որ և է գործի։

դրությունը դարձրեց հեծելազորի և թեթև հետևակի բարելավման վրա։

Ցոները նրան ժամանակ տվին իր թագավորությունը և զորքը կազմակերպելու։ Աթենացիները միուսներից առաջ զգացին հիսախոսում կատարվող փոփոխությունը։ Նրանք ցույց տվին իրանց կենսունակությունը, արագ կերպով ուղղելով պելոպոնեսյան պատերազմից յետոյ։ IV դարի 50-ական թվերին նրանց ելևմուտքը (ֆինանս) փայլուն վիճակի մեջ էր, չը նայելով որ Եգեական ծովի կղզիները հեռացել էին դաշնակցությունից։ Բայց քաղաքում տիրում էր մի փոքրոգի տրամադրություն, որ քիչ էր նմանում V դարի քաղաքացիական արիությանը։ Կազմել էր, ինչպես Պերիկլեսի ժամանակ, մշտական պետական դրամագլուխ, բայց դա պատերազմական պէտքերի համար պահեստ չէր, այլ տոնախմբությունների ծախքերը ծածկելու համար և ժողովուրդը թշնամաբար էր վերաբերւում այդ փողերի մի մասն ուրիշ նպատակների համար գործադրելու ամեն մի փորձին։

Օգտվելով աթենացիների ունեցած կռվից կղզիների հետ, Փիլիպպոսը գրավեց նրա դաշնակից քաղաքների մեծ մասը Թրակիայի ափերում (Ամֆիպոլիսը, Պոտիդէան և այլն)։ Ցետոյ նրան առիթ ներկայացավ միջամտելու Թէսալիայի և Միջին Ցունաստանի գործերի մէջ։ Ֆոկէացիները կողոպտեցին Դելֆեան տաճարը և նրա գանձերի շնորհով կազմեցին բավական խոշոր պատերազմական ույժ, որի հետ դրացիներից ոչ մեկը չէր կարող գլուխ ելնել։ Երբ Ֆոկէացիները խուժեցին Թեսալիա, թեսալացիների մեծ մասն օգնության կանչեց Փիլիպպոսին, որն սկզբներում գործեց նոյնպէս անյաջող կերպով, բայց վերջապէս իր նպատակին հասավ և ֆոկէական զորքին վճռական ջարդ տվեց։ Նա արդէն պատրաստվում էր Թերմոպիլեան կրճով անցնել Ֆոկիդա, բայց այստեղ աթենացիները նրան անսպասելի և վճռական դիմադրություն ցույց տվին։ Նրանք շտապով նավատորմ ուղարկեցին, որը և խանգարեց թագավորին Թերմոպիլէն

գրաւելու։ Փիլիպպոսը պատասխանեց, յարձակւելով Թրակիայի աթէնական աղդեցութեան ամենամեծ պատնէշի—Ոլինթոսի վրայ։ Նոյն աթէնացիները, որոնք այնքան եռանդով փակեցին Միջին Յունաստանի ճանապարհը, վատ կերպով պաշտպանեցին Ոլինթոսը։ Յունաստանի ամենամեծ հռետոր Դէմոսթենէսն ամեն ջանք գործ դրեց, որ բացատրէ իր համաքաղաքացիներին, թէ ինչ սարսափելի դժբախտութիւն է սպառնում նրանց, թէ ինչպէս նրանք անհետեւողականութիւնով, իրանց գործողութիւնների պատահականութիւնով զիջանում են մի դիրք միւսի ետեւից խորամանկ թշնամուն, որը չէ քնում ոչ մի րոպէ և օգտւում է ամեն մի սխալից։ Հասարակական ժողովը երբեմն լսում էր Դէմոսթենէսին, երբեմն էլ թեքւում էր նրա հակառակորդների կողմը. հակառակորդներն էին տաղանդաւոր, բայց մակեդոնացիներից կաշառւած Էսքինէսը և անպայման ազնիւ Ֆոկիոնը, որ համարում էր քաղաքն անընդունակ Փիլիպպոսին դիմադրելու։ Ոլինթոսին օգնեցին, բայց ոչ եռանդուն կերպով, և նա ընկաւ, քաջ դիմադրութիւնից յետոյ։ Շուտով դրանից յետոյ Փիլիպպոսին յաջողւեց աւելի եւս կարեւոր մի քայլ անել։ Աթէնացիներին հանգստացնելով՝ նրանց հետ դաշն կապելով, նա զօրքը քաշեց և անցկացաւ Թերմոպիլէով։ Դրան իբր բարեձեւ պատրւակ ծառայեց Դելֆիսի համար վարւող սրբազան պատերազմին միջամտելը, որը դեռ եւս ձգձգւում էր թէբեցիների և ֆոկէացիների մէջ։ Տիրելով անցքին, նա կարող էր մտնել միջին Յունաստան, երբ նրան պէտք լինէր կամ երբ բարեհաճէր։ Մի քանի տարի անցկացաւ պատրաստութիւնների և դիւանագիտական յարաբերութիւնների մէջ։ Երբ Փիլիպպոսն սկսեց նւաճելու փորձ անել Աթէնքի դաշնակցութեան մէջ եղած վերջին հիւսիսային քաղաքները և անյաջողութիւն կրեց՝ նա կրկին միջամտեց միջին յունական վէճերի մէջ և կրկին Դէլֆիսի պաշտպանութեան բարեձեւ պատրւակով—այս անգամ Լոկրիացիների դէմ։

Կռիւ Աթէնքի հետ.

Վերջապէս Դէմոսթենէսի եռանդի շնորհով յաջողւեց համոզել աթէնացիներին և թէբէցիներին թշնամութիւնը մոռանալու և ընդհանուր թշնամու դէմ միանալու անհրաժեշտութեան մէջ։ Բայց արդէն ուշ էր։ Չը նայելով դաշնակիցների յուսահատ քաջութեանը,

նրանց քաղաքային կամաւորների գնդերը չը կարողա-
ցան դիմանալ Փիլիպպոսի յարատև պատերազմների մէջ
եփուած զինուորների կռւին։ Քէրոնէայի մօտ, Բէով-
338 տիայում, նա լիակատար յաղթութիւն տարաւ (338)։
Բայց նա նրանից օգտուեց շատ կակուղ ձևով։ Փո-
խանակ պատժելու եւ ճնշելու, նա իր համար դրեց
մի նոր ու մեծ նպատակ, որն արդէն նախագծուած
էր յունական պատմութեան ձեռքով եւ որը պէտք է հաշ-
տեցնէր յոյներին իրանց անկախութիւնը կորցնելու
հետ: Կորնթոսում տեղի ունեցած յունական քաղաք-
ների պատգամաւորների ժողովում նա առաջարկեց
արշաւանք սկսել Պարսկաստանի դէմ։ Քաղաքները
համաձայնուեցին օգնական զօրաբաժիններ հանել և
ընդհանուր զօրքի առաջնորդ ընտրեցին մակեդոնական
թագաւորին։ Սա եղաւ Փիլիպպոսի վերջին վարպետ
քայլը։ Բայց պարսկական արշաւանքի պատրաստու-
թիւնների ժամանակ նրան սպանեց իր թիկնապահ-
336 ներից մէկն (336) անձնական վրէժի պատճառով։
Մակեդոնական արքային յաջողուեց այն գործը,
որ չը կարողացան կատարել յոյներն իրանք. նա միա-
ցրեց Էլլադան, միայն բռնի ուժով։ Դրա համար էլ Յու-
նաստանում առաջաւոր գլուխներից շատերը հաշտւում
էին բարբարոս թագաւորի առաջնութեան հետ։ Աթէ-
նական հռետոր Իսոկրատը ողջունեց նրան ինչպէս
մանր խռովութիւններից ազատողի և բախտից ընտրուած
առաջնորդի Պարսկաստանի հետ ունենալիք կռւի մէջ։
Եւ այն հանգամանքը, որ Փիլիպպոսը մակեդոնական պե-
տութեան գլուխն էր՝ ապագայի համար դա համարւում
էր իբր մի կարևոր նշան։ Մակեդոնիայի բարբարոս ազ-
գաբնակութիւնը ներշնչուեց յունական սովորութիւննե-
րով ու դաստիարակութիւնով, իր զինուորական հիմքերը
փոխ առաւ Յունաստանից. ճիշտ է՝ Մակեդոնիան չը
դարձաւ լիապէս հելլէնական նահանգ, բայց նա եղաւ

*առաջին հելլէնիստական պետութիւնը, այսինքն մի բարբարոս երկիր, որ իր մէջ ընդունեց յունական կուլտուրան։*

*Փիլիպպոսի մահից յետոյ գահ բարձրացաւ նրա քսանամեայ որդի Աղեքսանդրը։ Նա ստացաւ յունական կրթութիւն Արիստոտէլ մեծ փիլիսոփայի առաջնորդութեամբ և շատ վաղ ցոյց տուեց արտակարգ ընդունակութիւններ։ 18 տարեկան հասակում արդէն նա հրամայում էր մակեդոնական բանակի մի ամբողջ թևին Քերոնէայի մօտ և ամենից շատ օգնեց յաղթութիւնը տանելուն։ Աղեքսանդրը ներշնչւած էր յունական անցեալի բոլոր լաւ ձգտումներովը և խրատներովը. Նրա սիրելի հերոսն Աքիլլէսն էր, որին վիճակւեց վաղահաս փառք և վաղահաս մահ։ Միւս կողմից նա իրան զգում էր իծնէ իշխող, անհնարին ոչինչ չէր ընդունում և վարժւեց վարկենաբար իր կամքը կատարել։ Այդ հուր բնաւորութեան համար խաղաղութիւնն անտանելի էր և վնասակար. Նրա կեանքը կազմում էին աննման արագութիւնը և գործողութեան վճռականութիւնը։* **Աղեքսանդր Մեծ**

*Աղեքսանդրի առաջին միջոցներն ուղղւած էին Բալկանեան թերակղզու վրայ կարգն ապահովելուն։ Դանուբի կողմն արած կարճ արշաւանքը բաւական էր Թրակիական բարբարոսներին խաղաղացնելու համար։ Փիլիպպոսի սպանութեան լուրը և Աղեքսանդրի մահւան մասին տարածւած սուտ զրոյցն ալէկոծեցին յոյներին։ Մակեդոնական նոր թագաւորը ցոյց տուեց նրանց, որ հօրից յետ չէ մնում։ Նա յանկարծ երևաց Բէովտիայում, ջարդեց ապստամբներին և սարսափեցնելու համար՝ կործանեց Թէբէն։ Հօգ տանելով թիկունքի կողմում խաղաղութիւնը պահպանելու մասին, նա քաշեց մակեդոնական և յունական զօրքերն, ընդամենը 36,000 մարդ և Հելլէս-Պոնտոսով անցաւ Ասիա (334)։* 334

Կռիւ Պարսիկների հետ։

*Արշաւանքի մի քանի պայմանները բարեյաջող էին, իսկ միւսները ոչ։* Ալէքսանդրի տրամադրութեան տակ էր այն ժամանակի աշխարհի ամենալաւ բանակը եւ գնում էր մի թագաւորութեան դէմ, որ կազմած էր իրար հետ վատ կերպով միացրած նահանգներից՝ թուլացած կառավարութիւնով: *Տասը հազարի նահանջը և Ագեսիլայոսի արշաւանքը ցոյց տուին, թէ ինչ կարող են անել այս փխրուն զանգուածի մէջ փոքրիկ յունական զօրաբաժինները, առաջնորդուած ճարպիկ զօրագլուխներով։ Բայց կային և դժուարութիւններ։ Դեռ չը հաշուած Ասիայի անծանօթ խորքերն արւող արշաւանքի վտանգը, պէտք էր հաշուի առնել պարսկական ծառայութեան մէջ եղած բաւական բազմաթիւ յունական քաջ և լաւ մարզուած զօրքը. այդ վարձկանները մօտ 30,000 էին և նրանց առաջնորդում էր փորձուած զօրավար Մեմնոնը։ Վերջապէս Պելոպոնէսեան պատերազմի և վերջին դէպքերի շնորհով՝ Պարսիկները, այսինքն իսկապէս փիւնիկեցիները, կրկին տիրել էին ծովին։*

*Բայց էլի Ալէքսանդրը համարձակ գնաց Սարդայի վրայ, յուսալով հանդիպել Պարսից բանակի հետ բաց դաշտում։ Մեմնոնը խորհուրդ տուեց պարսիկներին խուսափել ճակատամարտից և մակեդոնացիներին քաշել երկրի ներսը. պարսիկները նրան չը լսեցին և փորձեցին պաշտպանել փոքր ու սրընթաց Գրանիկոն գետի անցքը։ Յոյն վարձկանները լաւ դիմադրեցին, բայց մակեդոնական հեծելազօրի յարձակումը քանդեց ասիական զօքքի կարգը, և պարսիկները լիակատար պարտութիւն կրեցին։ Ալէքսանդրն անցաւ Փոքրասիական ափի երկարութիւնով և գրաւեց յունական գաղութները։ Միայն Հալիկառնասում նրան կատաղի դիմադրութիւն ցոյց տուին։ Զը վրդովւելով ասիական նաւատորմի գործողութիւններով, որ կտրում էր նրա*

*յարաբերութիւնները Եւրոպայի հետ՝ Նա անցաւ Թերակղզու ամբողջ հարաւային ափը։ Կիլիկիայի և Ասորիքի անկիւնում, Ամանոս շղթայի լեռնային տեղում, Իսսոսի մօտ Նա հանդիպեց պարսկական գլխաւոր բանակին՝ Նոյն իսկ մեծ արքայի՝ Դարեհ Գ-ի առաջնորդութեան տակ և* ահագին, բազմացեղ ամբոխը փշուր-փշուր եղաւ մակեդոնական ֆալանգների առաջ։ *Յոյներն արագ Նուաճեցին Ասորիքը և Փիւնիկիան։ Տիւրոսը պաշտպանւում էր յուսահատօրէն և 7 ամիս յետ պահեց յաղթողին։ Այստեղից Ալեքսանդրը շարժւեց դէպի Եգիպտոս, որը միշտ ատում էր պարսիկներին և խկոյն հպատակւեց Նրա Թշնամիներին։ Ալեքսանդրը կարողացաւ դէպ ինքը տրամադրել ազգաբնակութիւնը Նրանով, որ յարգանքով վերաբերւեց դէպի Եգիպտական կրօնը։ Նա Նոյն իսկ արշաւանք սկսեց անապատի Ներսը, որպէսզի այցելէ Ամօնայի հռչակաւոր տաճարին Սիվահեան օազիսի մէջ։ Քուրմերը Նրան ընդունեցին հանդիսաւոր կերպով և յայտարարեցին Նրան աստուած՝ արևի որդի։ Եգիպտոսից Ալեքսանդրը շարժւեց Ասորեստան։ Գաւգամելայի մօտ Նրան կրկին հանդիպեց Դարեհի բանակը, որ կազմւած էր մարաց և պարսից ամենալաւ զօրքերից։ Այս անգամ կռիւը յամառ էր, և գործը վճռեց Ալեքսանդրն անձնապէս, ընկնելով պարսից վրայ՝ իր հեծելազօրի գլուխն անցած։ Դարեհն սպանւեց փախուստի ժամանակ իր սատրապներից մէկի ձեռքով, իսկ յաղթողն առանց արգելքի գրաւեց արևելեան Թագաւորների հին մայրաքաղաքները—Բաբելոնը, Սուզան և Պերսեպոլիսը։ Այդ վերջին քաղաքում Նա գրաւեց Դարեհի անհամար գանձերը։*

*Այս դէպքերով վերջանում է (331) կռիւը պարսիկների հետ, և սկսւում է մի Նոր շրջան Ալեքսանդրի գործունէութեան մէջ։* Նա ինքը դարձաւ պար- *Ալեքսանդրի միապետութիւնը։* **331**

սից թագաւոր եւ Աքեմէնեաններից իբր ժառանգութիւն ստացաւ որոշ քաղաքական պարսականութիւններ եւ սովորութիւններ։ *Պարսկական թագաւորութիւնն ամրացնելու համար, նա արշաւանքներ ձեռնարկեց դէպի այն ժամանակւայ լուսաւոր աշխարհի հիւսիսային և արևելեան սահմանները։ Պատերազմասէր տեղացիների հետ մշտապէս ծանր կռիւ մղելով, նա հասաւ մինչև Թէքինեան օազիսին, Բուխարային և Թուրքեստանին։ Այժմեան Խօջէնտի տեղում նա հիմնեց «ծայրագոյն Ալեքսանդրիան»-ամենահեռաւոր յունական բնակավայրը միջին Ասիայում։ Այստեղից նա դարձաւ դէպի հարաւ և, Դարէհ Վշտասպեանի օրինակով, շարժուեց դէպի Հնդկաստան։ Հնդկական իշխաններից մէկի դաշնակցութիւնով նա ջարդեց Փենջաբի իշխաններից ամենագլխաւորին՝ Պորոսին, և հասաւ Գանգէս և Ինդոս գետերի ջրաբաշխ անապատին։ Նրա նպատակն էր անցնել Գանգէսի հովիտը, բայց զօրքը հրաժարուեց նրան հպատակուելուց. մինչև անգամ այդ ամեն տեսակ ճակատամարտերի և պատահարների մէջ քարացած զինուորների համար անհնար էր թւում աւելի հեռու շարժուել դէպի արևելք։ Զը նայելով թագաւորի խնդրանքներին, զինուորները պնդեցին վերադառնալ։ Ալեքսանդրն ինքն էլ էր հասկանում, որ չէ կարող այդ նահանգները լիովին իրան հպատակեցնել, և թէ և հիմնեց Հնդկաստանում երկու սատրապութիւններ (կուսակալութիւններ), բայց իշխանութիւնը թողեց Փենջաբի իշխաններին և բաւականացաւ իր խնամակալութիւնն ընդունել տալով։ Վերադարձին Ալեքսանդրը շինեց մի մեծ նաւատորմիղ և Նէարքոսի առաջնորդութեամբ ուղարկեց Պարսկական ծոցը, իսկ ինքը գնաց ցամաքով Գեդրոզեայով (այժմ Բելուջիստան)։ Երկու ամիս զօրքը գնում էր անջրդի անապատներով և քիչ էր մնում ծարաւից*

*ոչնչանար։ Հարաւային Պարսկաստան դուրս գալը և Նէարքոսի էլ նաւատորմի համնելը տօնւեց իբրև ազատում դժւարին արշաւանքի վտանգներից* (325)։ 325

*Ալէքսանդրը դարձաւ ասիական մեծ միապետութեան ներկայացուցիչ. Նրա գործունէութիւնը, բնականաբար, խիստ փոխւեց թէ իշխանութեան ձևի, թէ պետական հարցերի և թէ հպատակների վերաբերմամբ։ Նա առաջւայ պէս չէր կարող մնալ միայն զինւորներին մտերիմ մի զօրապետ, Մակեդոնիայի նահապետական գլխաւոր և յոյների ընտրովի առաջնորդ։* Նրա առաջ խոնարհւում էր արեւելեան ժողովուրդների ամբողջ աշխարհը, որ սովորել էր նայել իր միապետների վրայ իբրեւ աստուածային ուժի մարմնացման վրայ։ *Ալէքսանդրը բաւականութիւն էր գտնում այդ երկրպագութեան մէջ, Նրա քաջագործութիւններն այնքան անհաւանական էին, նա իրան այնքան բարձր էր զգում միւս մարդիկներից, որ նրա իշխանութեան գնահատութիւնն արևելքցիների կողմից նրան թւում էր բնական և կանոնաւոր։ Հարկաւոր դէպքերում նա սկսեց պարսկական զգեստ հագնել և կրել «մեծ արքայի» թանկագին քարերով ծածկւած խոյրը (թիարա). շրջապատեց իրան դրանիկների բազմաթիւ խմբով, սկսեց պահանջել. որ հանդիսաւոր դէպքերում իրար մօտեցողները ծնկի գան։ Հիւսիսային արշաւանքի ժամանակ նա ամուսնացաւ Բակտրիայի իշխանի դստեր հետ և, բացի դըրանից, Հնդկաստանից վերադառնալուց յետոյ՝ կնութեան առաւ և Դարէհի աղջկան։ Այս բոլոր կարգերը խոր կերպով վրդովում էին մակեդոնացիներին և յոյներին, որոնք այդպիսի ոչ մի բան չէին տեսել իրանց հայրենիքում. Նրանք դիտում էին Ալէքսանդրի մեծութիւնն իբր իրանց ձեռքի գործը և ամենևին*

տրամադիր չէին Փիլիպպոսի որդուն համարել աստւածային մարմնացում։ Մակեդոնական ամենաարժանաւոր զորավար Պարմէնիոնի որդի Փիլոտասի շուրջը դաւադրութիւն կազմւեց, որին Ալէքսանդրը խեղդեց մեծ դաժանութիւնով։ Դրա պատճառով Փիլոտասն ու Պարմէնիոնը կեանքերը տւին։ Մակեդոնական միւս առաջնորդ Կլիտէսը, որ Գրանիկոնի մօտ փրկեց Թագաւորի կեանքը, մի խնջոյքի ժամանակ իր յանդուգն խօսքերով այնպէս գրգռեց Ալէքսանդրին, որ սա իր սեփական ձեռքով սպանեց նրան։ Բայց և բացի այդպիսի առանձին ընդհարումներից՝ բոլոր բանակում սկսեց երևալ մշտական արշաւանքներից յոգնածութեան և անհնազանդութեան ոգի։ Գործը հասաւ զինւորների բացարձակ ապստամբութեան, որից յետոյ այդ վետերանների[1] մեծ մասն արձակւեց տուն գնալու։

Ալէքսանդրի ներքին քաղաքականութիւնը։

Թէև կարելի էր Ալէքսանդրին յանդիմանել իր գործողութեան ձևն ու կեանքը փրկելու համար, բայց ոչ ոք նրան չէր կարող մեղադրել անգործութեան մէջ։ Արշաւանքներից յետոյ էլ նա շարունակեց գործել. լայն ծրագիրները մէկը միւսի ետևից ծագում էին նրա երևակայութեան մէջ և նա անմիջապէս ձեռք էր զարկում նրանց իրագործելու։ Արեւմուտքի եւ արեւելքի միացումը, պարսկական պետութեան մէջ յունական կարգերն ու ոգին մտցնելը կազմում էին նրա մտական հոգսերը: Պսակւելով պարսից Թագաւորի աղջկայ հետ, այդ առիթով նա կազմեց Եկբատանում մի արտակարգ տօնախմբութիւն — իր 10,000 զինւորների պսակն ասիական աղջկների հետ։ Արդէն հնդկական արշաւանքներում նրան ուղեկցում էին պարսկական զորաբաժինները։ Նրանից վերադառնա-

---

[1] Վետերան — երկար ժամանակ ծառայած զինւոր։

*լուց յետոյ նա վերակազմեց ամբողջ բանակը, մտցը-նելով նրա մէջ բազմաթիւ նորակոչներ ասիական ցե-ղերից։ Գետերի և նաւագնացութեան վրայ նա պա-կաս ուշադրութիւն չը դարձրեց, քան բաբելական կամ եգիպտական թագաւորները. միայն նրա համար գետն աւելի նշանակութիւն ունէր իբրև հաղորդակ-ցութեան միջոց, քան ոռոգման ջրանցք։ Նախկին պարսկական թագաւորութեան գլխաւոր թուլութիւն-ներից մէկն էլ նրա բաժան-բաժան լինելը, կենտրո-նի և մասերի մէջ յարաբերութիւնների դժուարու-թիւնն էր։ Ալէքսանդրը հոգ տարաւ ճանապարհներ շինելու և աւազակային ցեղերը ոչնչացնելու վրայ, որոնք վտանգաւոր էին դարձնում ճամբորդութիւնը։* Այս իսկապէս «մեծ» թագաւորի գլխաւոր ծառա-յութիւնը կայանում էր մի ամբողջ շարք *(մօտ 70)* քաղաքներ հիմնելում այն բոլոր գլխաւոր ճանապարհ-ների վրայ, որտեղով նա անցնում էր։ *Ե՛ւ Նեղոսի, և՛ Սիր-Դարիայի, և՛ Ինդոսի վրայ նա ցրում էր իր «Ալէքսանդրիա»-ները։ Նրանից եգիպտական Ալէք-սանդրիան համաշխարհային քաղաք դարձաւ, Եւրո-պայի, Ասիայի և Աֆրիկայի կենտրոն և, ինչպէս յայտնի է, մինչև օրս էլ պահում է իր մեծ նշանակութիւնը։ Ալէքսանդրի գաղութներից շատերը ոչնչացան, բայց մեծ մասն իր գործը կատարեց։ Օտար ցեղի մէջ թողնուած բերդապահ գունդը դառնում էր վաճառա-կան ազգաբնակութեան համար յենարան, իսկ սա իր կարգին տարածում էր յունական լեզուն, արհեստնե-րը, հաստատութիւնները, կրօնական գաղափարները։ Մի խօսքով՝ Ալէքսանդրը կարողացաւ մի նոր յունա-արևելեան կուլտուրայի հիմք դնել։ Բայց նրան վի-ճակուած չէր տեսնել նրա աճելն ու տարածուելը. մահը տարաւ նրան Բաբելոնում՝ Արաբիայի չորս կողմը շըր-ջելու համար կազմուող արշաւախմբի պատրաստու-*

323 թիւնների ամենաատաք ժամանակները (323)։ Նա 32
տարեկան էր։

Ալէքսանդրի միապետութեան բաժանումը։

Ալէքսանդրի մահից յետոյ իշխանութեան համար ծագում է մի երկար, արիւնալի և անպտուղ կռիւ նրա զօրապետների (Դիադօք-յաջորդ) մէջ։ Այս պատերազմների լուրջ նշանակութիւնը նրանումն է, որ դրանք ցոյց էին տալիս այդ հսկայական պետութեան միութիւնը պահպանելու անհնարինութիւնը։ Իպսոսի
301 ճակատամարտից յետոյ (301) նա վերջնականապէս
բաժանուեց մի քանի անկախ պետութիւնների։

1. Մակեդոնիա, ուր հաստատուեց Անտիգոնէսի սերունդը։ Նրանից կախման մէջ էր և Յունաստանը, որի ժողովրդները սակայն միշտ ալէկոծւում և փորձեր էին անում ինքնուրոյն լինելու։ Անցեալի պատմութիւնը սովորեցրել էր նրանց միաբան գործել և դրա համար էլ III դարի քաղաքական շարժումների մէջ դեր են խաղում ոչ թէ առանձին քաղաքներն, այլ դաշնակցութիւնները, որոնցից մասնաւորապէս առաջ են անցնում Էտոլիականը—միջին Յունաստանում և աքէականը՝ Պելոպոնէսում։ Վերջինս ձգտում էր դառնալ ընդհանուր Պելոպոնէսեան դաշնակցութիւն և իր հետ միացրեց Կորնթոսն ու Սիկիոնը, բայց Սպարտան թշնամական դիրք բռնեց և իր կամակորութիւնով շատ օգնեց այն բանին, որ մակեդոնացիները կրկին ձեռք բերին Յունաստանում ղեկավարողի նշանակութիւն։ Նրանք այդ դիրքը պահեցին մինչև որ երկիրը գրաւեցին հռոմայեցիները։

2. Ասիան ստացաւ Սելեւկոսը: Սելեւկեանները ամենից աւելի մօտիկ էին պահում իրանց Ալէքսանդրի քաղաքականութեան աւանդութիւններին։ Նրանց է պատկանում բազմաթիւ քաղաքների հիմնարկութիւնը, որոնցից մի քանիսը՝ մասնաւորապէս Անտիոքը՝ շատ մեծ նշանակութիւն ստացան։ Դէպի այս

ասիական պետութիւնն էին ձգտում խմբերով գաղթականներ Յունաստանից և Մակեդոնիայից։ Յատկապէս այնտեղ էր տեղի ունենում բարբարոսների ամենաեռանդուն հելլենացումը, նրանց ենթարկւելը յունական ազդեցութեանը։ Բայց Սելևկեան միապետութիւնը չափազանց մեծ էր, և նրա զանազան մասերն իրար հետ քիչ կապ ունէին։ III դարում բաժանւեց պարթևական թագաւորութիւնը Եփրատից դէպի արևելք՝ մինչև Հնդկաստան։ Նրա մէջ գերակշռում էին իրանեան ցեղի հովիւ ժողովրդները, որոնք պարսկական տիրապետութեան շրջանում առանձին նշանակութիւն չունէին, իսկ այժմ վերականգնեցին Իրանի անկախութիւնը։ Վերին Եփրատի ափերում կազմւեց Հայկական պետութիւնը. Փոքր-Ասիայում կազմւեցին՝ Պոնտոսի Թագաւորութիւնը Սև ծովի ափերում, Պերգամի և Բիւթանիայի պետութիւններն արևմուտքում։

3. Եգիպտոսն ընկաւ Պտղոմէոսի իշխանութեան տակ։ Հելլենիստական կուլտուրան այստեղ զարգացաւ աւելի մեծ կէնտրոնում, մասնաւորապէս Ալէքսանդրիայում։ Այս քաղաքում կուտակւեց կէս միլիոն ժողովուրդ, որի մէջ մտնում էին այն ժամանակի յայտնի աշխարհի համարեա բոլոր ցեղերից եկւորներ։ Պտղոմէանք եռանդով խնամակալում էին ոչ միայն վաճառականութիւնն, այլ և գեղարւեստները և գիտութիւնը։ Նրանց ստեղծած ալէքսանդրեան թանգարանը ներկայացնում էր և՛ հաւաքածու նշանաւոր իրերի, և՛ բնակարան հռչակաւոր գիտնականների համար, և՛ դահլիճներ, և՛ պարտէզներ համալսարանական պարապմունքների համար։ Նրա մօտ գտնւում էր մի աննման գրադարան 700,000 ձեռագրերով՝ հին աշխարհի բոլոր լեզուներով։ Ընդհանրապէս մտաւոր կողմից Ալէքսանդրիան դարձաւ հելլենականութեան մայրաքաղաքը։ Բայց յոյների ազդեցութիւնը ժողովրդի

վրայ երբէք այնքան ուժեղ չէր Եգիպտոսում, որքան Ասիայում։ *Պտղոմէանք պէտք չունէին քաղաքներ շինելու—նրանք օգտւում էին արդէն գոյութիւն ունեցողներից և ընդհանրապէս նրանք* խոնարհւում էին եգիպտական ժողովրդի կրօնական եւ քաղաքական անցեալի առաջ. *նրանք մի քանի բաներում խոստովանում էին նրա առաւելութիւնը յունական կուլտուրայից։ Դրա համար էլ երկրի ազգաբնակութիւնը չէր միմիայն ենթարկւում յոյներին, այլ իր կարգին զօրեղ կերպով ազդում էր և նրանց վրայ։*

---

**ԳԼՈՒԽ ԺԱ.**

## *ՅՈՒՆԱԿԱՆ ԿՐԹՈՒԹԻՒՆԸ։ ԱՆԿՄԱՆ ՇՐՋԱՆ*
## (431—146 *Թ.*)

*Յունաստանի անկումը։*

*Յունական պետական կեանքի անկումն սկսւում է պելոպոնէսեան պատերազմից, որի մէջ ղեկավարող քաղաքները փոխադարձաբար իրար քայքայեցին։ Մեծամեծ հետևանքների հասնելով, թէ աթէնացիները, թէ միւս յոյներն սկսեցին փչանալ յաջողութեան ազդեցութեան տակ։ Եւ քաղաքային համայնքի մէջ փակւած պետութիւնը, և՛ մարդակերպ աստւածների երկրպագութեան վրայ հիմնւած կրօնը քայքայւեցին։ Այդ ժամանակի մտածողները և արւեստագէտներն սկզբում քննադատաբար էին վերաբերւում իրանց շրջապատող հասարակութեանը, նշաւակում, ցոյց էին տալիս նրա թերութիւնները, իսկ յետոյ փորձեր էին անում նրան նոր ճանապարհի վրայ դնելու։*

*Թուկիդիդէս*

*Պետական կեանքի առանձնայատկութիւնները շատ սիրուն կերպով դուրս է բերել Թուկիդիդէսն իր պելոպոնէսեան պատերազմի պատմութեան մէջ։ Նա ա-*

թէնական ստրատէգ էր, բայց ստիպուած եղաւ մայ-
րենի քաղաքից փախչել Բրասիդէսի դէմ արած ան-
յաջող արշաւանքից յետոյ և իր կեանքի մնացած տա-
րիները նուիրեց պատերազմի ընթացքը դիտելուն և
նրա նկարագրութեանը։ Հակառակ Հերոդոտի՝ նա ա-
մեն բանից բարձր է դասում վերականգնել իսկա-
կան, կրքերով եւ դիւրահաւանութիւնով չաղաւաղ-
ուած ճշմարտութիւնը: Նա ջանում է անկողմնակալ
կերպով վերաբերուել բոլոր կուսակցութիւններին և
գործիչներին, ցոյց տալ շահերի և տեսակէտների
տարբերութիւնները, բացատրել գործերի ընթացքն
առանց գերբնական միջամտութեան։ Նրա պատմուած-
քի մէջ բնորոշւում է ոչ միայն բարքերի ընդհանուր
անկումը, այլ և երևում է դատապարտութիւն հին
կազմի մեծամեծ ախտերի, ինչպէս օրինակ՝ դէպի
յաղթուածները և թոյլերը գոյութիւն ունեցող դաժան
տմարդութիւնը։ Պատմուածքի եղանակը միշտ լուրջ է
և տեղ-տեղ տխուր։

Ուրիշ դիրք ունէր Աթէնքում Եւրիպիդէսը, նրանց մեծ Եւրիպիդէս
ողբերգակներից վերջինը։ Նա արդէն գրել էր սկսել մինչև
պատերազմը, բայց նրա գլխաւոր գործունէութիւնը կապ-
ուած է աթէնական դէմոկրատիայի անկման հետ պատերազ-
մի ժամանակ։ Եւրիպիդէսը Թուկիդիտէսի նման բնաւորու-
թեան տէր մարդ չէր, որ դիմէր միշտ իր նպատակին, չեն-
թարկուելով հմայքներին ու հակասութիւններին։ Նրա ող-
բերգութիւններում արտայայտւում են այն ժամանակի կեան-
քի բոլոր տատանումները եւ կասկածները եւ վճիռ չեն գտնում։
Էսքիլէսն ու Սոֆոկլէսն ամեն բանից վեր էին դասում ամ-
բողջի տպաւորութիւնը, իսկ Եւրիպիդէսն իր մեծ տաղանդը
գործ դրեց առանձին բնաւորութիւնների, դիրքերի և զգաց-
մունքների փայլուն նկարագրութեան վրայ. հէնց դրանով
էլ սա նրանցից զանազանւում է։ Ոչ ոք սարսափի և խղճա-
հարութեան այդպիսի զօրեղ տպաւորութիւններ չէ թողել
հանդիսականների վրայ։ Բայց Եւրիպիդէսը հանդիսական-
ներին չէր տալիս այն գեղասիրական և բարոյական բաւա-
կանութիւնը, որոնցով վերջանում էին նրա նախորդների

դրամաները։ Նա առանձնապէս սիրում էր ներկայացնել իր հերոսների հոգու մէջ եղած զգացմունքների և դրդումների կռիւը և երբեմն մէջ էր բերում երկար վիճաբանութիւններ զանազան քաղաքական կամ բարոյական հարցերի առիթով։ Յաճախ առանց վճռի էին թողնում հոգու մաշող կռիւը, մտքի գլուխ տրաքեցնող հանելուկները։ Դրա համար էլ Եւրիպիդէսն սկսեց դիմել արհեստական ելքի—որ և է աստծու միջամտութեան, որը հեռացնում, ոչնչացնում էր դժւարութիւնը։ Ընդհանրապէս Եւրիպիդէսի ողբերգութիւնները ծայրայեղ կերպով ազդում, ցնցում էին հանդիսականներին, գրգռում նրանց շահերը, յափշտակում էին բանաստեղծական արտայայտութեան արհեստով, բայց թողնում էին նրանց շփոթւած և զարմացած աստւածների օրէնքների, բարոյականութեան և ճշմարտութեան վերաբերութեամբ։

Արիստոֆան։ Մեր ձեռքն են հասել Պելոպոնէսեան պատերազմի մի ուրիշ ժամանակակցի՝ Արիստոֆանի փայլուն կատակերգութիւնները։ Յունական կատակերգութիւնն սկզբում զարգացաւ դորիացիների մէջ, բայց իր ամենալաւ պտուղները կրկին Աթէնքում տւեց։ Այնտեղ նա մշակւեց, դարձաւ մեր ամենօրեայ կեանքի բարքերն ու տիպարները նկարագրող կենսական կատակերգութիւնից մի բոլորովին տարբեր բան։ Արիստոֆանն օգտւում է շրջապատող հասարակութեան ախտերիցն ու յիմարութիւններովը, բայց նրանցից ստեղծում է երևակայական ծաղրանկարներ, կատակի համար, կանգ չառնելով ամենաանհաւանական, հնարովի պատկերների առաջ անգամ. օրինակ՝ «Ասպետներ» կատակերգութեան մէջ խօսում է այն մասին, որ պարոն Դէմոսի ստրուկ Կլէոնը խլում է միւս ստրուկներից տիրոջ ողորմածութիւնը շողոքորթութիւնով և ստորութիւններով. միւսները համոզում են մի կալբաս (երշիկ) շինողի, որը և մրցութեան է մտնում Կլէոնի հետ տիրոջ բարեհաճութիւնը գրաւելու համար և Կլէոնից աւելի խորամանկ ու շողոքորթ է դուրս գալիս։ Վերջ ի վերջոյ կալբաս շինողը տարօրինակ կերպով վերադարձնում է Դէմոսին իր նախկին երիտասարդութիւնը և կտրճութիւնը, որոնցով նա աչքի ընկաւ Մարաթոնի դաշտում,—այսինքն եփում է նրան մի կաթսայի մէջ։ «Իշամեղուներ» կատակերգութեան մէջ ծեր, կիսախելագար հելիաստը[1] ձգտում է, ինչ էլ որ լինի՝ դա-

[1] Հելիաստներ—դատաւորներ, որ արևի հետ միասին նստում էին դատի և ցրւում էին նրա մայր մտնելու հետ։

տարանի նստին գնալ, և նրա որդին, ցանկալով նրան տանը պահել, սարքում է մեղուաբ շան պատը։ Աթէնական դէմոկրատիայի, նրա դիւրահաւատութեան, թեթևամտութեան, իր մասին մեծ կարծիք ունենալու վրայ շատ կծու կերպով է յարձակւում Արիստոֆանը, թէև ինքը՝ բանաստեղծն աւելի լաւ կարգեր առաջարկելու անկարող է։

Սոփեստները և Սոկրատէսը

Գործերի վատ ընթանալու լուրջ նշանն էր՝ այսպէս կոչուած՝ սոփեստների, յատկապէս իմաստութիւն սովորեցնող ուսուցիչների երևալը. դրանք փողովյանձն էին առնում սովորեցնել աշխարհի ըմբռնումը և կեանքից օգտւելու արհեստը։ Նրանց մէջ կային նշանաւոր մտածողներ, օրինակ՝ Պրոտագորասը, և նրանք փիլիսոփայութեան վրայ մեծ ազդեցութիւն ունեցան, դարձնելով նրան տիեզերքի մասին մտածողութիւններ անելուց դէպի մարդու ուսումնասիրութիւնը։ Սոփեստութեան հիմնական սկզբունքն էր՝ «մարդը բոլոր առարկաների չափն է»։ Նրա ընդհանուր ազդեցութիւնը կործանաբեր էր. սոփեստներն սկսեցին ուսումնասիրել առանձին մարդիկների, որպէս զի ցոյց տան, որ մարդու համար համոզեցուցիչ են միայն իր սեփական զգացմունքների վկայութիւնները և պարտաւորեցուցիչ է միայն իր սեփական շահը. կը նշանակէ՝ նրանք չէին ընդունում ոչ մի ընդհանուր ճշմարտութիւն, ոչ էլ մի ընդհանուր բարոյականութիւն: Ուրիշների հետ ապրելու արհեստը դարձրել էին ուրիշներին խաբելու կարողութիւն, ինչպէս օրինակ՝ թոյլին ուժեղ ներկայացնել։ Ալկիբիադէսը, Կրիտիոսը գործադրում էին կեանքի մէջ սոփեստութեան դասերը։ Նրա դէմ դուրս եկաւ Սոկրատէսը։ Հպատակւելով ներքին «աստուածային» ձայնին, նա բոլոր փողոցների վրայ և ամեն դասակարգի ու զբաղմունքի տէր մարդիկների հետ ունեցած խօսակցութիւններում սկսեց տարածել մարդուն ուսումնասիրելու մի ուրիշ ձև։ Նա անխնայ կերպով քանդում էր այն ընդ-

*հանուր խոսքերը, որ մարդիկ կրկնում են իբրև սովորութիւն, հաշիւ չը տալով իրանց, թէ ինչ են ասում։* Բայց նա եռանդուն կերպով պնդում էր, որ հնարաւոր է ստոյգ եւ ամենի համար պարտադիր գիտութիւնը, եւ այդ գիտութիւնից դուրս էր բերում նա բարոյականութեան եւ իմաստութեան օրէնքները։ *Ճիշտ այդպէս էլ Սոկրատէսը միշտ ցոյց էր տալիս, որ* մարդու իսկական բարիքը կայանում է ոչ թէ իր պատահական ցանկութիւնների եւ կամապաշտութիւնների (կապրիզ) իրականացման մէջ, այլ ճշմարտութեան համաձայն կեանքի մէջ։ *Այդպիսի կեանքը մարդուն դարձնում է ազատ, նա դադարում է իր ցանկութիւնների ստրուկը լինելուց, բարձրանում է հմայքներից և երկիւղից բարձր։ Եւ Սոկրատէսը գործով ցոյց էր տալիս, որ իր վարդապետութիւնը կառավարում էր իր բոլոր վարմունքը. նա չէր որոնում ոչ մի շահ, չէր վրդովւում աղքատութիւնից և կիսախելագարի, տարօրինակ մարդու հռչակից։ Նա իր քարոզութեան համար կեանքը տուեց։ Նրան մեղադրեցին՝ իբր թէ նա քանդում է դէպի աստուածները եղած հաւատը։ Մեղադրանքը սուտ էր, որովհետև Սոկրատէսը յարգում էր իր հայրենիքի աստուածներին։ Բայց նա չը մտածեց անգամ ներողութիւն խընդրել հելիաստներից բոլոր հարցերի վերաբերութեամբ արած իր համարձակ հետազօտութեան համար. ընդհակառակը՝ նա նոյն իսկ նուէր (վարձ) պահանջեց նրա համար, որ զարթեցնում է քաղաքացիների մէջ միտքը և թոյլ չէ տալիս նրանց ընկնելու ծոյլ ինքնաբաւականութեան գիրկը։ Աթէնական երդուեալ դատաւորները վիրաւորուել էին այդ տեսակ պաշտպանութեան տարօրինակ անարգանքներից և «մեծ ար-*
399 *դարին» դատապարտեցին մահուան (399)։ Պլատոնի կազմած «ապոլոգիան» (պաշտպանողական ճառը)*

վկայում է Սոկրատեսի այն ազատ և ջինջ ոգին, որի համար գոյություն չունեն երկյուղի կամ անձնասիրության մանր դրդումները, որն ամբողջովին նվիրված է ճշմարտության և ընդհանուրի օգտին։ Սոկրատեսի գործը շարունակեցին հնության ամենամեծ փիլիսոփաները—Պլատոնը և Արիստոտելը։

Պլատոն

Սոկրատեսն իր հայեացքներն արտայայտում էր խոսակցություններով և ոչ մի փորձ չարեց գրելու կամ հրատարակելու նրանց։ Նրանցից փիլիսոփայական տեսություններ դուրս բերեց Պլատոնը։ Իր ուսուցչի յիշատակի համար նա իր շարադրությունները կազմեց գեղարվեստական երկախոսությունների ձևով և իբր գլխավոր խոսակից ամեն տեղ դուրս բերեց Սոկրատեսին։ Հակառակ սոփեստների, որոնք պատահական և մշտապէս փոփոխական էին համարում մարդկանց հայեացքները, իսկ ճշմարտությունն անըմբռնելի, Պլատոնը մարդկային մտքի, նրա օրէնքների և նրա գաղափարների մէջ տեսնում էր տիեզերքի հիմունքը կազմող յաւիտենական ճշմարտության արտացոլումը։ Նրա վարդապետությունը դարձաւ ծայրայեղ իդէալիզմ. [1]) իրականությունը նրա մէջ բռնում է երկրորդական տեղ, առաջնությունը թողնելով գաղափարին։ Պլատոնը քննեց փիլիսոփայության բոլոր հարցերը և, ի միջի այլոց, շօշափեց մարդկանց յարաբերությունների կազմության հարցը։ Պետական կեանքի բոլոր հնարաւոր կարգերից ամենաանմիտը և վնասակարը թւում էր նրան դէմոկրատիական կազմը, որը նա համարում էր տգէտ և կամակոր ամբոխի տիրապետություն։ Իրան յատուկ համարձակությունով նա մտածեց մի ուրիշ պետություն, որի մէջ պէտք է կառավարող լինէին փիլիսոփաները, զինուորականների ժառանգական կաստան [2]) պէտք է պաշտպանէր կարգը ներքին և արտաքին թշնամիների դէմ, իսկ բոլոր մնացած ազգաբնակությունը պէտք է իրան նւիրէր արդիւնաբերական պարապմունքների՝ իրան և միւս երկու բարձր

---

[1]) Իդէա—գաղափար բառից։ Դա մի վարդապետություն է, որ ամեն ինչ առաջացած է համարում գերագոյն գաղափարից։ Ծ. Թ.

[2]) Դասակարգ, որ իր անդամների թւի մէջ թոյլ չէ տալիս ուրիշ ծագումի մարդիկ մտնելու։

դասակարգերին կերակրելու համար։ Փիլիսոփաների և զինուորականների մէջ ոչնչացւում է ընտանիքը և սեփականութիւնը—բոլորն ապրում են պետութեան համար և պետութեան մշտական ազդեցութեան տակ։

Արիստոտէլ

Պլատոնի աշակերտը, բայց ոչ նրա հետևողը եղաւ հնութեան միւս մեծ փիլիսոփան՝ Արիստոտէլը։ Համաձայն լինելով սոկրատական դպրոցի հայեացքների հետ գիտութեան նշանակութեան վերաբերութեամբ, նա այդ հասկանում էր ոչ իբրեւ բանաստեղծական ներշնչումն, այլ իբր իրականութեան ստոյգ ուսումնասիրութեան եւ հետազօտութեան արդիւնք։ Նա դարձաւ գիտական ռէալիզմի [1]) հիմնադիրը, ինչպէս Պլատոնն իդէալիզմինը։ Անդադրում կերպով նա աշխատում էր գիտութեան բոլոր ճիւղերի վերաբերութեամբ տեղեկութիւններ հաւաքելով—մարդկային հոգու և բարոյականութեան ուսումնասիրութեան մասին, բնագիտութեան (ֆիզիքա), օդերևոյթաբանութեան, կենդանաբանութեան մասին և այլն։ Փաստերը հաւաքում էր նա ոչ թէ դատարկ հետաքրքրութեան և յիշողութիւնը ծանրաբեռնելու համար, այլ նրա համար, որ նրանց ընդհանրացնէ և նրանց վրայ հիմնէ իր փիլիսոփայական սիստեմը (համակարգութիւնը)։ Պլատոնի նման նա էլ ուսումնասիրեց պետութիւնը։ Նա խնամքով նկարագրեց 158 յունական համայնքների և բարբարոս ժողովրդների կազմը։ Նրա «քաղաքականութիւնը» («պօլիտիքա») հեռու է Պլատոնի «հասարակապետութեան» չափազանցութիւններից ու երևակայութիւններից։ Արիստոտէլ զգոյշ կերպով վերարտադրում է պետական ձևերի դասաւորութիւնը, այսինքն՝ պետական կազմութեան հնարաւոր տեսակները, ցոյց է տալիս, որ 3 հիմնական տեսակներից իւրաքանչիւրը—միապետութիւնը, օլիգարխիան, դէ-

---

[1]) Ռէալիզմ—մի փիլիսոփայութիւն, որ ընդունում է իրական աշխարհի գոյութիւնն այնպէս, ինչպէս կայ և գաղափարները դուրս է բերում իրական կեանքի աստիճանաբար ուսումնասիրութիւնից։ Սա պնդում է, որ գաղափարները դուրս են գալիս իրական աշխարհի ուսումնասիրութիւնից և ընդհանրացումներից, իսկ իդէալիզմը պնդում է, որ իդէան արտացոլում, իրականանում և դառնում է երևացող իրականութիւնը։ Տ. Թ.

մոկրատիան—կարող է որոշ պայմաններում լինել ամենա-
լաւ կարգը, և թէ ինչպէս, միւս կողմից, նրանցից ամեն մէկը
կարող է այլասեռուել և դառնալ չարագործութիւնների աղբիւր։
Քաղաքականութիւնը պէտք է հիմնուի պատմութեան վրայ
եւ յարմարուի մարդկային հասարակութիւնների պայման-
ներին եւ պահանջներին։ Այսպիսով Արիստոտէլն արդէն
դուրս է գալիս իր դիտողութիւնների մէջ քաղաքային հա-
սարակապետութեան նեղ շրջանակից։ Բայց նա հաւատարիմ
է մնում հին հասկացողութեանը՝ հասարակական կեանքի
կազմութեան մի այլ կարևոր հարցի առիթով. նա դեռ լիո-
վին համոզուած է, որ ստրկութիւնն անհրաժեշտ է, որովհե-
տև՝ նրա կարծիքով՝ միայն ստրկական աշխատանքը կարող
է փոքրամասնութեանը տալ ազատ ժամանակ և միջոց, ո-
րոնք անհրաժեշտ են հոգեպէս և քաղաքականապէս կատա-
րելագործուելու համար։

Երբ հետևանք մակեդոնական նուաճումների՝ յու- Հելլենիզմ
նական կուլտուրան տարածւում է իր սահմաննե-
րից դուրս, ինչպէս գետը, որ դուրս է գալիս իր
ափերից և հեղեղում է շրջակայ դաշտերը։ Նա թա-
փանցում է Բալկանեան թերակղզու հիւսիսային մասը-
արևմտեան Ասիան, Եգիպտոսը։ Այդ կուլտուրան իս-
կական հելլենական կրթութիւնից ջոկելու համար՝ կո-
չել են հելլենիստական: Շատ ծաւալուելով՝ յունական
կուլտուրան շատ բանով փոփոխւում է և կորցնում
է ինքնամփոփումը, ինքնուրոյնութիւնը և չափի
զգացմունքը։ Այդ փոփոխութիւնը խիստ կերպով ար-
տափայլում է պլաստիքական (նիւթական) գեղար-
ւեստների վրայ։ Պրակսիտելէսը, որ ապրում էր IV
դարի առաջին կիսում, դեռ ևս կարող էր մրցել նոյն
իսկ Ֆիդիասի հետ։ Նա ջանում է գլխաւորապէս
պատկերացնել ֆիզիքական գեղեցկութիւնը. նա վերջ-
նականապէս մշակեց Աֆրոդիտէի տիպարն այդ աս-
տուածուհու Կնիդիական արձանով. Նրան է պատկա-
նում նոյնպէս և հրաշալի Հերմէսը, որ գտնուել է
Ոլիմպիայում։ Բայց նրա ստեղծագործութիւններում

զգայական կողմն արդէն սկսել է գերակշռել գաղափարականից։ *Իսկ յետագայ արձանագործները (մանաւանդ Պերգամի դպրոցը) ձգտում են պատկերացնել ճիգ, շարժում, կրքոտ վրդովմունք։ Օրինակ՝ Լաօկօնի խումբը տպաւորութիւն է թողնում հոգեկան և ֆիզիքական տանջանքների նրբութիւնների բազմազանութիւնով։ Կամաց-կամաց մեծացնում են չափերը, որպէս զի ներգործեն հսկայականութիւնով (Ռոդոսի հսկան)։*

*Հելլենիզմի դարաշրջանում գիտութիւնն այնպիսի առաջադիմութիւններ արեց, որոնց մասին մտածել անգամ չէին կարող աթէնական V դարի փիլիսոփաները։ Եւկլիդէսը հիմք դրեց երկրաչափութեան։ Հիպպարքոսն առաջ քշեց աստղաբաշխութիւնը, Սիկիլիացի Արքիմեդէսը—մեքենայագիտութիւնը, Երատոսթենէսն՝ աշխարհագրութիւնը, Արիստարքոսը՝ լեզուաբանական քննադատութիւնը (Հոմերոսի դիւցազներգութիւնների բնագրի քննադատութիւնը)։* Չը նայելով այդ բոլորին՝ զգացւում էր ամբողջացման եւ կեանքի պակասութիւն. *մասնագէտները խորասուզւում էին իրանց առանձին բաժիններում, իսկ նրանց ձեռք բերած գիտութիւնները չէին միանում, մի կենդանի ամբողջութիւն կազմում։ Մի խօսքով՝ կորել էին միութիւնն ու հաւասարակշռութիւնը, որոնցով աչքի էր ընկնում ծաղկման դարաշրջանի քաղաքացու կեանքը։*

*Բայց էլի արդիւնքները շատ մեծ էին և ընդմիշտ հետքեր թողին։* Ստեղծւեց արեւելքի հելլենիստական նոր աշխարհը, որի մէջ իրար հանդիպեցին եւ միախառնւեցին մինչեւ այդ ժամանակ բաժան-բաժան ժողովրդական հոսանքները։ *Ոչ մի բանում այդ ինքնուրոյն կուլտուրաների միախառնումն այնքան ուժեղ կերպով չերևաց, որքան կրօնի մէջ։ Յոյներն արդէն իրենց երկրում սկսել էին բարձրա-*

նալ բազմաստուածութեան հայեացքներից։ Նրանց լաւագոյն անձերն զգում և արտայայտում էին, որ չէ կարելի աստուածութիւնը պատկերացնել մահկանացու և մեղանչական մարդու պատկերով և նմանութիւնով, որ երևոյթների բազմազանութեան միջից դուրս ցոլացող աշխարհի միութիւնը ենթադրում է նրան կառավարող Ստեղծողի միութիւնը, որ մարդկային հոգու կեանքը նիւթական չէ, չէ միացած մարմնի հետ անբաժան կերպով և բոլորովին տարբեր պայմանների մէջ հանդերձեալ կեանքը հնարաւոր է։ Պարսկական դուալիզմը (երկուութիւն) արևի սեմիտական պաշտաման և հանդերձեալ աշխարհի եգիպտական հասկացողութեան հանդիպումն արտադրեց կամայական և այլանդակ միաւորումներ տարացեղ աստուածների։ Բայց դրանից յետոյ աւելի և աւելի ուժեղ կերպով սկսեց տարածուել այն համոզումը, որ առանձին անունների եւ նշանների տակ մարդկութիւնը պաշտում է միշտ միեւնոյն Աստուածութիւնը, որի ոյժն արտայայտւում է բնութեան բոլոր երեւոյթներում։ Այդ հողի վրայ արևելեան աշխարհն արդէն կարող էր պատրաստուել քրիստոնէութիւնն ընդունելու։

# ԵՐՐՈՐԴ ՄԱՍ

# Հռոմ

## ԳԼՈՒԽ Ա.

## ԻՏԱԼԻԱՅԻ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆԸ

*Երկիրը* *Ապենինեան թերակղզին, որի վրայ է գտնւում Իտալիան, հիւսիսից սահմանափակւում է* բալկաններից աւելի դժւարանցանելի Ալպեան շղթայով։ *Միայն հիւսիս-արեւելքում և հիւսիս-արևմուտքում կարծես լեռների մէջ բացւում են դռներ, որոնցով կարող են եկւորները ներս թափանցել։* Ծովափերը յունական ափերի նման շատ չեն բաժանւած ու կտրտւած ծոցերով: *Ամենայարմար ծոցեր նա կազմում է հարաւ-արեւմուտքում. իսկ արեւելեան կողմը եզրափակւում է ծանծաղուտներով և ճահճոտ տափարակներով։ Մակերևոյթի կազմութիւնը նոյնպէս աւելի նւազ բարեյաջող է արեւելքում, որովհետև Ապենինեան շղթան, որ բաժանում է թերակղզին երկու մասի, աւելի է մօտենում արեւելեան ափին և չէ թոյլ տալիս մեծ-մեծ գետեր և դաշտավայրեր կազմւելու։* Ինչպէս Յունաստանում արեւելքն'էր պատմութեան գլխաւոր բեմը, այնպէս էլ Իտալիայում արեւմուտքը:

*Երկիրը բաժանւում է երեք գլխաւոր մասերի.*

1) Վերին Իտալիա—*Ալպերից մինչև ցամաքի և թերակղզու միաւորւելու տեղը (արեւելքում սահ-*

մանը կազմում է Ադրիատիկան ծովը թափուող Ռուբիկոն գետակը)։ Երկիրը մի հարթ շերտով ձըգւում է արեւելքից արեւմուտք։ Նրա գլխաւոր մասը կազմում է Պօ գետի հովիտը. Նրա հետ միաւորւում է Լիգուրիական ծովափն արեւմուտքում, Վենետիկեանն արեւելքում։

2) Միջին Իտալիա — Ապեննինեան շղթայով բաժանւում է երկու մասի. արեւմուտքում բացւում են Արնօ (Էտրուրիան կամ Տոսկանիան), Տիբեր (Լացիում) և Վօլտուրն (Կամպանիա) գետերի հովիտները։ Արեւելքում տարածւում են Ումբրիա, Պեցենիում և Սամնիում լեռնային գաւառները։

3) Հարաւային Իտալիա — Բաժանւում է երկու թերակղզիների. արեւմտեանի վրայ ընկած են Լուկանեան և Բրուտտիումը, արեւելեանի վրայ Ապուլիան և Կալաբրիան։

Երկրի մակերևոյթի կազմութիւնն իր լեռնաշըղթաների առատութիւնովը յիշեցնում է Յունաստանը, բայց և այնպէս Էլլադայի չափ դատապարտուած չէ բաժան-բաժան մնալու։ Բաւական մեծ գետերն ու հովիտները հնարաւորութիւն են տալիս արեւմուտքում ժողովրդներին շուտով միաւորուելու եւ կազմելու ընդարձակ դաշնակցութիւններ եւ պետութիւններ։

Բարեյաջող ոռոգմանը համապատասխանում է լաւ կլիմայ և պտղաբեր հող։ Այս բոլոր հանգամանքներն իտալական ազգաբնակութեան մեծամասնութիւնը դարձրել էին դէպի երկրագործութիւն, թէև լեռնային տեղերում յամառութիւնով պահպանւում էր խաշնարածութիւնը։ Ծովագնացութեան զարգացման համար յարմար պայմաններ ներկայացնում էր միայն հարաւային Իտալիան իր մօտ գտնուած Սիկիլիայով։

**Ազգաբնակութիւնը**

Թերակղզու սկզբնական ազգաբնակութիւնը պատկանում էր Լիգուրիական կարճահասակ, սևահեր ցե-

դին (Սպիտակ ցեղից)։ Նա ամենից լաւ պահպանուել է Թերակղզու հիւսիս արևմուտքում, այժմեան Սավոյայում և Պիէմօնտում, և աչքի էր ընկնում իր կայունութիւնով, աշխատասիրութիւնով, բայց ոչ ընդունակութիւններով։ Յետոյ երևացին **արիական** գաղթականներ, յոյներին մօտ ազգակից։ Նրանք բաժանուեցին մի քանի ճիւղերի։ **Եապիգները** բռնեցին Թերակղզու հարաւային մասը և անցան Սիկիլիա. իտալական ցեղերից ամենաանինքնուրոյնը նրանք եղան և արագ կերպով ենթարկուեցին յոյներին։ **Սաբելական** ումբրիացի, մարս, սաբինացի, սամնիտացի ցեղերը բռնեցին Թերակղզու արևելեան կէսի լեռնային տեղերը։ Նրանց մէջ խիստ աչքի են ընկնում լեռնականների բնաւորութեան գծերը—հայրենի երկրի սէրը, հնութեան հետ կապուած լինելը, որ հասնում էր մինչև յետամնացութեան, բարքերի նահապետականութիւնը և խստութիւնը։ Արևմտեան կիսում տեղաւորուեցին **լատինացիները**, որ իտալական ցեղերից ամենաընդունակները և ամենաշուտ տպաւորուողները դուրս եկան։ Նրանց գլխաւոր քաղաքն էր Հռոմը՝ Տիբեր գետի վրայ։

Բացի այս ժողովրդներից, որոնք կազմում էին ազգաբնակութեան մեծամասնութիւնը, այժմեան Տոսկանիայում հաստատուեց առեղծուածային ժողովուրդ՝— **էտրուսկները**, որ բոլորովին նման չէին ամեն կողմից իրանց շրջապատող արիներին։ Կարելի է կարծել, որ էտրուրացիներն սկզբնական լիգուրական ցեղի մնացորդ էին, որ հասել էին բարձրագոյն կուլտուրայի։ Ինչպէս էլ որ եղած լինի, իտալական պատմութեան սկզբում նրանք հանդիսանում են Թերակղզու ամենից լուսաւոր ցեղը։ Նրանք հասել էին ճարտարապետութեան և մետաղների մշակութեան բաւական խոշոր կատարելագործութեան։ Եգիպտացիների նման նրանք մեծ ուշք

էին դարձնում մարդու վիճակի վրայ մահից յետոյ և դրա համար էլ առանձին խնամք էին տանում թաղման ծէսերի և արժանավայել գերեզման շինելու վրայ։ Նրանց պաշտամունքն աչքի էր ընկնում իր մռայլ և դաժան բնաւորութիւնով. Նրա մէջ նշանաւոր դեր էին կատարում մարդկային զոհերը։

Արդէն ասւած է այն հելլենական գաղթականութիւնների մասին, որոնք հարաւային Իտալիայում արժանացան Մեծ-Յունաստան անւան։ Բացի դրանից IV դարում Քր. առաջ հիւսիսային Իտալիայում հաստատւեցին կելտական աշխարհակալները, որոնք բռնեցին Պօ գետի հովիտը։

---

Գ Լ Ո Ւ Խ Բ.

## ԱՄԵՆԱՀԻՆ ՇՐՋԱՆԻ ՀՌՈՄԷԱԿԱՆ ԿՈՒԼ-ՏՈՒՐԱՆ

Մենք շատ քիչ բան գիտենք իտալական ժողո- Կրօնը
վրդների ամենահին կեանքի մասին, բացի հռոմայեցիներից—լատինական ժողովրդների գլխաւորից։ Դրա համար ստիպւած ենք ակամայ սահմանափակել մեր բնորոշումը միայն հռոմայեցիներով, որոնց, ինչպէս երևում է, շատ նման պէտք է լինէին լատինական և սաբելական ցեղի միւս ժողովրդները։

Հռոմէական կրօնը ներկայացնում է աստուածութիւններ, նման յունական աստուածութիւններին: Զևսին համապատասխանում է Իւպիտէրը, Հերային՝ Իւնոնան, Պոսէյդոնին՝ Նեպտունը, Հադէսին՝ Պլուտոնը, Աթանաս-Պալլասին՝ Միներվան, Հերմէսին՝ Մերկուրիոսը, Դէմետրային՝ Ցերերան, Արէսին՝ Մարսը, Աֆրոդիտէին՝ Վեներան։ Միայն Ապոլլոնը և Դիոնիսոն իտալացիների մէջ աւելի ուշ երևան եկան, ուղղակի յոյների ազդեցութեան տակ։ Բայց շատ ինքնատիպ

*էր նրանց յարաբերութիւնը դէպի աստուածները և համապատասխանում էր այն խոր տարբերութեանը, որը շատ շուտ առաջ եկաւ յոյների և հռոմայեցիների մէջ։* Ինչպէս նկարիչներ՝ յոյները երեւակայում էին աստուածներին իբրեւ կենդանի էակներ, բոլոր որոշութիւնով եւ պարզութիւնով, հռոմայեցիները մտածում էին աստուածների մասին՝ իբրեւ վերացական գաղափարների մասին։ *Ամեն մի առարկայ և ամեն մի գործողութիւն նրանց մտքի մէջ միաւորւում էր որ և է աստուծու գործունէութեան հետ։ Օրինակ՝ յոյները յատկացնում էին փողոցների իրար կտրած տեղերը Հերմէսին,* որն ուրիշ շատ յատկութիւններ եւս ունէր, *իսկ հռոմայեցիներն ստեղծեցին սահմանների առանձին աստուած (Տերմինուս)։ Հերկն ու վարը, պարարտացումը, կտորներ գործելը դրուած էին առանձին աստուածների հովանաւորութեան տակ։ Որ և է գործի սկիզբը, մէջը և վերջը նուիրւում էին առանձին աստուածութիւնների։ Այն ինչ յոյների մէջ արևի աստուածը դարձաւ գուշակ և բանաստեղծ Ապոլլոնը, Հռոմում Յանուսը եղաւ սկզբնաւորութեան, գիւտի նշանակ (սէմբօլ)։ Այդպիսի վերացական աստուածները չէին կարող առաջացնել պատմութիւնները իրանց արկածների և յարաբերութիւնների մասին։ Հռոմայեցիներն սկզբներում մինչև անգամ չէին երևակայում նրանց իրար հետ ազգակցական ընտանեկան կապերով միացած։ Յետոյ՝ յոյների ազդեցութեան տակ՝ հռոմէական դիցաբանութիւնը մի քիչ աւելի կենդանի կերպարանք ստացաւ, և աստուածները դասաւորւեցին ոլիմպականների ձևով։ Հռոմայեցու նոյն իսկ աղօթքն ու երկրպագութիւնն ունէին մի առանձին ձև։* Նա կապուած էր աստուածների հետ որոշ պայմաններով եւ ամենայն մանրազննութիւնով կատարում էր ծէսերը, զոհերը, արտասանում էր բանա-

ձեւերը, որպէսզի դրանով պարտաւորեցնէր աստուածներին իրան խնամակալութիւն անել։ Գործադրութեան մանրամասնութիւններին հետեւում էին այն քաղաքացիները, որոնք քրմական (pontifices) պաշտօն էին ստանձնել։ Դէպքը եկած ժամանակը կարելի էր խաբել աստուածներին, օգտւելով որ և է խոստումի բերանացի մեկնութիւնով, սովորութեան զուտ ձեւական կատարումով. օրինակ՝ եթէ պահանջւում էր Տիբրը նետել մի քանի գլուխներ, որպէսզի հեղեղ տեղի չունենայ՝—կարիք չը կար անպատճառ մարդիկ նետել—խաշխաշի գլուխները համապատասխանում էին նոյն կոչմանը։ Սնոտիապաշտ հռոմայեցիներն առանձին ուշադրութիւն էին դարձնում նախագուշակ նշաններին։ Երկնային երեւոյթներով գուշակութիւններ անելը (խաւարում, աստղերի ընկնելը, գիսաւոր աստղերը և այլն) Յունաստանում էլ մեծ յարգ ունէր, ինչպէս և կենդանիների վարմունքները դիտելը (մանաւանդ աստուածներին նւիրած հաւերինը՝ կերակրելու ժամանակ. մեծ նշանակութիւն ունէր նոյնպէս թռչունների թռիչքը), բայց Հռոմում այդ նախագուշակ նշանների մեկնութիւնը դարձրել էին մի ամբողջ գիտութիւն, որով զբաղւում էին գուշակները (աւգուրէս)։ Չէր կարելի սկսել ոչ մի պետական գործ, առանց աստուածների կամքի մասին հանդիսաւոր կերպով տեղեկութիւններ առնելու—աուսպիցիա (auspicia)։ Էտրուսկների ազդեցութեան տակ զարգացաւ այդ գուշակութիւնների մի առանձին ձեւը—զոհւելու կենդանիների փորոտիքներով (հարուսպիցիա-haruspicia)։

Հռոմում եւս, ինչպէս Յունաստանում, պետու- Պետութիւնը
թիւնն սկզբներում ներկայացնում էր տոհմերի մի դաշնակցութիւն։

Եթէ հին Աթէնքում ժողովուրդը բաժանւում էր 4 ֆի-

լաների, իւրաքանչիւր ֆիլան՝ 3 ֆրատրիաների, իսկ իւրաքանչիւր ֆրատրիան՝ 30 տոհմի—Հռոմում էլ մենք տեսնում ենք դրա նման մի բաժանում. 3 տրիբներ, որոնցից ամեն մէկը բաժանւում է 10 կուրիաների (ծուխ), իսկ կուրիան 10 տոհմի։ Ասել է՝ Աթէնքում հաշւում էին 360 տոհմ, իսկ Հռոմում՝ 300։

Բայց այս ժողովրդների մէջ կային խոր տարբերութիւններ ևս։ Բոլոր կենսական յարաբերութիւնները Հռոմում ստանում են խիստ որոշ ձևեր։ Երբ մի անգամ հաստատւում է մի որոշ կանոն, ձգտում են նրանից դուրս բերել բոլոր հետևանքները, եթէ նոյն իսկ նրանք լինեն ծայրայեղ և անյարմար։ Այս նշմարւում է արդէն հռոմէական ընտանիքի կարգերի մէջ. ընտանիքի հայրն (pater familias) ունէր անսահման իշխանութիւն իր որդիների կեանքի եւ գոյքի վրայ. կարող էր ծախել և սպանել նրանց։ Նրա իշխանութիւնը վերջանում էր միայն նրա մահով, այն ինչ յոյների մէջ որդին շատ աւելի պակաս հպատակութեան մէջ էր և չափահաս դառնալով՝ դուրս էր գալիս հօր իշխանութիւնից։ Այս ընտանեկան կարգերին համապատասխան ձևով կազմւեց և պետութիւնը։ Այն ինչ յունական թագաւորը հաւասարների մէջ միայն առաջինն էր, հռոմէական թագաւորն ունէր շատ մեծ իշխանութիւն։ Նա pater familias էր իր ժողովրդի եւ ոչ ոք իրաւունք չունէր սահմանափակելու նրա կամքը. Նա ժողովրդի գլուխ էր կանգնած իբր քուրմ, զինուորական առաջնորդ և դատաւոր։ Սակայն դա չէր նշանակում, որ բացի թագաւորից՝ պետութեան մէջ չըկային ուրիշ ինքնուրոյն հաստատութիւններ. «հայրերը»—այսինքն տոհմերի աւագները՝ կազմում էին ծերակոյտը (սենատ) 300 անդամներից, որոնց հետ թագաւորը խորհրդակցում էր գործերի մասին։

Գործնական կեանքում թագաւորի համար դժւար էր ծերակոյտի կամքին հակառակ գնալ. սովորաբար նրանք գոր-

ծում էին համերաշխաբար։ Թագաւորի մահից յետոյ իշխա-
նութիւնն անցնում էր ծերակոյտին, որն ընտրում էր իր
անդամներից մէկին փոխանորդ (interrex), իսկ սա նշանա-
կում էր նոր թագաւոր (rex)։

Ամենակարեւոր գործերում երբեմն դիմում էին
քաղաքացիների ժողովին, որոնք ձայն էին տալիս
ծուխերով (comitia curiata)։

Պետութեան բնակիչները բաժանւում էին երկու
մասի — պատրիկներ (տես Եւպատրիդներ) և պլեբէյներ
(տես դէմոս)։ Առաջինների թւի մէջ մտան հռոմէա-
կան սկզբնական համայնքի քաղաքացիները. միւսները
կազմեցին գլխաւորապէս եկւորներից, որոնց Հռոմ
էր քաշում նրա կանուխ ծաղկած բարօրութիւնը,
նոյնպէս և պատրիկների համայնքից նւաճւած դրացի
նահանգների հողագործներից և գիւղացիներից։ Պլե-
բէյները պետութեան մէջ բոլորովին երկրորդական
դիրք էին բռնում. Նրանք պէտք է որոնէին պատրիկ
տոհմերի խնամակալութիւնը, կախումն ունէին նրան-
ցից աստուածպաշտական և դատական գործերում,
կրում էին ծանր և աւելի քիչ յարգւած զինւորական
ծառայութիւնը, ոչ մի մասնակցութիւն չունէին ծխերի
հասարակական ժողովների մէջ։ Պլեբէյների տնտեսա-
կան դրութիւնը ևս անձեռնտու էր։ Առանձին տնտե-
սութիւններ ստանում էին չափազանց մանր կտոր
հողեր մշակելու՝ ընդամենը 2 իւգեր (իւգեր=¼ դե-
սիատինի) մարդ գլուխ։ Հաց մշակելու և խաշնարա-
ծութեան համար, բացի դրանից, պէտք էր օգտւել
տոհմերի և պետութեան ընդհանուր տիրապետութեան
տակ գտնւած հողերից. իսկ այդ հողերը մշակելու
կամ նրանց վրայ արածացնելու թոյլտւութիւնն ամ-
բողջովին կախւած էր պատրիկ տոհմերից։

Աւանդու-
թիւնները

Թէև մենք կարող ենք բաւական ճիշտ գաղափար
կազմել Իտալիայի հնագոյն շրջանի կուլտուրայի և

պետութեան մասին, սակայն այդ ժամանակի դէպքերի մասին տեղեկութիւններ հասել են մեզ միայն սակաւաթիւ աւանդութիւններով. սրանք նոյն իսկ խիստ կերպով աղաւաղուել են հռոմէական և յունական գրողներից, որոնք հաւաքել և հաղորդել են այդ ամենը։ Ցոյցերի տեղափոխութիւնների ժամանակ կազմածբանասեղծական պատմածների նման ոչ մի բան չունէին հռոմայեցիները։ Նրանց պատմուածքները չոր են և սովորաբար նրանց նպատակն է լինում պարզել կեանքի այս կամ այն գծի ծագումը։ Նրանք կարծում էին, որ ճշտութեամբ գիտեն, թէ ինչպէս և երբ է առաջացել իրանց քաղաքը։

Յունական ազդեցութեան տակ առաջացած աւանդութիւնը համարում է այդ ժողովուրդը սերած տրոյացի Ենէասից, որը փախել էր Տրոյայի կործանումից յետոյ և դուրս էր եկել Լացիումի ափը։ Նրա որդին հիմնեց Ալբա-Լոնգան։ Ալբայի թագաւորներից մէկի աղջկանից և Մարս աստծուց ծնուեցին երկու որդիներ—Հռոմուլոս և Հռիմոս, որոնց իրանց մօրեղբօր հրամանով դուրս նետուեցին։ Նրանց սնունդ տուեց մի էգ գայլ, դաստիարակեցին հովիւները, և նրանք մեծանալով՝ իրանց հասցրած անարգանքի վրէժն առան։ Յետոյ նրանք հեռացան Ալբայից և 753 թուին Ք. առաջ հիմնեցին մի նոր քաղաք-Հռոմը։ Հռոմուլոսն սպանեց եղբօրը և դարձաւ Հռոմի առաջին թագաւորը։

Հռոմուլոսի Պալատինեան բլրի վրայ ունեցած սկզբնական լատինական ազգաբնակութեան հետ շուտով միացաւ երկրորդ՝ սաբինական ազգաբնակութիւնը Կվիրինալի վրայ։ Հռոմուլոսի յաջորդը եղաւ սաբինացի Նումա-Պոմպիլիոսը, աստուածավախ և իմաստուն կառավարիչը, որից իբր թէ՝ հռոմայեցիները ստացան իրանց կրօնական սովորութիւնները և քըրմական ընկերութիւնները։

Հետևեալ թագաւորներին (Տուլլոս Հոստիլիոս, Անկոս Մարցիոս, Տարկւինիոս Երէց) վերագրում են Ալբա-Լոնգայի կործանումը, Լացիումի մէջ նոր հողեր գրաւելու սկզբնաւորութիւնը, հռոմէական առաջին գաղութների (collatia) կազմելը, Ոստիայի՝ Տիբրիս գետի բերանում եղած նաւահանգստի հիմնարկութիւնը, քաղաքի առաջին խոշոր շինութիւնները—Ֆորումը, Կապիտոլեան Իւպիտերի տաճարը, Տիբրիսի կամուրջը, ձիարշաւների կրկէսը (ցիրկուս), աղտեղութիւնների կոյուղիները։

## ԳԼՈՒԽ Գ.

# ՊԱՏՐԻԿՆԵՐԻ ԿՌԻՒԸ ՊԼԵԲԷՅՆԵՐԻ ՀԵՏ

*Սերվիոս Տուլլոսի բարենորոգութիւնը*

Հռոմի պատմութեան առաջին հաստատուն դէպքն է այն բարենորոգութիւնը, որն՝ աւանդութեանը նայելով՝ կատարել է վեցերորդ թագաւոր Սերվիոս Տուլլոսը։ Այդ բարենորոգութիւնն անհրաժեշտ էր դարձել լիազօր իրաւունքների տէր պատրիկների և իրաւազուրկ պլեբէյների մէջ եղած թշնամական յարաբերութիւնների պատճառով։ Նա համապատասխանում է Սոլոնի դէմոկրատական կազմին։ Բոլոր ժողովուրդը, պատրիկները և պլեբէյները, բաժանեց 5 դասակարգի։ Այդ դասակարգերի կազմութեան նպատակն էր զինուորական ծառայութիւնը բաշխել այնպէս, որ հարուստների համար նա աւելի ծանր լինի, իսկ աղքատների համար աւելի թեթեւ։ Առաջին դասակարգի [1]) մարդիկ դուրս էին գալիս պատերազմի լիապէս

---

[1]) Յետագայում դասակարգերի կարողութիւնն այսպէս էին հաշւում.

| | | | |
|---|---|---|---|
| I | դասակարգ | ... 100,000 | աս և աւելի. |
| II | » | ... 75,000 | » |
| III | » | ... 50,000 | » |
| IV | » | ... 25,000 | » |
| V | » | ... 11,000 | » |

Հասարակապետութեան սկզբում ասը հաւասար էր մօտաւորապէս 15 կոպէկի։

զինուորուած, սաղաւարտով, վահանով, զանգապաններով, կրծկալով, նիզակով և սրով. Նրանցից էր առնում և հեծելազօրը։ Միւս դասակարգերին թոյլատրուած էր զէնքերն աստիճանաբար թեթեւացնել։ Ամենաաղքատ քաղաքացիները բոլորովին չէին հաշւում դասակարգերի մէջ և ազատ էին զինուորական ծառայութիւնից։ Դասակարգերի բաժանումը ծառայում էր և հարկեր նշանակելուն։ Ամեն 5 տարին մի անգամ ցէնզ էր կատարւում, այսինքն՝ գնահատում էին կարողութիւնները եւ հաշւում քաղաքացիներին այս կամ այն դասակարգի մէջ։

Ինչպէս Սոլոնի օրէնքներում, այստեղ էլ նոյնպէս՝ աւելի ծանր պարտականութիւններին համապատասխանում էին աւելի մեծ իրաւունքներ, բայց խնդիրը պաշտօններ ստանալու մէջ չէր, այլ հասարակական ժողովին մասնակցելու իրաւունքի մէջ։

Պատրիկների ծխական ժողովների (comitia curiata) հետ միասին հիմնարկւեց հարիւրեակների մի ընդհանուր հասարակական ժողով (comitia centuriata)։ Թագաւորը և ծերակոյտը (senat) նման հարցեր էին տալիս և նա պատասխանում էր «այո» կամ «ոչ», այսինքն՝ առաջարկւած որոշումները կամ ընդունում էր կամ մերժում. ժողովի վճիռները որոշւում էին հարիւրեակների տւած ձայների բազմութիւնով։ Սկզբում ամեն քաղաքացի ձայն էր տալիս իր հարիւրեակի մէջ. երբ պարզւում էր, թէ հարիւրեակի անդամների մեծամասնութիւնն ինչ վճռի կողմն է, նրա ձայնը տրւում էր ժողովում մեծամասնութեան համապատասխան։

Ամենից շատ հարիւրեակներ ստացաւ առաջին դասակարգը։ Նա ունէր 98 հարիւրեակ, որոնցից 18-ը կազմւած էին ասպետներից։ Երկրորդ, երրորդ և չորրորդ դասակարգերը հաշւում էին 20-ական հարիւրեակներ, հինգերորդը՝ 30։ Զունևորները կազմում էին մի հարիւրեակ, արհեստաւորները՝ 4, այնպէս որ բոլոր հարիւրեակների թիւն էր 193։ Այդպիսի պարա-

*գայում առաջին դասակարգն ունէր մի անազին առաւելութիւն միւս բոլորից. Նրա տրամադրութեան տակ կար 98 ձայն։ Ձայները հաշւելն սկսում էին նրանից, և նրա կողմն էր ապահովապէս ձայների բազմութիւնը, եթէ նա համերաշխ էր լինում [1]։*

*Այսպիսով թէև պետութեան մէջ գերակշռութիւնը թողնւած էր պատրիկներին, բայց և այնպէս Սերվիոս-Տուլլոսի բարենորոգութիւնը մեծ յեղաշրջում էր. առաջին՝ քաղաքական ազդեցութիւնը նա կապում էր ոչ թէ պատրիկ տոհմից ծագած լինելու հետ, այլ կարողութեան հետ։ Իսկ կարողութիւնը փոփոխական է. մի քանի պատրիկներ կարող էին աղքատանալ և կորցնել առաջին կարգի իրաւունքները, մի քանի պլեբէյներ՝ հարստանալ և այդ իրաւունքները ձեռք բերել։ Երկրորդ եւ այս է հենց գլխաւորը—այդ բարենորոգութիւնն, այսպէս կամ այնպէս՝ թոյլ էր տալիս պլեբէյներին մտնել հասարակական ժողով։ Սրանով խոստովանւեցին, որ՝ ինչպէս պատերազմողներ և հարկատուներ, նրանք նոյնպէս քաղաքացի են, ոչ թէ պատրիկներից կախում ունեցող մարդիկ (կլիենտներ)։*

*Տիմոկրատիական (փողատիրական) այս բարենորոգումը պատրիկների մէջ անբաւականութիւն առաջացրեց, և, աւանդութեան ասելով, նրանք սպանեցին դրա պատճառ եղող Սերվիոս Տուլլոս թագաւորին։ Նրա յաջորդ Տարկւինիոս Գոռոզի հետ էլ պատրիկները չը կարողացան վարւել։ Նա ծերակոյտին այլ ևս ժողովի չէր հրաւիրում։ Չը նայելով նրա յաջող պատերազմներին դրացի ժողովրդների հետ, նա ատելի դարձաւ իր կամայականութեան և դաժանութեան պատճառով։*

*Թագաւորական իշխանութեան վերանալը.*

*510* թուին նրան աքսորեցին եւ վճռեցին այլ եւս թագաւոր չը նշանակել։ *Բայց որովհետև թագաւորը շատ հին ժամանակներից սկսած համայնքի ներկայացուցիչն է եղել աստւածների առաջ, դրա համար էլ*

---

*[1]) Ժողովում բազմութիւն կազմելու համար պէտք էր ժողովել 97 ձայն։ Երբ այս թիւը հաւաքւում լրանում էր, մնացածներն այլ ևս չէին համարում։*

Նրա անունը պահպանուեց, դրուելով քրմերից մէկի վրայ (rex sacrificulus)։

Հանրապետութեան վարչութիւնը

Թագաւորի մնացած իրաւունքները տրուեցին երկու ճիւպատոսների (կոնսուլ)։ Բայց սրանք լիակատար իրաւունքներ ստանում էին միայն պատերազմում։ Քաղաքում և քաղաքի շուրջը հազար քայլի վրայ՝ նրանք կորցնում էին քաղաքացիներին մահուան պատիժ տալու կամ մարմնական պատիժների ենթարկելու իրաւունքը։ Այն քաղաքացին, որին սպառնում էր մահ կամ փայտի հարուածներ, դիմում էր ժողովրդի դատաստանին հարիւրեակների ժողովներում (կոմիցիա ցենտուրիատա)։ Հիւպատոսական իշխանութեան այդպիսի սահմանափակութեան արտաքին նշան էր ծառայում այն հանգամանքը, որ քաղաքի սահմաններում հիւպատոսի ծառայողները—լիկտորները—կրում էին միայն մի կապոց ձողեր (fasces) և միայն քաղաքի սահմանագծից դուրս նրա մէջ մտցնում էին և կացին։ Հիւպատոսներին ընտրում էին նոյն հարիւրեակների ժողովները, իսկ իշխանութեան մէջ հաստատում էին ծերերը (կուրիա)։ Իշխանութիւն տրւում էր միայն մի տարով, որից յետոյ պաշտօնից դուրս եկածներին կարող էին ենթարկել պատասխանատւութեան իր գործերի համար։ Երկու հիւպատոսներն էլ ունէին հաւասար իրաւունքներ, և մէկը կարող էր խանգարել միւսին գործելու, կարող էր կտրել նրա ճանապարհը (intercessio)։

Պետութեան համար ծանր վտանգ եղած դէպքում, երբ պահանջւում էր իշխանութեան եռանդուն կենտրոնացում մի մարդու ձեռքում, ծերակոյտը յանձնում էր հիւպատոսներից մէկին նշանակել մի իշխանապետ (դիկտատոր)։ Այս վերջինս ստանում էր լիազօր իրաւունքներ՝ նախկին թագաւորների նման, բայց որոշ յանձնարարութեան համար և ոչ աւելի քան 5

ամիս ժամանակը։ Նա ինքն էր ընտրում իր համար օգնական — ճեծելազօրքի առաջնորդը (magister equitum). բացի հիւպատոսներից՝ հիմնեց և երկու համարակալների (ցենսոր) պաշտօնը։ Նրանց ձեռքում էր գտնւում պետութեան գանձարանը, որ պահպանւում էր Սատուրնի տաճարում։

Իշխանութեան բաժան-բաժան և ժամանակաւոր լինելուց ամենից շատ օգտւեց ծերակոյտը։ Նրա մէջ էին մտնում այն մագիստրատները[1] (բարձր պաշտօնեաներ), որոնք իրանց պաշտօնը պատւաւոր կերպով կատարել վերջացրել էին։ Նրա անդամներն իրանց կոչումը պահպանում էին մինչև մահ, եթէ չէին կատարում որ և է անւանարկող խայտառակ գործ։ Բընականաբար այդպիսի մի մարմնի կարծիքները ահագին կշիռ կունենային. Նրանք ուղղութիւն էին տալիս պաշտօնեաների (մագիստրատ) գործունէութեանը և զօրեղ կերպով ազդում էին ժողովրդի վրայ, որը միայն ընտրելու և օրէնքները լոկ ընդունելու կամ մերժելու (առանց քննելու) իրաւունքն ունէր։ Իսկ ինչ վերաբերում է օտար պետութիւնների հետ յարաբերութիւններ ունենալուն՝ — այդ արտաքին քաղաքականութիւնը, ու Հռոմի զօրութիւնը տարածեց ամբողջ աշխարհի վրայ, հասարակապետութեան գոյութեան բոլոր ժամանակում ծերակոյտն էր վարում։

**Դասակարգերի կռիւը.**

Թագաւորական իշխանութիւնը տապալելուց յետոյ՝ սկզբներում նոր հասարակապետութեան գործերն անյաջող էին գնում։ Էտրուսկները խլեցին նրանից նրա բոլոր տիրապետութիւնները Տիբրիսի աջ ափին և նոյն իսկ գրաւեցին Հռոմը։ Կատաղի կռւից յետոյ՝

---

[1]) Հռոմայեցիները մագիստրատ էին անւանում այն անձին, որն իշխանութիւն էր ստանում ժողովրդի ընտրութիւնով։ Հիւպատոսները, համարակալները մագիստրատներ էին։

*լատինացիների հետ՝ ստիպւած եղան դաշն կապել լա-*
*տինական քաղաքների անկախութեան և Հռոմի հետ*
*հաւասար իրաւունքներ ունենալու պայմանով։* Գըլ-
խաւորն այն էր, որ երկրի մէջ սկսւեց դասակար-
գերի կատաղի կռիւ։ *Իշխանութեան թագաւորից*
*պատրիկների ձեռքն անցնելովը պլեբէյներն ընկան ա-*
*ւելի մեծ կախման մէջ, քան առաջ։ Նրանց աւերում*
*էին այն մշտական արշաւանքները, որոնց պատրիկ-*
*ներն՝ իբր աւելի ունևորներ, աւելի հեշտութեամբ*
*էին դիմանում։ Այն ինչ պարտքերի վերաբերութեամբ*
*եղած օրէնքը նոյնպէս դաժան էր, ինչպէս Աթէն-*
*քում՝ մինչև Սոլոնը. պարտքը չը վճարող պարտա-*
*պանին պարտատէրը դարձնում էր* իր ճորտը—կարող
էր շղթայել եւ փակել, որ նա չը փախչի։ *Յուսահա-*
494 *տութեան հասած պլեբէյները 494 թւին վճռեցին բո-*
*լորովին թողնել Հռոմը և մի նոր քաղաք հիմնել։ Նը-*
*րանք ամբողջ խմբով տեղափոխւեցին Սրբազան լեառը,*
*Անիօ գետի միւս կողմում։*

*Այսպիսի վճռականութեան առաջ պատրիկներն ստիպւած էին լուրջ զիջումներ անել։ Նրանք համոզեցին Պլեբէյներին վերադառնալ և դրա փոխարէն* ճանաչեցին քաղաքի մէջ մի առանձին պլեբէյական հասարակութիւն։ *Այդ հասարակութեան գլուխը կանգնեցին ընտրովի պաշտօնեաներ*—տրիբուններ եւ էդիլներ։ *Տրիբունները, որ առաջ երկուս էին և շուտով դարձան 10, պէտք է պաշտպան կանգնէին պլեբէյներին, եթէ նրանց բռնութեան էին ենթարկում զօրաժողովի, պարտքերը հաւաքելու ժամանակ և այլն։ Տրիբունի անձնաւորութիւնն անձեռնմխելի էր* (sacrosanctus). *Նրա միջամտութիւնը քաղաքի շրջանում պէտք է ընդունէր նոյն իսկ հիւպատոսը։ Էդիլները նոյնպիսի գանձապահներ էին* plebs-*ի (պլեբս=պլեբէյ) համար, ինչպէս համարակալները (քւեստոր) պետութեան հա-*

մար։ Նրանց յանձնւած գումարները կազմւում էին այն տուգանքներից, որ առնւում էին plebs ի դէմ գործւած յանցանքների համար, և պահպանւում էին Ցերերայի տաճարում։ Տրիբուններ և էդիլներ կարելի էր ընտրել միայն պլեբէյներից [1]. ընտրութիւնները կատարում էր պլեբսի մի առանձին ժողով, որի մէջ ձայնտուութիւնը տեղի էր ունենում տրիբներով, այսինքն՝ քաղաքային եւ գիւղական շրջաններով [2]։ Նոյն շըրջաններով ժողովներ էր անում պլեբսը, երբ նրան ժողովի էին հրաւիրում տրիբուններն՝ իրան վերաբերող գործերի մասին խորհրդակցելու և վճիռներ կայացնելու համար (plebiscita)։ Յենւելով պլեբէյներին տրւած իրաւունքների վրայ, տրիբուններն սկսեցին ընդարձակել իրանց միջամտութիւնը պետութեան կեանքի մէջ և շուտով իրաւունք ձեռք բերին կանգնեցնելու պաշտօնեաներին (մագիստրատ) իրանց բոլոր գործողութիւնների ժամանակ և խանգարելու ծերակոյտի որոշումները։ Այդպիսի դէպքում նրանք ասում էին «veto»-արգելում եմ։ Տրիբների (համայնքների) ժողովն իրան սեփականացրեց պլեբսի դէմ մեղանչող բոլոր քաղաքացիներին դատելու իրաւունքը։

Պլեբսի այս մէկուսանալը և մի փակ համայնք կազմելը հանդիսանում է Հռոմի պատմութեան մէջ իբր մի շատ կարևոր փաստ։ Այս քաղաքի զարգացումն այդ տեղից սկսում է նշանաւոր չափով տարբերւել Աթէնքի զարգացումից, որն սկզբում այնքան նման էր Հռոմի զարգացմանը։ Աթէնքում, ինչպէս արդէն մեզ յայտնի է, դէմոսը երբէք չառանձնացաւ, եւ սակարգային կռիւը չեղաւ երկու ինքնուրոյն և խիստ

---

[1]) Յետոյ սահմանւեցան նոյնպէս կուրուլական կոչւած էդիլներ, որոնք կարգադրում էին խաղերի և շինութիւնների գործերը։ Այդ պաշտօնը կարող էին ստանձնել և պատրիկները։

[2]) Այդ շրջանների թիւը կամաց-կամաց շատանալով՝ հասաւ 85-ի։

կարգապահ կերպով կազմակերպուած հասարակութիւնների մէջ կանոնաւոր վէճի ձևով։

Նոր կազմակերպութիւնը չէր ապահովեցնում քաղաքի հանգստութիւնը. պատրիկ և պլեբէյ հասարակութիւնները կանգնած էին իրար դէմ և իրար հետ միանում էին միայն թշնամիների դէմ կռւելու համար։ Այդ կռիւն էլ վատ էր գնում ներքին խռովութիւնների պատճառով։ Պատահում էր, որ պլեբէյները հրաժարւում էին պատերազմ գնալ և պատրիկները պատերազմը մենակ էին մղում, սեփական ուժերով։ Այդպիսի պատերազմներից մէկում ոչնչացաւ Ֆաբիանների ամբողջ տոհմը, բացի մի մանուկից։ Ամենահամարձակ պատրիկներից մէկը՝ Կայիոս Մարկիոս Կորիոլանն՝ առաջարկեց իր դասակարգի ընկերներին խլել պլեբէյներից տրիբունութիւնը։ Դրա համար նա դատապարտւեց տրիբների ժողովից, փախաւ Հռոմի թշնամի Վոլսկացիների մօտ և նրանց հետ միացած՝ քիչ մնաց քաղաքն առնէր։ Մի ուրիշ պատրիկ՝ Սպուրիոս Կասսիոսը փորձեց, ընդհակառակը, խռովութիւններին վերջ դնել՝ պատրիկներին և պլեբէյներին պետական հողերից (ager publicus) հաւասարապէս օգտւելու իրաւունք տալով։ Այդ առաջարկութեան համար պատրիկները նրան մեղադրեցին միահեծանութեան ձգտելու մէջ և սպանեցին։

Տասնապետները և XII տախտակների օրէնքները։

Պլեբէյ հասարակութիւնը, չը նայելով իր ամուր զինւորական կազմակերպութեանը, գտնւում էր անպաստ դիրքի մէջ, որովհետև կրօնական ծիսակատարութիւնը և քաղաքային համայնքի մէջ իշխանութիւնը պատկանում էր պատրիկներին։ Բոլոր վէճերի և վիրաւորանքների գործերի համար դատում էին պատրիկ պաշտօնեաները, և դատում էին այն սովորութիւններով, որ բացատրում և գործադրում էին իրանք՝ սեփական բարեհայեցողութիւնով։ Պլեբէյներն սկսեցին պահանջել գրաւոր, ճշգրիտ եւ ամենքին յայտնի օրէնքներ (նայել Դրակոնի բարենորոգութիւնը։) Պատրիկներն այդ բանին մի անգամից չը համաձայնւեցին, բայց վերջապէս 451 թւին կազմւեց

451 մի յանձնաժողով 10 անձերից (դեցեմվիր), որին յանձնւեց գրի առնել և փոփոխել օրէնքները։ Որ-

պէտզի ոչ ոք չը կարողանայ խանգարել նրան իր յանձն առած պաշտօնը կատարել՝ բոլոր սովորական պաշտօնեաները—հիւպատոսները, տրիբունները և այլն—հեռացւեցին, և կառավարելու իշխանութիւնը ամբողջապէս տրւեց տասնապետներին։ Մասնաժողովի լիազօրութիւնները վերանորոգւեցին 450 թւին էլ. և այս անգամ այդ ժողովի անդամ ընտրւեցան մի քանի պլեբէյներ։ Օրէնսդրական աշխատանքը յաջող առաջ էր գնում։ Տասնապետներն օգտւեցին ոչ միայն Հռոմի հին սովորութիւններով, այլ և տեղեկութիւններ հաւաքեցին յունական քաղաքների, մասնաւորապէս աթէնական օրէնքների մասին։ Նրանք փոխեցին իրանց օրացոյցն ատտիքական օրացոյցի ձևով, փոխեցին դրամի ձևը, հաստատեցին ընտանեկան, կալւածական և պատժական իրաւունքների հիմունքները, նոյնպէս հիմնարկեցին քաղաքի բարեշինութեան և դաշտերի, վարք ու բարքի վերահսկողութեան իրաւունքը։ Կազմւած օրէնքները գրւեցին 12 բրօնզէ տախտակների վրայ և դրւեցին մեծ հրապարակի (Ֆօրումի) վրայ։ Նրանք դարձան հռոմէական հին իրաւունքի հիմքերը։ Բայց նրանց որոշումներն էապէս չը փոփոխեցին պլեբէյների ստոր վիճակը, օրինակ ամուսնութիւնները պլեբէյների և պատրիկների մէջ առաջւայ պէս արգելւած էին. պարտքերին վերաբերող օրէնքները կրկին շատ խիստ մնացին. անձնական ստրկացումը չը վերացաւ։ Պատրիկները նոյնպէս անբաւական էին տասնապետներից։ Վերջիններիս գլուխ կանգնեց Ապպիոս Կլաւդիոսը, ձիրքերով հարուստ, փառասէր և կամակոր Կլաւդեանների տան ներկայացուցիչը։ Իշխանութիւն ստանալով, նա չէր մտածում այլ ևս բաց թողնել նրան իր ձեռքից և համոզեց ընկերներին չը յանձնել իրանց լիազօրութիւնը երկրորդ տարին վերջանալուց յետոյ։ Ապօրինի իշխանութիւնից էլ նա օգտւում էր ապօրինաբար և

բռնութիւններ էր գործում քաղաքացիների վրայ։ Նա մինչև այնտեղը հասաւ, որ ուզեց Վիրգինիոս անունով մի քաղաքացուց աղջիկը խլել, պնդելով, թէ նա (աղջիկը) ծախուած է եղել իրան իբր ստրուկ։ Հայրը, չը կամենալով իր աղջիկը տալ Ապպիոսին, իր ձեռքով սպանեց աղջկան մեծ հրապարակի (Ֆօրումի) վրայ, և այս չը լսուած գործը դարձաւ ապստամբութեան ազդանշան։ Պլեբէյները կրկին հեռացան քաղաքից Սրբազան լեառը։ Տասնապետներն ստիպուած եղան հպատակւել։ Ապպիոս Կլաւդիոսն իր կեանքը վերջացրեց անձնասպանութիւնով բանտի մէջ։ Հիւպատոսութիւնը վերականգնւեց, և ընտրուած Լ. Վալերիոս և Մ. Հորացիոս հիւպատոսները նոր համաձայնութիւն կայացրին պլեբէյների հետ։ Այդ համաձայնութեան էական պայմանն այն էր, որ տրիբներն իրաւունք ստացան բոլոր համայնքի համար պարտադիր վճիռներ կայացնելու, այն ինչ առաջ այդ իրաւունքն ունէին միայն հարիւրեակների ժողովները։[1]) Պատրիկներն ստիպուած եղան մտնելու տրիբների ժողովները, որպէսզի գոնէ որ և է ազդեցութիւն ունենան այդ կարևոր հիմնարկութեան վճիռների վրայ. այսպիսով՝ պլեբէյական ժողովից նա դարձաւ հասարակական ժողով եւ ստացաւ կօմիցիա կոչումը (comitia tributa)։ Այդ ժողովներում պլեբէյները, յենւելով իրանց թւական առաւելութեան վրայ, հնար ստացան առաջ քշելու իրանց պահանջները։ Այդ պատճառով համարեա իսկոյն վճիռ կայացւեց թոյլատրելու օրինական ամուսնութիւններ պլեբէյների և պատրիկների մէջ։ Յետոյ հերթական հարց դարձաւ պլեբէյներին հիւպատոս ընտրելու խրն-

---

[1]) Վերջիններին մնաց սակայն բացառիկ իրաւունք պաշտօնեաներ ընտրելու և քաղաքացիներին դատելու այն դէպքերում, երբ նրանց սպառնում էր մահուան պատիժ։

դիրը։ Պատրիկներն այս կէտի անմիջական զիջումը հեռացրին միայն նրանով, իր յաջողեցրին մի նոր պաշտօն հաստատել—զինուորական տրիբուններ հիւպատոսական իշխանութիւնով (նրանց թիւը վեց էր.) այս պաշտօնը կարող էին ստանձնել և պլեբէյները։ Ծերակոյտին էր թողնւում վճռել, թէ երբ ժողովուրդը պէտք է ընտրէ հիւպատոսներ և երբ տրիբուններ՝ հիւպատոսական իշխանութիւնով։ Այդ պարագայում հիւպատոսական իշխանութիւնից բաժանեցին ցենզօրական (համարակալական) պարտաւորութիւնները— քաղաքների դասակարգերի և տրիբների ցուցակների կազմութիւնը, նոյնպէս և ծերակոյտի անդամների ցուցակի կազմութիւնը, մասնաւոր անձերի ստացւածքների գնհատութիւնը հարկերը վճարելու և դասակարգերի մէջ գրւելու տեսակէտից, պետական կալւածների կառավարութիւնը, վարք ու բարքի վերահսկողութիւնը։ Ցենզօրներ ընտրում էին պատրիկներից երկու հոգի մէկ և կէս տարի ժամանակով։ Այս պաշտօնն ստացաւ շատ մեծ նշանակութիւն, որովհետև ցենզօրից էր կախւած թոյլատրել մէկին մտնել հռոմէական քաղաքացիների շարքը, նրանից հեռանալ, ծերակոյտը լրացնել և այլն։

Արտաքին դէպքերը մի քիչ ընդհատեցին այդ Կելտերի ար-
դասակարգային կռիւները։ V դարի ընթացքում Ի- շաւանքը։
տալիա սկսեցին թափանցել կելտական ցեղերը, որ
աստիճանաբար գրաւեցին Պօ գետի հովիտը և խիստ
կերպով նեղեցին տրուսկներին։ Սկզբում կելտերի այս
տարածւելը ձեռնտու էր հռոմայեցիներին, որովհետև
թուլացնում էր էտրուսկներին։ 396 թւին իշխանա- 396
պետ (դիկտատօր) Մ. Ֆուրիոս Կամիլլիոսը՝ երկարատև
պաշարումից յետոյ՝ գրաւեց էտրուսկների քաղաքներից ամենազօրաւորը—Վէյին։ Բայց առաջ խաղացող կելտերը՝ ուշ կամ շուտ պէտք է ընդհարւէին

390 հռոմայեցիների հետ։ Դա պատահեց 390 թւին. Ալլիա գետակի մոտ հռոմէական զորքը ոտնատակ տուեց կելտերի անզուսպ յարձակումից։ Դրանից յետոյ բարբարոսները գրաւեցին նոյն իսկ Հռոմը, որ այդ ժամանակ այրւեց։ Ստիպւած եղան նրանցից ազատւել ահագին քանակութեամբ ոսկի տալով։

Դասակարգային կռւի վախճանը։ Բարեբաղդաբար կելտերը չը կարողացան և չէին էլ մտածում վերջնականապէս նւաճել Էտրուրիան և Լացիումը։ Նրանք հեռացան իրանց աւարով և յետոյ էլ արշաւանքներ էին անում միայն աւարառութեան համար։ Հռոմայեցիները շուտով վերակազմւեցին, նորոգւեցին ևնորից վերսկսեցին դասակարգային կռիւը։

376 376 թւին Կ. Լիկինիոս Ստոլոն եւ Լ. Սեքստոս Լատերանի տրիբունները վճռական առաջարկութիւններ արին տրիբների ժողովներին, որոնց նպատակն էր բարելաւել պլեբէյների տնտեսական եւ պետական դրութիւնը, 1) այսուհետև պէտք է ընտրւեն ոչ թէ զինւորական տրիբուններ, այլ հիւպատոսներ և նրանցից մէկն անպայման պլեբէյներից. 2) պարտքերի համար վճարւած տոկոսները համարւում են ոչ իբր տոկոս, այլ դրամագլխից վճարւած. 3) ոչ ոք իրաւունք չունի 500 յուգերից աւելի պետական հող գրաւել և պետական արօտատեղիների վրայ արածացնել 100-ից աւելի եղջերաւոր անասուն կամ 500 ոչխար։ Վերջին միջոցն ուղղւած էր պատրիկների դէմ, որ յափշտակել էին պետական ահագին հողեր։ Հասկանալի է, որ պատրիկները դիմադրում էին բոլոր ուժով. նշանակում էին իշխանապետներ, համոզում էին Լիկինիոսի և Սեքստոսի ընկեր տրիբուններին, որ նրանց առաջարկութիւնները կանգնեցնեն իրանց veto-ով։ Բայց 10 տարի շարունակ ժողովուրդն ընտրում էր Լիկինիոսին և Սեքստոսին տրիբուն, և 10 տարի շարունակ նրանք առաջարկում էին կոմիցիաներին իրանց ծրագրները։

վերջացաւ նրանով, որ 366 թւին պատրիկները դա- 366
դարեցրին դիմադրութիւնը, յաջողեցնելով բաժանել
հիւպատոսական իրաւունքներից դատական իշխա-
նութիւնը, որը տրւեց մի պատրիկ պրետորի։ Պլե-
բէյներից առաջին հիւպատոսը եղաւ Լ. Սէքստոս
Լատերանը։

Վերոյիշեալ առաջարկութիւններն ընդունելուց
յետոյ իսկապէս վերջացաւ դասակարգերի կռիւը. ի-
զուր չէր, որ ծերունի Կամիլլոսը 366 թւին բացա- 366
րեց «Համաձայնութեան» անունով շինւած տաճարը։
Բայց կրկին պլեբէյներն ստիպւած էին կամաց-կամաց
ձեռք բերել քրմական և այլ պաշտօններ ստանալու
իրաւունքը։ Միայն թագաւոր քուրմի (rex sacrificu-
lus) և գլխաւոր աստւածների 3 քուրմերի (flamines)
տեղերը մինչև վերջն էլ մնացին պատրիկների ձեռքը։
Պատրիկների դասակարգային արտօնութիւններին վեր-
ջին հարւածներից մէկն էլ հասցրեց ցենզոր Ապպիոս
Կլաւդիոսը, որը հաւասարութեան օգտին աշխատում
էր այնպիսի եռանդով ու համարձակութիւնով, ինչ-
պիսի եռանդով նրա նախնիքներն աշխատում էին նրա
դէմ։ Նա քաղաքացիների թւի մէջ ընդունեց բազմա-
թիւ ազատւածների (ստրկութիւնից), իսկ ծերակոյտի
պակաս անդամների տեղը լրացրեց պլեբէյներով։

Դասակարգային կռւի ընթացքն ու ելքը հաւասարա-
պէս խրատական են։ Նրանում երեւացին հռոմայեցիների
յատուկ յարատեւութիւնը եւ կարգապահութեան ոգին։ Պատ-
րիկներն իրանց բոլոր ուժերը լարած՝ պաշտպանում էին ամեն
մի դիրքը, պլեբէյները կռւով գրաւում էին այդ դիրքերը
մէկը միւսի ետևից, չը վրդովւելով յետաձգումներով ու
պարտութիւններով։ Չը նայելով ծանր նիւթական դրու-
թեանը, պլեբէյներն այնքան թանգ են գնահատում իրանց
քաղաքական իրաւունքները, այնքան են համոզւած, թէ
նրանց միջոցով կարող են ամեն ինչի հասնել, որ չեն դի-
մում ապստամբութիւնների եւ չեն օգնում բռնապետութեան,
որն այնքան մեծ դեր խաղաց Յունաստանում։ Պատրիկները

կասկածեցին բռնապետութեան ձգտելու մէջ և ոչնչացրին մի քանի աչքի ընկնող գործիչների (Սպուրիոս Կասսիոսին, Մելիոսին, Մ. Մանլիոսին), բայց վերջիններից ոչ մեկը բաւարար օժանդակութիւն չէր ստանում ժողովրդից, որպէսզի հասարակապետութեան համար վտանգաւոր դառնար։ Տրիբունութիւնն այդպիսի դէպքում կարծես ծառայում էր իբր շանթարգել, որի մէջ պլեբէյներն ունէին իրանց շահերի օրինական ներկայացուցչութիւնը։

Պատրիկների պարտութիւնը բացատրւում է ոչ միայն այսպէս կամ այնպէս զօրք տւող ժողովրդի ամբողջութեան հետ վարւելու անհրաժեշտութիւնով, բայց և շատ պատրիկ տոհմերի ոչնչանալով և շատ պլեբէյ տոհմերի ուժեղանալով։ Բայց դասակարգերի իրաւունքների հաւասարեցման հետեւանքը երբէք չեղաւ ժողովրդական ամբոխի (մասսայի) տիրապետութիւնն, այլ նոր արիստոկրատիայի (ազնւականութեան) կազմւելը. այս «նօբիլիտէտը» (ազնւականութիւնը) կազմւեց ամենահարուստ ընտանիքների անդամներից—ինչպէս պատրիկ, այնպէս էլ պլեբէյ, որոնք իրանց հարստութեան շնորհով հնարաւորութիւն ունէին պաշտօններ ստանձնելու անվարձ, միայն այն իշխանութեան և պատւի համար, որ կապւած էին այդ պաշտօնների հետ։ Բարձր պաշտօններից անցնում էին և ծերակոյտ։ Երբ մի անգամ արդէն կազմւեց մի որոշ շրջան այդպիսի պաշտօնատար ընտանիքների, նրա անդամներն սկսեցին պաշտպանել իրար և կողմնակի մարդկանց հեռացնել։ Բայց այդ նօբիլիտէտը սահմանափակ, զուտ ժառանգական մի դասակարգ չէր. նա հիմնւած էր միմիայն պաշտօններ վարելու համար, որոնց հասնում էին երբեմն ձեռներէց և արժանաւոր մարդիկ ստորին դասակարգերից (homines novi=նոր մարդիկ)։ Բայց նրա գործնական նշանակութիւնը շատ ահագին էր. ժողովուրդն ուրախութեամբ հնազանդւում էր նրա ղեկավարութեանը, որովհետև լէգիոնների ծառայութեան մէջ սովորել էր յայտնի անձերի և ընտանիքների առաջնորդութեանը և, բացի դրանից, կօմիցիաների շնորհով ինքն էլ մեծ ազդեցութիւն ունէր կառավարութեան վրայ։ Իսկ այդպիսի վարիչ դասակարգի կազմւելն անկասկած օգնեց հռոմէական հանրապետութեան արտաքին գործերի ճարտար, հետեւողական եւ եռանդուն կերպով կառավարելուն։

ԳԼՈՒԽ Դ.

# ԻՏԱԼԻԱՅԻ ՆՒԱՃՈՒՄԸ

Երբ IV դարի կէսին վերջապէս կայացաւ դասակարգերի հաշտութիւնը՝ հռոմէական ժողովուրդը վերջնականապէս կազմւեց և հնարաւորութիւն ըստացաւ յարձակողական գործողութիւն սկսելու դրացիների դէմ։ Այդ ժամանակներում հաստատւեց և նրա զինւորական կազմակերպութիւնը։ Հռոմէական զօրքերի գլխաւոր ոյժը կազմում էր հետեւակ լէգիոնը, որ բաղկանում էր գլխաւորապէս ազատ գիւղացիներից, որ ապրում էին Հռոմի շրջակայ գիւղերում և քաղաք էին հաւաքւում միայն շուկայ եղած օրը և կօմիցիաներում նշանաւոր ձայնատւութեան խնդիրների համար։ Այս գիւղական զօրքը չէր կարող մրցել յունական գիմնազիոնների սաների հետ մարմնական վարժութիւնների պատրաստականութեան մէջ, կամ վարձկան զօրքերի հետ, որոնք երևացին այն ժամանակ Միջերկրականի ափին՝ զինւորական ճարպկութեան և քաջութեան մէջ. դրա փոխարէն նրանք աչքի էին ընկնում իրանց ջերմ սիրովը դէպի հայրենիքը, արտակարգ կայունութիւնովը ու դիմացկունութիւնովը, երկաթէ կարգապահութիւնովը ու ամեն մէկի ունեցած պատրաստականութիւնովը՝ զոհելու իրան ընդհանուր գործի համար։ Պատերազմական կազմը նշանաւոր կերպով տարբերւեց յունականից, թէ և սկսեց նոյն ֆալանգից։ Այն ինչ յոյները զարգացնում էին ամեն մի տեսակ զօրքի առանձնայատկութիւնները, ծանր հետևակախումբը դարձնում էին աւելի և աւելի խիտ ու խոր, իսկ միւս կողմից՝ սկսեցին մեծ ուշադրու-

թիւն դարձնել թեթևազէն հետևակի և հեծելազօրքի կատարելագործութեան վրայ և նոյն իսկ փոխել մըտցրին զինուորական կազմի մէջ,—հռոմայեցիները բոլոր ջանքերը կենտրոնացրին մի այնպիսի հետեւակ ստեղծելու վրայ, որ պիտանի լինէր ամեն տեսակ տեղերում եւ ամեն հնարաւոր հանգամանքներում։ Պէտք էր այդ հետևակը դարձնել շարժական և ինքնուրոյն իր ամենամանր մասերում։ Այդ նպատակով նախ և առաջ նրան բաժանեցին վաշտերի (մանիպուլ), որոնց մէջ թողնում էին բաց տարածութիւններ։ Յետոյ բոլոր խումբը բաժանուած էր 3 շարքերի—առջևում կանգնած էին hastati, յետոյ՝ principes, վերջապէս՝ ջոկուի հին զինուորները՝ triarii: Հռոմէական զօրավարները երկրորդ գիծը կուի մէջ էին մտցնում միայն այն ժամանակ, երբ առաջինն արդէն ուժասպառ էր լինում, իսկ պահեստը գործի էին հանում միայն ծայրայեղ անհրաժեշտութեան դէպքում, ոյժերի այս խնայողական եւ աստիճանաբար ծախսելը շատ էր նպաստում յաջողութեան։ Լէգիոնները զինուած էին նետելու տէգերով (pilum), որ նրանք նետում էին թշնամու վրայ մօտիկ տարածութիւնից, որպէս զի յետոյ գործէին կարճ սրերով։ Հռոմէական արշաւանքների մէջ շատ կարևոր պայման էր բանակատեղի կազմութիւնը (լագեր)։ Զօրքը տեղաւորւում էր և փորում իր դիրքերը ճիշտ որոշուած նախագծով։ Ամեն մէկը գիտէր իր տեղը և պահպանում էր նրան։ Անյաջողութեան կամ թշնամու ուժերի զգալի գերակշռութեան դէպքում՝ այդպիսի բանակատեղը դառնում էր մի բերդ։

Լատինացիները և սամնէացիները։

Որպէսզի պարզուեն Հռոմի արագ նուաճումների պատճառները, պէտք է աչքի առաջ ունենալ՝ բացի Հռոմի ժողովրդի զինուորական յատկութիւններն ու կազմութիւնը, նրա դրութիւնը լատինական նահանգում։ Հռոմը դարձաւ նրա գլխաւոր քաղաքը դեռ թագաւորների

*ժամանակ։ Սպուրիոս Կասսիոսը լատինացիների հետ դաշն կապեց, որի համաձայն երկու կողմերն էլ կռւի դաշտ էին հանում հաւասար թւով զինուորներ. նուաճւած տեղերն էլ բաժանւում էին հաւասարապէս։ Առաջարկւում էր մինչև անգամ զօրապետները հերթով նշանակել—հռոմայեցիներից և լատինացիներից։* Սակայն շուտով առաջնորդութիւնն անցաւ Հռոմին եւ նա ընդհանրապէս իր ձեռքն առաւ ընդհանուր գործերը։ Լատինացիները համբերում էին, որովհետեւ այդ գործերը լաւ էին ընթանում եւ նրանց դաշնակցութիւնը դարձաւ միջին Իտալիայի գլխաւոր ոյժը։ *Էտրուսկների և կելտերի հետ ընդհարւելուց յետոյ՝ նա ստիպւեց հանդիպել սամնիացիների հետ, որոնց համար նեղ էին իրանց լեռները։ Նրանց երիտասարդութիւնն արդէն վաղուց սովորել էր զինուորական ծառայութեան գնալ հարաւային իտալական քաղաքները, Սիկիլիա և նոյն իսկ Կարթագէն. այդ վարձկաններին ամեն տեղ գնահատում էին իրանց քաջութեան համար։ IV դարում սամնիական համայնքներն սկսեցին իրանք ընդարձակել իրանց սահմանները դրացիների հաշւով և ընդհարւեցին հռոմայեցիների հետ հարուստ և պտղաբեր Կամպանիայում, ուր հռոմայեցիները նրանց դէմ դուրս եկան՝ Կապուա քաղաքին օգնութեան։ Սամնիացիները նոյնպէս հաստատւեցին Կամպանիայում։ Ամենից վատն այն էր, որ յամառ պատերազմը գրգռեց լատինացիների մէջ Հռոմին հաւասարւելու ցանկութիւնը։ Նրանք պահանջեցին հիմնել մի ընդհանուր կառավարութիւն, որի մէջ ծերակոյտի կէսը և հիւպատոսներից մէկը պէտք է ընտրւէին լատինացիներից։ Եթէ հռոմայեցիները համաձայնւէին այս պահանջներին, այն ժամանակ բոլոր յետագայ պատմութիւնը խիստ կերպով փոփոխւած կը լինէր.* մի քաղաքային համայնքի միւսների վրայ տիրապետութիւն ձեռք բերե-

յու փոխարէն՝ կըստացւէր մի քանի համայնքների ձուլում մի դաշնակցական պետութեան մէջ. *բայց հռոմայեցիներն արդէն սովորել էին իրանց առաջնութեանը և երբէք տրամադիր չէին բաժանել այդ դրութիւնն ուրիշների հետ։ Վեզուվի մօտ Տ. Մանլիուս Տորկվատոս հիւպատոսը ջարդեց լատինացիներին և նրանց քաղաքները կրկին հպատակեցին։*

*Այդ արագ հաշտութիւնը, իմիջի այլոց, բացատրւում էր սամնիացիներին միասին դիմադրելու անհրաժեշտութիւնով, որոնք չէին դադարեցնում իրանց նուաճումները հարաւային Իտալիայում։ Յունական քաղաքները և Լուկանիայի ու Ապուլիայի ժողովրդներն ըսկսեցին դիմել հռոմայեցիներին և օգնութիւն խնդրել։*

*Երկրորդ Սամնիական պատերազմը*

*Երկրորդ պատերազմն սկսւեց մի խոշոր անյաջողութիւնով։ Սամնիական զօրապետ Պոնցիոսը խորամանկութիւնով քաշեց հռոմէական զօրքը Կաւդինեան նեղ կրճի մէջ և փակեց նրա առաջ բոլոր*
321 *ելքերը (321)։ Պատռելով անցնելու փորձը ոչ մի արդիւնք չը տւեց, և հիւպատոսներն անձնատուր եղան այն պայմանով, որ զօրքը բաց կը թողնւի Հռոմ գնալու և խաղաղութիւն կը կապւի։ Լեգիոնները զէնքերը վայր դրին և, իբր նշան հնազանդութեան, անցկացան լծի տակով։ Բայց ծերակոյտը յայտարարեց, որ հիւպատոսներն այդպիսի դաշնագիր կնքելու իրաւունք չունէին. տւեց նրանց սամնիացիների ձեռքը, քանդեց բոլոր պայմանները և անմիջապէս նոր զօրք հանեց կռւի դաշտը։ Չը նայելով, որ սամնիացիների հետ միացան և Էտրուսկները, հռոմայեցիները յաջող*
305 *կերպով գործեցին բաժանւած թշնամիների դէմ։ 305 թւին նրանք թափանցեցին Սամնիումի խորքերը և ստիպեցին սամնիացիներին ընդունել խաղաղութեան նոր պայմաններ։ Երկրորդ պատերազմը հռոմայեցի-*

ների իշխանութեան տակ գցեց Կամպանիան։ Ապպիոս Կլաւդիոս ցենզօրն ամրապնդեց այս նուաճումը՝ Հռոմից մինչև Կապուա մի հիանալի ճանապարհ շինելով (via Appia), որը հնար էր տալիս պէտք եղած ժամանակ զօրքն արագութեամբ դէպի հարաւ շարժել։ Հասկանալի է, որ այս ճանապարհը դարձաւ մի կարևոր միջոց և վաճառականական յարաբերութիւնների համար։ Սա եղաւ Հռոմի առաջին փորձն ամեն կողմ ճանապարհների մի ցանց անցկացնելու. այդ ցանցի հետքը մնում է մինչև այժմ, և նա քիչ չը նպաստեց հռոմէական տիրապետութեան և կուլտուրայի տարածմանը։

Երրորդ սամնիական պատերազմ։

Շուտով պատերազմը նորից բորբոքուեց։ Իտալական ժողովրդներն սկսում էին հասկանալ, որ Հռոմը վտանգաւոր է բոլորի համար, և դրա համար էլ սամնիացիներին յաջողուեց պատերազմ մղելու համար. կազմել մի ընդարձակ դաշնակցութիւն (կօալիցիա), որի հետ միացան էտրուսկները, ումբրիական ցեղերը և նոյն իսկ հիւսիսային Իտալիայի կելտերը։ Հռոմայեցիների կողմը բռնում էին լատինացիները և հարաւային Իտալիայի բնակիչները, որոնք ամենից աւելի Սամնիացիներից էին վախենում։ Սենտինումի մօտ հռոմէական զօրքը յաղթեց, չը նայելով սամնիացիների և կելտերի յուսահատական քաջութեանը։ Յաղթութիւնը վերագրում էին հիւպատոսներից մէկին —Դեցիոս Մուսսին, որը խոստացաւ իրան զոհել ստորերկրեայ աստուածներին, որպէս զի դրանով ձեռք բերէ նրանց օգնութիւնն իր ժողովրդի համար. Նրան սպանեցին ճակատամարտի նոյն իսկ սկզբում, բայց դրա փոխարէն հռոմայեցիները յաղթեցին։ Այս պարտութիւնը ոչնչացրեց դաշնակիցների ընդհանուր ծրագիրները. ամեմ մէկը շարունակեց պաշտպանուել իր երկրում, և հռոմայեցիները յաղթեցին նրանց ամեն

մէկին առանձին-առանձին։ Այստեղ էլ սամնիացիներն ամենավտանգաւոր հակառակորդը հանդիսացան և նոյն իսկ մի զգալի պարտութիւն հասցրին հռոմայեցինե-րին։ Բայց հռոմայեցիների անդրդուելի եռանդը և գոր-ծերի ճարտար ղեկավարութիւնը ծերակոյտի ձեռքով՝ վերջապէս յաղթեցին։ Սամնիացիներին ամենից շատ պակասում էր ուժերի կենտրոնացում—նրանց թոյլ կերպով միաւորուած նահանգները հնար չունէին կռուելու հռոմէական խիստ կերպով միաւորուած համայնքի
290 դէմ։ Վերջապէս 290 թւին Մ. Կուրիոս Դենտատոսը, մի օրինակելի հռոմայեցի—պինդ, սառնասիրտ դէպի կեանքի յարմարութիւնները, ամբողջովին պետու-թեանը նուիրուած՝ հպատակեցրեց Սամնիումը հռոմէա-կան իշխանութեանը։

Պատերազմ Պիւռոսի դէմ

Միջին Իտալիայից յետոյ հերթը հասաւ հարա-ւայինին։ Ինչպէս առաջ սամնիացիները, այնպէս էլ յետոյ հռոմայեցիներն սկսեցին խառնուել հարաւային Իտալիայի ցեղերի և յունական քաղաքների իրար հետ ունեցած վէճերի մէջ։ Տարէնտոն հարուստ քաղաքը, թերակղզու հարաւային մասի գլխաւոր առևտրական կենտրոնը, մտածեց կտրել նուաճողների առաջը՝ վար-ձելով Եպիրոսի թագաւոր Պիւռոսին իրան օգնական։ Սա մի տաղանդաւոր և համարձակ բաղդախնդիր էր։ Տարէնտացիների հրաւէրով նա եկաւ մեծ և հիանալի զօրքով, որ վարժեցրած էր մակեդոնական զինուորա-կան արհեստի բոլոր կանոններով։ Հռոմի զինուած գիւ-ղականներն առաջին անգամն էին պատահում հել-լենական արևելքի բանակի հետ, և առաջին ընդհա-րումը ցոյց տւեց, որ հռոմայեցիները դեռ շատ բան պէտք է սովորէին։ Պիւռոսի փալանգները և փղերը վճռական յաղթութիւն տարան լեգիոնների դէմ (Հե-
280 րակլէայի մօտ՝ 280 թւին։)

Պիւռոսը պատերազմը վերջացած համարեց և իր

մոտիկ բարեկամ Կինեասին Հռոմ ուղարկեց, ուր նա գործ դրեց իր բոլոր ճարտարությունն ու ճարպկությունը, որպես զի յաջողեցնէ խաղաղութեան դաշն կապել։ Տերակոյտի վճռական ժողովին եկաւ զառամեալ, կոյր Ապպիոս Կլաւդիոսը, 312 թւի ցենզորը, և որոտագին մի ճառով խորտակեց յոյնի բոլոր խորամանկութիւնները։ Պատերազմը վերսկսւեց և Պիւրոսը կրկին յաղթութիւն տարաւ, բայց այնպիսի դժւարութիւնով և կորուստներով, որ խոստովանւեց թէ՝ «մի այդպիսի յաղթութիւն էլ—և ես այլ ևս զօրք չեմ ունենայ»։ Գլխաւորն այն է, որ նա ձանձրացաւ ժամանակ և ուժեր կորցնելով սկզբնական և աղքատ մի ժողովրդի հետ ապարդիւն և ծանր կռիւ մղելուց։ Յանկարծ նա ընկաւ Սիկիլիայի վրայ և այնտեղ 3 տարի անցկացրեց տեղացիների և յոյների հետ մշտատև պատերազմներով։ Երբ 275 թւին նա Իտալիա վերադարձաւ նոսրացած զօքերով՝ հռոմայեցիները նրան դիմաւորեցին արդէն պատրաստւած. Նրանց հետեւակը սովորեց խցել փղերին եւ օգտւել ֆալանգի ծանրաշարժութիւնից, որի համար խիստ դըժւար էր գործել անհարթ տեղերում։ Բենեվենտի մօտ՝ սամնիացիներին յաղթող Մ. Կուրիոս Դենտատոսը ջարդեց Պիւրոսին. նա անմիջապէս թողեց Իտալիան և ուղևորւեց Պելոպոնէս վերջացնելու այնտեղ իր փոթորկալից գործունէութիւնը։ 275

Այսպիսով Հռոմն աստիճանաբար տիրապետում էր ամբողջ Իտալիային Ռուբիկոնից դէպի հարաւ։ Սպարտայի և Աթէնքի նման նա չէր ձգտում անպայման հնազանդեցնելու տիրապետածնահանգները։Հպատակների հետ վարւելու գործում ծերակոյտը շատ տարբեր քաղաքականութիւն էր բանեցնում։ Մի քանի տեղեր դառնում էին ուղղակի Հռոմի ժողովրդի սեփականութիւնը. այս հասարակական հողերը (ager Իտալիայի կազմակերպութիւնը։

publicus) *բաժանում էին առանձին հռոմայեցիների մէջ՝ նրանցից ժամանակաւոր կերպով օգտուելու(նայել Լիկինոսի և Սեքստոսի օրէնքները) կամ աճուրդով տրւում էին կապալով, որի կապալադրամը մտնում էր պետութեան գանձարանը։ Վերջապէս այդպիսի արքունիք գրաւած հողերի վրա հիմնւում էին կոլոնիաներ, այսինքն հռոմէական քաղաքացիների գաղութներ, որոնք ստանում էին հողաբաժիններ և կազմում քաղաքային համայնքներ՝ բոլորովին նման Հռոմին։ Այդպիսի գաղթականներով բռնում էին գլխաւորապէս գրաւած նահանգների զինուորական կամ առևտրական տեսակէտից նշանաւոր կէտերը, և նրանց քաղաքացիները պահպանում էին հռոմէական կոմիցիաների մէջ ձայն տալու իրաւունքը։ Սրա հետ միասին կային* մունիցիպիաներ—*քաղաքային համայնքներ, որ իրանք էին ընտրում իրանց պաշտօնատարներին, բայց որոնց թոյլատրուած չէր հռոմէական քաղաքացու (*cives romanum*) լիակատար իրաւունքներն ունենալ։ Նրանց բնակիչները կոմիցիաներում ձայնի իրաւունք չունէին (*cives sine suffragio*) և առևտրի վերաբերութեամբ ենթարկւած էին մի քանի սահմանափակումների։ Լատինական քաղաքների և գաղութների մեծ մասն ունէր քաղաքային համայնքի (մունիցիպիայի) իրաւունքներ։ Վերջապէս վերջին դասը կազմում էին* դաշնակիցները *(*socii*), նրան թւին էին պատկանում՝ օրինակ՝ սամնիացիները։ Նրանք պահպանում էին իրանց նախկին կազմութիւնը, բայց ենթարկւում էին Հռոմին զանազան պայմաններով, նայելով նրանց հետ կապած դաշնագրին։ Նրանք քաղաքներից աւելի էին նեղւած առևտրի վերաբերութեամբ և բոլորովին հեռացւած էին հռոմէական քաղաքացիութիւնից, որ այն ժամանակ համարւում էր մի անգին առաւելութիւն։* Նկարագրած կազմակերպութեան ընդհանուր

նպատակն էր Իտալիան բաժանել մանր մասերի եւ դրանով խանգարել Հռոմի համար վտանգաւոր նուաճուած ժողովրդների ամէն մի դաշնակցութիւն։ *Բոլոր հպատակուած քաղաքները և ժողովրդներն անպայման կերպով ենթարկուած էին Հռոմին օտարների հետ յարաբերութեան մտնելու գործում, և բոլորն էլ պարտաւոր էին օգնել նրան պատերազմի ժամանակ։*

---

## ԳԼՈՒԽ Ե.

## *ՄԻՋԵՐԿՐԱԿԱՆ ԾՈՎԻ ՆՒԱՃՈՒՄԸ*

*Հռոմայեցիներն իրանց պատմութեան ընթացքում* Կարթագէն *մի քանի անգամ հանդիպեցին մի հզօր ու վաճառաշահ պետութեան հետ, որ հիմնել էին փիւնիկեցիները հիւսիսային Աֆրիկայում։ Կարթագէնն (Կարքեդոն) օգտւեց Տիւրոսի և Սիդոնի ընկնելուց և իր ձեռքի տակ հաւաքեց այդ քաղաքների գաղութներն արևմտեան ծովերում։ Այդ ժամանակ նա ստիպուած եղաւ կռւել էտրուսքների և գլխաւորապէս յոյների հետ։ Բայց առաջինների ոյժը փշրեցին կելտերն ու Հռոմը, իսկ երկրորդներն սկսեցին թուլանալ վարք ու բարքի ընկնելու և կառավարութեան մէջ անկանոնութիւններ ծագելու պատճառով։ Դրա համար էլ արդէն երրորդ դարի սկզբներում Կարթագէնն էր ամենազօրաւոր ծովային պետութիւնն այն ժամանակի աշխարհում*[1])։ Նրա մէջ ամէն ինչ ղեկավարում էին բազմաթիւ անձերից բաղկացած հարուստ վաճառա-

---

[1]) *Կարթագէնն իշխում էր Աֆրիկայի ամբողջ հիւսիսային ափին՝ Եգիպտոսից դէպի արևմուտք, Սարդինիայում և արևմտեան Սիցիլիայում։ Բացի դրանից՝ նրանք գաղութներ ունէին և Իսպանիայում։*

կանների մի շրջան. դատական և ելևմտական գոր-
ծերի մէջ գլխաւոր պաշտօնները գնւում էին փողով,
հասարակական ժողովն ունէր երկրորդական նշանա-
կութիւն։ Ժողովրդի բոլոր ուժերն ուղղւած էին դէպի
առևտուրը. զինւորական գործը յանձնւած էր վարձ-
կան բանակների, որոնք կազմւում էին արևմտեան
Եւրոպայի գրեթէ բոլոր ցեղերից։

Առաջին Պունիկեան պատերազմ։

Հարաւային Իտալիայի յունական նաւահանգստ-
ների գրաւումը հռոմայեցիներին երես երեսի հանեց
Կարթագէնի հետ։ Մեսսենական բարակ նեղուցից այն
կողմ տարածւում էր հացառատ, հարուստ Սիկիլիան,
բռնւած կարթագենական կամ «պունիկեան» գաղութ-
ներով։ Հռոմայեցիների նեղուցին տիրանալը դարձաւ
264 պատերազմի պատրւակ (264 թ.)։ Սկզբներում Հռոմն
ստիպւած չեղաւ էապէս փոփոխել իր գործելու եղա-
նակը։ Պատերազմը մղւում էր իբր շարունակութիւն
նախկին իտալական արշաւանքների։ Հռոմի կողմը բռնե-
ցին և իրանց վաղուցւայ թշնամի կարթագէնի դէմ ելան
յունական քաղաքները՝ Սիրակուզան գլուխ ունենալով։
Սիկիլական ցեղերը նոյնպէս օժանդակում էին երկրի
ներսում, որովհետև Հռոմը վերջ դրեց վարձկան զոր-
քերի ասպատակութիւններին։ Կարթագէնացիները
կորցրին մի ամբողջ շարք գաղթավայրեր, ի միջի այլոց
և Ակարգասը, հարաւային ափի վրայ իրանց գլխաւոր
յենակէտը։ Բայց չը նայելով հռոմէական այս բոլոր
աջողութիւններին, շուտով պարզւեց մի պայման, որը
պահանջում էր ընկնել մի բոլորովին նոր ճանապարհի
վրայ։ Պունիկեցիները թագաւորում էին ծովի վրայ,
մշտապէս անհանգստացնում էին իտալական ափերը
և չափազանց դժւարացնում էին սիկիլական բանակի
յարաբերութիւնները Հռոմի հետ. մի որ և է պատա-
հական անյաջողութեան կամ դաւաճանութեան դէպ-
քում այդ բանակը կարող էր բոլորովին կտրւել Ի-

տալիսյից և ոչնչանալ, ինչպէս աթէնական բանակը սիկիլական արշաւանքի ժամանակ։

Հռոմն ստիպուած էր սկսել իր համար բոլորովին անսովոր մի գործ—ցամաքային պետութիւնից դառնալ ծովային: Նրա տրամադրութեան տակ էին արդէն յունական նաւահանգստների նաւատորմերը, բայց նրանք անբաւարար հանդիսացան։ Ձեռնարկեցին շինել մեծամեծ պատերազմական նաւեր, հինգ շարք թիավարներով (պենտերաներ)։ Ժամանակ չը կորցնելու համար՝ հռոմէական և լատինական գիւղացիներին թիավարել էին սովորեցնում ցամաքի վրայ, յատուկ դրա համար շինուած փայտէ շէնքերի վրայ։ Հակառակ սպասածին՝ նոր նաւատորմին բաժին ընկաւ
յաջողութիւն. 260 թւին Դուիլիոս հիւպատոսը փշր- 260
եց կարթագենացիների զինուորական նաւատորմը։ Սակայն իր յաղթութիւնը նա պարտական էր ոչ թէ ծովագնացների ճարպկութեան, այլ պունիկեցիների համար արտասովոր մարտական ձևին. հռոմէական նաւերը կպչում էին պունիկեաններին, և կռիւն ընկնում էր տախտակամածների վրայ, որի ժամանակ կարելի էր օգտւել հռոմէական փորձւած հետևակազօրից։

Հռոմայեցիները հասկանում էին, որ այդ յաղթութիւնը երբեք չէ ապահովեցնում իրանց գերակշռութիւնը ծովի վրայ։ Որպէս զի պատերազմը վերջացնեն, նրանք վճռեցին սկսել մի վտանգաւոր ձեռնարկութիւն—զօրք հանել նոյն իսկ Աֆրիկա։ Այնպէս էին հաշիւ անում, որ եթէ միայն լեգիոններին յաջողւի մի կերպ հասնել մինչեւ Կարթագէն, նրանից առաջ ոչ մի պունիկեան բանակ չէ կարող դիմանալ: Զինեցին 40,000 միայն հետևակ. արշաւախմբի
առաջնորդութիւնը տւին Ատիլիոս Հռեգուլոսին (256 256
թւին)։ Կարթագէնի նաւատորմը, որ փորձեց ափ դուրս

գալը խանգարել, ջարդւեց։ Աֆրիկայում առաջին
գործողութիւնները նոյնպէս լիակատար կերպով յա-
ջող գնացին։ Կարթագէնի վաճառական օլիգարխիան
բոլորովին անընդունակ հանդիսացաւ մղելու այդ ար-
տասովոր պատերազմը. բայց միւս կողմից Հռոմն էլ
դեռ ևս պատրաստ չէր այդպիսի հեռաւոր և երկա-
րատև արշաւանքի համար։ Մի անգամից Կարթագէնն
առնել չէր կարելի։ Պէտք էր բանակն Աֆրիկայում
թողնել անորոշ ժամանակով, իսկ այդ անհնար էր
անել՝ առանց քայքայելու մանր գիւղական տնտեսու-
թիւնը, որոնցից առնւած էին լեգիոնների զինւոր-
ները։ Ծերակոյտն ստիպւած էր դարձնել զօրքի մեծ
մասը և Հռեգուլոսին թողնել միայն 15,000-անոց մի
զօրաբաժին։ Այն ինչ պունիկեցիները հաւաքեցին
վարձկանների մի նոր բանակ և նրա առաջնորդու-
թիւնը յանձնեցին մի փորձառու յոյնի, մարտական
գործերի մասնագէտ Քսանտիպպոսին։ Հռոմայեցիները
ոչ միայն ջարդւեցին, այլ և թակարդի մէջ մնացին
աֆրիկեան ափում։ Յաջողւեց նաւերի վրայ հաւաքել
և տուն տանել միայն խղճալի մնացորդները։

Հռեգուլոսի կորստից յետոյ հռոմայեցիներն ստիպ-
ւած եղան սահմանափակել իրանց գործունէութեան
շրջանը Սիկիլիայով։ Պատերազմը վերածւեց մի
շարք մանր պաշարումների և մանր յարձակումների
կղզու ափերում։ Ընդհանրապէս դա կատարւում էր
հռոմայեցիների օգտին, թէև նրանց նաւատորմերը՝
ծովային գործում բոլորովին անփորձ հիւպատոսների
և պրետորների առաջնորդութեան տակ՝ կրում էին մի
պարտութիւն միւսի յետևից։ Լուտացիոս Կատուլլոս
հիւպատոսի ծովային յաղթութիւնն Էգատան կղզի-
241 ների մօտ (241 թ.) վերջ դրեց պատերազմին։ Երկու
կողմն էլ ծայրայեղ կերպով ուժասպառ էին եղել.
Հռոմայեցիները ոչինչ չէին կարող ձեռնարկել Աֆ-

րիկայում, պունիկեցիները յուսահատւեցին Սիկիլիան պաշտպանելու գործում։ Վճռւեց, որ կղզին կանցնի Հռոմի ձեռքը և որ Կարթագէնը կը վճարէ մեծ պատերազմական տուգանք։

Թէ մէկ և թէ միւս հակառակորդը քիչ բան չունէին անելու իրանց սեփական երկրում. Կարթագէնը հազիւ կարողացաւ ոչնչացնել վարձկան զօրքերի ապստամբութիւնը. Հռոմն ստիպւած էր կարգը վերահաստատել հիւսիսային Իտալիայում, որտեղից մշտապէս սպառնում էին գալլերի անհանգիստ ցեղերը։ Կելտերի երկպառակութիւններից օգտւելով, հռոմայեցիները հեշտութեամբ տիրեցին Պօ գետի ամբողջ հովտին։ Այս գրաւումն ունեցաւ անմիջական ազդեցութիւն պունիկեան պատերազմներով քար ու քանդ եղած մանր հողատէրերի վրայ. Ֆլամինոս տրիբունի առաջարկութիւնով՝ աղքատացած գիւղացիներին հողեր բաժանւեցին հիւսիսային Իտալիայում։ Նոր գրաւած նահանգներն ապահովեցնելու համար՝ հիմնւեցին գաղութներ և ռազմական ճանապարհ շինւեց մինչև Պօ գետը (via Feaminia)։ Միևնոյն ժամանակ նոր կռիւ էր պատրաստւում Հռոմի և Կարթագէնի մէջ։ Հռոմայեցիները գրաւեցին Սարդինիան և Կորսիկան և դրանով խիստ վնասեցին պունիկեան առևտրին Միջերկրականի արևմտեան ջրերում։ Դրա փոխարէն պունիկեցի Համիլկարը նւաճեց հարաւային Իսպանիայի ցեղերին եւ մի նոր թագաւորութիւն ստեղծեց Կարթագէնի համար։ Այս յաջողութիւնն առանձնապէս կարևոր էր նրանով, որ Իսպանիայի իբերական ցեղերը տւին Համիլկարին և նրա որդի Հաննիբալին հիանալի զինւորներ։ Հռոմի և Կարթագէնի մէջ ընդհարում առաջացաւ այն պատճառով, որ Հաննիբալը գրաւեց հռոմայեցիների դաշնակից յունական Սագունտոս գաղութը, իսկ Կարթագէնի ծերակոյտը պաշտպանեց իր զօրապետին։

Երկրորդ Պունիկեան պատերազմ։

Հռոմայեցիները մտածում էին դուրս գալ Աֆրիկա և դրա համար արդէն բանակ էին ժողովել Սիկիլիայում։ Բայց նրանք իսկոյն զգացին, որ այժմ արդէն գործ ունեն ոչ թէ Կարթագէնի անշնորհք ծերակոյտի, այլ մի հանճարեղ զօրապետի հետ։ Փոխանակ Իսպանիայում և Աֆրիկայում յարձակման սպասելու, Հաննիբալը վճռեց մի արտակարգ գործ կատարել—հարաւայինԻսպանիայից,ցամաքի ճանապարհով անցնել հիւսիսային Իտալիա, ուր նա յոյս ունէր ոտքի հանել հռոմայեցիներից նոր յաղթուած կելտերին։ Դրա համար պէտք էր ճանապարհ բանալ Իսպանիայի և Գալլիայի վայրենի պատերազմասէր ցեղերի միջով, անցնել Պիրինեան լեռները, Ռօն գետը և վերջապէս՝ Ալպերը։ Պունիկեան բանակը պէտք է կտրուէր հարաւային Իսպանիայի և Աֆրիկայի հետ բոլոր յարաբերութիւններից, մտնէր քիչ ծանօթ երկրներ՝ յատկապէս հարաւի մարդոց համար դաժան կլիմայով, և յոյսերը դնէր միմիայն իր անդրդուելի ուժի վրայ։ Հինգ ամիս տևեց մինչև որ Հանիբալն Էբրօյից մինչև Տուրին հասաւ և այդ ժամանակում նա կորցրեց իր զօրքի կէսը։ Առանձնապէս սարսափելի եղաւ Ալպերն անցնելը (հաւանօրէն փոքր Սէն-Բերնարով). սեպտեմբերին լեռներում արդէն ձիւն էր գալիս. փղերն ու մարդիկն անդունդներն էին գլորւում, կռիւը տեղացի վայրենիների հետ, որոնք բռնում էին կածանները և բարձրից քարեր էին գլորում անցնող զինւորների վրայ՝—աւելի արիւնալի դուրս եկաւ, քան կանոնաւոր ճակատամարտերը։ Հաննիբալը Պօյի հովիտը հասցրեց 20,000 լիւբիական և իբերական հետևակ և 6,000 նումիդիական [1]) հեծելազօր—ինչպէս ե-

---

[1]) Նումիդիան հիւսիսային Աֆրիկայի մի նահանգն է, որ բնակւած է պատերազմասէր թափառական ցեղերով։

ընում է՝ մի չնչին ույժ, համեմատելով Հռոմի զորութեան հետ, որի տրամադրութեան տակ էին բոլոր Իտալիայի միջոցները։ Բայց նրա անհաւատալի արշաւանքը միանգամից մեծ ծառայութիւն արեց նրան․ նա բոլորովին շփոթեցրեց հռոմայեցիների հաշիւներն ու ձեռնարկած միջոցները։ Թշնամին երեւաց թիկունքի կողմում եւ բացի դրանից, վատ կերպով նւաճւած կելտական նահանգում։ Պէտք եղաւ շտապով դարձնել զօրքերը—հիւպատոսներից մէկի բանակը Սիկիլիայից ուղարկել հիւսիս։ Նոյնիսկ առաջին ընդհարման ժամանակ աֆրիկական հեծելազօրը բոլորովին փշրեց հռոմէականին և Պուբլիոս Սկիպիոն հիւպատոսն շտապով նահանջեց, որ միանայ Սիկիլիայից եկող Տիբերիոս Սեմպրոնիոս Լոնգի հետ։ Կազմւեց հռոմէական մի մեծ բանակ։ Լոնգը վճռեց յարձակւել առանց դանդաղելու։ Հաննիբալը կանգնած էր Տրեբա գետի միւս կողմը, այնպէս որ սաստիկ ցրտի ժամանակ լեգիոններն ստիպւած եղան ջուրն անցնել։ Հռոմայեցիները բոլորովին ջարդւեցին։ Տրեբիայի մօտ կատարած յաղթութիւնն առաջացրեց կելտական ցեղերի բաժանւելը Հռոմից։ Հաննիբալը նրանց զօրագնդերով լրացրեց իր փոքրիկ բանակի պակասորդները։ Այն ինչ նրա դէմ էր դուրս գալիս հռոմէական երրորդ բանակը՝ ժողովրդի սիրելի Ֆլամինիոսի առաջնորդութեամբ։ Նոր հիւպատոսը ձեռներէց և նոյն իսկ ինքնավստահ մարդ էր, բայց Տիկինոսի և Տրեբիայի մօտ տւած դասերը նրա վրայ էլ մի քիչ ազդեցին։ Նա մի ամուր դիրք էր գրաւել կարթագենացիների դիմացը և դաշտը չէր դուրս գալիս։ Այն ինչ Հաննիբալի դրութիւնն այնպէս էր, որ նա մինչեւ նոր ու նոր յաղթութիւններ պիտի տանէր, որ կարողանար կանգուն մնալ․ նա օտար երկրում էր և չէր կարող յոյս դնել փոփոխամիտ կելտերի

հաստատուն օժանդակութեան վրայ: Նա կրկին վճռեց
մի այնպիսի գործ անել, որ ամեն մի ուրիշ մարդու
համար անհնարին կըթւար. Ֆլամինոսի մօտովը՝ Տօս-
կանական ճահիճներում անցկացաւ: Չորս օր շարու-
նակ նրա մարդիկը գնում էին մինչև կոկորդը ջրերի
միջով, հազիւ անցնելով ճախճախուտ միջավայրով. Ջրե-
րի մէջ երևացին հիւանդութիւններ, ինքը Հաննիբալը
կորցրեց մի աչքը, բայց և այնպէս գործը գլուխ ե-
կաւ: Պունիկեցիները դուրս եկան հիւպատոսի թի-
կունքը՝ դէպի Հռոմ տանող բաց ու ազատ ճանապար-
հի վրայ: Ֆլամինոսն ընկաւ նրանց ետևից և Տրա-
զիմէնեան լճի մօտ թակարդն ընկաւ: Ինքն սպանւեց,
իսկ զօրքը լիակատար պարտութիւն կրեց:

Կաննայի ճակատամարտը:

Հռոմում յաղթեց այն կուսակցութիւնը, որը
պնդում էր, թէ պատերազմը պէտք է վարել զգու-
շութիւնով: Նրա ներկայացուցիչ Ֆաբիոս Մաքսիմոսը
նշանակւեց իշխանապետ (դիկտատոր) և իր կարգա-
դրութիւնների համար արժանացաւ «Կունկտատոր»
(Դանդաղկոտ) մականւանը: Նա անշեղ կերպով հե-
տևում էր մի ծրագրի—բաց դաշտի մէջ ճակատելուց
խուսափել և պաշտպանել ամրացւած տեղերը: Այդ-
պիսի պատերազմն իսկապէս անյարմար էր Հաննի-
բալի համար, որը ճնար չունէր իր փոքրիկ զօրքով
զբաղւել քաղաքներ պաշարելով: Այժմ նրա գլխաւոր
յոյսն էր Հռոմի հպատակ ժողովրդների ապստամբելը:
Որպէս զի այդ ապստամբութիւնը բարձրացնէ, նա
216 անցաւ Ապուլիա: 216 թւին հռոմայեցիները նրան մի
նոր առիթ ևս տւին՝ հռոմայեցի զօրապետներից իր
առաւելութիւնը ցոյց տալու: Տերենտիոս Վարրոն և
Էմիլիոս Պաւլոս հիւպատոսները շեղւեցին Կունկտա-
տորի սպասողական դրութիւնից: Նրանցից առաջինը
մի մսավաճառի որդի, կռւած էր իր հռչակաւոր ըն-
կերի հետ և ցանկանում էր մի վճռական հարւածով

*փառք ձեռք բերել։ Նա յոյս ունէր յաղթել, որովհետև հռոմայեցիները թւով շատ աւելի էին, քան պունիկեցիները։ Կաննայի մօտ տեղի ունեցաւ ճակատամարտը։ Հաննիբալի կելտերը, որ կանգնած էին միջավայրում՝ յետ նահանջեցին, բայց թևերի կողմում Իբերացիները և Լիւբիացիները յաղթեցին, իսկ նումիդական հեծելազունդը քշեց անցկացաւ լեգիոնների թիկունքի կողմը։ Հռոմայեցիները մի այնպիսի պարտութիւն կրեցին, որի նմանը՝ գալլական արշաւանքից յետոյ չէին տեսել. 80;000 հոգուց միայն մի երրորդն ազատւեց։ Թւում էր, թէ պունիկեցիներին մնում էր միայն գնալ Հռոմի վրայ և արիւնալի պատերազմին վերջ դնել՝ քաղաքն առնելով։ Բայց Հաննիբալը գիտէր, թէ ում հետ գործ ունի։* Ծանր դժբաղտութիւնը միայն բարձրացրեց հռոմայեցիների ոգին, ստիպեց նրանց մոռանալ բոլոր անձնական հաշիւներն ու վէճերը եւ կրծքերն իրար մօտեցնել՝ նրանցով պատ կազմել հայրենիքի պաշտպանութեան համար։ *Ծերակոյտը Վարրոնին շնորհակալութիւն արեց նրա համար, որ հաւաքեց զօրքի մնացորդները և յոյսը չըկտրեց հայրենիքի փրկութիւնից։ Բոլոր տղամարդ ազգաբնակութիւնը՝ 17 տարեկանից սկսած, զէնքի կոչւեց։ Ստրուկներից ընտրւեց 2 լեգիոն։ Սենատորներն (ծերակոյտի անդամներն) իրանց հաշւով նաւատորմ պատրաստեցին ու զինեցին։ Զօրքի գըլուխ նշանակեցին Ֆաբիոս Դանդաղկոտին և կելտական պատերազմի հերոսներից մէկին-Կլաւդիոս Մարկելլոսին։*

*Իտալիայի երկրորդ նւաճումը հռոմայեցիներից։*

*Հաննիբալը շատ լաւ գիտէր իր ուժերը, դրա համար էլ փորձ չարեց Հռոմի վրայ յարձակւելու* Իտալական ցեղերին ապստամբեցնելու. նրա յոյսը կարծես սկսում էր իրականանալ. *Հռոմից անջատւեցին Սիրակուզան, Կապուան և Սամնիացիները։*

Բայց այդ անջատումը մի առանձին տեսակ էր. ի հարկէ կարեւոր էր այն, որ Հռոմն այլ ես օգնութիւն չէր կարող ստանալ իր դէմ ապստամբուած նահանգներից և որ նա պէտք է մտածէր նրանց կրկին նուաճելու մասին. բայց Հաննիբալն անկարող էր Հռոմի դէմ գրգռել մի նոր Սամնիական պատերազմ, չէր կարող նոյն իսկ իր սպանուող զինուորները փոխարինել այդ իտալացիներով։ Հռոմի դէմ յարձակողական գործողութիւնների համար նրա նոր դաշնակիցները, բացի կելտերից, քիչ ընդունակ երեւացին, որովհետեւ դեռ ես չէին ուղղուել սամնիական պատերազմների հարուածներից և շատ թոյլ ձեւով էին օգնում Պունիկեցիներին։ Պատերազմը ձգձգուեց և հռոմայեցիները կարողացան ուղղուել։ Հաննիբալի դէմ նրանք պաշտպանւում էին ամենայն զգուշութիւնով։ Բայց մէկ մէկ պատժում էին նրա դաշնակիցներին։ Արդէն 212 թւին Մարկելլոսն առաւ Սիրակուզան, 211-ին
212 211 գրաւեց Կապուան։ Հաննիբալի համար ծագում էր կողմնակի օգնութիւն ստանալու ճակատագրական հարցը. ակներեւ էր, որ իր սեփական ուժերով նա չէր կարող յաղթել Հռոմին։ Կարթագէնի ծերակոյտը բոլոր ժամանակ պատերազմին վերաբերում էր համարեա անտարբեր ձեւով, կարծես թէ նա կարթագէնի համար չէր մղւում: Մի քիչ օժանդակութիւն ուղարկեցին միայն Իսպանիա։ Դրա փոխարէն Հաննիբալը յոյս էր դրել իր եղբօր՝ Հասդրուբալի վրայ, որը մի կամակոր կռիւ էր մղում հռոմէական զօրքերի դէմ Իսպանիայում։ Այստեղ գործող երիտասարդ զօրավար Պուբլիոս Կորնելիոս Սկիպիոնը յաղթեց Հասդրուբալին, բայց չը կարողացաւ խանգարել նրան Իտալիա գնալ նոյն ճանապարհով, որով առաջ անց էր կացել Հաննիբալը։

Գալլիայում Հասդրուբալը լրացրեց իր իբերա-

*կան զօրքերը նոր զինուորներով և 207 թւին մտաւ* 207
*Իտալիա։ Վտանգը ծայրայեղ էր, բայց հռոմայեցի-ները գեղեցիկ կերպով օգտւեցին նրանով, որ գըտ-նւում էին երկու եղբայրների մէջ տեղը և բաժան-բաժան պահեցին նրանց։ Հաննիբալի դէմ հարաւային Իտալիայում կանգնած Կլաւդիոս Ներոն հիւպատոսը բռնեց այն սուրհանդակներին, որ ուղարկւել էին Հաննիբալին իմացնելու, թէ օգնութիւնը հասել է։ Նա իսկոյն վճռեց մի համարձակ քայլ անել. գաղտնի կերպով հեռացաւ իր բանակատեղից իր ամենալաւ զօրքերով, խիստ արագ ընթացքով անցաւ ամբողջ Իտալիայով և օգնութեան հասաւ իր ընկերին, որ կտրում էր Հասդրուբալի ճանապարհը։* Հասդրու-բալի զօրքերը ոչնչացան, եւ դրանով էլ վճռեց Հաննիբալի բաղդը։ *Մի քանի տարի էլ նա դեռ դիմացաւ Իտալիայում, բայց հռոմէական ուժերը նրա չորս կողմում աւելի և աւելի նեղ շրջան էին կազմում։ Ուր որ նա ինքը չէր երևում, այնտեղ յայտնւում էին հռոմայեցիները և ամրանում։ Վերջա-պէս պունիկեան զօրքը սեղմւեց վերջին անկիւ-նում՝ Բրուցիումի մէջ, թէ և հակառակորդները դեռ ևս չէին վստահանում ճակատել Հաննիբալի դէմ բաց դաշտում։*

*Հաննիբալին մահացու հարւած հասաւ կողմնակի* Պատերազմը Աֆրիկայում։
*տեղից՝ այն Իսպանիայից, ուր նա կազմել էր իր բանակը։ Պուբլիոս Կորնելիոս Սկիպիոնն այնտեղ բա-լորովին կործանեց կարթագէնի իշխանութիւնը և թոյլտւութիւն խնդրեց ու ծերակոյտից իրաւունք ստացաւ դուրս գալ Աֆրիկա։ Երիտասարդ զօրավարի ժողովրդականութիւնն այնքան մեծ էր, որ ծերա-կոյտը նրան մի քիչ նախանձով վերաբերւեց և նրա տրամադրութեան տակ թողեց միայն սիցիլիական բա-նակը, որի գլխաւոր մասը կազմում էին Կաննայի*

մօտ ջարդուած լեգիոնների մնացորդները։ Բայց Սկիպիոնին օգնեցին կամաւորները և կամաւոր նուիրատուութիւններն, այն էլ ոչ միայն Հռոմից, այլ և գաղութներից և Հռոմին հաւատարիմ մնացած քաղաքային համայնքներից (մունիցիպիա)։ Նրա Աֆրիկա դուրս գալը Կարթագէնի ծերակոյտին յանկարծակի բերեց, ինչպէս Ռեգուլոսի ափ ելնելը։ Կարթագէնացիները պաշտպանութեան ուրիշ ոչ մի միջոց չը գտան, բացի Հաննիբալին օգնութեան կանչելը։ Սիրտը դառնութիւնով լցուած՝ թողեց մեծ զօրավարն իտալական հողը, որը չափել-չափչփել էր ծայրից ծայր և այժմ կորցնում էր, ոչ մի պարտութիւն չըկրելով։ Նրա փորձուած զինուորները մեծ մասով արդէն ընկել էին արշաւանքներում, և երբ Հաննիբալը երևաց Աֆրիկայում, արդէն չէր կարող յոյս դնել իր ուժերի վրայ։ Մինչև անգամ նա փորձ արեց բանակցելու Սկիպիոնի հետ, բայց անյաջող դուրս եկաւ։ Զամայի մօտ հանդիպեցին Կաննայում ջարդուած լեգիոններն իրանց նախկին յաղթողների հետ։ Հաննիբալի աֆրիկական և իբերական հին զինուորները պահպանեցին իրանց փառաւոր անունը և երկար ժամանակ դիմադրեցին։ Բայց նոր հաւաքուած զինուորները չէին կարող չափուել հռոմայեցիների հետ և միայն խանգարում էին իրանց մարդկանց։ Գործը վերջացաւ Պունիկեցիների լիակատար պարտութիւնով։ Կարթագէնն իսկոյն ընդունեց խաղաղութեան դաշինքը, թէև նրան խիստ ծանր պայմաններ էին դրել—մի ահագին պատերազմական տուգանք, նաւատորմը յանձնել հռոմայեցիներին և ենթարկուել Հռոմին՝ դաշնակից քաղաքի իրաւունք-
202 ներով (202 թ.)։

Երկրորդ Պունիկեան պատերազմը շատ կողմերով խրատական եղաւ։ Նա պարզ կերպով ցոյց տուեց, որ մեծ պատերազմներում վճռական նշանակութիւն ունեն ոչ այնքան առաջնորդի ձիրքերը, որքան ժողովուրդների ոգին ու կազմու-

թիւնը։ Հաննիբալի հանճարը շատ ուժեղ կերպով արտայայտուեց նրանում, որ նա իսկապէս մենակ 16 տարի շարունակ պատերազմեց Հռոմի հետ։ Բայց դրանով վերջնական ելքը չըփոխուեց. Կարթագէնն իր դիրքի բարձրութեան վրայ չէր, իսկ Հռոմն արտայայտեց հայրենասիրութեան և ամրութեան անհատնելի ոյժ։ Իտալական ցեղերի վարմունքը ևս չափազանց բնորոշ և կարևոր էր։ Պատերազմն Իտալիայի մէջ նրանց տրամադրութիւնն իմանալու մի ծանր փորձ էր։ Կենդանի, գործունեայ ուժերը պաշտպանում էին Հռոմին. նրանից բաժանուող կելտերը, սամնիացիները, կամպանիացիները և հարաւային իտալացիներն արդէն այնքան թուլացած և բաժան-բաժան էին եղած հռոմէական նուաճումով, որ իրանց ազատիչին նշանաւոր օգնութիւնը ցոյց չըտուին։

Մակեդոնական պատերազմները.

Կարթագէնին յաղթելով՝ հռոմէական հանրապետութիւնը դարձաւ Միջերկրականի շրջակայքում ամենահզօր պետութիւնը։ Թէ ինչ տպաւորութիւն էր գործում այդ ժամանակ Հռոմի ուժը, կարելի է տեսնել նրանից, որ դեռ մինչև Հաննիբալին վերջնականապէս յաղթելը՝ պունիկեան պատերազմի ամենատաք ժամանակը, եգիպտացիները ճանաչեցին Հռոմն իբր խնամակալ անչափահաս Պտղոմէոս Եպիփանոսի վրայ, աչքի առաջ ունենալով Մակեդոնիայի թագաւոր Փիլիպոս III-ի և Անտիոքոս III Սելևկեանի փորձերը տիրելու Եգիպտոսին։ Այսպիսով Հռոմը կոչուեց միջամտելու Ալէքսանդր Մեծի թագաւորութիւնից առաջացած արևելեան յունական միապետութիւնների մէջ։ Փիլիպպոսը և Անտիոքոսը միացան Հռոմի դէմ, բայց միաբան չէին գործում, այնպէս որ կարելի ե-
ղաւ կռուել նրանց դէմ առանձին առանձին։ 196 թուին 196
Տիտոս Կւինկցիոս Ֆլամինինոսը Կինոսքէֆալի մօտ
յաղթեց Փիլիպպոսին, և 190-ին Լուկիոս Սկիպիոնը, 190
Զամայի յաղթականի եղբայրը, ջարդեց Անտիոքոսին Մագնեզիայի մօտ։ Յաղթուած նահանգները չըմիացուեցին Հռոմի հետ, այլ նրա հետ դաշնակցութեան մէջ դրուեցին, որի ժամանակ, ի հարկէ, պէտք է հետևէին

ծերակոյտի հրամաններին ամենակարեւոր հարցերում՝ մանաւանդ արտաքին քաղաքականութեան վերաբերութեամբ։ Սակայն նրանց էր թողնուած իրանց ներքին գործերը կառավարելու իրաւունքը, և դրա համար Ֆլամինինոսը կարող էր Յունաստանն «ազատ» հրատարակել։ Այդ ժամանակի բոլոր յաղթութիւններ տարան Սկիպիոնների շրջանի մարդիկը (այդ շրջանին էր պատկանում և Ֆլամինինոսը)։ Այդ շրջանի գլուխը կանգնած Պուբլիան ստացաւ «Աֆրիկացի» տիտղոսը, նրա եղբայր Լուկիանոսն՝ Ասիացի։ Բայց գերակշռութիւնը բոլորովին առանց հակառակորդների չէր։ Կոռնելիոս Սկիպիոնների անչափ բարձրանալը երկիւղ և նախանձ էր գրգռում։ Հին բնաւորութեան տէր հռոմայեցիներին, պարզութեան, բարքերի խստութեան, նեղ, եսական հայրենասիրութեան կուսակիցներին հաճելի չէր Սկիպիոնների բարեկամական յարաբերութիւնը օտարների հետ, նրանց գլուխ խոնարհեցնելը յունական կրթութեան առաջ։ Նորմուծութիւնների, շռայլութեան և օտար ազդեցութիւնների դէմ կռւելու մէջ առանձնապէս աչքի էր ընկնում Մարկոս Պորցիոս Կատոնը, Հռոմի ժողովրդի ամենախիստ ցենզորներից մէկը։ Սկիպիոնների նշանակութիւնը մի առ ժամանակ այնքան խախտւեց, որ հասարակական ժողովում Լուկիանոսին դատապարտեցին, մեղադրելով գանձարանից գողութիւն անելու մէջ. Պուբլիոսն ինքը դժւարութիւնով խուսափեց նոյն տեսակ դատավճռից և գործերից բոլորովին քաշւեց։

Բայց դժւար էր վերջնականապէս հեռացնել Սկիպիոնների շրջանը. նրան էին պատկանում այն ժամանակի Հռոմի ամենաընդունակ մարդիկը, և առանց նրանց մասնակցութեան գործերը, մանաւանդ արտաքին, վատ էին գնում։
168 թւին, մի ամբողջ շարք անյաջողութիւններից յետոյ, հռոմայեցիները

ստիպւած էին Մակեդոնիա ուղարկել Փիլիպպոս III-ի որդի Պերսէոսի դէմ այն շրջանի աչքի ընկնող զօրավարներից մէկին—Էմիլիոս Պաւլոսին։ Նա արագ վերջացրեց պատերազմը՝ Պիդնայի մօտ յաղթելով հակառակորդին։ Նրա որդուն որդեգրեց Սկիպիոն Աֆրիկացին, յատկացնելով Սկիպիոն Էմիլիանոս անունը։ Նրան դիմեցին երրորդ Պունիկեան պատերազմի ժամանակ, որ ծագեց հռոմայեցիների անտանելի բծախնդրութիւնների և ճնշումների պատճառով. ծերակոյտն օգնում էր Կարթագէնի դէմ Նումիդիական առաջնորդներին, իսկ ծերունի Կատոնն ամեն յարմար ու անյարմար դէպքում կրկնում էր, որ կարթագէնը պէտք է կործանել։ Ծայրայեղութեան հասցրած կարթագէնացիները պաշտպանում էին յուսահատական քաջութիւնով, և պատերազմի սկզբում Հռոմի համար անյաջող էր գնում։ Բայց Սկիպիոն Էմիլիանոսը երեքօրեայ կռւից յետոյ՝ առաւ և կործանեց Կարթագէնը (146 թւին)։ Նոյն տարին հռոմայեցիները ճնշեցին 146 յոյների ապստամբութիւնը, և հռոմէական զօրավար Մումմիոսն այրեց Կորնթոսը։

Այս յաղթութիւններով Հռոմը դարձաւ ամբողջ Գաւառները (պրովինցները)։ Միջերկրականի տէրը։ Ճշմարիտ է, կային ժողովրդներ, որ չէին հպատակւում նրան—իսպանական և գալլիական ժողովրդների մի մասը դեռ ևս պահում էին իրանց անկախութիւնը—բայց այն ժամանակի աշխարհի կեանքում նրանք մեծ նշանակութիւն չունէին։ Կային դաշնակից պետութիւններ, որ պահպանում էին իրանց ինքնավարութիւնը—Եգիպտոսը, Պերգամը, Նումիդիան, բայց նրանց քաղաքականութիւնը պէտք է ենթարկւէր ծերակոյտի հրամաններին։ Իսկ մի շարք կարեւոր նահանգներ անցան ուղղակի Հռոմի ժողովրդի տիրապետութեան տակ։ Սիկիլիան եղաւ նրա առաջին գաւառը (Պրովինցը) Իտալիայից

դուրս. յետոյ միացան Ցիսալպինեան Գալլիան (այսինքն՝ Ալպերից այս կողմի Գալլիան—այժմեան Լոմբարդիան և Պիէմօնտը)։ Սարդինիան (Կարթագէնի հողերը)։ Գաւառների բոլոր հողերը ճանաչում էին Հռոմի ժողովրդի սեփականութիւնը. հողերի մի մասն անցնում էր գանձարանին կամ բռնւում էր գաղթականութիւններով. մնացածների վրայ շարունակում էին բնակւել նախկին բնակիչները, բայց արդէն ոչ իբրև սեփականատէրեր, այլ իբր կապալառուներ, որ պէտք է Հռոմին տուրք (vectigal) վճարէին։ Գաւառի կառավարութիւնն ամբողջովին պատկանում էր բարձր պաշտօնեաներին (մագիստրատ) կամ երբեմն այդպիսի պաշտօն վարածներին (փոխ հիւպատոս, փոխ-պրէտօրներ,) որ այդտեղ էին ուղարկւում ծերակոյտի կողմից[1])։ Հռոմէական փոխարքան, քանի նա գտնւում էր գաւառում, ամբողջ ազգաբնակութեան կեանքի եւ ստացուածքի տէրն էր։ Հռոմ վերադառնալուց յետոյ կարելի էր գանգատւել նրա վրայ ծերակոյտին կամ նոյն իսկ դատի ենթարկել նրան բռնի կերպով փող կորզելու համար, բայց գաւառացիների համար հեշտ չէր արդարադատութիւն գտնել ազդեցիկ հռոմայեցիների դէմ, և սովորաբար փոխարքաները շատ էին ի չարը գործ դնում իրանց իշխանութիւնը—կողոպտում էին ժողովրդին և ամեն տեսակ բռնութիւններ գործադրում։ Ասելն անգամ աւելորդ է, որ գաւառների շատանալը զօրացրեց ծերակոյտին, որովհետև նրա անդամներից էին նշանակւում փոխարքաները։

---

[1]) Պրովինցի կառավարիչ նշանակւում էին այն մարդիկ, որոնք երբ և իցէ արժանացել էին վարելու Հռոմում բարձր, ընտրովի պաշտօններ։

Ծ. Թ.

Ասպետներ.

Բայց ծերակուտական ազնուականութեան վրայ դրուած էր մի շատ էական սահմանափակութիւն. կառավարչական պաշտօններ վարող անձերին արգելուած էր մասնակցել առեւտրական գործերում։ Դրա համար էլ սենատորները (ծերակոյտի անդամները) չէին կարող ոչ նաւեր շինել, ոչ պետական ընդարձակ հողաբաժիններ կապալով վերցնել, ոչ էլ աճուրդով գնել գաւառներից հարկեր և տուրքեր հաւաքելու իրաւունքը։ Այն ինչ Հռոմի արած նուաճումների շնորհով բացւում էին ահագին և չափազանց շահաւէտ ձեռնարկութիւններ։ Միջերկրականի վրայ առևտուրը կենդանացաւ, որովհետև հռոմէական տիրապետութիւնը վերջ դրեց ծովափնեայ պետութիւնների մէջ տիրող պատերազմներին։ Գաւառների նուաճումով արագ աճում էր պետական հողատիրութիւնը, միշտ շատանում էին գաւառներից հաւաքւող հարկերն ու տուրքերը. հռոմէական ցենզօրներն աճուրդով ծախում էին պետական հողերի տնտեսութիւնը, հարկերի և տուրքերի հաւաքումը, և ցենզօրների աճուրդատեղին դարձաւ մի հրապարակ, ուր գնահատւում էին համարեա ամբողջ լուսաւոր աշխարհի բարեկեցութիւնը և բաշխւում հարկերը։ Այս փողային գործերում շատ արագ կարելի էր կազմել հսկայական հարստութիւն, և բնական է, որ դրան էին ձգտում քիչ ու շատ կարողութիւն ունեցող հռոմայեցիները։ Որովհետև սենատորները և ընդհանրապէս պաշտօնատար ազնուականութեան (նօբիլիտէտ) անդամները հեռացուած էին այդ գործերում ուղղակի մասնակցութիւն ունենալուց, դրա համար նրանք աշխատում էին մի կերպ զանց առնել օրէնքը, իրանց դրամագլուխները յանձնելով ազատ արձակուած ստրուկներին, որոնք պէտք է գործերը վարէին իբր թէ իրանց կողմից։ Դրա շնորհով ազատ արձակուածները մեծ նշանակութիւն

*տացան քաղաքում. Նրանք յաճախ շատ հարստանում էին։ Բայց, բացի դրանից, կազմւեց մի ամբողջ դասակարգ, որն իրան նւիրում էր բացառապէս փողային ձեռնարկութիւնների և խոշոր առևտրի. բոլորովին ազատ գործելու համար՝ նրանք խուսափում էին պետական պաշտօններից։* Այսպիսով՝ պաշտօններն ու ծերակոյտը բռնող ազնուականութեան կողքին երեւան եկաւ փողային արիստոկրատիան, որի ձեռքն էին ամբողջ աշխարհի դրամագլուխները։ *Ցենզօրները գըրում էին այդ հարուստներին առաջին դասակարգի ասպետական հարիւրեակների մէջ* (*ցենտուրիա*), *և դրա համար էլ բոլոր դասը կոչւեց* ասպետների *դաս* (equites)։

*Հռոմի քաղաքացիութեան մէջ առաջացած փոփոխութիւնները։*

III *և* II *դարերի պատերազմները և միջերկրականի նւաճումը ծնեցրին Հռոմի ժողովրդի կեանքում ուրիշ տխուր փոփոխութիւններ ևս։* Հռոմն իր զէնքի անսովոր յաջողութիւններովը պարտական էր գլխաւորապէս ազատ գիւղացիների հայրենասիրութեանը եւ տոկունութեանը։ *Լեգիոնների աննման հետևակազօրը կազմւում էր 7—10—15 իւգերանոց հողաբաժիններ ունեցող մանր հողատէրերից, որոնք սովորել էին իրանց դաշտում տոկուն աշխատանքի, բայց չէին ամաչում իրանց աշխատանքից և պարկեշտ կարողութիւնից, այլ պարծանքով անւանում էին իրանց մեծ Հռոմի ազատ քաղաքացիներ։ Բայց երկրորդ պունիկեան պատերազմի նման պատերազմները կամ երկար ու անընդհատ արշաւանքները ծովի միւս ափերը՝ Մակեդոնիա, Ասորիք, Իսպանիա՝ քայքայեցին հռոմէական գիւղացու ուժերն ու կեանքը։ Քայքայւում, կործանւում էր տիրոջ կողմից բարձիթողի արւած մանր տնտեսութիւնը.* հողատէրն ինքը գիւղացուց դառնում էր զինւոր. սովորում էր ապրուստ որոնել ոչ թէ հողագործութեան, այլ թոշակի ու թալանի մէջ։

*Ճշմարիտ է, ամեն մի նոր նուաճումից յետոյ աղքատ քաղաքացիների մի մասը հողաբաժիններ էր ստանում գաղթավայրերում, բայց դրա շնորհով հռոմայեցիները և լատինացիները գնում էին կամաց-կամաց բնակութեան նոր և հեռաւոր տեղեր, իսկ Հռոմի նահանգը և Լացիումը դատարկւում էին։ Ինքը՝ Հռոմ քաղաքն Իտալիայի բոլոր մասերից և գաւառներից գրաւում էր ահագին քանակութեամբ բնակիչներ, բայց նրա մէջ աւելի և աւելի աճող ամբոխն աչքի էր ընկնում մեծ քաղաքի խուժանի բոլոր վատ յատկութիւններովը։* Այնտեղ միշտ աւելանում էր այն մարդիկների թիւը, որոնք հեշտ վաստակ են որոնում պետութեան եւ հարուստների հաշւով. *ընտրութիւնների ժամանակ իրանց ձայները ծախող քաղաքացիներ, Յունաստանից և Արևելքից եկած բաղդախնդիրներ, դատարկապորտ մարդիկ, որ ապրում էին քաղաքից տրւող ձրի բաժիններով և ծերակոյտի անդամների և ասպետների ողորմութիւններով,—ի հարկէ այս բոլոր խուժանը չէր կարող փոխարինել նախկին հասարակ և դիմացկուն գիւղացիներին։ Պատկերն ամբողջացնելու համար պէտք է մի փաստ էլ աւելացնել.* Նւաճումները յանկարծ ծայրայեղ կերպով աւելացրին ստրուկների թիւը. *առանձնապէս շատ խուժեցին նրանք Ասիայից։* Հարուստ մարդիկ գնում էին նրանց ահագին խմբերով եւ նրանց աշխատանքով կազմում էին մեծամեծ տնտեսութիւններ (latifundia)։ *Սա լրացնում էր մանր գիւղացիների կործանումը։ Նրանք չէին կարողանում շուկայ ուղարկել այնպիսի լաւ անասուններ, որպիսին նրանց հարուստ դրացիներն էին ուղարկում, որոնց տրամադրութեան տակ կային ընդարձակ արօտատեղիներ և բազմաթիւ հովիւներ ստրուկներից, աւելի ևս դժւար էր հաց մշակել այնպիսի չնչին գըներով, ինչպէս հացառատ Սիկիլիայում և Աֆրիկայում։*

*Դրա համար էլ մանր հողատէրերն սկսեցին ուրախութիւնով ծախել իրանց հողաբաժինները հարուստներին, թողնել տնտեսութիւնը և հաւաքուել քաղաքներում. այնտեղ նրանց առաջ բացւում էր թշուառ* պրոլետարիատի [1]) *վատ ապահովւած, բայց ուրախ ու անգործ կեանքը։*

*Այսպիսով՝ հռոմէական ժողովրդի յաղթութիւնները բոլորովին չը բարելաւեցին նրա ներքին կեանքը. ընդհակառակը՝ նկատւում էր արագ անկում, որի դէմ յարմար միջոցներ գտնելը դժւար էր։*

---

## ԳԼՈՒԽ Զ.

## ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԽՌՈՎՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՇՐՋԱՆԸ

*Իսպանական պատերազմը։*

*Հռոմի այլասերութիւնն սկսեց երևալ ոչ միայն կենցաղի և բարքերի փոփոխութեան, այլ և* պատերազմական ոգու ընկնելու մէջ։
149 *9 տարի տևեց (149-ից սկսած) իսպանական ցեղերի հետ յոգնեցուցիչ պատերազմը, և հռոմայեցիները ոչ միայն անկարող էին նւաճել նրանց, այլ և անդադար խայտառակ պարտութիւններ էին կրում։ Այս կռւում առանձնապէս աչքի էր ընկնում Լուզիտանացի Վիրիատը, որից յաջողւեց ազատւել միայն ուղարկւած սպանիչների ձեռքով. բայց և նրա մահից յետոյ իբերացիների ամրութիւնը—Նումանցիան ցոյց էր տալիս անյաղթելի դիմադրութիւն։ Նրա դէմ սկսւած արշաւանքում Մանկինոս հիւպատոսի բանակն ընկաւ այն դրութեան մէջ, որպիսի դրութեան ընկաւ Կաւդինեան կրճում սամնիացիներին անձնատուր եղած զօրքը։ Նրան ամեն կողմից շրջապատեցին լեռների մէջ, և նրա քւեստոր*

---

[1]) *Մի մարդ, որ չունի ապրուստի որոշ միջոցներ։*

Տիբերիոս Գրակքոսը մեծ դժւարութիւնով կարողացաւ համոզել ազատ արձակելու բանակն այն պայմանով, որ դաշն կը կապեն և հռոմէական բանակի բոլոր ստացւածքը կը յանձնեն Նումանցիացիներին։

Ծերակոյտը վարւեց ճիշտ այնպէս, ինչպէս սամնիական պատերազմում—խաղաղութեան դաշինքը չըհաստատեց և Մանկիանոսին յանձնեց թշնամիներին։ Իսպանիա ուղարկեցին Սկիպիոն Էմիլիանոսին, ինչպէս հանրապետութեան ամենալաւ զօրավարին. վերջապէս նրան յաջողւեց հռոմէական զօրքերի կարգապահութիւնը վերականգնել և գրաւել Նումանցիան։ Այդ նոյն ժամանակում ևս ճնշւեց Սիկիլիայում ստրուկների սարսափելի ապստամբութիւնը։

Տիբերիոս Գրակքոս.

Բայց այս անցքերից աւելի կարևոր էին ներքին բարենորոգութիւններն այն Տիբերիոս Գրակքոսի, որ այնքան կարևոր դեր խաղաց Մանկիանոսի զօրքում։ Նա սերւում էր Պլեբէյական յայտնի Սեմպրոնեան տոհմից։ Նրա հիւպատոս և ցենզոր հայրն արժանացաւ ընդհանուր յարգանքի իր անբիծ, խիստ վարքով, արդարութիւնով ու մարդասիրութիւնովը։ Նրա մայր Կորնելիան Զամայի յաղթողի դուստրն էր. նա հաղորդեց իր որդիներին իր տան հպարտութիւնը և փառասիրութիւնը—մի ազնիւ ձգտում՝ ամենքի աչքում բարձրանալ դէպի հայրենիքն ունեցած սիրով ու մատուցած ծառայութիւններովը։ Տիբերիոսը խորին կերպով գիտակցում էր, որ իր ժամանակի հռոմայեցիներն անարժան են իրանց նախնիքներին և որ անհրաժեշտ է չարիքի դէմ մաքառել, քանի դեռ ուշ չէ։

Նրա բարենորոգութեան ծրագիրը վերջնականապէս հասունացաւ այն ժամանակ, երբ Իսպանիա գնալիս նա անցնում էր Էտրուրիայով և դիտում ամայացած դաշտերը և ստրուկ ազգաբնակութիւնը,

որ բուն էր դրել այդ դաշտերում նախկին ազատ գիւղացիների փոխարէն։ Այդ ժամանակից նա իր գոյութեան նպատակը դրեց վերականգնել գիւղական դասակարգը. Հռոմի յաջողութիւնների եւ մեծութեան իսկական հիմունքը:

133 133 թւին Տիբերիոսին տրիբուն ընտրեցին։ Նա կոմիցիաններին առաջարկեց հողատիրական (ագրարական) օրէնքը, որը պէտք է ստեղծէր մանր հողատէրերի մի նոր դասակարգ։ Իտալիայում պետական հողերն արդէն յափշտակւած էին և, ըստ երևոյթին նոր սեփականատէրերի համար ոչ մի տեղից հողեր չէր կարելի գտնել։ Բայց պետական հողերի (ager publicus) գրաւումը կատարւել էր յափշտակութիւնների ապօրինի ճանապարհով, որոնց ժամանակ հարուստ քաղաքացիները իւրացրել էին ահագին հողաբաժիններ։ Գրակքոսը վերանորոգեց Լիկիանոսի և Սեքստոսի օրէնքների այն կանոնը, որի համաձայն ոչ ոք չըպէտք է որոշ թւից աւելի իւգեր պետական հող ունենայ. Գրակքոսն այդ թիւը որոշեց 100 իւգեր։ Բոլոր աւելորդ հողերը պէտք է վերադարձւէին եւ վերածւէին մանր հողաբաժինների՝ խեղճ գիւղացիների համար, ամեն մէկ բաժինը *30* իւգերից։ Այդ հողաբաժինները տրւում էին մի փոքրիկ տուրքով, և արգելւած էր ծախել այդ բաժինները, որպէս զի խանգարեն հարուստների հողաբաժիններ գնելը։ Պետական հողերի վերադարձնելու և բաշխելու բոլոր գործերի կառավարութիւնը յանձնւեց երեք հոգուց կազմւած մի մասնաժողովի, որ ընտրւում էր ժողովրդից ամեն տարի։ Ծերակոյտի անդամներն՝ ի հարկէ ամենից շատ պէտք է վնասւած լինէին Գրակքոսի առաջարկութիւնից, որով հետև նրանց ձեռքումն էր պետական հողերի մեծ մասը. դրա հետ միասին նրանք երբէք չէին ցանկանում, որ ստորին դասակարգերը յանկարծ

ուժեղանային մանր, բայց անկախ սեփականատէրերի թւի շատանալու պատճառով։ Նրանք համոզեցին Գրակքոսի ընկեր միւս տրիբունին-Օկտաւիոսին՝ կանգնեցնել Գրակքոսի օրինագիծն իր արգելքներով (veto)։ Այս արգելքի օրինականութեան դէմ ոչինչ չէր կարելի ասել, և Տիբերիոսին մնում էր կամ հպատակւել և յետաձգել իր ծրագիրը, և կամ, ինչ էլ որ լինէր, հեռացնել իր հակառակորդին։ Նա նախապատւեց այս վերջինը և արեց մի երկրորդ, չըլսւած առաջարկութիւն—այսինքն՝ հարց դրեց թէ արդեօք կարող է ժողովրդի ցանկութեան դէմ գործող տրիբունը պահպանել իր պաշտօնը։ Ջայնտւութեան օրն ամեն կողմից խիստ գրգւած ժողովուրդը Հռոմ խուժեց։ Տիբերիոսն սկսեց ձայնտւութիւնը և, երբ 17 տրիբուններ [1]) տւացին «ոչ» (այսինքն չէ կարող), կանգնեցրեց նաքւէարկութիւնը և դարձաւ Օկտաւիոսին մի սրտաուռչ յորդորով՝ չըստիպել իրան դիմելու ծայրայեղ միջոցների և տեղի տալ ժողովրդի կամքին։ Նա իր ասածին հաստատ մնաց, և Գրակքոսը շարունակեց ձայնտւութիւնը մինչև վերջը։ Օկտաւիոսին փոխեցին. նրա տեղը նշանակւած տրիբունը միացաւ Գրակքոսի հետ, և հողատիրութեան օրէնքն ընդունւեց կոմիցիաներում։ Եռապետներ ընտրւեցին՝ Տիբերիոսը, նրա եղբայր Գայիոսը և փեսայ Ապպիոս Կլաւդիոսը։

Բայց բարենորոգութեան դժւարութիւններն աւելի զգալի էին լինում։ Եռապետները պէտք է քննէին հողատիրական պայմաններն ամբողջ Իտալիայում և յետ խլէին շատ հողեր, որ երկար տարիներ մասնաւոր անձերի ձեռքերում էին։ Ծագեցին բազմաթիւ գանգատներ և անբաւականութիւններ։ Սկսած գործը շա-

---

[1]) Բոլոր տրիբուների թիւը 35 էր, ասել է՝ 10 տրիբ կազմում էին մեծամասնութիւնը։

*րունակելու համար Տիբերիոսին անհրաժեշտ էր պահ-
պանել իր ձեռքում տրիբունի հզօր դիրքը, այն ինչ
այն ժամանակ երկրորդ տարուայ համար վերընտրուելն
արգելուած էր օրէնքով։* Տիբերիոսը կրկին վճռեց
132 խախտել օրէնքը եւ թեկնածու հանդիսացաւ *132* թուի
ընտրութիւնների ժամանակ։ *Ծերակոյտի անդամները
ծայրայեղ կերպով կատաղել էին։ Ընտրութեան օրն
արիստոկրատները ներս խուժեցին մեծ հրապարակը
(ֆորում), ցրուեցին ժողովրդին և սպանեցին Տիբերի-
ոսին ու նրա 300 կուսակիցներին։ Բայց չը համար-
ձակուեցին ոչնչացնել Գրակքոսի օրէնքը։ Եռապետների
մասնաժողովը շարունակում էր գործել և ազատ հո-
ղատէրերի թիւն աւելացրին 80,000 մարդով։ Սակայն
այդ ժամանակ պարզուեց, որ հռոմայեցիներին արագ
կերպով հողեր բաժանելը յաճախ ստիպում է հողեր
խլել լատինացիներից և դաշնակիցներից. այն ինչ թէ
սրանք և թէ միւսները հռոմայեցիներից պակաս չէին
կրում զինուորական ծառայութեան ծանրութիւնը, և
հենց նրանց մէջ աւելի շատ էին պահպանուել անկախ
և պատերազմասէր գիւղացիներ։*

*Կայիոս Գրակքոս։ 123*

*Այս հանգամանքն աչքի առաջ ունեցաւ Տի-
բերիոսի եղբայր Կայիոսը (123 թ)։ Կրտսեր Գրակքոսն
իրան նուիրեց այն գործի շարունակութեանը, որին
ձեռնարկել էր մեծը։ Նա եղբօրից աւելի վճռական և
ձեռներէց էր։ Տիբերիոսի վիճակը նրան չըսարսա-
փեցրեց, այլ ստիպեց մտածել* ծերակոյտի դէմ դաշ-
նակիցներ գտնել հասարակութեան զանազան մա-
սերում։ *Այդ նպատակով են բացատրւում նրա առա-
ջին ձեռնարկած միջոցները։ Նա ընդունել տուեց ա-
մենաաղքատ քաղաքացիներին էժան գնով պետական
ամբարներից հաց ծախելու իր առաջարկութիւնը.
սրանով նա իր կողմը դարձրեց քաղաքային պրոլե-
տարներին։ Գիւղական ազգաբնակութիւնն իր կողմը*

գրաւեց նոր ճանապարհներ շինելու օրէնքովը, որի պատճառով ինքը դարձաւ գլուխ ամբողջ Իտալիայի հասարակական աշխատանքների։ Թէ մէկ և թէ միւս դասակարգի համար ձեռնտու էր նրա միւս առաջարկը նոր գաղթավայրեր հիմնելու մասին։ Վերջապէս Գրակքոսը ծանր հարւած հասցրեց ծերակուտական ազնուականութեանը՝ խլելով նրա ձեռքից բռնի փող կորզելու գործերի դատերը։ Այդ դատարանը յանձնւեց ասպետներին, որոնք այդպիսով վերահսկողութեան իրաւունք ստացան գաւառապետների վրայ։ Այսպիսով հասարակութեան բոլոր դասակարգերը շահագրգռւած էին Կայիոս Գրակքոսին և նա բարենորոգութիւնները պաշտպանելու գործում։ Նա ինքն՝ ինչպէս տրիբուն, ինչպէս եռապետ պետական հողեր բաժանելու գործում (համաձայն Տիբերիոս Գրակքոսի օրէնքի), ինչպէս նոր գաղթականութիւններ հիմնարկող և առաջնորդ ճանապարհների շինութեան գործերի՝ հասարակութեան մէջ գրաւեց մինչև այդ ժամանակ չը տեսնւած մի դիրք։ Բայց նրան գրաւողն իշխանութիւնը չէր․ նա նրան հարկաւոր էր այն մեծ ձեռնարկութեան համար, որը պէտք է բոլորովին փոխէր հռոմէական ժողովրդի կազմը։ Նա արդէն այլ ևս չը բաւականացաւ աղքատացած քաղաքացիներին հող տալով, այլ մտածեց հռոմէական քաղաքացիութիւն շնորհել դաշնակիցներին, որոնք վաղուց արդէն ծառայում էին Հռոմին և ներկայացնում էին առողջ ուժերի մի պաշար, որ զգալի կերպով պակասել էր Հռոմից։ Սակայն դաշնակիցներին քաղաքացիութիւն շնորհելու օրէնքը քիչ համակրութիւն գըտաւ հռոմէական կոմիցիաների անդամների մէջ, որոնք շատ թանգ էին գնահատում իտալացիների մէջ ունեցած իրանց արտօնեալ դրութիւնը։ Ծերակուտական արիստոկրատիային Կայիոս Գրակքոսի բոլոր բա-

րենորոգութիւնները և նրա անսովոր դիրքը. Թւում
էին իբրև սկիզբ հանրապետութեան վախճանի։ Եւ նա
զինւեց նրանց դէմ աւելի մեծ կատաղութիւնով, քան
Տիբերիոսի օրէնքների դէմ։ Ծերակոյտի անդամները
գործում էին շատ ճարպիկ կերպով։ Եթէ Կայիոսը
մի ամբողջ շարք միջոցներ գործ դրեց, որպէս զի
ձեռք բերէ հասարակութեան զանազան շերտերի հա-
մակրութիւնը, ծերակոյտն էլ իր կողմից հոգ տարաւ
նրա դէմ հանելու մի հակառակորդ, որը կարողանար
խլել նրա ձեռքից ժողովրդականութիւնը։ Այդ նպա-
տակով Գրակքոսի ընկերներից մէկը՝ Լիվիոս Դրուսոս
հիւպատոսն ասպարէզ եկաւ՝ առաջարկելով հիմնել 12
գաղթականութիւններ Իտալիայում և պետական հո-
ղաբաժիններ ստացողների վրայից վերացնել նշանակ-
ւած տուրքերը։ Այս միջոցով յաջողւեց ժողովրդին
մի քիչ հեռացնել Կայիոս Գրակքոսից, իսկ նրա գլ-
խաւոր օրէնքը դաշնակիցների մասին՝ բոլոր օրէնք-
ներից ամենակարևորն՝ առանց այն էլ կօմիցիաների
սրտովը չէր։ Կայիոսին չը յաջողւեց նրան ընդունել
տալ իր տրիբունութեան երկրորդ տարին, իսկ երբ
121 121 թւին նա երրորդ անգամ հանդիսացաւ իբր թեկ-
նածու միևնոյն պաշտօնի համար, ժողովուրդը նրան
չընտրեց։ Սակայն Գրակքոսը դեռ ևս մնում էր ե-
ռապետ՝ գաղթականութիւններ հիմնելու համար այն
տեղում, ուր առաջ կանգնած էր Կարթագէնը։ Նրա
ընտրութիւնների ժամանակ կրած պարտութիւնից
յետոյ ծերակոյտի անդամները, հնար եղածին չափ
սկսեցին այս գործի մէջ ևս նրան խանգարել։ Տի-
բերիոսի նման Կայիոսն էլ չէր կանգ առնում ապօ-
րինի գործողութիւնների առաջ՝ իր բարենորոգու-
թիւնները պաշտպանելու համար. Նրա կուսակիցները
զէնքով գրաւեցին Աւենտինեան բլուրը։ Հակառակոր-
դին վերջնականապէս խորտակելու համար՝ ծերակոյտին

պակասում էր միայն մի այդպիսի պատրուակ։ Օպիմիոս հիւպատոսը յարձակումով առաւ Աւենտինեան բլուրը (Աւենտիկումը), և Կայիոս Գրակքոսը ոչնչացաւ հետապնդութեան ժամանակ։

Անկասկած՝ Գրակքեանների ծրագիրները խոր քաղաքական իմաստ ունէին և նրանց լիակատար իրականացումը երկար ժամանակի համար կը վերանորոգէր պետութեան ուժերը։ Բայց նոյն իսկ այն բանի համար, որ նրանց գոնէ մասամբ իրականացնեն կեանքի մէջ՝ պէտք եղաւ՝ գլխաւոր միջոցների կողքից՝ ձեռք առնել ուրիշ միջոցներ ևս, որոնց նպատակն էր ժողովրդին հաճելի դառնալ, բայց որոնք էապէս շատ կասկածելի միջոցներ էին։ Յետոյ երեւաց, որ ոչմի հնար չըկար բարենորոգութիւններն ընդունել տալու օրինական եւ սովորական ճանապարհներով։ Գրակքեանները խախտեցին օրէնքները և դրա համար կեանքից զրկւեցին, բայց նրանց ընդարձակ և հայրենասիրական մտածմունքների անյաջողութեան գլխաւոր պատասխանատուութիւնն ընկնում է՝ ի հարկէ՝ ինչպէս ծերակուտական ազնուականութեան կարճատեսութեան և եսականութեան, այնպէս էլ ժողովրդի վրայ, որ չը կարողացաւ հասկանալ և օգնել իր առաջնորդներին։

Յուգուրթայի պատերազմը.

Գրակքեանների միջոցները, որքան որ նրանք իրականացան, մի քիչ վերանորոգեցին հռոմէական քաղաքացիութիւնը։ Բայց նրանք դեռ շատ անբաւարար էին նրա անկումը կանգնեցնելու համար։ Կայիոս Գրակքոսի սպանութիւնից համարեա անմիջապէս յետոյ՝ անկարգութիւններ սկսւեցին դաշնակից Նումիդիական թագաւորութեան մէջ, ուր իշխաններից մէկը— Յուգուրթան՝ հաշիւը վերջացրեց իր բոլոր աւագ ազգականների հետ—նրանց բոլորին կոտորեց՝ մէկը միւսի ետևից՝ չը նայելով Հռոմի պաշտպանութեանը։ Նենգամիտ Նումիդիացին այդպէս յաջող կերպով գործելու հնար ունեցաւ այն պատճառով, որ Հռոմում կաշառում էր ծերակոյտի ամենաազդեցիկ անդամներին։ Վերջապէս երբ նրա դէմ պատերազմ սկսեցին,

նա էլ իսպանական պատերազմից աւելի յաջող չը գնաց. զօրավարներն իրար էին յաջորդում առանց մի որև է արդիւնքի, իսկ երբեմն էլ Յուգուրթային յաջողւում էր շատ զգալի պարտութիւններ պատճառել Հռոմայեցիներին։ Գործը վտանգաւոր դարձաւ, երբ աֆրիկեան պատերազմի ամենատաք ժամանակը նոր ձեռք բերուած անդրալպեան Գալլիայում [1]) երևացին գերմանների առաջին գնդերը։ Պէտք էր լարել բոլոր ուժերը, որպէս զի շուտով վերջանար Աֆրիկայի պատերազմը և բարբարոսներին դիմադրութիւն պատրաստւէր հիւսիսում։ Յուգուրթայի դէմ վերջնական յաղթութիւն տարաւ Կայիոս Մարիոս հիւպատոսը, մի բոլորովին անտոհմ, անուսում մարդ, որ առաջ էր գնացել բացառապէս իր պատերազմական ձիրքերի շնորհով։ Յուգուրթան գերի բռնւեց քւեստոր (հիւպատոսի օգնական) Մարիոս Լուկիոս Կորնելիոս Սիլլայի ձեռքով։

Կիմբրները և Տևտոնները

Նումիդիական պատերազմի վերջանալն ազատեց Հռոմի ձեռքերը՝ հիւսիսում եռանդուն կերպով գործելու համար։ Ամբողջ Գալլիան և Ալպեան նահանգները գտնւում էին այլեկոծութեան մէջ՝ արիական մի ցեղի—գերմանների ճնշումից, որոնք ձգտում էին մուտ գործել հարաւի օրհնուած երկրները։ Առաջից շարժւում էին կիմբրները և տևտոնները։ Նրանք գաղթում էին ամբողջ ժողովրդներով, կանանցով և երեխաներով՝ անհամար սայլերի վրայ։ Այս բարբարոսների բարձր հասակը, կատաղի կերպարանքը և պատերազմասիրութիւնը սարսափ ազդեցին մինչև իսկ կելտերին, որոնք համարեա միշտ քաջութիւնով աչքի էին ընկնում։ Շատ Կելտական ցեղեր միացան այդ շարժումին. դիմադրողներին եկւորները յաղթում էին։ Հռոմայեցիներից նրանք պահանջում էին բնակու-

[1]) Գալլիա Տրանսալպինա-Ալպերից այն կողմ եղած Գալլիան, այժմեան Պրովանսը (provincia)։

թեան և ցանքսի հողեր և, իհարկէ, մերժում ստացան։ Առաջին ընդհարումների մէջ բարբարոսները վճռական գերակշռութիւն ունեցան. Նրանք վատ էին զինւած, բայց շատ բազմաթիւ էին և լեգիոնների վրայ յարձակւում էին այնպիսի կատաղութիւնով, որ Ալլիայի մօտ կելտերի արածի նման, ջարդում էին հռոմէական խիտ շարքերը։ Հռոմէական երեք տարբեր բանակներ յաղթւեցին նրանցից զանազան ժամանակներում՝ նումիդիական պատերազմի ընթացքում։ Չորրորդ անգամ, Ռօնի ափին, Օրանժի մօտ, նրանց դէմ դուրս բերին երկու ամբողջ բանակ, աւելի քան 100,000 մարդ։ Բայց հռոմէական զօրավարներն անհամաձայն էին գործում, և նրանց բանակները համարեա ոչնչացան։ Միակ փրկութիւնը նրանում էր, որ բարբարոսները ամենեւին չէին կարողանում օգտւել իրանց յաղթութիւններից։ Օրանժի ճակատամարտից յետոյ նրանք՝ Իտալիա խուժելու փոխարէն—յայտնի չէ ինչու՝ դարձան դէպի Իսպանիա և երկու տարի կողոպտեցին այդ երկիրը։ Հռոմայեցիներն այդ ժամանակից օգուտ քաղեցին, ուժերը ժողովեցին և նրանց արշաւանքի դէմ դուրս բերին իրանց ամենալաւ զօրավար Կայիոս Մարիոսին։

102 թւին գերմանների և կելտերի ահագին գնդերը շարժւեցին դէպի Իտալիա երկու ճանապարհով. տեւտոնները գնում էին Միջերկրականի ափով, կիմբրները՝ հիւսիսից—Ալպերով իջան Պօ գետի հովիտը։ Մարիոսը կանգնեց Ռօնի ափերին, արեւմտեան հոսանքի առաջ, իսկ արևելեանի առաջ դուրս եկաւ միւս հիւպատոսը՝ Լուտացիոս Կատուլլոսը։ Էքս (Է) գետի մօտ Մարիոսը հանդիպեց տեւտոններին։ Նրան յաջողւեց դիմանալ առաջին յարձակմանը, որով այնքան զարհուրելի էին բարբարոսները։ Լեգիոնները 102

դանդաղ կերպով յետ էին քշում տեւտոնների խմբերին. Թիկունքի կողմն ուղարկուած հռոմէական զորաբաժինը լրացրեց հռոմէական յաղթանակը։ Մի սարսափելի կոտորած անելուց յետոյ՝ Մարիոսը գնաց օգնութեան իր ընկերին, որ դժուարութիւնով կարողանում էր դիմադրել կիմբրներին։ Վերցելլայի մօտ Մարիոսի և Կատուլլոսի միացած բանակները յաղթութիւն տարան մի կամակոր ու կատաղի ճակատամարտից յետոյ։ Կիմբրների կանայք քշում էին յետ նահանջող տղամարդկանց կրկին դէպի կռիւ և իրանք էլ կատաղութիւնով պաշտպանում էին բանակատեղը։ Սակայն զարգացած ժողովրդի կարգապահութիւնը եւ կազմակերպութիւնը յաղթեց բարբարոսների անկանոն քաջագործութեանը։

**Մարիոսի զինուորական բարենորոգութիւնը**

Մարիոսի յաղթութիւնները նշանակութիւն ունեցան ոչ միայն նրանով, որ Հռոմն ազատուեց մի մեծ փորձանքից, այլ և նրանով, որ այդ յաղթութիւնները կատարուել էին տարբեր ձևով կազմուած լեգիոններով՝ քան Հռոմի նախկին զօրքերն էին։ Մինչև այժմ զինուորական ծառայութիւնն ընկնում էր հասարակութեան բացառապէս ունևոր դասակարգերի վրայ, իսկ պրոլետարներն ազատուած էին նրանից։ Սակայն ազատ գիւղացիութեան թուլանալովն սկսում էր աւելի և աւելի դժուարանալ ծանր և երկարատև արշաւանքների համար բաւարար թւով զինուորներ հաւաքելը։ Մարիոսն արմատական փոփոխութիւն մտցրեց. Նա պրոլետարներից սկսեց ժողովել իր զորքերը։ Նրանք ուրախութիւնով էին ծառայութեան մտնում և լաւ զօրավարի ձեռքում դառնում էին լաւ զինուորներ։ Երկարատև արշաւանքների համար նրանք անպայման առաւելութիւններ ունէին հողատէրերից, որովհետև նրանք պէտք չունէին մտածելու տանը թողած տնտեսութեան մասին։ Բայց

և այնպես զորքի ոգին զգալի կերպով փոխեց դէպի վատը։ Լեգիոնի անդամները կորցրին իրանց հայրենիքի քաղաքացիական կազմի հետ ունեցած կապը. Նրանք ամենից առաջ իրանց զգում էին զինւոր և ոչ քաղաքացի. զորքը նրանց համար քաղաքից աւելի թանգ էր, յաղթական առաջնորդը (imperator)-ծերակոյտից եւ կոմիցիաներից աւելի բարձր։ Նրանք արհամարհանքով էին վերաբերւում դէպի այն կառավարութիւնը, որը կարգադրութիւններ էր անում Հռոմի խաղաղ պայմաններից, հեռու և ապահով վտանգից—կարգադրութիւններ՝ նրանց արեան և աշխատանքների մասին. Ճակատամարտերի և արշաւանքների փոխարէն նրանք վարձատրութիւն էին պահանջում կողոպուտ, հարստութիւն։ Երջանիկ զօրապետի իշխանասիրութեանը բաւականութիւն տալու համար այդպիսի զօրքը մի սարսափելի գործիք էր, բայց այդ վետերանները զօրավարներին էլ հետևում էին միայն նրա համար, որ նա ծառայում էր նրանց քմահաճոյքներին ու շահերին։

Նոյն իսկ առաջին նոր ձևով կազմած բանակը լիապէս արտայայտեց այդ բնաւորութիւնը։ Մարիոսի յաղթութիւնից անմիջապէս յետոյ Ապպուլէոս Սատուրնին տրիբունը կոմիցիաներին առաջարկութիւն արեց, որի համաձայն պէտք էր վարձատրել նումիդիական եւ հիւսիսային պատերազմների վետերաններին՝ նրանց աշխատանքների եւ ծառայութիւնների համար։ Նրանցից ամեն մէկը պէտք է ստանար 100-ական յուգեր հող։ Բացի դրանից առաջարկւեց նոր գաղթականութիւններ հանել, իսկ բոլոր գործի ղեկավարութիւնը յանձնւեց Մարիոսին։ Բայց մարիոսականները գործում էին այնքան կոպիտ ու բռնի ձևով, որ՝ չը նայելով վետերանների ազդած երկիւղին, բոլոր քաղաքային կուսակցութիւնները-ծերակոյտը, աս- Ապպուլէոս Սատուրնին.

պետները, նոյն իսկ մանր սեփականատէրերը՝ միաբանուեցին նրանց դէմ։ Սատուրնինն արտաքսեց այն տրիբուններին, որ խանգարում էին իր առաջարկութիւններին. ընտրութիւններին նա կանչեց ծառայութիւնը վերջացրած զինուորներին, որոնք հակառակորդների հետ կոււի մտան. վերջապէս գրաւեց Կապիտոլիոնը։ Այս փորձը նրան ոչնչացրեց, ինչպէս Աւենտիկումի գրաւումը ոչնչացրեց Կայիոս Գրակքոսին։ Սատուրնինին և նրա կողմնակիցներին շրջապատեցին և քարկոծ արին։

Այսպիսով՝ քաղաքին օրէնքներ տալու զինուորների արած առաջին փորձն անյաջող վերջացաւ։ Բայց չարիքը չը վերացուեց—Մարիոսի վետերանները մնացին հասարակութեան մէջ իբր անհանգիստ, անբաւական տարրեր, որոնք միշտ պատրաստ էին խառնակութիւններ հանելու կամ եղած խառնակութիւններից օգտուելու։

Լիվիոս Դրուզոս Մարիոսի և նրա զինուորների վարմունքն այնքան վախեցրեց ծերակոյտին, որ նրա լաւագոյն անդամներն սկսեցին խոստովանել նոյն իսկ այն միջոցների անհրաժեշտութիւնը, որոնց համար զոհուեց Կայիոս Գրակքոսը։ Զինուած պրոլետարների իշխանութիւնից ազատուելու համար պէտք էր վերականգնել զէնք կրելու ընդունակ գիւղացիութիւնը, իսկ դրա համար նիւթ կարելի էր գտնել միայն դաշնակիցների մէջ։ Այս հաշիւներն այնքան ակներև դարձան, որ ծերակուտական ազնուականութեան կողմից առաջարկութիւն արուեց դաշնակիցներին քաղաքացիութեան իրաւունք շնորհելու։ Լիվիոս Դրուզոս հիւպատոսը, Կայիոս Գրակքոսի դէմ կռւող Դրուզոսի որդին՝ 91 թւին արեց մի շարք առաջարկութիւններ,
91 որոնք մասամբ փոփոխում, մասամբ էլ լրացնում էին 123 թւի բարենորոգութիւնը։ Մի կողմից առաջարկեց խլել դատարաններն ասպետների ձեռքից և յանձնել ծերակոյտի անդամներին, միւս կողմից՝—հռոմէական քաղաքացիութեան իրաւունքը տարածել իտալական դաշնակիցների վրայ։ Բացի դրանից՝ ենթադրւում էր ծերակոյտը լրացնել ասպետների դասից ընտրուած 300 անդամներով։ Դրուզոսի

դէմ միաբանւեցին շատ տարբեր տարրեր—ծերակուտական ազնւականութեան մի մասը, որ վախենում էր ամեն տեսակ բարենորոգումից, ասպետները, որ չափազանց թանգ էին գնահատում իրանց տիրապետութիւնը դատարաններում, հռոմէական ամբոխի նշանաւոր մասը։ Մի առաւօտ Դրուզուսին գտան իր անկողնում սպանւած։

Դաշնակիցների պատերազմը.

Այն ինչ դաշնակիցները, որ Կայիոս Գրակքոսի ժամանակից յոյս ունէին իրանց իրաւունքները լայնացած տեսնել, համբերութիւնը կորցրին և մի ընդարձակ դաւադրութիւն կազմեցին, որի մէջ առանձնապէս գործունեայ մասնակցութիւն ունեցան Սամնիացիները և ուրիշ լեռնական ցեղեր։ Հետաքրքականն այն է, որ ապստամբները չէին ձգտում ուղղակի իրանց վերադարձնելու նախկին ինքնուրոյնութիւնը, այլ ուզում էին կազմել մի ընդհանուր իտալական պետութիւն թերակղզու բոլոր ազգաբնակութեան համար հաւասար իրաւունքներով և հռոմէականին նման մի կառավարութիւնով։ Նոր պետութեան մայրաքաղաք դարձրին նրանք Կորֆինիումն՝ Իտալիկա անուան տակ, իսկ իշխանութիւնը յանձնեցին ծերակոյտին՝ 500 անդամից բաղկացած—բոլոր ցեղերից—և ընտրովի հիւպատոսների ու պրետորների։ Հռոմի երկարատև և փառաւոր տիրապետութիւնն այնպիսի զօրեղ տպաւորութիւն էր թողել նրա իշխանութեան տակ գտնւած ժողովրդների վրայ, որ մինչև իսկ ապստամբւելով նրա դէմ, նրանք աշխատում էին իւրացնել նրա կազմութիւնը։ Սկսւեց մի ծանր և արիւնահեղ կռիւ այն ժողովրդների մէջ, որոնք վարժւել էին բազմաթիւ արշաւանքներում միասին գործել։ Հռոմայեցիների կողմն էր իրանց փորձւած կազմակերպութիւնը, այն ինչ իտալացիները պէտք է դեռ ևս նոր ստեղծէին իրանց կազմը։ Բայց դաշնակիցներն այնքան ուժեղ էին, որ դժւար թէ Հռոմը կարողանար բաց դաշտում նրանց կռւով յաղթել, եթէ

նրան չը յաջողւէր բաժանել իրարից հակառակորդ-
ներին։ *Այս բանին հասան ուղղակի զիջումներ անելով։
Սկզբում քաղաքացիութեան իրաւունք տուեց այն
բոլոր համայնքներին, որոնք դեռ չէին բաժանուել Հը-
ռոմից։ Յետոյ նոյնը խոստացան այն բոլորին, որոնք
2 ամսուայ ընթացքում զէնքերը վայր կը դնէին։ Այս
ճանապարհով հռոմայեցիները կարողացան բաժանել
դաշնակիցներից Էտրուրիան և Ումբրիան։ Լացիումն
սկզբից հաւատարիմ մնաց Հռոմին։ Սակայն սամնիտա-
ցիները և մի քանի ուրիշ հարաւային ցեղեր կռիւը
շարունակեցին, և նրանց յաղթելը պակաս ջանքեր չը-
88 պահանջեց (88 թ.)։ Ապստամբութիւնը զսպելու գըլ-
խաւոր ծառայութիւնը բաժին ընկաւ Լ. Կոռնելիոս
Սիլլային, Մարիոսի նախկին քւեստորին, որ յետոյ
ծառայում էր Լուտացիոս Կատուլլոսի զօրքում կիմ-
բրների դէմ։ Կրկին նրան դիմեց ծերակոյտը արևել-
քում բացւած նոր ու դժւարին պատերազմը մղելու
համար։*

*Մարիոս և Սուլպիցիոս Ռուֆոս.*

*Սելևկեան պետութեան քայքայւելու ժամանակ Ա-
սիայում, Սև ծովի ափերի վրայ կազմւեց Պոնտոսի
թագաւորութիւնը, որը պահպանեց իր ինքնուրոյնու-
թիւնը, երբ Պերգամի թագաւորութիւնն արդէն դարձել
էր հռոմէական նահանգ՝ Ասիա անունով (Տիբերիոս
Գրակքոսի օրով)։ Առաջին դարի սկզբում Պոնտոսի
թագաւորն էր Միհրդատը, մի անխոնջ զինւոր, որը
մի որևէ այլ ժամանակում կըստեղծէր Ասորեստանի
կամ Պարսկաստանի նման մի մեծ միապետութիւն։
Նոյն իսկ Հռոմի փորձւած ուժը նրան չէր վա-
խեցնում։*

*Օգտւելով Հռոմի դժւար դրութիւնից դաշնակից-
ների պատերազմի ժամանակ, նա խլեց ասիական գա-
ւառները և անխնայ կոտորեց ձեռքն ընկած հռոմէա-
կան զինւորներին ու քաղաքացիներին։ Բոլորը միա-*

ախն ջարդեց 80,000 մարդ։ Ասիայից նա շարժվեց դէպի Յունաստան, որը նրան հպատակւեց համարեա առանց դիմադրութեան։ Մնում էր միայն Իտալիա գնալ, և Միհրդատն արդէն պատրաստւում էր այդ արշաւանքին։ Ծերակոյտը հաւաքեց 6 լեգիոնից բաղկացած մի բանակ և նրա հրամանատարութիւնը յանձնեց Սիլլային։ Դա մի ծանր հարւած էր Մարիոսի համար, որը դեռ ևս Հռոմի ամենանշանաւոր պատերազմողն էր և յոյս ունէր՝ Միհրդատի դէմ կռւելով՝ վերադարձնել իր կորցրած ազդեցութիւնը։ Երկու զօրավարների մրցութիւնը մասնաւորապէս սաստկացաւ նրանով, որ Մարիոսը երկար ծառայած մարդ էր (homo novus), իսկ Սիլլան պատկանում էր մի հին պատրիկ տոհմի և չէր ծածկում իր արհամարհանքը դէպի ստոր դասակարգերը և նրանցից դուրս եկած գործիչները։

Մարիոսը ճարպիկ կերպով օգտւեց հասարակութեան անբաւական տարրերից—իր վետերանների նախանձից դէպի Սիլլայի զինւորները, հաշտւած դաշնակիցների յուսախաբութիւնից, որոնց՝ ճշմարիտ է—ընդունեցին քաղաքացիների թւում, բայց գրեցին 8 նոր տրիբների մէջ, որոնք ձայն էին տալիս 35 հին տրիբներից յետոյ միայն և դրա համար էլ մեծ մասով մնում էին առանց ձայն տալու [1]։ Սուլպիցիոս Ռուֆոս տրիբունն ընդունել տւեց այն վճիռը, որը նոր քաղաքացիներին և ազատ-արձակւածներին թոյլ էր տալիս գրւելու այն տրիբի մէջ, որի մէջ գրւողն է ցանկանում։ Նրա միւս առաջարկութիւնը, որի համաձայն ոչ մի ծերակոյտի անդամ իրաւունք չը պէտք է ունենար 2,000 դինարից աւելի պարտք անել՝ ուղղւած էր փչացած և սնանկացած արիստոկրատների դէմ, որոնց մէջ առաջին տեղն էր բռնում Սիլլան։

Մարիոսի կուսակից Սուլպիցիոս տրիբունը յա-

---

[1]) Յիշենք, որ ձայնատւութիւնը դադարում էր, հէնց որ կոմիցիաների մէջ որոշւում էր ձայների բազմութիւնը։

ջողեցրեց հրաման ուղարկել տալ Սիլլային, որ թող-
նէ հրամանատարութիւնը, իսկ Միհրդատի դէմ ու-
ղարկուած զօրքի առաջնորդ նշանակեց Մարիոսը։
Սիլլայի լեգիոնները չը համբերեցին այս վիրաւորան-
քին. նոր առաջնորդին սպասելու փոխարէն՝ նրանք
շարժուեցին Հռոմի վրայ։ Բոլոր գլխաւոր սպաները
թողին ապստամբ բանակը, բայց Սիլլան, մի քիչ
տատանուելուց յետոյ, նրա գլուխն անցաւ։ Փողոցնե-
րում կատաղի կռիւ մղելուց յետոյ՝ Մարիոսը փախաւ.
Սուլպիցիոսին սպանեցին։ Հռոմի պետութեան մէջ
առաջին անգամն էր, որ ապստամբուած զինուորները
տապալեցին քաղաքի օրինական իշխանութիւնը։

*Պատերազմ Միհրդատի դէմ։*

Դրանից յետոյ Սիլլան ուղեւորուեց Միհրդատի
դէմ։ Որպէս պատերազմի մարդ՝ նա մեծ էր իսկապէս —
անվախ, սրամիտ և եռանդուն։ Գործերը ծայրայեղ
կերպով բարձի-թողի էին արուած, և Սիլլան շատ
դժուարութիւն քաշեց Աթէնքում դիմանալու և Միհր-
դատի նոր նուաճումներն արգելելու համար։ Վերջա-
պէս Բէովտիայում նրան յաջողուեց երկու անգամ
ջարդել հակառակորդին, չը նայելով նրա թւական
ահագին առաւելութեանը։ Այս յաղթութիւնների շը-
նորհով նա մաքրեց Յունաստանը, անյապաղ անցաւ
Ասիա և վերջնականապէս դուրս քշեց Միհրդատին
հռոմէական սահմաններից։ Սակայն նա չը կարողա-
ցաւ ոչնչացնել արքայի զօրութիւնը և շտապով նրա
հետ դաշն կապեց, որովհետև իտալական գործերը
կրկին պահանջում էին նրա ներկայութիւնը։

*Մարիոսը և Կինէասը (Ցիննան)*

Միհրդատի դէմ վարուած կռւի բոլոր ժամանա-
կում Հռոմում տիրապետում էին մարիոսականները։
Ինքը-ծերունի Մարիոսը՝ զանազան արկածներից յե-
տոյ, աքսորից վերադարձաւ և Կորնիլիա Կինէաս
(Ցիննա) հիւպատոսի հետ միասին խլեց Հռոմը ծե-
րակոյտի տրամադրութեան տակ Սիլլայի թողած մի

փոքրիկ զօրաբաժնի ձեռքից։ Հռոմի այս երկրորդ-գրաւումը նշանաւոր եղաւ սարսափելի կոտորածով։ Մարիոսականները կողոպտում և սպանում էին առանց ընտրութեան։ Կիմբրներին և Տևտոններին յաղթողը հասաւ իր նպատակին—նրան եօթներորդ անգամ հիւպատոս ընտրեցին, բայց ընտրութիւնից մի քանի օր յետոյ մեռաւ։ Քաղաքի միակ տէրը Յայ-կինէասը (Ծիննան)։ Նրա գլխաւոր նպատակն էր բաւարարութիւն տալ Մարիոսի վետերանների շահասիրութեանը եւ իր կողմը գրաւել դաշնակից նոր քաղաքացիներին։ Յամենայն դէպս Սիլլայի երկարատև բացակայութիւնը մարիոսականներին հնար տւեց բաւական հիմնաւոր կերպով հաստատւել Հռոմում և Իտալիայում, և երբ զինւորների նոր սիրելին վերադարձաւ Ասիայից իր յաղթական լեգիոններով, նրա առաջ բացւեց մի շատ ծանր խնդիր (82 թւին)։ Այն 82
ժամանակ երբ Սիլլան աշխատում էր Պրենեստէում պաշարել Մարիոսի որդուն, իսկ նրա կուսակից Գն. Պոմպէոսը գործում էր Ապենինեան շղթայի արևելեան կողմում՝ սամնիացիների և հարաւային իտալացիների զօրքը, որ բռնում էր Մարիոսի կողմը, անսպասելի կերպով մինչև Հռոմ անցաւ։ Սիլլան նրանց վրայ հասաւ Կոլլինեան դռների մօտ, յաջողեցրեց անցնել հակառակորդի և Հռոմի մէջտեղը և անյապաղ սկսեց յարձակւում։ Այն թևը, որին առաջնորդում էր Սիլլան, խորտակւեց սամնիացիներից և քշւեց դէպի Հռոմ. իսկ միւս թևի վրայ Լիկինոս Կրասոսը յաղթեց և վերջ տւեց ճակատամարտին Սիլլայի օգտին։ Յաղթողը Հռոմ մտաւ պետական կազմը փոխելու և իր թշնամիներին պատժելու ակնյայտնի նպատակով։ Նա սկսեց վերջինից։ Սկզբում կոտորում էին առանց դատարանի և կարգի, ինչպէս իր ժամանակին կոտորում էին մարիոսականները։ Յետոյ սկսեցին պրօս-

կրիպցիաները· *Սիլլան կախում էր հարիւրաւոր անուններով այդ ցուցակները· դրանցում յիշուած բոլոր անձերն անւանարկւած էին համարւում—ամեն մարդ կարող էր և պէտք է սպանէր նրանց. իսկ նրանց ստացւածքը գանձարանն էր գրաււում։ Ամբողջ Իտալիայում սկսւեց մարդկանց որսը, իսկ Հռոմում Սիլլան անվրդով սառնարիւնութեամբ նոր ու նոր անուններ էր մտցնում իր ցուցակների մէջ։ Բացի քաղաքական վրէժխնդրութիւնից՝ այդտեղ երևում էր և հասարակ շահամոլութիւն. մարդկանց լրտեսութիւնով հալածւում էին և մահացնում, որպէսզի խլեն նրանց ստացւածքները։ Սիլլան բոլոր ժողովրդի առաջ արքունիք գրաւելիքներն անւանեց «իր որսը», և ինքն էր նախագահում խլւած կալւածների աճուրդով ծախելու գործին։ Այս բոլոր թալանն անհրաժեշտ էր, որպէսզի վարձատրէին Սիլլայի վետերաններին, որոնք Մարիոսի վետերանների նման՝ նայում էին հռոմէական հասարակութեան վրայ, իբր իրանց բաժին ընկած ոսկէհանքի վրայ։ 23 լեգիոնների համար կազմւեցին 100,000-ից աւելի նոր հողաբաժիններ։ Սարսափելի 82 թւականը վերջացաւ Սիլլային անորոշ ժամանակով դիկտատոր (իշխանապետ) նշանակելով։ Նրան դիկտատոր նշանակեցին հասարակապետութիւնը վերակազմելու համար։*

*Սիլլայի բարենորոգութիւնները։*

*Լ. Կորնելիոս Սիլլան կարող էր իրան համարել աշխարհի տէրը։ Ոչ ոք նրան մրցակից չէր իշխանութեան համար Հռոմում. Նա իր թշնամիներին ջնջեց աշխարհի երեսից։ Նրան անւանեցին երջանիկ (*felix*), և նա հաստատապէս հաւատում էր իր աստղին։ Բայց դեռ ձգտում էր ապացուցանել, որ ինքը միայն նշանաւոր զօրավար և անխնայ վրէժ հանող չէր։ Պէտք էր վերակազմել պետութիւնը, մաքրել նրան այն մեծ չարիքներից, որ երևան էին եկել ազգամիջեան կռ-*

ութիւնների ժամանակ։ Դրա համար Սիլլային շատ բան էր պակասում։ Նա խոր կերպով արհամարհում էր մարդիկներին և, չընայելով իր նուրբ զարգացմանը, ամենից բարձր էր գնահատում կոպիտ, զգայական զուարճութիւնները։ Ծագումով և կապերովնա արիստոկրատ էր, բայց նրա կեանքում գլխաւոր դեր խաղաց պրոլետարների բանակը, նոյնքան անհանգիստ և ագահ, որքան և Մարիոսականները։

Առաջին հայեացքից՝ նրա բարենորոգութիւնների գլխաւոր նպատակն էր իշխանութիւնը յանձնել ազնուական կորպորացիային *)—ծերակոյտին։ Ոչնչացաւ ցենզորութիւնը, որ այնքան նշանաւոր ազդեցութիւն ունեցաւ կորպորացիաների կազմի վրայ, համարեա ոչնչացուեց տրիբունութիւնը—նրա ձեռքին մնաց միայն մասնաւոր քաղաքացիներին պաշտպանելու իրաւունքը։ Նոյն իսկ կոմիցիաները դրուեցին ծերակոյտից լիակատար կախման մէջ. նրանք բոլոր առաջարկութիւնների համար առաջուց պէտք է ստանային ծերակոյտի հաւանութիւնը։ Ասպետներից խլեց նախկին պաշտօնեաներին դատելու իրաւունքը և տուեց ծերակոյտի անդամներին։ Մի խօսքով՝ ծերակոյտը դարձաւ պետութեան գլխաւոր հիմնարկութիւնը։ Այն ինչ հէնց սկզբից թուլացրեց Սիլլան յարգանքը դէպի այդ հիմնարկութիւնը նրանով, որ լրացրեց նրա անդամների թիւը 300 նոր անդամներով, որոնց հաւաքել էր ամեն տեսակ մարդիկներից առանց որ եւ է ընտրութեան, մի քիչ էլ դիտմամբ անպէտքներ և ծերակոյտ բերած միայն

*) Կորպորացիա (ընկերութիւն, միաբանութիւն,) կոչւում է այն հիմնարկութիւնը, որ կազմուած է բազմաթիւ անդամներից և որը կայացնում է իր վճիռներն այդ անդամների ձայների մեծամասնութիւնով։

-այն պատճառով, որ պատրաստ էին ծառայելու Սուլլային։

Սուլլայի օրով ամբողջ Իտալիայում վերջնականապէս կանոնաւորուեց հռոմէական քաղաքացիութեան երևելի կազմակերպութիւնը, որն անհրաժեշտ էր դառել բազմաթիվ իտալացի դաշնակիցների քաղաքացիների թվի մեջ ընդունելով։ Ամեն տեղ կազմուեցին համայնքներ (մունիցիպիա) ընտրովի բարձր պաշտօնեաներով (մագիստրատ)—երկուսը դատարանի համար և երկուսը շինութիւնների ու ոստիկանութիւնների վրայ հսկելու համար, ամենահարուստ քաղաքացիներից կազմուած ծերակոյտով և կոմիցիաներով։

Այս կազմութիւնն ունեցաւ բարերար ազդեցութիւն յատկապէս այն կողմից, որ դադարեցրեց գաղթականութիւնը դէպի Հռոմ և օժանդակեց տեղական ինքնուրոյնութեանը, բայց մի և նոյն ժամանակ ամեն տեղ թափանցեց Իտալիայում ցրուած վետերանների քայքայող ազդեցութիւնը. նրանք մոռացել էին տնտեսութիւնով պարապելը, քիչ էին հետաքրքրւում տեղական գործերով և միշտ պատրաստ էին նորից մասնակցելու անկարգութիւններին՝ եթէ նրանք օգուտ խոստանային։ Վերջապէս Սուլլան ստեղծեց մի ամբողջ նոր դասակարգ—կոռնելիաններ կոչուած։ Սրանք ստրուկներ էին, որ ազատ էին արձակուած Սուլլայի կուսակիցների կամ իր սեփական ձեռքով։ Գլխաւորապէս արձակում էին այն ստրուկներին, որոնց տէրերը ենթարկւում էին պրոսկրիպցիաներին։ Այս կոռնելիանները մեծ թւով մտան համայնական պաշտօնների մէջ. ընդհանրապէս տեղական վարչութիւնն աղաւաղուեց նրանով, որ նրան իր ձեռքն առաւ Սուլլայի կուսակցութիւնն իր քաղաքական նպատակների համար։

Բարենորոգութիւնից յետոյ դիկտատորը (իշխանապետը) մի կողմ դրեց իր լիազօրութիւնները—նրան ձանձրացրեց քաղաքական գործունէութիւնը. նա իրան յագեցած զգաց և հեռացաւ հանգստութիւն

վայելելու։ Սակայն այդ չէր խանգարում նրան սարսափի մէջ պահելու իր նշանակած կառավարութիւնը և առիթը պատահած ժամանակն սպանելու իրան անհաճելի որևէ մի գործչի։ Այդպիսի մի դատաստանից յետոյ մահն իրան էլ վրայ հասաւ (78 թ.ին)։ 78

Սիլլայի բարենորոգութիւններով վերջանում է քաղաքացիութեան կազմի և իրաւունքի համար եղած խռովութիւնների յիսնամեայ շրջանը։ Գրակքոսների յանդուգն գաղափարներն ըստ երեւոյթին, իրականացան. բազմաթիւ աղքատ քաղաքացիներ հողաբաժիններ ստացան. իտալացի դաշնակիցների մեծամասնութիւնը քաղաքացիութիւն ստացաւ։ Բայց երկու բարենորոգութիւններն էլ ձեռք բերուեցին այնպիսի պայմաններում, որոնք ստորացնում էին նրանց բարեբար նշանակութիւնը։ Հողաբաժինները գլխաւորապէս բաժին ընկան փչացած եւ աշխատանքից խորթացած զինուորներին. դաշնակիցներին քաղաքացիութեան իրաւունքներ շնորհուեցին արիւնահեղ պատերազմից յետոյ, որը ոչնչացրեց իտալական նոյն իսկ ամենաառողջ ցեղերին։ Իսկ որ գլխաւորն է՝ մշտական խռովութիւններն ամենավատ ազդեցութիւն արին բարոյականութեան և իրաւունքի վրայ. օրէնքը, կառավարութիւնը, ժողովրդական ազատութիւնը— հռոմէական կազմի բոլոր այս սրբազան հիմունքները ցեխի մէջ տրորուեցին։ Ղեկավարներից ամեն մէկը զանց էր առնում օրէնքը, տապալում էր կառավարութիւնը, ի չարն էր գործ դնում ազատութիւնը։ Կոպիտ ոյժը, աւազակային ագահութիւնը և յանդուգն քաջութիւնը փոխարինեցին նախկին անձնազոհ հայրենասիրութեանը։ Եւ ահա, չնայելով Գրակքեանների ծրագրի արտաքին յաջողութեան, քաղաքացիական խառնակութիւնները հասցրին ոչ թէ գիւղացիութեան վերածնութեան, այլ զօրքի տիրապետութեան։

## ԳԼՈՒԽ Է.

# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱՆԿՈՒՄԸ

Սիլլայի կազմակերպութեան պահպանումը

Սիլլայի ազդած երկիւղը պահպանում էր նրա հաստատած կարգ ու կանոնը, բայց հազիւ դիկտատորը (իշխանապետ) մեռաւ, իսկոյն գլուխ բարձրացրին նրանից յաղթւած բոլոր ուժերը։ Բնականաբար այդ ժամանակ հաստատւած կարգի պաշտպանութիւնն անցկացաւ Սիլլայի գլխաւոր զինւորական օգնական Կնէոս Պոմպէոսին։ Մարիոսականներին գլուխ կանգնեց Սերտորիոսը, Մարիոսի ամենալաւ սպաներից մէկը, մի արդարասէր և ազնիւ մարդ։ Նա օգտւեց պատերազմասէր լուզիտանացիների մէջ ծագած խռովութիւններից՝ Իսպանիայում մի տեսակ նոր Հռոմ հիմնելու համար։ Նրա դէմ ուղարկւած բոլոր զօրավարները պարտութիւն կրեցին. Նոյն իսկ Պոմպէոսն էլ ոչինչ չը կարողացաւ անել լեռնային դժւար պատերազմում։ Պոմպէոսի բաղդից՝ Սերտորիոսի բանակում գտնւեց մի դաւաճան, որն սպանեց այդ հերոսին՝ նրա տեղը բռնելու համար։ Սերտորիոսի մահից յետոյ լուզիտանական թագաւորութիւնն իսկոյն ընկաւ։ Քանի որ Պոմպէոսն Իսպանիայում զբաղւած էր, Իտալիայի հարաւում բռնկեց ստրուկների սարսափելի ապստամբութիւնը։ Թրակիացի Սպարտակոսը փախաւ սուսերամարտների (գլադիատոր) զօրանոցից, ուր պատրաստում էին կռւողներ ժողովրդի ներկայութեամբ կատարւող արիւնալի մրցութիւնների համար։ Նրա ունեցած յաջողութիւնները հռոմէական զօրաբաժինների դէմ նրա շուրջը հաւաքեցին փախստական ստրուկների ահագին խմբեր, որոնց նա սովորեցնում էր զինւորական կարգ։

ու կանոն։ Նրա բանակը հասաւ մինչև 12,000 հոգու և 3 տարի սարսափի մէջ էր պահում ամբողջ Իտալիան։ Մ. Լիկինիոս Կրասոսը վերջապէս ջարդեց այդ բանակը Լուկանիայում, իսկ նրա մնացորդները ոչնչացրեց Իսպանիայից վերադարձող Պոմպէոսը։

Գնէոս Պոմպէոս

Թէ և այսպիսով յաջողւեց պահպանել հռոմէական հասարակութիւնն այն ձևով, ինչ ձև որ նրան տւել էր Սիլլան, բայց նոյն իսկ նրա պաշտպաններն զգում էին, որ չէ կարելի պաշտպանել նրա ստեղծած ազնւականութիւնը։ 70 թւին Պոմպէոսի առաջարկութիւնով վերականգնւեցին տրիբունութիւնն ու ցենզորութիւնը նախկին ձեւով, իսկ ծերակոյտին հաւասար՝ դատարանին մասնակցելու թոյլ տւեցին ասպետներն եւ ստորին դասակարգերից ընտրւածները։ Այս զիջումները և մարտական յաջողութիւնները Պոմպէոսին դարձրին պետութեան մէջ ամենաժողովրդական մարդը։ 70

Գաբինոս տրիբունն օգտւեց վերականգնւած տրիբունութիւնից՝ կոմիցիաներին մի որոշում ընդունել տալու համար, որով Պոմպէոսը դարձաւ պետութեան մէջ եղած բոլոր զինւորական ուժերի կառավարիչը։ Գաբինոսի օրէնքը Պոմպէոսին յանձնեց հրամանատարութիւնը բոլոր Միջերկրականի վրայ և նրա ափերից էլ 10 մղոն ներս՝ ծովահէնների դէմ, որոնք քաղաքացիական խռովութիւնների ժամանակ իրանց ձեռքն էին առել իշխանութիւնը ջրերի վրայ, կազմել էին կանոնաւոր նաւատորմեր՝ շինել էին մի շարք բերդեր ափերի վրայ և կամայական կերպով վարւում էին վաճառականների նաւերի հետ։ Պոմպէոսը գլուխ անցաւ 500 նաւերի և 120,000 զինւորների։ Նա եռանդով ու արագ կատարեց իր վրայ դրած յանձնարարութիւնը. ընդամենը 3 ամսում ծովը մաքրեց աւազակներից, կործանեց նրանց դղեակները, իսկ ի-

րանց մի մասը կոտորեց, մի մասն էլ գաղթեցրեց։ Իրան յանձնուած բացառիկ իշխանութիւնն իր ձեռքում պահելու փորձութեանը նա չենթարկւեց, այլ վայր դրեց իշխանութիւնը և վերադարձաւ մասնաւոր կեանքին, սպասելով որև է նոր ռազմական յանձնարարութեան։ Իսկ այդ չուշացաւ—կրկին նրան ասպարէզ կոչեցին Սիլլայի սկսած մի գործը լրացնելու համար։ Միհրդատը յաղթւած էր, բայց հնազանդւած չէր և, երբ Բիւթանիան Պերգամի նման հռոմէական գաւառ դարձաւ, Միհրդատը կրկին պատերազմ սկսեց։ Հռոմէական Լ. Լուկուլլոս զօրավարը՝ ճշմարիտ է, նրան և նրա փեսային՝—հայոց Տիգրան թագաւորին մի քանի պարտութիւններ հասցրեց, բայց լեգէոնները հրաժարւեցին Հայաստանի խորքերը գնալ։ Զինւորների կամայականութիւնն այնքան մեծ էր, որ Լուկուլլոսն ստիպւած եղաւ յետ նահանջել, Իսկ Միհրդատը նրան հետևեց մօտիկից և ոչնչացրեց հռոմէական բերդապահներին։ Այն ժամանակ պատերազմ մղելը յանձնւեց Պոմպէոսին, որը կարողացաւ կարգապահութիւնը վերականգնել. Ջարդեց Միհրդատին, Պոնտոսն ու Հայաստանը նւաճեց և Ասորիքը դարձրեց հռոմէական գաւառ։ Առանձնապէս կարևոր էր այն, որ Միհրդատի դէմ ապստամբւեց իր որդին, և նա յուսահատւած՝ անձնասպանութիւն գործեց. վերջապէս հռոմէական ժողովուրդն ազատւեց այդ յամառ և վըտանգաւոր թշնամուց։

Կատիլինան և Կիկերոնը·

Երբ Պոմպէոսը պատերազմում էր Ասիայում և նրա կազմը կանոնաւորում, Հռոմում տեղի ունեցան նոր խառնակութիւններ։ Լ. Սերգիոս Կատիլինան, արտակարգ ընդունակութիւնների տէր մի անձ, որ հռչակւած էր իր անբարոյականութիւնովն ու ոճրագործութիւններովը, մի ընդարձակ դաւադրութիւն կազմեց սնանկացած երիտասարդութեան մէջ։ Ենթադրւում էր

այրել Հռոմը, սպանել հիւպատոսներին և ծերակոյտի անդամների մեծ մասին, իրանց ձեռքը գցել իշխանութիւնը, նրանից օգտուել պարտքերը ոչնչացնելու և հարուստներին կողոպտելու համար։ Կատիլինան արտակարգ յանդգնութեամբ իր պատրաստութիւնները տեսնում էր նոյն իսկ Հռոմի մէջ, կառավարութեան աչքի առաջ։ Էտրուրիայում նա արդէն հաւաքել էր մի ամբողջ բանակ և յարաբերութեան էր մտել կելտական Ալլօբրոգ ցեղի հետ, որպէս զի վերջինին դրդէր յարձակուելու Իտալիայի վրայ։ Նոյն իսկ ծերակոյտի մէջ կային նրան և՛ դաւակիցներ, և՛ այնպիսի մարդիկ, որոնք ոչ մի ուղղակի մասնակցութիւն չունենալով դաւադրութեան մէջ, յոյս ունէին նրանից օգտուելու՝ առաջ գնալու համար։ Վերջիններիս պատկանում էր ազդեցիկ և շատ ծառայութիւններ մատուցած Կրասոսը և փառասէր, բայց դեռ երկրորդական տեղ բռնող Կ. Յուլիոս Կեսարը։ Հայրենիքի ազատութեան փառքն այդ ժամանակ պատկանում է 63 թուի հիւպատոս Մ. Տուլլիոս Կիկերոնին։ 63

Մարիոսի նման Կիկերոնն էլ (Ցիցերոն) սերուել էր մի մանր, համայնական (մունիցիպալ) ընտանիքից։ Նա առաջ գնաց իր ճարտարախօսութեան շնորհով։ Նա չունէր մարտական արժանիքներ ու տաղանդ, բայց և՛ դատարաններում, և՛ գաւառներում նա իրան ցոյց տուեց ոչ միայն իբր ճարտար փաստաբան և առաջնակարգ հռետոր, բայց և իբր ազնիւ քաղաքացի, որ ընդունակ է իրան վտանգի ենթարկել ընդհանուրի օգտի և արդարութեան համար. Նոյն իսկ առաջին ճառով՝ օրինակ՝ նա դուրս եկաւ Սիլլայի սիրելիներից մէկի՝ մի սոսկալի լրտեսի դէմ։ Իր դատական գլխաւոր յաջողութիւնը նա ձեռք բերեց ազդեցիկ պրետոր Վերրէսի դէմ ունեցած դատավարութեան մէջ. այդ մարդը երկար ժամանակ անպատիժ կերպով նեղում էր Սի-

*կիլիացիներին։ Կատիլինայի դէմ վարած կռւում նրան յաջողւեց միացնել ծերակոյտի մէջ եղած կարգին մարդկանց ոճրագործների և փառասէրների դէմ։ Կատիլինան ստիպւեց փախչել իր զօրքի մօտ, նրա գրագրութիւնն ալլօբրօգների հետ բռնւեց, և Կիկերոնը կատարել տւեց ծերակոյտին մի ապօրինի, բայց ինքնապաշտպանութեան համար բոլորովին անհրաժեշտ գործողութիւն։ Կատիլինայի դաւակիցներին մահւան պատժի ենթարկեցին, առանց կոմիցիաների առաջ գործը քննութեան հանելու։ Այս վճռական գործողութիւնը զրկեց դաւակիցներին իրանց գլխաւոր վարիչներից, իսկ Կատիլինան սպանւեց իր դէմ ուղարկւած պետական զօրքերի հետ ունեցած ճակատամարտում։ Կիկերոնին ողջունեցին իբրև «Հայրենիքի Հօր»* (pater patriae)*. բայց այն ժամանակի կուսակցական կռիւների մէջ դիմանալու համար՝ պէտք էին ուրիշ յատկութիւններ և ուժեր, քան այն որ ունէր նա իր տրամադրութեան տակ։ Նա յաղթող չէր պատերազմի դաշտում.* Նրա ետեւից կանգնած չէին ահարկու վետերաններ՝ դրա համար էլ նրա յաջողութիւնը ռոպէական եղաւ։ *Կատիլինայի կենդանի մնացած պաշտպանները և դաւակիցներն առանց դժւարութեան պատրւակ գտան Կիկերոնին մեղադրելու. Նա մահւան պատժի էր ենթարկել Հռոմի քաղաքացիներին առանց դատարանի։ Մեղադրանքն այնքան վտանգաւոր էր, որ «Հայրենիքի Հայրն» ստիպւած էր, իր յաղթանակից քիչ յետոյ՝ աքսորականի նման փախչել։*

***Առաջին եռապետութիւնը (տրիումվիրատ)***

*Հարց էր ծագում, թէ արդեօք ի՞նչպէս կօգտւի իր ուժից նա, որ այդ ժամանակ կանգնած էր զօրքի գլուխը—Պոմպէոսը, որ Հռոմ էր վերադառնում՝ Ասիան նւաճելուց յետոյ։ Այս դէպքում Պոմպէոսը մի անգամ էլ ցոյց տւեց, որ չէ հասկանում ժամանակի ոգին և չէ կարողանում օգտւել իր ուժերից.* Նա

այնքան բարեմիտ մարդ էր, որ բռնի կերպով իշխանութիւնը չը յափշտակեց, թէեւ նոյն իշխանութիւնն արդէն երկրորդ անգամն էր, որ ինքն իրան նրա ձեռքն էր տրւում։ Բայց գոնէ առաջ նա պէտք է յայտնէր իր պահանջները և մի քիչ պնդէր, իսկ յետոյ միայն զէնքը վայր դնէր։ Դրա փոխարէն, ի զարմանս ամենքի, նա Իտալիա դուրս գալուն պէս՝ արձակեց իր բանակը և իբր մի մասնաւոր մարդ, դիմեց ծերակոյտին ու ժողովրդին, խնդրելով հաստատել իր ինքնակամ կարգադրութիւններն Ասիայում և վարձատրել իր վետերաններին հողաբաժիններով։ Եւ այդ բանում իր կարճատես միամտութեան համար նա մի զգալի դաս առաւ։ Նրան թոյլատրեցին մի փառաւոր յաղթական մուտք (տրիումֆ) [1], բայց նրա առաջարկութեան բոլոր էական կէտերը մերժեցին։ Եւ Ասիայի յաղթողն ստիպւած եղաւ գործադրել բոլորովին մանր ու մաքուր միջոցներ, որպէս զի իր կարգադրութիւններն ու խոստումները քանդելու խայտառակ վիճակից ազատւի. Ծերակոյտի դիմադրութիւնը կոտրելու համար, նա համաձայնութիւն կայացրեց Լիկինիոս Կրասոսի հետ, ինչպէս հարուստների՝ ասպետների ներկայացուցչի, և Յուլիոս Կեսարի (Ցեզար) հետ, ինչպէս ժողովրդական կուսակցութեան ներկայացուցչի։ Կուսակցութիւնների ներկայացուցիչների այս համաձայնութիւնն ստացաւ Ա. Եռապետութիւն (տրիումվիրատ) անունը (60 թ.)։ 60

[1]) Տրիումֆ=յաղթող զօրավարի (imperator-ի) հանդիսաւոր մուտքը Հռոմ։ Թափորը շարժւում էր յաղթական դռներից (porta triumphalis) դէպի Իւպիտերի տաճարը Կապիտոլեան բլրի վրայ։ Յաղթողը գնում էր քառաձի կառքի վրայ նստած. Նրա գլխին դրւած էր լինում դափնէ պսակ և վրան ծիրանի (տօգա)։ Առջևից տանում էին գերիներին և աւարը, իսկ կառքի ետևից գնում էին զօրքերը։

*Յուլիոս Կեսար*

Եռապետութեան շնորհով վերջնականապէս առաջ գնաց այդ շրջանի ամենանշանաւոր պետական անձը —Կայիոս Յուլիոս Կեսար (Ցեզար)։ Նա սերւում էր հին պատրիկ տոհմից, բայց ընտանեկան կապերով պատկանում էր մարիոսական կուսակցութեան (Նրա Յուլիա մօրաքոյրը Մարիոսի կինն էր. իր առաջին կինն էլ Կինէասի կամ Ցիննայի աղջիկն էր)։ Սիլլայի պրօսկրիպցիաների ժամանակ Նրան խնայեցին երիտասարդութեան պատճառով, բայց Նրա կապերը մարիոսականների հետ երկար ժամանակ Նրան խանգարում էին կեանքի մէջ։ Նա ստիպւած էր սահմանափակւել երկրորդական զինւորական պաշտօններով, յունական լեզուն և ճարտասանութիւնն ուսումնասիրելով, խնջոյքներ տալով, որոնք շուտով սնանկացրին Նրան և անվճարելի պարտքերի մէջ թաղեցին։ Առաջին անգամ Նա ժողովրդականութիւն ստացաւ իր էդիլ եղած ժամանակը, որովհետև արտակարգ փառահեղ խաղեր սարքեց ժողովրդի համար և կռւի հանեց բազմաթիւ սուսերամարտներ (գլադիատորներ) հիանալի կերպով վարժեցրած։ Այդ ժամանակից Նա դարձաւ քաղաքային պրօլետարիատի վարիչներից մէկը և, ինչպէս արդէն ասւեց, շատ մօտ էր Կատիլինայի դաւադրութեանը։ Սակայն Նա շատ խելացի լինելով, չը կապւեց այդ կատաղի մարդու հետ. Նա իրան այնքան ճարպիկ կերպով պահեց Կիկերոնի և դաւադիրների կռւի ժամանակ, որ ոչ միայն չոչնչացաւ, այլ և ընդհակառակը, պրետորի և յետոյ էլ իսպանական գաւառներից մէկի կառավարչի պաշտօն ստացաւ։ Այստեղ Նա առաջին անգամ արտայայտեց իր պատերազմական ընդունակութիւնները։ Բայց Նրա համար լայն պատմական գործունէութեան ասպարէզ բացւեց Հռոմ վերադառնալուց յետոյ՝ այն ծաղրելի դիրքի պատճառով, որի մէջ ընկաւ Պոմպէոսը։ Կարելի

է ասել, որ Կեսարը մեծանում էր իր առաջ դրւած
խնդիրների ընդարձակւելու հետ միասին։ Կեսարն
ընտրւեց հիւպատոս 59 թւին մի ոմն Բիբուլոսի 59
հետ, որին նսեմացրեց մինչև այն աստիճան, որ Հռո-
մում կատակի համար ասում էին, թէ հիւպատոսները
Յուլիոսը և Կեսարն են։ Պայմանի համաձայն՝ նա
ընդունել տւեց Պոմպէոսի կարգադրութիւնների հաս-
տատումը և Կամպանիայում քաղաքացիներին հողեր
բաժանելու օրէնքը, որով և ասիական բանակի վե-
տերանները վարձատրւած եղան։

Գալլիական պատերազմը.

Վերջապէս իր ծառայութիւնների փոխարէն՝
Կեսարին բաժին ընկաւ մի կարևոր մարտական ա-
ռաջնորդութիւն. նա Գալլիա ուղևորւեց, որին
սպառնում էր մի նոր գերմանական արշաւանք, ոչ
նւազ սարսափելի, քան կիմբրների և տևտոնների
յարձակումները։ Գերմանական ժողովրդների մի ամ-
բողջ խումբ, Սւեվ կոչւած, շարժւում էին արևելքից
դէպի արևմուտք, քշելով և նւաճելով հանդիպող
ցեղերին. Նրա առաջին խմբերն արդէն Հռենոսն ան-
ցել էին, ջարդել կելտերին և գալլիական հողի վրայ
կազմել մի նոր, միշտ աճող պետութիւն, որի գլուխն
էր կանգնել Արիովիստը։ Անդրալպեան նահանգում
առաջին անգամ երևալուն պէս՝ Կեսարը պատահեց
կելտական հելւէտների ցեղին, որը փախչելով գեր-
մաններից, գաղթել էր ամբողջ կազմով Զւիցերիայից
և ուղևորւել Էդոյների նահանգը կենդրոնական գալ-
լիայում։ Բիբրակտէի (այժմ Autun) մօտ տարած
յաղթութիւնով Կեսարն ստիպեց նրանց վերադառնալ
նախկին տեղերը։ Յետոյ նա վճռական պարտութիւն
պատճառեց Արիովիստին այժմեան Էլզասում։ Դրանից
յետոյ սկսւեցին մի ամբողջ շարք պատերազմներ, ո-
րոնց արդիւնքը եղաւ բոլոր գալլիական նահանգների
գրաւումը՝—Միջերկրականից սկսած մինչև Հիւսի-

*սային ծովը և Ատլանտեան օվկիանոսից սկսած մինչև Հռենոսը։ Սկզբում յաղթեցին Բելգերը, և այդ ժամանակ առանձնապէս քաջ դիմադրութիւն ցոյց տւող ներվիները համարեա բոլորովին ոչնչացան. յետոյ նւաճւեց արևմտեան ափը. Կեսարն ինքը գործում էր վենետների դէմ Բրիտանիայում, իսկ նրա օգնականները (լեգատները) գրաւեցին Աքւիտանիան Գարօննայից դէպի հարաւ։ Գալլիային դրացի բարբարոսներին սարսափեցնելու համար Կեսարը նեղուցով անցաւ Մեծ-Բրիտանիա և երկու անգամ էլ Հռենոսի միւս կողմը. բայց թէ մէկ և թէ միւս դէպքում նա աչքի առաջ չունէր հաստատուն գրաւումներ, և իսկոյն յետ էր վերադառնում։ Գալլիական ծանր արշաւանքները կազմակերպեցին նրա համար քաջութիւնով, դիմացկանութիւնով և տոկունութիւնով օրինակելի մի բանակ, իսկ ինքն էլ նրանց ժամանակ արտայայտեց իսկական հանճարեղութիւն. ամենամեծ վտանգների ժամանակ նա պահպանում էր իր սառնարիւնութիւնը և դէպքը պահանջած ժամանակը կեանքը վտանգի էր ենթարկում, որպէս մի հասարակ զինւոր.* ամենաբարդ դիրքերում նա իսկոյն ըմբռնում էր գործի էութիւնը. *մի հայեացքով և անսխալ ճշտութիւնով որոշում էր հակառակորդի ուժեղ և թոյլ կողմերը, տեղի առանձնայատկութիւնները, գործողութիւնների նպատակները։ Իսկ երբ մի անգամ արդէն նպատակը նախագծւած էր՝ նա դիմում էր դէպի այն անպարտելի եռանդով *)։ Ի հարկէ նրան շատ օգնեցին* կելտերի եւ նրանց պետութեան թերութիւնները։ *Կելտերը բնաւորութիւնով ընդունակ, բայց անկայուն և թեթևա-*

---

**) Կեսարը թողել է իր պատերազմների նկարագրութիւնը։ Դա «Կոմմենտարիաներ» կոչւած շարադրութիւնն է—մտքի և վերածութեան պարզութիւնով մի օրինակելի գործ։ (Կայ և հայերէն գրաբար՝ թարգմանութիւնը)։*

միտ էին։ Ընդարձակ երկիրը չունէր մի ընդհանուր կազմակերպութիւն։ Նա բաժանուած էր բազմաթիւ իրար թշնամի ցեղերի, իսկ ամեն մի ցեղի մէջ ժողովուրդը գտնւում էր ծանր կախման մէջ ցեղական ազնւականութիւնից, որի անդամները չէին կարողանում ենթարկւել պետական ուժեղ իշխանութեան։ Քուրմերի կամ Դրուիդների դասակարգը՝ ճշմարիտ է, մեծ ազդեցութիւն ունէր գործերի վրայ և յարաբերութիւններ էր պահպանում ամբողջ Գալլիայի և նոյն իսկ Լա-Մանշից այն կողմ—Մեծ-Բրիտանիայի հետ, բայց նա զինւորական գործողութիւններ ղեկավարելու համար անպէտք էր և ընդհանրապէս բաւարար նիւթական ոյժ չունէր, որպէս զի կարողանար մի պետութիւն կազմել։ Այս բոլոր պատճառներով կելտերը երկար ժամանակ կեսարին ցոյց տւին քաջ, բայց բաժան-բաժան դիմադրութիւն։ Օտարների հետ ունեցած կռիւը մինչև անգամ սովորեցրեց նրանց միութեան անհրաժեշտութիւնը, և իրանց անկախութիւնը պաշտպանելու վերջին փորձում նրանք միասին էին գործում իսկական հերոսի՝ արւեռնացի Վերցինգետորիքսի առաջնորդութեան տակ։ 52 թւի ապստամբութիւնը քիչ էր մնացել որ 52
հռոմայեցիներին ոչնչացնէր։ Հերգովիայի մօտ կեսարն ունեցաւ իր առաջին անյաջողութիւնը. կելտական հեծելազօրքը ոչնչացրեց հռոմէականին, և միայն լեգիոնների դիմացկանութիւնը և ամրացւած բանակատեղի օժանդակութիւնն ազատեցին զօրքերին լիակատար ոչնչացումից։ Եւ նոյն իսկ այդ ժամանակ զօրավարն ամենափայլուն կերպով արտայայտեց իր ընդունակութիւնը յարմարւելու եղած պայմաններին և նրանց համեմատ պատերազմը մղելու եղանակները փոփոխելու. առաջւան պէս բաց դաշտում ճակատելու փոխարէն նա կելտերի դէմ գործադրեց հողաբլուրների և ամրացրած բանակատեղերի շինւածքները։ Հռոմէական զինւորները կատարելութիւնով էին ա-

նում հողային աշխատանքները, իսկ կելտերը՝ պատերազմական այդպիսի ձևի ժամանակ չէին կարողանում լիակատար կերպով օգտուել առաջին յարձակումից, որ նրանք կատարում էին միշտ արտակարգ ոգևորութիւնով։ Զգուշաւոր և ճարպիկ խաղերով Կեսարին յաջողուեց Վերցինգետորիքսին փակել Ալեզիայում։ Հռոմայեցիներն իրանց շրջապատեցին պատնէշներով երկու կողմից էլ և յետ էին մղում ինչպէս պաշարուածների դուրս գալու փորձերը, այնպէս էլ այն ցեղերի յարձակումները, որ աշխատում էին դրսի կողմից պաշարման օղակը պատռել։ Վերցինգետօրիքսն ստիպուած եղաւ անձնատուր լինել, և նրա գերութիւնով վերջացան դիմադրութեան բոլոր փորձերը։ Կեսարի ձեռքերն ազատուեցին Իտալիայում գործելու համար։

Կեսարի վէճը Պոմպէոսի հետ։

Իր տասնամեայ բացակայութեան ժամանակ
Հռոմում մի շատ լարուած դրութիւն էր առաջացել։
Եռապետութիւնը քանդուել էր Կրասոսի մահով, որը
գնացել էր պարթևների դէմ, անզգոյշ կերպով մտել
էր անապատի խորքերը և ոչնչացել էր իր բանակի
53 մեծ մասի հետ միասին (53 թ.) թշնամու ձեռքով։
Պոմպէոսը նախանձւեց Կեսարի յաջողութիւններին
եւ իր վրայ առնում էր ժամանակ առ ժամանակ
բացառիկ լիազօրութիւններ։

57 57 թուին նրան յանձնուեց բոլոր հռոմէական աշխարհի
հացի առևտրի կառավարութիւնը՝ գործերի կանգ առնելը և
55 հացի թանգութիւնը վերացնելու համար։ 55 թուին նա իր
վրայ վերցրեց Իսպանիայի կառավարութիւնը, բայց գաւառ
չըգնաց, այլ գործը յանձնեց իր օգնականներին (լեգատ [1])։
52 52 թուին նրան ընտրեցին միակ հիւպատոս Իտալիան և
մանաւանդ Հռոմը խաղաղեցնելու համար, ուր մի քանի տա-
րի շարունակ գործում էին կազմակերպուած աւազակային

[1]) Լեգատներ էին կոչւում զօրավարի մօտ գտնուած օգնականները։

*խմբեր։ Նրանց առաջնորդ Կլոտիոսն ու Միլոնը կողոպտում էին մասնաւոր մարդիկների, վախեցնում էին Կոմիցիաների ընտրութիւնների ժամանակ և իրար հետ կանոնաւոր ճակատամարտեր էին տալիս։ Պոմպէոսը գլուխ ելաւ աւազակների հետ և խիստ օրէնքներ ընդունել տւեց բռնութեան և ընտրութիւնների մէջ կաշառք գործածելու դէմ։*

*Ծերակոյտը, որ երկար ժամանակ հաւատ չէր ընծայում Պոմպէոսին, վերջապէս համոզւեց, որ նա շատ աւելի նւազ երկիւղալի է, քան Կեսարը և նրա հետ սերտ համաձայնութեան մէջ մտաւ վերջինի դէմ։* Ընդհակառակը՝ ժողովուրդը՝ այսինքն ստորին դասակարգերի ամբոխն, աճող հիացմունքով էր վերաբերւում դէպի գալլիական յաղթականին։ *Վերջնական պայթումը տեղի ունեցաւ այն ժամանակ, երբ ծերակոյտը պահանջեց Կեսարից յանձնել գաւառները և լեգիոնները։ Դրան իբր պատասխան՝ Կեսարից կաշառւած տրիբուն Կուրիոսը հարց դրեց Պոմպէոսի իսպանական գաւառները յանձնելու մասին։ Սակայն ծերակոյտը մերժեց այդ պահանջը և, չը նայելով երկու տրիբունների—Կուրիօնի և Մ. Անտօնիոսի արգելքներին, Կեսարին հրաման ուղարկեց Գալլիան յանձնելու։ Տրիբունները փախան վերջինիս մօտ և նրան պատրւակ տւին հակառակորդներին մեղադրելու օրինազանցութեան մէջ։ Կեսարը բոլորովին տրամադիր չէր առանց զէնքի անձնատուր լինել թշնամիների իշխանութեանը. Նրա լեգիոններն սպասում էին*
*վարձատրութեան։ 49 թւի սկզբին գալլիական բա-* 49
*նակի առաջնապահ գունդն անցաւ Ռուբիկոնը, Ցիսալպինեան (այսրալպեան) Գալլիայի սահմանը և դրանով իսկ սկսւեց երկրորդ ազգամիջեան պատերազմը։*

*Ազգամիջեան պատերազմը.*

Չը նայելով ընդհարման երկար պատրաստութիւններին, Պոմպէոսը դեռ եւս անպատրաստ էր *և Իտալիայում բաւարար ուժեր չունէր։ Թէ և նրա տրամ-*

դրութեան տակն էին հասարակապետութեան բոլոր արևմտեան, արևելեան և հարաւային զինուորական միջոցները։ Այսպիսի հանգամանքների մէջ դէպի հիւսիս ուղարկել համեմատաբար մի փոքր զօրաբաժին՝ մի մեծ սխալ էր, որ սակայն արին. Կեսարն ստիպեց այդ զօրաբաժնին անձնատուր լինել և երկու ամսում գրաւեց ամբողջ Իտալիան։ Դա ունէր ոչ միայն մեծ բարոյական նշանակութիւն, այլ և առաջնակարգ կարևորութիւն զինուորական տեսակէտից, որովհետև Կեսարն ընկաւ Պոմպէոսի բանակների մէջ տեղը և հնարաւորութիւն ստացաւ բաժան-բաժան պահել նրանց իրարից։ Պոմպէոսն ստիպուած էր ընտրութիւն անել արևելքի և արևմուտքի մէջ, և վճռեց դիմել արևելք։ Ծերակոյտի անդամների մեծ մասի հետ նա անցաւ Յունաստան, իսկ Կեսարն այդ միջոցին դիմեց դէպի արևմուտք, շրջապատեց իսպանական լեգիոնները և ստիպեց նրանց իր կողմն անցնել։ Չընայելով այս բոլոր սխալներին, կրկին Պոմպէոսի կողմն էր թւական գերազանցութիւնը։ Վերջապէս նրա բանակը հաւաքւեց իլլիրական ափի վրայ, և առանց ժամանակ կորցնելու՝ այնտեղ դիմեց Կեսարը ևս, թէ և նա ստիպւած էր տանել իր զինուորներին համարեա առանց պաշարի և բեռի, որպէսզի հակառակ ափի վրայ գործելու համար բաւարար թւով զօրք ժողովէ առանց ուշացնելու։ Նրան յաջողւեց խաբել ծովի վրայ տիրող Պոմպէոսի նաւատորմին և ափ ելնել այնտեղ, ուր հակառակորդները չէին սպասում։ Բայց և այնպէս դրութիւնը ծայրայեղ կերպով վտանգաւոր էր։ Կեսարը պաշարեց Դերրաքիումը, իլլիրական ափի վրայ գլխաւոր նաւահանգիստը և հակառակորդ բանակի պահեստատեղին։ Ստացւեց ուժերի նոյն դասաւորութիւնը, ինչ որ էր Ալեզիայի մօտ։ Քաղաքի շուրջն ամրացրել էր իրան երկու կողմով Կե-

սարի զորք, իսկ նրա ետևի կողմից կանգնած էր Պոմպէոսը։ Բայց այժմ գործ պէտք էր ունենալ ոչ թէ կելտերի այլ հռոմէական լեգիոնների հետ։ Պոմպէոսի հետ միանյաջող ընդհարում ունենալուց յետոյ, Կեսարն ստիպւած եղաւ պաշարումը վերցնել։ Նա գնաց դէպի արևելք, յուսալով ոչնչացնել պոմպէական այն բանակը, որ գալիս էր Մակեդոնիայից։ Պոմպէոսը հետևեց հակառակորդին, Փարսաղիայի (Ֆարսալ) մօտ՝ Թեսալիայում՝ տեղի ունեցաւ գլխաւոր ճակատամարտը (48 թ.)։ Լեգիոնների հետևակազօրքը երկու կողմից էլ կռւում էր միևնոյն քաջութիւնով։ Պոմպէոսի հեծելազօրը շատ աւելի բազմաթիւ էր, և սկսեց անցնել Կեսարի մարտական գծի թիկունքի կողմը։ Բայց այդպիսի դիպւածի դէմ արդէն միջոցներ էին ձեռնարկւած։ Պոմպէականների վրայ յանկարծ յարձակւեցին մի քանի ընտրովի Կոհորտաներ[1], որ Կեսարը պահում էր իբր պահեստ։ Պարտութիւնը լրացրեց գերմանական հեծելազօրը, որ ժողովել էր Կեսարը Գալլիական արշաւանքների ժամանակ։ Փախուստի առաջին նշանների ժամանակ Պոմպէոսը հեռացաւ կռւի դաշտից։ Նա գնաց Եգիպտոս, բայց այնտեղ նրան սպանեցին Պտղոմէոս թագաւորի հրամանով։ Կեսարը մի աննշան զօրաբաժնով հետևեց Պոմպէոսին Եգիպտոս և քիչ էր մնացել, որ ինքն էլ ոչնչանար։ Նա միջամտեց Պտղոմէոսի և նրա քրոջ— Կղէոպատրայի վէճին՝ այս վերջնիս օգտին։ Ալէքսանդրիայում ազգաբնակութիւնը շրջապատեց նրան ամեն կողմից, և նա 5 ամիս դժվարութիւնով պաշտպանւեց թագաւորական դղիակում և թատրոնում, մինչև որ Փոքր-Ասիայից նրան օգնական զօրք հասաւ։ Այս կռւի ժամանակ այրւեց Ալէքսանդրիայ հռչակաւոր գրադարանը։

[1]) Կոհորտան մի զօրաբաժին էր 500 հոգուց կազմւած։ Լեգիոնն ունէր 10 կոհորտա։

Եգիպտացիներին յաղթելուց յետոյ՝ մի քանի օրում վերջացաւ Միհրդատի որդի Փառնակէսի դէմ սկսած արշաւանքը. նա մտել էր հռոմէական գաւառները [1]։ Յետոյ պէտք էր ոչնչացնել պոմպէականների բաւական խոշոր ուժերը, որ հաւաքւել էին Աֆրիկայում։ Տապսի մօտ նրանք ջարդւեցին, և բոլոր առաջնորդներն ինքնասպանութիւն գործեցին, որոնց թւում և Կատոն կրտսերը, հին հանրապետական ոգու վերջին ներկայացուցիչը։ Մի անգամ էլ հաւաքւեցին պոմպէականներն Իսպանիայում Պոմպէոսի որդիների և Կեսարի նախկին լեգատ Լաբիէնոսի առաջնորդութեան տակ։ Մունդայի մօտ Կեսարը տւեց իր վերջին ճակատամարտը, և յաղթութիւնը նրան այս անգամ աւելի դժւար յաջողւեց, քան երբ և է։ Նա անձամբ առաջնորդում էր իր կոհորտաներին յարձակման ժամանակ և յաղթեց միայն նումիդիական

45 հեծելազօրի շնորհով (45 թւին)։

եսարի բա-
կենտրոնացու-
րթիւնները

Հռոմ վերադառնալուց յետոյ, Կեսարն զբաղւեց ներքին խռովութիւններից խախտւած պետութեան վերաշինութիւնով։ Ծերակոյտը և ժողովուրդը նրան տւին աւելի բացառիկ իշխանութիւն, քան այն՝ որով օգտւում էր Սիլլան։ Նա նշանակւեց դիկտատոր և ցենզօր (համարակալ) մինչև մահ, հիւպատոս 10 տարով. նրան տրւեց «յաղթական առաջնորդ»—իմպերատոր տիտղոսն՝ ինչպէս յատուկ անուն և դրա հետ միասին՝ հանրապետութեան բոլոր զօրքերի առաջնորդութիւնը։ Նրա անձին յատկացւեց տրիբունի սրբազան անձեռնմխելիութիւնը (sacrosanctus)։ Նա իրաւունք ստացաւ մշտապէս դափնէ պսակ և յաղթանակի ծի-

---

[1]) Այս պատերազմին է վերաբերում Կեսարի հռչակաւոր տեղեկագիրը ծերակոյտին. «եկայ, տեսայ, յաղթեցի» (veni, vidi, vici)։

սարի զորք, իսկ նրա ետևի կողմից կանգնած էր Պոմպէոսը։ Բայց այժմ գործ պէտք էր ունենալ ոչ թէ կելտերի այլ հռոմէական լեգէոնների հետ։ Պոմպէոսի հետ մի անյաջող ընդհարում ունենալուց յետոյ, Կեսարն ստիպւած եղաւ պաշարումը վերցնել։ Նա գնաց դէպի արևելք, յուսալով ոչնչացնել պոմպէական այն բանակը, որ գալիս էր Մակեդոնիայից։ Պոմպէոսը հետևեց հակառակորդին, Փարսաղիայի (Ֆարսալ) մօտ՝ Թեսալիայում՝ տեղի ունեցաւ գլխաւոր ճակատամարտը (48 թ.)։ Լեգէոնների հետևակազորքը երկու կողմից էլ կռւում էր միևնոյն քաջութիւնով։ Պոմպէոսի հեծելազորը շատ աւելի բազմաթիւ էր, և սկսեց անցնել Կեսարի մարտական գծի թիկունքի կողմը։ Բայց այդպիսի դիպւածի դէմ արդէն միջոցներ էին ձեռնարկւած։ Պոմպէականների վրայ յանկարծ յարձակւեցին մի քանի ընտրովի Կոհորտաներ [1]), որ Կեսարը պահում էր իբր պահեստ։ Պարտութիւնը լրացրեց գերմանական հեծելազորը, որ ժողովել էր Կեսարը Գալլիական արշաւանքների ժամանակ։ Փախուստի առաջին նշանների ժամանակ Պոմպէոսը հեռացաւ կռւի դաշտից։ Նա գնաց Եգիպտոս, բայց այնտեղ նրան սպանեցին Պտղոմէոս թագաւորի հրամանով։ Կեսարը մի աննշան զօրաբաժնով հետևեց Պոմպէոսին Եգիպտոս և քիչ էր մնացել, որ ինքն էլ ոչնչանար։ Նա միջամտեց Պտղոմէոսի և նրա քրոջ— Կղէոպատրայի վէճին՝ այս վերջինիս օգտին։ Ալէքսանդրիայում ազգաբնակութիւնը շրջապատեց նրան ամեն կողմից, և նա 5 ամիս դժվարութիւնով պաշտպանւեց թագաւորական դղեակում և թատրոնում, մինչև որ Փոքր-Ասիայից նրան օգնական զօրք հասաւ։ Այս կռւի ժամանակ այրւեց Ալէքսանդրիայ հռչակաւոր գրադարանը։

[1]) Կոհորտան մի զօրաբաժին էր 500 հոգուց կազմւած։ Լեգէոնն ունէր 10 կոհորտա։

մէջ հռոմէական զարգացումը և կարգերը մտցնելուն։ Կայիոս Գրակխոսի գաղափարը—խաղաղացիութեան իրաւունքներ տալ այն ժողովրդներին, որոնք ընդունել էին հռոմէական կուլտուրան—աւելի մեծ ծաւալ ու զարգացում ստացաւ։ Պօից այս կողմի Գալլիան ըստացաւ լիակատար հաւասարութիւն հռոմայեցիների հետ, մնացած ցիսալպեան (այսրալպեան) Գալլիան ստացաւ «լատինական» կոչւած իրաւունքը, այսինքն միևնոյն քաղաքացիութիւնը մի քանի սահմանափակութիւններով։ Այսպիսով երեւան էր գալիս հռոմէական իրաւունքն աստիճանաբար ամբողջ աշխարհի վրայ տարածելու մեծ ծրագիրը, որ պէտք է կապւած լինէր հռոմէական լուսաւորութեան տարածման հետ։ Կեսարի մտաւոր հորիզոնը չափազանց լայն էր. նա չէր կարող աշխարհի շահերը ենթարկել մի քաղաքի կամ մի նահանգի եսականութեանը։ Նոյն իսկ հռոմէական լուսաւորութիւնը նա չէր հասկանում իբր զուտ հռոմէական սկզբունքների տիրապետութիւն. գիտութեան, գեղարուեստի, գրականութեան մէջ նա խոստովանում էր հելլենականութեան առաւելութիւնը և նպաստում էր հռոմայեցիներին նրան իւրացնելու [1]։ Մինչև անգամ նա հոգ էր տանում վերականգնելու այն առեւտրական եւ կուլտուրական կենտրոնները, որ կործանւել էին հռոմէական զէնքերից։ Աչքի առաջ ունէ՞ր վերականգնել Կորնթոսն ու Կարթագէնն իրանց նախկին վեհութիւնով։ Բայց և այնպէս Կեսարը գնահատում էր հռոմէական հաստատութիւնների և իրաւունքի նշանակութիւնը։ Նրա քաղաքային համայնքների վերաբերող օրէնքը (lex Julia municipa-

[1]) Ի միջի այլոց՝ Աղէքսանդրիայի գիտնականների օգնութիւնով Կեսարն ուղղեց տոմարը։ Ինչպէս յայտնի է՝ Յուլիան տոմարը մինչև այժմ գործ է ածւում Ռուսաստանում, Յունաստանում (նաև հայերի մէջ) և այլն։

lis) ներկայացնում էր քաղաքների կազմութեան մանրամասն վերաքննութիւնը և շատ նպաստեց քաղաքային համայնքների զարգացմանը, իսկ այդ համայնքների տարածւելը և ազդեցութիւնը դարձաւ ամենազօրեղ միջոցը հռոմէական կուլտուրան գաւառները տեղափոխելու համար։ Գաւառների կառավարիչների կամայականութիւնը զսպելու համար խիստ օրէնքներ հրատարակւեցին ուժով փող կորզելու և բռնութեան դէմ։ Վերջապէս Կեսարն ընդարձակ ծրագիրներ կազմեց զանազան գաւառների (մանաւանդ Իտալիայի) բարեկեցութիւնը բարձրացնելու համար։ Աչքի առաջ կար նոր ճանապարհներ և ջրանցքներ շինել, ճահիճներ չորացնել և այլն։

Այս մեծ միջոցների և ձեռնարկութիւնների հետ համեմատելով՝ Կեսարի գործունէութիւնը բուն Հռոմում երկրորդական է երեւում։ Հաց բաժանելը սահմանափակւեց, օրէնքներ հրատարակւեցին շռայլութեան և բռնութեան դէմ։ Ծերակոյտը, որ արդէն շատ բան էր կորցրել ազգամիջեան կռիւների ժամանակ, բոլորովին կախման վիճակի մէջ դրւեց. Նրա անդամների թիւն աճեցրին միանգամից մինչև 900-ի։ Նրան անդամ նշանակեցին պետական գործերի հետ անծանօթ շատ սպաներ և նոր քաղաքացիութիւն ստացած գաւառացիներ։ Ակներև էր, որ Կեսարի նպատակն էր խլել ծերակոյտից նախկին նշանակութիւնը եւ դարձնել նրան մի պետական խորհուրդ իր մօտ։ Կոմիցիաները պահպանւեցին, թէ և խոշոր պաշտօնեաների ընտրութիւնը և օրէնսդրութիւնը կատարւում էին Կեսարի ցուցմունքներով։ Եւ կոմիցիաների պահպանութիւնը, և նոյն իսկ յաղթողի իւրացրած իշխանութեան բնաւորութիւնը, այսինքն այն՝ որ նա իրան էր իւրացրել մի քանի հասարակապետական պաշտօններ— այս բոլորը ցոյց էին տալիս Հռոմի հանրապե-

*տութեան դարևոր հզօր ազդեցութիւնը։* Կեսարը եւ իշխանապետ (դիկտատոր) էր, ե՛ւ հիւպատոս, ե՛ւ ցենզոր, եւ իմպերատոր, բայց թագաւոր չէր։ *Նրա արձանը թագաւորների արձանների շարքում դրին. Նրա կուսակից Մ. Անտոնիոսը մեծ հրապարակում (ֆորում) նրան առաջարկեց թագաւորական թագ։ Բայց Կեսարը չը համարձակուեց թագն ընդունել ժողովրդի տրտունջի պատճառով։ Սակայն այդ հրաժարումը միայն յետաձգումն էր։ Կեսարը կամաց-կամաց հող էր պատրաստում թագաւորական իշխանութիւնը վերականգնելու համար։ Նա պատրաստւում էր արշաւելու պարթևների վրայ և այդ առիթով տարածում էր մի նախագուշակութիւն, որ իբր թէ «պարթևներին պէտք է յաղթէ մի թագաւոր»։* Բայց հասարակապետութիւնն արմատացած չէր միա՛յն ժողովրդի տրամադրութեան մէջ. *Նրանից հրաժարուելը դժուար էր առաջնորդող ընտանիքների և այն մարդկանց համար, որոնք սովորել էին կառավարել պետութիւնը և ոչ հնազանդուել մի թագաւորի։ Ծերակոյտի անդամների մէջ կազմուեց մի դաւադրութիւն, որի մէջ մտան մօտ 60 հոգի ներում ստացած պոմպէականներ, որոնք յոյս ունէին առաջ գնալ դիկտատորի անկումից յետոյ։ Գլուխ էին կանգնել խորամանկ, նախանձոտ Կասսիոսը և անպայման ազնիւ Մ. Յունիոս Բրուտոսը, որին Կեսարը մասնաւորապէս սիրել և իրան էր մօտեցրել վերջին ժամանակներում։ Դաւադրութեան յաջողութեանը նըպաստեց Կեսարի արհամարհանքը դէպի զգուշութեան ամեն տեսակ մանր միջոցները։ Ուրիշ շատ մեծ մարդկանց նման նա հաւատում էր իր պատմական կոչումին, իսկ իր անհատական կեանքի վերաբերութեամբ նա ճակատագրական (ֆատալիստ)* [1]) *էր։ Նա բարձր*

*[1]) Ֆատալիստ ասում են այն մարդուն, որը հաւատում է, թէ կեանքը կառավարւում է ոչ թէ մարդկանց ծրագրե-*

էր վրէժխնդրութիւնից և կասկածներից։ Բայց որքան էլ մարդ մեծ լինի, նրա մահկանացու անձնաւորութիւնը ենթարկւում է մարդկային գոյութեան ամեն տեսակ սովորական պատահարներին։ Կեսարին մահ նախագուշակեցին «Մարտի Իդոսի» ժամանակ. մի քանի անգամ նրան զգուշացրել էին, բայց նա նրանց վրայ ուշադրութիւն չը դարձրեց, և Մարտի Իդոսին (Մարտի 15-ին) 44 թւին գնաց ծերակոյտը ժողովի։ 44
Դաւադիրները նրան խենջարներով սպանեցին։

Երկրորդ եռապետութիւն։

Կեսարի մահն սկզբներում ընդհանուր շփոթութիւն և լիակատար անկարգութիւն առաջ բերեց. Նրա ստորացրած բոլոր ուժերն ու երկրորդական գործիչները գլուխ բարձրացրին իրանց յաւակնութիւններով ու պահանջներով։ Բոլորը և իւրաքանչիւր անհատ հետևում էին իրանց սեփական քաղաքականութեան. Կեսարին սպանողները, ծերակուտականների չափաւոր կուսակցութիւնը, Մարկոս Անտոնիոսն, ինչպէս սպանւածի ամենամօտ զօրագլուխը, 19 տարեկան Օկտաւիանոսը, ինչպէս Կեսարի քրոջ թոռը և որդեգիրը [2]—կռւում և իրար հետ համաձայնութեան մէջ էին մտնում։ Բայց կամաց-կամաց պարզւեց մի գլխաւոր պայման։ Իմպերատօրն սպանւել էր, բայց նրա գործը մնում էր եւ պահանջում էր այժմ նրա արած կարգադրութիւնների հաստատութիւնը եւ մարդասպանների պատժւելը։ Այս հողի
վրայ կազմւեց երկրորդ եռապետութիւնը (43 թւին) 43
Անտոնիոսի, Օկտաւիանոսի և Մ. Լեպիդոսի՝ Իսպանիայի և հարաւային Գալլիայի փոխ-հիւպատոսի (պրոկոնսուլ) մէջ։ Այս երկրորդ եռապետութիւնը զանա-

---

րով ու միջոցներով, այլ ոչ ոքից կախւում չունեցող բաղդից (ճակատագրից) (Fatum)։

2) Հարազատ քրոջ դստեր և Կ. Օկտաւիանոսի որդին։

գտնում էր առաջնից նրանով, որ սա մի մասնավոր
համաձայնություն չէր, այլ ճանաչուած էր ժողովրդից,
որը կոմիցիաներում լիազորութիւն տուեց եռապետ-
ներին կարգի բերել պետութիւնը։ Բայց կրկին գլ-
խաւոր ոյժը զօրքի մէջն էր, և եթէ Կեսարին յա-
ջողուեց պահել իր բանակը հպատակութեան և կարգի
մէջ, նոյնը չէին կարող անել եռապետները։ Դրա հետ
միասին նրանք հեռու չէին հասարակութեանը սար-
սափահար անելուց, որովհետև Կեսարի մեծահոգու-
թիւնը կորստաբեր եղաւ։ Դաշինքի առաջին հետեվ-
անքը եղավ պրոսկրիպցիաները, որոնք իրանց սարսա-
փելի արիւնհեղութիւններով ու կողոպուտներով
յետ չէին մնում Սիլլայի դատաստանից։ Յետոյ
դարձան Կեսարին սպանողների դէմ։ Յունաստանում
Բրուտոսի և Կասսիոսի առաջնորդութեան տակ հա-
ւաքած հանրապետական զօրքը ջարդուեց եռապետ-
ներից Փիլիպպէի մօտերը, և նրա երկու առաջնորդ-
42 ներն էլ վերջ դրին իրանց կեանքին (42 թ.)։ Այս
յաղթութիւնից յետոյ մնում էր միայն երկիրը բաժա-
նել։ Աննշան Լեպիդոսին շուտով մի կողմ շպրտեցին,
Օկտաւիանոսն առաւ արևմուտքն Իտալիայի հետ միա-
սին, Անտոնիոսն՝ Արևելքը, Յունաստանի հետ միասին։
Առաջինը ոչնչացրեց պոմպէականների վերջին մնա-
ցորդները, յաղթելով եռապետի որդի Սիքստոս Պոմ-
պէոսին, որ ուզում էր հաստատուել Սիկիլիայում և
Սարդինիայում յետոյ նա հանգստացրեց արևելեան
Ալպերի և Դալմատիայի կիսավայրենի ցեղերին։ Անտո-
նիոսն աւելի վատ կերպով օգտուեց իր իշխանու-
թիւնից։ Դա մի շնորհալի, բայց կոպիտ և զգայական
մարդ էր։ Նա այնպէս էր տարուել եգիպտական Կլեո-
պատրա թագուհուն, որ նրա սիրու համար արհամար-
հում էր պետական ամենակարևոր գործերը։ Նա փոր-
ձեց նուաճել պարթևներին, բայց չը կարողացաւ յաղ-

*թել արշաւանքի դժուարութիւններին և յետ դարձաւ։*
*Նրա յարաբերութիւններն Օկտաւիանոսի հետ տարէց*
*տարի աւելի լարւում էին։* Երբ նա սկսեց նուիրել
հռոմէական նահանգներն իր Կլէոպատրայից ունեցած
որդիներին, յայտնի ընդհարում առաջացաւ։ *Անտոնի-*
*ոսի տրամադրութեան տակ կային ահագին զօրք և ա-*
*հագին նիւթական միջոցներ, իսկ Օկտաւիանոսը, բացի*
*քանակից՝ իր կողմն ունէր և Կեսարի անպարտելի ա-*
*նունը։ Նրա փոխարէն պատերազմական գործողու-*
*թիւնները ղեկավարում էր շատ լաւ զօրավար Մ.*
*Վիպսանիոս Ագրիպպան, որին նա արդէն պարտական*
*էր Ս. Պոմպէոսի յաղթութիւնը։ Ծովային վճռական*
*ճակատամարտում՝ Ակցիումի մօտ (31 թւին) Կլէո-* 31
*պատրան իր գալերներով (թեթև, երկկայմ, ցածր նա-*
*ւեր), նոյն իսկ առաջին ընդհարումից յետոյ՝ փախաւ.*
*Անտոնիոսը հետևեց նրան։ Առանց առաջնորդի մնա-*
*ցած նաւատորմն ի հարկէ ջարդւեց։ Ցամաքային*
*զօրքը 7 օր սպասեց Անտոնիոսին, իսկ յետոյ անցաւ*
*Կեսար Օկտաւիանոսի կողմը։ Վերջինիս մնում էր միայն*
*Եգիպտոսը նւաճելու հեշտ խնդիրը, իսկ Անտոնիոսը*
*և Կլէոպատրան անձնասպանութիւնով կեանքերին*
*վերջ դրին։ Այսպիսով հռոմէական աշխարհի միութիւնը*
*վերականգնւեց և դրա հետ էլ միասին Կեսարին միահե-*
*ծան իշխանութիւնը։*

**Հանրապետութեան անկումը։**

*Հանրապետութեան անկումը չառաջացաւ որևէ փա-*
*ռասէր անձի պատահական յաղթութիւնից։ Նա չը կատարւեց*
*մի անգամից. Սիլլայի դիկտատորութիւնը, Պոմպէոսի բա-*
*ցառիկ լիազօրութիւնները նախապատրաստեցին Կեսարի և*
*նրա որդեգրի կայսերական իշխանութիւնը։ Ի հարկէ հան-*
*րապետութեան դէմ գլխաւոր գործիքը զօրքն էր, որն իր*
*զօրավարին պետական հաստատութիւններից աւելի բարձր*
*էր դասում։ Բայց զօրքն այդ չէր անում միայն ու միայն*
*շահասիրական նպատակներից դրդւած։ Գալլիական կամ Մի-*
*հրդատի դէմ եղած պատերազմի նման համաշխարհային*

կռիւներ վարելու համար՝ իշխանութեան կենտրոնացումը մի մարդու ձեռքում իսկապէս աւելի լաւ էր, քան առաջնորդների մշտական փոփոխութիւնները ծերակոյտի և կոմիցիաների անկայուն ազդեցութեան տակ։ Նոյն իսկ «հռոմէական քաղաքացի» հասկացողութիւնը բոլորովին նոր միտք ստացաւ՝ գաղթավայրեր հիմնելու քաղաքականութեան և դաշնակիցներին հռոմէական հասարակութեան մէջ ընդունելու շնորհով։ Քաղաքացիութեան իրաւունքի և կոմիցիաներում մասնակցութիւն ունենալու մէջ եղած կապն անհրաժեշտաբար խզուեց, որովհետև հռոմայեցիների ահագին մեծամասնութիւնը Հռոմից դուրս գնաց և իր ձայնը տալու հնարաւորութիւնը կորցրեց։ Կոմիցիաներն՝ իբրև մայրաքաղաքի անբարոյականացած ամբոխի ժողովներ ծերակոյտն իբրև մայրաքաղաքի սակաւաթիւ արիստոկրատիայի կամ որևէ զօրավարի պատահական կերպով հաւաքած օժանդակիչ անձերի ժողով՝ ոչ մի բարոյական իրաւունք չունէին պետութեան մէջ իշխելու։ Հանճարեղ Կեսարը լիապէս զուշակեց կատարուող փոփոխութիւնը, երբ Հռոմ քաղաքի շահերի հակառակ՝ առաջ քշեց հռոմէական աշխարհի օգուտն ու կարիքները։ Հանրապետութեան անկումը նշանակում էր մայրաքաղաքի կառավարութեան անկում։ Մնում էր տեսնել, թէ զօրքից դուրս եկած կայսերական իշխանութիւնն ինչ չափով կը յաջողեցնէ աշխարհը կառավարել։

---

## ԳԼՈՒԽ Ը.

# ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆ

**Աւգուստոսի իշխանութիւնը։**

Ակցիումի յաղթութիւնն իշխանութիւնը տուեց մի այնպիսի մարդու ձեռք, որը քիչ էր նման մեծ Կեսարին։ Օկտաւիանոսն ամենևին հանճար չէր. չունէր ոչ մտքի արագութիւն, ոչ սրամտութիւն, ոչ փրփրացող եռանդ։ Բայց և այնպէս նա մի խոշոր և խելացի գործիչ էր, որն ամեն ինչ հասկանում էր իր բնական առողջ խելքով, հաշւատեսութիւնով, իր հաստատակամութիւնով և անխոնջ աշխատանքի ուժով։ Պետութիւնը կարգաւորելու գործում նա հե-

տևում էր մի մշտական հիմնական ուղղութեան — նա իր ձեռքում էր կենտրոնացնում միապետի բոլոր էական իրաւունքները, բայց չը ոչնչացրեց հանրապետական ձևերն, այլ պահպանեց մի քանի հանրապետական հիմնարկութիւնների էական նշանակութիւնը, ենթարկելով նրանց իր ընդհանուր հսկողութեանը։ Օկտաւիանոսի միապետութիւնն, ինչպէս և Կեսարի միահեծանութիւնն՝ առաջացաւ այն պատճառով, որ իմպերատորին տուեցին մի քանի բարձրագոյն պաշտօններ և արտակարգ լիազօրութիւններ։

27 թւին նա ծերակոյտին և ժողովրդին վերադարձրեց 27 Թ. Ք.-ից առաջ։
դեռ եռապետ եղած ժամանակն իրան տուած «պետութիւնը կարգաւորելու» իշխանութիւնը։ Ծերակոյտն, իբրև երախտագիտութիւն այդ բանի համար, նրան տուեց Աւգուստոս (Օգոստոս [1]) մականունը, որը պէտք է ցոյց տար նրա մեծութիւնը, կամ ինչպէս այժմ են ասում միապետներին դիմած ժամանակ—«Մեծութիւն» [2]։ Ի հարկէ՝ նոր միապետը պահպանեց հռոմէական զօրքի գլխաւոր առաջնորդի, այսինքն իմպերատորի իրաւունքներն ու տիտղոսը։ Բոլոր ելևմտական վարչութիւնը, որքան այդ վերաբերում էր պետական գլխաւոր ծախքին՝ բանակի պահպանութեանը—նրա ձեռքն անցաւ։ Բացի դրանից՝ նոյն զինուորական իշխանութեան պատճառով նրա տրամադրութեան տակ էին պետական հողերը—վետերաններին հողեր բաշխելու և գաղթականներ ուղարկելու համար։ Քաղաքացիական վարչութեան մէջ միապետութեան մշտական հիմքը եղաւ տրիբունի իշխանութիւնը, որ սովորական տրիբունութիւնից բարձր դասւեց։ Այդ պաշտօնի շնորհով Օգոստոսը կարող էր ծերակոյտին և ժողովրդին ժողովի հրաւիրել, դադարեցնել պաշտօնեաների գործողութիւնները, նեղուածներին օգնել։ Երբ պահանջւում էր կատարել ժողովրդահամար, ծերակոյտի լրացում, ստացւածքների գնահատութիւն՝ Օգոստոսն ընդու-

---

[1]) Augeo—«բազմապատկում եմ» բառի արմատից։

[2]) «Օգոստափառ» արտայայտութիւնը մինչև այժմ գործ է ածւում կայսրի անձի և կայսերական ընտանիքի անդամների համար։

*նում էր ցենզօրի իշխանութիւն։ Հիւպատոսութիւնից նա սակաւ էր օգտւում։ Ինչպէս ամեն մի մեծ պաշտօնեայ, նա ունէր դատելու իրաւունք, բայց գործերի ընտրութեան ժամանակ ստիպւած չէր որոշ շրջանակներով սահմանափակել իրան, այլ կարող էր վերջնականապէս վճռել ամեն տեսակ քաղաքացիական* [1]) *ու քրէական* [2])*-գործեր։ Կրկին ինչպէս ամեն մի բարձր պաշտօնեայ, նա կարող էր պարտադիր կարգադրութիւններ հրատարակել, և ոչ ոք իրաւունք չունէր փոխելու կամ սահմանափակելու այդ կարգադրութիւնները, որոնք դրա համար էլ ունէին օրէնքի նշանակութիւն, միայն այն զանազանութիւնով, որ նրանք գործադրւում էին միայն այն ժամանակամիջոցում, երբ նրանց հրատարակող իմպերատորը դեռ կառավարում էր։*

*Հանրապետական հիմնարկութիւնները։*

*Ի հարկէ այդպիսի իշխանութիւնն ահագին էր և կասկած չէր կարող լինել, որ Օգոստոսը պետութեան գլուխն էր։* Բայց նրա կողքին ծերակոյտը եւ կոմիցիաները պահպանում էին որոշ իրաւունքներ։ Ամենից առաջ՝ գաւառների կառավարութիւնը բաժանուած էր իմպերատորի եւ ծերակոյտի մէջ։ *Առաջինն իր վրայ առաւ միայն այն գաւառները, որոնք գտնւում էին պաշարման վիճակի մէջ, օրինակ Գալլիան, որին սպառնում էին գերմանները, Ասորիքը՝ պարթևների դէմ պաշտպանելու ծանր հոգսով, հիւսիսային Իսպանիան, որի մէջ ապստամբութիւններ էին բարձրացնում իբերական ցեղերը։ Բացի դրանից նա իրան սեփականացրեց զանազան թագաւորութիւններ, որոնք՝ ինչպէս օրինակ Եգիպտոսը, Հռոմը միացրել էր, բայց չէր դարձրել հռոմէական գաւառ, այլ թողել էր իրանց հին կարգերով։ Գաւառների մեծ մասը թողնեց ծերակոյտի վարչութեանը, և իմպերատորը խառնւում էր նրանց գործերում միայն*

---

[1]) *Այսինքն՝ վէճեր իրաւունքի մասին։*

[2]) *Այսինքն՝ դատավարութիւն վիրաւորանքների և իրաւունքը խախտելու համար։*

բացառիկ դէպքերում։ Յետոյ ծերակոյտը ձեռք բերեց քրէական դատարանի նշանակութիւն, որ չունէր հանրապետութեան ժամանակ։ Գործերի ընդհանուր ղեկավարութեան մասին իմպերատորը մշտապէս խորհրդակցում էր նրա կամ նրա անդամներից ընտրուած 15—20 հոգուց բաղկացած մասնաժողովի հետ։ Ինչ վերաբերում է հասարակական ժողովին՝ նրա իրաւունքները աւելի շատ լոկ ձևականութեան վերածուեցին։ Կոմիցիաներն առաջուայ նման իրաւունք ունէին պաշտօնեաներ ընտրելու և օրէնքներ հաստատելու, բայց ընտրութիւնները կատարւում էին իմպերատորի յանձնարարութիւնով, և նոյն իսկ օրէնսդրական խնդիրներում պէտք է հետևէին նրա ցուցմունքներին։

Այսպիսով Օգոստոսն իրան վերապահեց առիւծի բաժինը և պետութեան մէջ ոչ ոք չէր կարող մրցել նրա հետ, բայց և այնպէս նրա իշխանութիւնը ենթարկւում էր էական և ինքնօրինակ սահմանափակութիւնների. այնուամենայնիւ նա պաշտօնեայ էր, այսինքն Հռոմի ժողովրդից նշանակուած։ Արտաքուստ նա իր իշխանութիւնն ստացաւ ծերակոյտից և կոմիցիաներից, իսկ էապէս՝—զօրքից, որն իրան դիտում էր իբրև զինուած ժողովուրդ։ Դրա համար էլ այդ իշխանութիւնը բոլոր ժամանակը կրում էր մի անհաստատ, բացառիկ բնաւորութիւն։

Այդ իշխանութիւնը վերահաստատում էին ժողովրդական նոր վճիռներով ամեն տասը տարին մի անգամ, և ժառանգականութեան մասին խօսք անգամ չէր կարող լինել։ Որպէսզի իշխանութիւնն իր տնից մէկի ձեռքն անցնելն ապահովեցնէր, Օգոստոսը պէտք է հոգ տանէր, որ այդ մէկին այդպիսի արտակարգ լիազօրութիւններ տրուէին, քանի դեռ ինքը կենդանի էր. Շատ նշանաւոր էր այն, որ նոր միապետութիւնը որոշ անուն չունէր, նոյն իսկ այն պատճառով, որ նա կազմուած էր մի քանի բարձր պաշտօններից։ «Իմպերատոր» բառը նշանակում էր նրա մի նշանաւոր մասը։ Ամենասովորական ա-

նունը դարձաւ princeps (պրինցեպս), որն իսկապէս ցոյց էր տալիս, թէ միապետը հռոմէական քաղաքացիներից առաջինն է [1])։ Վերջապէս հանրապետութեան և միապետութեան այս տարօրինակ միախառնութեան պատճառով՝ սենատն իր տրամադրութեան տակ չունէր իր համար անհրաժեշտ գործադիր ծառայողների թիւը։ Պաշտօնների մեծ մասն առաջւայ նման՝ գրաւել էին ծերակոյտի անդամները, իսկ այդ դասակարգը, չընդունելով իր բոլոր պարտութիւններին և ստորացումներին, պահպանել էր ինքնուրոյնութեան ահագին պաշար։ Այդ ծերակուտականների պաշտօններին հակառակ՝ Օգոստոսն սկսում է առաջ քշել իրանից լիապէս կախում ունեցող աստիճանաւորների (չինովնիկ) դասակարգը, որոնց շարքերը լցւում էին ասպետներից, պլեբէյներից և ազատ արձակւածներից, բայց այս բանում նա միայն սկիզբը դրեց։ Ճիշտ այդպէս էլ նրա օրով նշմարւում են մի ուրիշ նշանաւոր երևոյթի առաջին նշանները։

**Իմպերատորին սկսում են աստւածային պատիւներ մատուցանել,** ինչպէս մի գերբնական ուժի, որից կախուած է հասարակական կարգն ու բարօրութիւնը։ Դրանում միայն շողոքորթութիւն և կեղծաւորութիւն չէր արտայայտւում. հռոմէական բազմաստուածութեան տեսակէտից դա բնական էր, որովհետև բնութեան և մարդկային կեանքի բոլոր գլխաւոր երևոյթներին աստուածային ոյժ էր վերագրւում։ Առաջ աստուածների շարքը դասեցին մեծ Կեսարին, որին սկսեցին կոչել Յուլիոս Աստուած (Divus Julius)։ Իսկ յետոյ Հռոմում և մանաւանդ դրսի համայնքներում և գաւառներում, սկսեցին երկրպագել Օգոստոսի «հանճարին», այսինքն Օգոստոսի պաշտպան աստուածութեանը։ Այդտեղից հեշտ էր անցնել նոյն իսկ Օգոստոսի աստուածացնելուն և դա կատարւեց դեռ ևս նրա կենդանութեան ժամանակ։

---

1) Princeps civium Romanorum=Հռոմի քաղաքացիներից առաջինը, ինչպէս և princeps senatus=ծերակոյտի անդամներից առաջինը (առաջին սենատոր)։

Ներքին վարչութիւնը։

Օգոստոսն իր ահագին իշխանութիւնը գործ էր դնում հպատակների օգտի համար։ Նա անդադրում աշխատում էր պետութեան օգտի համար և հետևեալ կայսրների քաղաքականութեան հիմքերը դրեց։ Նրա գլխաւոր օգնականներն էին՝ — Ագրիպպասը — զինուորական գործերի և վարչութեան համար, Կիլնիոս Մեկենասը՝ կուսակցութիւնները հաշտեցնելու և բարձըր հասարակութեան մի նոր շրջան կազմելու համար։ Վերջինիս նշանակութիւնը շատ մեծ էր, թէ և նա ոչ մի պաշտօնական դիրք չունէր և մինչև անգամ ծերակոյտ չը մտաւ, այլ մնաց ասպետ։ Գլխաւորապէս նրա շնորհով Աւգուստոսի տունը դարձաւ գրական կենտրոն, ուրին միացան տաղանդաւոր գրողները, բանաստեղծները և պատմաբանները։ Այս զարգացման փայլը շատ նպաստեց այն բանին, որ հասարակապետական ազնուականութեան մնացորդները հաշտուեցին իրանց հպատակ դիրքի հետ և խառնուեցին նոր պետի պալատական կեանքի մէջ։ Շատ բան արուեց նոյնպէս կրօնն ամրապնդելու համար, որ անկման էր հասել խառնակ ժամանակներում։ Բայց Կեսարի օրինակին հետեւելով՝ առանձին ուշադրութիւն դարձուեց բարօրութիւնը եւ արդիւնագործական ուժերը բարձրացնելու վրայ։ Ներկայ դէպքում Միջերկրականի շուրջը կարգը և խաղաղութիւնը վերահաստատելն անչափ բարեբարութիւն հանդիսացաւ. Հռոմէական խաղաղութիւնն (pax Romana) ապահովեցնում էր նահանգների մէջ արդիւնաւոր յարաբերութիւնները. զանազան ընդունակութիւնների, սովորութիւնների, արդիւնքների ու հարստութիւնների տէր գաւառների մէջ պահպանւում էր կենդանի յարաբերութիւն։ Ծանր, ազգամիջեան պատերազմներից յետոյ հասաւ արդիւնագործող աշխատանքի և կենդանի փոխանակութեան շրջանը։ Բացի հաս-

տառուն կարգը վերականգնելուց, Օգոստոսը շատ նպաստեց տնտեսական ծաղկմանը՝ մի ամբողջ ցանց գեղեցիկ ճանապարհներ շինելով և արդիւնաբերութեան ու առևտրի մի քանի կարևորագոյն ճիւղերի վրայ վերահսկողութիւն հաստատելով։ Պետութիւնը շատ էր հոգ տանում մանաւորապէս հացի առևտրի, ջրաբաշխութեան և հասարակական շէնքերի վրայ։ Իտալական ազգաբնակութեան կեանքի մէջ լողարանների (վաննա) մեծ նշանակութիւնը ծնեցրեց, ի միջի այլոց. մի ամբողջ շարք «տերմ»-երի (բաղանիսների) շինութիւնը, որոնց մէջ՝ բացի փառաւոր բաղանիսներից, կային և պարտէզներ ու ծածկուած սիւնազարդ ճեմելիներ՝ զբօսնելու համար։

Արտաքին գործունէութիւնը։

Գաւառների մասին հոգատարութիւնն արտայայտւում էր նրանով, որ խիստ հսկողութիւն կար նահանգապետների վրայ և բարբարոսների մէջ տարածում էին հռոմէական կարգերն ու հաստատութիւնները։ Այս տեսակէտով մանաւորապէս շատ բան արեց Գալլիայի համար։ Այդ երկիրը կիսավայրենի վիճակից շուտով դարձաւ բոլորովին հռոմէական երկիր։ Ագրիպպասը բաժանեց Գալլիան 60 նահանգների, որոնց կենտրոնատեղերը մինչև անգամ այժմեան Ֆրանսիայում պահել են իրանց նշանակութիւնը։ Ծանր պարտականութիւն էր պաշտպանել կուլտուրական աշխարհը բարբարոսների հոսանքի դէմ։ Այդ նպատակին էր ծառայում 250,000 մարդուց կազմուած բանակը, որ տեղաւորուած էր գլխաւորապէս Հռենոսի, Դանուբի և Եփրատի ափերի երկարութիւնով։ Պաշտպանութեան համար այդ թիւը բաւական էր, բայց յարձակման և գրաւման համար նա շատ քիչ էր։ Դրա համար Օգոստոսը բաւականացաւ միայն Դանուբեան երկրները գրաւելով և Իսպանիան վերջնականապէս խաղաղեցնելով։ Հռոմի

գլխաւոր թշնամիների—Պարթևների և Գերմանների դէմ նա պաշտպանողական դիրք բռնելով միայն բաւականացաւ։ Գերմանների մէջ սարսափը պահելու համար՝ Օգոստոսի խորթ որդիները·Դրուսսոսը և Տիբերիոսը մի քանի անգամ յաջող արշաւանքներ կատարեցին դէպի Գերմանիայի խորքը։ Բայց Ք. Ծ. 9 թ. Ք. յետ.
9 տարի յետոյ Կւինտիլիոս Վարրոնի հռոմէական բանակը բոլորովին ջնջւեց Տևտօբուրգեան անտառում գերմանների ձեռքով, որոնց առաջնորդում էր խիրուսկացի Արմինիոսը։ Չընայելով, որ Տիբերիոսը և արդէն վախճանւած Դրուսսոսի որդի Գերմանիկոսն առան այդ պարտութեան դաժան վրէժը, սակայն Հռոմէական սահմանը վերջնականապէս յետ բերւեց կրկին Հռենոսի եւ Դանուբի ափերը *)

Վարչութեան մէջ կայսրի ունեցած մեծ նշանա- Օգոստոսի ընտանիքը։
կութեան հետ միասին չափազանց կարևոր է հանդիսանում այն հարցը, թէ ում պէտք է անցնի նրա իշխանութիւնը։ Օգոստոսի ընտանեկան կեանքը դըժբաղդ էր։ Նա որդի չունէր, իսկ նրա թոռների—Յուլիա և Մ. Վիպսանիա Ագրիպպա աղջիկների որդիների մէջ մի կողմից՝ միւս կողմից էլ նրա երրորդ կնոջ—Լիվիայի և սրա որդի Տիբերիոսի**) մէջ սկսւեցին խռովութիւններ, որոնք վերջացան թոռների մահով, ինչպէս Հռոմում ասում էին՝ թոյնից։ Օգոստոսը չէր սիրում Տիբերիոսին, բայց ստիպւած էր խոստովան-

---

*) Բացի Գերմանիայի հարաւ-արևմտեան անկիւնից (Ռեգենսբուրգից մինչև Մայնց), որը պաշտպանւած էր ամրութիւններով և անտառներով։ Դրանք agri decumates կոչւած հողերն էին։

**) Լիվիան սկզբում ամուսնացած էր Տ. Կլաւդիոս Ներոնի հետ, և նրանից ունեցել էր Տիբերիոս և Դրուսսոս որդիները։ Վերջինս մեռաւ դեռ ևս Օգոստոսի կենդանութեան ժամանակ։

ւել նրա վարչական և զինուորական ընդունակութիւնները, և ծերութեան ժամանակ նրան իր յաջորդ նշանակեց, տալով նրան տրիբունի (ժողովրդապետի) և հիւպատոսի (կոնսուլի) պաշտօն։

Տիբէրիոս, 14 թ. Ք. յետոյ։

Քրիստոսի ծննդից 14-տարի յետոյ Օգոստոսը մեռաւ, և Տիբերիոսը՝ ծերակոյտի հրաւէրով և մի փոքր կեղծ տատանումից յետոյ՝ նրա իրաւունքներին տէր դարձաւ։ Այդ ժամանակ Հռենոսի և Դանուբի ափերի լեգիոններն զգալ տւին, որ իրանք իրանց վրայ նայում են իբր պետութեան գլխաւոր հիմքի վրայ։ Զինուորները պահանջեցին կրճատել իրանց ծառայութեան ժամանակը, աւելացնել թոշակը. իսկ հռենոսեան բանակը նոյն իսկ պատրաստւում էր կայսր հրատարակել իր զօրավար Գերմանիկոսին։Այս վտանգաւոր շարժման ճնշումի համար Տիբերիոսը պարտական էր գլխաւորապէս իրան՝ Գերմանիկոսին։ Պետական վարչութեան մէջ Տիբերիոսն արժանաւոր յաջորդ հանդիսացաւ Օգոստոսին—զգուշաւոր, խնայող, գաւառների կարիքներին ուշադիր և նրանց առանձնայատկութիւնների հետ լաւ ծանօթ։ Էապէս չը փոփոխելով վարչական իշխանութիւնը, նա հեռացրեց նոր միապետութեան և հանրապետութեան մի քանի հակասութիւնները. պաշտօնեաների ընտրութիւնը կոմիցիաներից խլեց եւ տուեց ծերակոյտին, օրէնսդրութիւնը դարձաւ միայն ծերակոյտի որոշումներ եւ կայսրի հրամաններ. Կոմիցիաները բոլորովին կորցրին իրանց նշանակութիւնը, իսկ ծերակոյտն, ընդհակառակը, աւելի մեծ կարևորութիւն ստացաւ, քան Օգոստոսի օրով։ Դժբաղդաբար Տիբերիոսն անվիճելի արժանաւորութիւնների հետ միասին ունէր և կասկածոտութիւն ու դաժանութիւն։ Հազիւ նա կայսր դարձաւ, իսկոյն սկսեցին ծերակոյտի մէջ բազմաթիւ դատեր նորին Մեծութիւնը վիրաւորողների դէմ։ Երկու, ե-

րեք դէպքեր եղան, երբ նշանաւոր ընտանիքների անդամներ, մանաւանդ կեսարների տան ազգակիցները, տարւում էին փառասէր նպատակներով և դաւադրութիւններն էին կազմում Տիբերիոսի դէմ. բայց դատերի մեծ մասը տեղի էր ունենում մի չը մտածւած վարմունքի կամ մի անզգոյշ խօսքի համար։ Մի ասպետի մեղադրեցին նրա համար, որ ծախել էր իր կալւածի հետ միասին և Օգոստոսի արձանը. պատմաբան Կրեմուցիոս Կորդոսին դատապարտեցին նրա համար, որ նա յարգանքով էր խօսել Բրուտոսի և Կասսիոսի մասին։ Քաղաքական մեղադրանքներով զբաղւում էին լրտեսները, որոնք շահի համար պատրաստ էին ոչնչացնել ամեն մի անձի, որովհետև իբր լրտեսութեան վարձատրութիւն՝ նրանց բաժին էր ընկնում զոհերից արքունիք գրաւած ստացւածքի մի մասը։ Այս արիւնոտ դատապարտութիւնների մէջ Տիբերիոսի գլխաւոր օգնականն էր պրետորեան գնդի գնդապետ Սէյանոսը։ Բայց սա էլ սկսեց մտածել ազգակից դառնալ Կայսրի հետ և նրա ժառանգը դառնալու իրաւունք ձեռք բերել։ Այն ժամանակ Տիբերիոսը հրաման ուղարկեց ծերակոյտին՝ նրան բանտարկել, և մի քիչ առաջ Սէյանոսի առաջ խոնարհւող ծերակոյտի անդամները մեծ բաւականութիւնով հրամայեցին մահւան պատժի ենթարկել նրան։ Տիբերիոսը վերջին տարիները Հռոմում չէր ապրում—նա տեղափոխւեց Նէապօլի դէմ գտնւած Կապրիյա գեղատեսիլ կղզին և այնտեղից ծերակոյտի հետ յարաբերութիւն էր պահպանում գործերի մասին։ Մարդիկ նրան ատելի դարձան, և երբեմն ամբողջ ամիսներով տնից դուրս չէր գալիս։ Տիբերիոսի ընտանեկան յարաբերութիւններն Օգոստոսի ընտանեկան պայմաններից աւելի լաւ չէին. իր Դրուսոս որդին մեռաւ, եղբօրորդի Գերմանիկոսը, որի զինւորական յաջողութիւնների և ժողովրդակա-

նութեան վրայ ինքն էլ էր նախանձում՝ նոյնպէս յանկարծակի վախճանւեց Եգիպտոսում. սրա այրին— Ագրիպպինան, Օգոստոսի թոռը, [1]) կասկածում էր որ Տիբերիոսն էր սպանել տւել իր ամուսնուն և դրա համար պարզ ատելութիւն էր ցոյց տալիս նրան։ Տիբերիոսն աքսորեց նրան մի անապատ կղզի, ուր նա ինքն իրեն սովամահ արեց. նրա երէց որդիներին սպանեցին։ Սակայն Գերմանիկոսի և Ագրիպպինայի երրորդ որդուն՝ Կայիոս Կալիգուլային Տիբերիոսն իրան մօտեցրեց և իր յաջորդ նշանակեց։

Կայիոս Կալիգուլա 37

37 թւին Տիբերիոսը մեռաւ. ծերակոյտն անմիջապէս կայսր հրատարակեց Կալիգուլային։ Նոր պետը շուտով ցոյց տւեց, որ ինքն իր դրութիւնը հասկանում է իր նախորդից բոլորովին տարբեր կերպով։ Նա հրաժարւում էր աստւածային պատիւներից, իսկ Կալիգուլան ամենից աւելի նրանով էր պարծենում, որ ուղիղ գծով սերւում է Կեսարից եւ Օգոստոսից, իրան համարում էր աստւած և իր աստւած լինելը ցոյց էր տալիս նրանով, որ դէպի մարդիկն ու գործերը կամայականութիւններ և գժութիւններ էր անում։ Մի առանձին բաւականութիւնով նա իրան անւանում էր «լատինական Իւպիտեր»։ Հպատակների կեանքը և պատիւը նրա համար ոչ մի նշանակութիւն չունէին. մահւան պատիժները և սպանութիւններն աւելի շատացան, քան Տիբերիոսի օրով և կատարւում էին մի առանձին տեսակ յանդուգն ծաղրածութիւնով. օրինակ՝ մի անգամ Կալիգուլան հրամայեց գլխատել մի երիտասարդի, իսկ նրա հօրն իր մօտ ճաշի հրաւիրեց։ Բայց այդ խելացնոր բռնակալն իշխեց միայն

---

[1] Նրա ծնողներն էին Մ. Վիպսանիոս Ագրիպպասը և Օգոստոսի դուստր Յուլիան։

4 տարի․ Նրա դէմ դաւադրութիւն կազմւեց և նրան սպանեցին։

*Կլաւդիոս*

Այս անգամ նոր կայսր հրատարակեց ոչ թէ ծերակոյտն, այլ պրետորեան գունդը։ Զինւորներն ընտրեցին Կլաւդիոսին՝ Գերմանիկոսի եղբօրը, մի մանրագննին գիտնականի, որը մինչև այդ ժամանակ խնամքով հեռու էր պահում իրան պետական վտանգաւոր գործերից։ Կայսր դառնալով, նա սկսեց կառավարութիւնով զբաղւել նոյնքան բարեխղճօրէն, որքան առաջ իր գրքերով։ Արտաքին քաղաքականութեան մէջ նա յիշատակ թողեց՝ հիմնելով մի հռոմէական գաւառ Մեծ-Բրիտանիայում. Ներքին վարչութեան մէջ նա իր օրով կատարելագործեց կայսերական դիւանը, որի բազմաթիւ գործերը կատարւում էին ազատ արձակւած ծառայողների ձեռքով։ Կրկին մեծ չարիք եղան կայսրի ընտանիքի մէջ եղած դաւադրութիւնները և ոճրագործութիւնները։ Նրա առաջին կին Մեսսալինան ժամանակն անց էր կացնում խայտառակ խրնջոյքներում, որ չէր տեսնում միայն Կլաւդիոսը։ Նրա յանդգնութիւնը մինչև այնտեղ հասաւ, որ մինչև անգամ պսակւեց մի հռոմայեցի ազնւականի հետ։ Վերջապէս ազատւած սորուկներն ամեն ինչ հաղորդեցին Կլաւդիոսին և նա հրամայեց մահւան պատժի ենթարկել կնոջը։ Երկրորդ անգամ նա ամուսնացաւ իր եղբօր աղջկայ, Ագրիպպինա կրտսերի՝ Գերմանիկոսի և Ագրիպպինա երէցի դստեր հետ։ Այստեղ կրկնւեց Լիվայի պատմութիւնը։ Ագրիպպինան հեռացրեց Կլաւդիոսից նրա առաջին ամուսնութիւնից ծնած որդուն և դրդեց նրան որդեգրել իր առաջին ամուսնուց ունեցած որդուն [1]։

*Ներոն*

Կլաւդիոսի մահից յետոյ պրետորեանները կայսր

---

[1]) Ագրիպպինայի և Դոմիկիոս Ագենօբարբի որդին։

հրատարակեցին Նրա այս որդեգրին՝ Ներոն անունով։ Կալիգուլայի տմարդի կամայականութիւնը Նրա մէջ միացած էր թեթևամիտ սնապարծութեան հետ։ Նա թունաւորեց Բրիտանիկոսին, սպանեց մօրը, կնոջը, իր դաստիարակ Սենեկային, պրետօրեան գնդի գնդապետին, որին պարտական էր իր բարձրութիւնովը, և հազարաւոր ուրիշ՝ աւելի նուազ յայտնի անձների, որոնք շարժում էին Նրա բարկութիւնը կամ շահասիրութիւնը։ Նրա ոճիրները կատարւում էին ոչ միայն իր մօտիկների եւ հռոմայեցիների գլխին, այլ եւ գաւառներում։ Հռոմի մեծ մասը ոչնչացնող մի հրդեհից յետոյ (իր գցած), նա վերաշինեց քաղաքը շատ աւելի գեղեցիկ ձևով, բայց դրա համար գաւառները ենթարկեց ամենատեսակ կեղեքումների։ այս հրէշի ամենաբարձր փառասիրութիւնն էր յաղթանակներ տանել կառարշաւների մրցութեան ժամանակ և հռչակւել իբրև մեծ երգիչ։ Հաւատացնում էին որ Հռոմի հրդեհի ժամանակ՝ նա զւարճանում էր Նրա տեսարանով իր պալատի տանիքից և Տրօյայի աւերումը երգում։ Հռոմէական կայսրը բացարձակ առաւելութիւն էր տալիս յոյներին հռոմայեցիներից, որովհետև յոյներն աւելի լաւ էին կարողանում գնահատել Նրա արտիստական տաղանդը։ Սկզբում մայրաքաղաքի դաւադրութիւնները յաջողութիւն չունեցան, բայց իսպանական և գալլիական լեգիոնների ապստամբութիւնը պրետօրիաններին բաժանեց կայսրից, և այն ժամանակ ծերակոյտը Ներոնին հրատարակեց հայրենիքի թշնամի։ Ներոնն իսկոյն փախաւ և երբ Նրա ետևից հասան՝ ինքն իրան սպանեց, Նրա հետ միասին վերջացաւ Յուլիան և Կլաւ-
68 դիան կայսրների հարստութիւնը (դինաստիա) (68 թւին։

Ֆլաւիանները։ Չը նայելով կայսրների ոճրագործութիւններին,

հռոմէական աշխարհի բոլոր ազգաբնակութիւնը համակւած էր այն գիտակցութիւնով, որ կայսերական իշխանութիւնն անհրաժեշտ է կարգ պահպանելու համար։ Հարցը միայն նրանում էր, թէ ով կը խլէր կառավարութեան սանձը։ Ծերակոյտը կայսր հրատարակեց իսպանական փոխ-հիւպատոս Գալբային, պրետորեանները առաջ քշեցին Օթոնին, Գերմանական լեգիոնները՝ Վիտելլոսին, ասորական լեգիոնները՝ Մ. Ֆլաւիանոս Վեսպասիանոսին. մի տարուչափ շարունակւող խառնակութիւնից յետոյ վերջինս յաղթեց։ Նրա միապետութիւնը (պրինցիպատ) հաստատւեց ծերակոյտի և կոմիցիաների կողմից որոշ օրէնքի ձևով, որով Վեսպասիանոսն ստացաւ Կեսարի, Օգոստոսի և Կլաւդիոսի իշխանութիւնը։ Կայիոս Կալիգուլայի և Ներոնի մասին չէր յիշւած։ Նոր պետն ընդունեց Կեսար և Օգոստոս անունները, ինչպէս իր արժանիքն ապահովեցնելու միջոց։ Նա աննշան ծագումից էր և առաջ էր գնացել լեգիոնների մէջ ծառայելով։ Ինչպէս կառավարիչ՝ նա մեծ օգուտ տւեց, որովհետև կարգը վերականգնեց եւ ելեւմուտքը կանոնաւորեց։ Տրտնջում էին նրա փողային պահանջների դէմ, բայց դրանք անհրաժեշտ էին։ Նրա օրով վերջացաւ հրէական յամառ պատերազմը։ Պադեստինը Պոմպէոսի ժամանակից Հռոմից կախման մէջ էր, բայց պահպանում էր իր սեփական վարչութիւնը։ Զինւորական իշխանութիւնը պատկանում էր Հերովդէսների հարստութեանը, բայց Երուսաղէմն ու նրա տաճարն, իբրև ժողովրդական սրբատեղիներ՝ գտնւում էին քահանայական դասի վարչութեան տակ։ Կրօնը հանդիսանում էր իբր ամենահզօր ուժը ժողովրդի կեանքում և թէև գործնական հաշիւներից դրդւած՝ հրէաները ստիպւեցին հաշտւել հռոմէական կեսարների իշխանութեան հետ և հպատակւել հիւ-

պատտոններին և պրօկուրատորներին[1]), բայց նրանք արհամարհում էին կռապաշտական բազմաստուածութիւնը, և ժամանակ առ ժամանակ նրանց ատելութիւնը դէպի օտար տիրապետութիւնն արտայայտւում էր ապստամբութիւններով։ Ներոնի և ասորական փոխհիւպատոսների կեղեքումներն առաջացրին այդ ապստամբութիւններից ամենազօրեղը, որն սկզբում հռչակւեց հռոմայեցիների պարտութիւնով։ Բայց և հարկէ Յուդայի փոքրիկ երկիրը չը կարողացաւ յաջող կերպով դիմադրել Հռոմի ուժին։ Վեսպասիանոսը նւաճեց երկիրը և ժողովրդին քշեց Երուսաղէմ, ուր սա ամրացաւ։ Երբ նա կայսր դարձաւ, պատերազմը շարունակեց նրա որդի Տիտոսը, որ Երուսաղէմն առաւ կատաղի դիմադրութիւնից յետոյ։ Մինչև անգամ հռոմայեցիների քաղաք մտնելուց յետոյ էլ հրէայ զինւորները դեռ շարունակում էին պաշտպանել տաճարում և Սիոնի ամրոցում։ Նրանք չընդունեցին հռոմայեցիներից ներում. վերջը մնացողներն իրանց սպանում էին և ընկնում հռոմէական նիզակների վրայ։ Գրգռւած յաղթողները կործանեցին տաճարը և
70 քաղաքը (70 թւին)։

Մի ուրիշ կարևոր յաջողութիւն էլ նա գտաւ ապստամբւած հռենոսեան գալլիայի և գերման ցեղերի դէմ։ Այդ շարժումն առաջացել էր կայսերական իշխանութեան համար ծագած կռիւների անկարգութիւններից, երբ Վիտելլիոսին պաշտպանող հռենոսեան լեգիոնները թողին սահմանը և գնացին դէպի Իտալիա։ Շարժման գլուխն էր Բատաւացի Ցիվիլիսը, որ երկար ժամանակ հրամանատար էր հռոմէա-

---

[1]) Պրօկուրատորներ կոչւում էին կայսրի կառավարիչները. նրանց էր յանձնւած կայսրի եկամուտների հաւաքումը, և դրա հետ միասին կարող էին նրանց տրւել զինւորական և դատական լիազօրութիւններ։ Պոնտացի Պիղատոսը Տիբերիոս կայսրի պրօկուրատորն էր Յուդայի երկրում և Գալիլիայում։

կան զօրքի մէջ եղած գերմանական զօրաբաժնին։ Կելտերին իրանց հետ միացնելու համար՝ ապստամբները հրատարակեցին «Գալլիական կայսրութիւն»։ Վեսպասիանոսի Ցերեալիս զօրավարը բաժանեց իրարից կելտերին և գերմաններին և դրանով ապահովացրեց իր յաղթանակը։

Ֆլավիանների շրջանի երրորդ պատերազմը մղւեց Բրիտանիայում և վերջացաւ միայն Վեսպասիանոսի կրտսեր որդու—Դոմիկիանոսի օրով, որն իշխանութիւն ստացաւ Տիտոսի[1]) կարճ տիրապետութիւնից յետոյ։ Կլաւդիոսի գրաւումը հաստատուն չէր և սահմանափակւում էր կղզու միայն հարաւային մասով։ Ներոնի ժամանակ բրիտները ջարդեցին հռոմէական գաղթականներին, և այդ օրւանից կռիւը չէր դադարում։ Ֆլավիանների զօրավար Ագրիկօլան վերջապէս վճռական յաջողութիւններ ունեցաւ, իսկ՝ որ գլխաւորն է, սկիզբ դրեց կղզու ռոմանացումին[2])։ Սակայն Դոմիկիանոսը թոյլ չը տուեց նրան գլուխ հանելու իր օգտակար գործը։ Նախանձելով Ագրիկօլայի արած ծառայութիւններին՝ յետ կանչեց նրան Բրիտանիայից։

Դոմիկիանոսի օրով վերանորոգւեցին այն դաժանութիւններն ու բռնութիւնները, որոնք կործանեցին Յուլիանների և Կլաւդիանների հարստութիւնները։ Նա նման չէր պետութեան հաւատարիմ ծառայ իր հօրը, և ոչ էլ եղբօրը, որն ասում էր, թէ կորած է համարում այն օրը, երբ մի որևէ բարի գործ չէ անում։ Դոմիկիանոսից փախչում էին, ինչպէս մի վայրենի գազանից։ 96 թւին նա ընկաւ սպանչի ձեռքով։ 96

Ներւա և Տրայանոս.

Դոմիկիանոսի փոխարէն ընտրւեց Ներւան, մի ծեր ծերակուտական, որն իր գահ բարձրանալու ժամանակ երդւեց մահւան չը դատապարտել ծերակոյտի անդամներին կամայական կերպով, առանց դատարանի։ Բայց նա շուտով զգաց, որ չէ կարող կատարել կայսրի

1) Վերջինիս օրով տեղի ունեցաւ Վեզուվի ժայթքումը, որից ոչնչացան Պոմպէոս և Հերկուլանում քաղաքները։

2) Ռոմանացում նշանակում է նւաճւած երկրում հռոմէական կուլտուրայի տարածումը։

դժուարին պարտականութիւնները և որդեգրեց այն ժամանակի ամենանշանաւոր զօրավար Ուլպիանոս Տրայիանոսին։ Վերջինիս բարձրանալը նշանաւոր էր նրանով, որ նա Հռոմի, նոյն իսկ Իտալիայի բնակիչ չէր, այլ ծնուել էր Իսպանիայում, հռոմէական գաղթականներից մէկի ընտանիքում, որ գաղթեցրել էին այնտեղ Սկիպիոն Երէցի օրով։ Տրայիանոսը լիապէս արդարացրեց Ներվայի ընտրութիւնը։ Կայսրութեան զինուորական ոյժը նա հասցրեց իր ամենամեծ չափին և ոչ պակաս յաջողութիւնով կառավարեց պետութեան ներքին գործերը։ Նրա պատերազմական գլխաւոր քաջագործութիւնը եղաւ դակերի թագաւորութեան կործանումը, որը բռնում էր այժմեան Ռումանիան, Բեսարաբիան և Տրանսիլվանիան։ Նրա յաղթանակի առիթով Հռոմում կանգնեցրած սիւնի վրայ ներկայացուած էին այդ պատերազմի զանազան դէպքերը։ Կայսրը չը սահմանափակուեց յաղթութիւններով. Նա բնակեցրեց Դանուբի ձախ ափը հռոմէական աշխարհի բոլոր մասերից բերուած գաղթականներով, և նրա հետքը մնացել է Եւրոպայում մինչեւ օրս—դա ռումանական ժողովուրդն է, որ ստեղծուեց այդ ժամանակ և պահպանեց իր ռոմանական բնաւորութիւնը, լեզուն և անունը չը նայելով պատմութեան բոլոր յեղաշրջումներին։ Կայսրութեան ազգաբնակութեան համար ունեցած Տրայիանոսի անխոնջ ջանքերից առանձնապէս նշանաւոր է բարեգործութեան կազմակերպութիւնը. պետութիւնը վարկ բաց արեց կարիք ունեցող հողատէրերի համար, իսկ փոխ տուած դրամագլուխների տոկոսներով դաստիարակում էր հազարաւոր աղքատ երեխաներ։ Իր իշխանութեան վերջում Տրայանոսը մի արշաւանք ձեռնարկեց՝ Ասիայում հռոմէական ուժը վերականգնելու համար։ Նա նուաճեց Հայաստանը,

գնաց պարթևների դէմ և մի քանի անգամ յաղթեց
նրանց. բայց և այնպէս նրան չը յաջողուեց վերջնա-
կանապէս նուաճել նրանց։ Նա ստիպուած եղաւ դէպի
փոքր Ասիա նահանջել և այդ նահանջի ժամանակ
մեռաւ (117 թ.)։ 117

Ասորական լեգիոնները նրան յաջորդ նշանակե- Ադրիանոս
ցին նոյնպէս իսպանական հռոմայեցի Էլիոս (Եղիա)
Ադրիանոսին։ Նա անհնար համարեց շարունակել
Տրայիանոսի պատերազմական ձեռնարկութիւնները,
հաշտուեց պարթևների հետ և աշխատում էր միայն
նրա համար, որ պահպանէ նախկին սահմանները։ Դրա
փոխարէն նա աւելի մեծ եռանդով էր պարապում
ներքին վարչութիւնով։ Տրայիանոսի նման նա շատ
լաւ յարաբերութիւն էր պահպանում ծերակոյտի հետ
և թոյլ չէր տալիս, որ պալատական դաւերն ազդեցու-
թիւն ունենան գործերի վրայ։ Առանձնապէս շատ բան
արեց պաշտօնեայ (չինովնիկ) դասակարգը զարգացնե-
լու համար, որ ուղղակի կախուած էր կայսրից եւ
որ կամաց-կամաց դուրս էր քշում հին պաշտօնեա-
ներին (մագիստրատ). հաստատուեցին գործավարու-
թեան կանոններ, ծառայութեան մէջ երէցութիւն,
հիմնուեցին բազմաթիւ նոր պաշտօններ։ Ադրիանոսը
համարեա բոլոր ժամանակն անց էր կացնում ճա-
նապարհորդութիւնների մէջ. գնաց և Եգիպտոս, և
Դանուբի ափերը, և՛ Բրիտանիա, և՛ Միջագետք. սա
նրան հնար էր տալիս ամեն տեղ ստուգելու իր վար-
չութեան գործունէութիւնը։ Բայց բացի դրանից՝ կայ-
սրին առաջնորդում էր և անյագ հետաքրքրութիւնը։
Նա համակուած էր իր հպատակների կուլտուրական
մեծ միութեան գաղափարով, այն երկիրների, որոնք՝
չը նայելով կլիմայի և բնութեան բոլոր տարբերու-
թիւններին, չը նայելով սովորութիւնների և հաւա-
տալիքների խոր հակասութիւններին՝ պատմական

հոսանքների դարևոր կռիւների ժամանակ բոլորը միացան Հռոմի կայսրութեան հետ, ինչպէս որ գետերը թափւում, միանում են ծովի հետ։

Եթէ Տրայիանոսի անձով նորից վերականգնեց հին հռոմայեցի զօրավարի և օրէնսդիրի խիստ կերպարանքը, Ադրիանոսը համոզուած կօսմօպօլիտ (համաշխարհաքաղաքացի) հանդիսացաւ. ի հարկէ նա առաջ էր քշում հռոմէական իրաւունքի և վարչութեան սկզբունքները, բայց միևնոյն ժամանակ ոգևորւում էր յոյների խորիմաստ տեսութիւններովն ու խօսքի ճարպիկութիւնովը, խոնարհւում էր արևելքի կրօնական աւանդութիւնների և նախապաշարումների առաջ։ Անդրիանոսի միտքը նմանում էր այն պարտէզին, որ կայսրը շինել էր տւել իր համար Հռոմի շրջակայքում. հրաշագեղ ճեմելիքների մէջ կուտակուած էին ամբողջ աշխարհի գեղարւեստի գանձերը, որոնք դուրս էին հանւած իրանց բնական շրջապատից և կարծես զարմանում էին, որ իրար հանդիպել են։

Անտոնինոս Պիոս, Մարկոս Աւրելիոս

Ադրիանոսից յետոյ նոյն տեսակ եռանդով և աւելի մեծ բարեհոգութիւնով կառավարեցին Անտոնինոս Պիոսը և Մարկոս Աւրելիոսը։ Վերջինս իրանից յետոյ յիշատակ թողեց ոչ միմիայն իբր կայսր. նա Ստոյիկեան դպրոցի փիլիսոփայ էր, [1]) այն դպրոցի, որն ամենից բարձր էր գնահատում ինքնատիրապետութիւնը և խելացի մտքով հասկացուած պարտականութեանը ծառայելը։ Եւ Մարկոս Աւրելիոսն ամեն բանում հաւատարիմ էր իր փիլիսոփայական իդէալին. կայսերական իշխանութեան մէջ նա տեսնում էր ոչ թէ ինքնասիրութեան բաւականացում, ոչ թէ անձնական ցանկութիւնները կատարելու միջոց, այլ մի ծանր ու պատասխանատու պարտականութիւն։ Նա իրան համեմատում էր այն զինւորի հետ, որին կանգ-

[1]) Մեր ձեռքն է հասել նրա մի գործը—«Խօսակցութիւն ինքն իր հետ»։ Այդ խօսակցութիւնները նա գրել է գերմանացիների դէմ պատերազմելու ժամանակ, բանակի մէջ։

նեցրել են անփոփոխելի պահապան—նրան միայն մահը կազատէ։ Շատ անգամ նա պարտաւորուեց ստիպողական միջոցներ գործ դնել, բայց նրա զօրեղ ցանկութիւնն էր առաջնորդել ազատ և հաւասարիրաւունք մարդիկների, որոնք գիտակցօրէն են ենթարկւում օրէնքին և ոչ բռնութիւնով։ Այս թոյլ առողջութեան տէր իդէալիստին, և պատերազմը չը սիրող մարդուն բաժին ընկաւ ներքին և արտաքին թշնամիների հետ մշտական կռիւ։ Սկզբում պէտք եղաւ յետ մղել պարթևներին, յետոյ պաշտպանւել գերմանների նոր տեղափոխութեան դէմ, այդ երկուսի միջավայրում՝ ճնշել ասորական զօրքի ապստամբութիւնը։ Մարկոս Աւրելիոսն այս բոլոր խնդիրները վերջացրեց, բայց նրա առողջութիւնը քայքայւեց մշտական լարւած վիճակից։ Նա մեռաւ գործի մէջ—դանուբեան սահմանների վրայ յարձակւող մարկոմանների դէմ սկսած արշաւանքի ժամանակ (180)։ 180

Սեվերոսների բարձրանալը։

Նրա մահով վերջանում է հռոմէական կայսրութեան ամենալաւ շրջանը։ 80 տարի կառավարում էին ճարտար և մեծագործ կայսրներ։ Մարկոս Աւրելիոսի որդին—Կոմմոդը, կրկին եկաւ անբարոյականութեան և դաժանութեան մէջ, որոնցով աչքի էին ընկնում Կալիգուլան, Ներոնը, Դոմիկիանոսը։

Նրա օրով առանձնապէս տուժեց ծերակոյտը, որի հետ այնքան մեծ համաձայնութեան մէջ էին Կոմմոդի նախորդները։ Կայսրն իր ձեռով էր փառքի ձգտում—նա իրան համարում էր նոր Հերկուլէս և մասնակցում էր կրկէսի (ցիրկի) մրցումներին, ինչպէս մի հասարակ սուսերամարտ (գլադիատօր)։ Կարճ ժամանակ կառավարելուց յետոյ՝ նա զոհւեց մի պալատական դաւադրութեան, բայց պետութեան դրութիւնը դրանով չը լաւացաւ։ Իշխանութեան կանոնաւոր յաջորդութիւնը խանգարւել էր և նրա վերականգնումն առաջացրեց նոր ներքին խռովութիւններ։ Դաւադիրները ներկայացրին շատ ծառայութիւններ մատուցած Պետինաքս զօրավարին, բայց պրետօրեան գնդին նա շատ խիստ մարդ

երևաց։ Զինուորները նրան սպանեցին և կայսերական պատիւը ծախեցին հարուստ Դիդիոս Յուլիանոսին։ Այս խայտառակ առևտուրը վրդովեցրեց նոյն իսկ հռոմէական ամբոխին։ Նրան չը հնազանդուեցին և սահմանապահ լեգիոնները։

193 Դանուբի բանակը 193 թ-ին ներկայացրեց Սեպտիմիոս Սեվերին, որը և հաստատուեց կայսր, բայց միայն արիւնահեղ պատերազմներից յետոյ՝ ասորական և բրիտանական զօրքերի թեկնածուների դէմ։ Նոր կայսրը սերւում էր հռոմայեցիների աֆրիկեան գաղթականութիւնից, ինչպէս Տրայիանոսն ու Ադրիանոսն իսպանականից։ Նա չէր կարող մրցել II դարի կայսրների հետ իր զարգացումով կամ պետական տաղանդով, բայց էլի շատ բան արեց կարգը պահելու և պետութիւնը պաշտպանելու համար։ Նա ինքն էր անձամբ առաջնորդում պարթևների և բրիտների դէմ ծանր արշաւանքներին։ Վերջինի ժամանակն էլ նա մեռաւ։ Սեպտիմոս Սեվերիոսը ոչնչացրեց պրետորական գունդը, որ հաւաքւում էր Հռոմի և Իտալիայի բնիկներից, և նրա փոխարէն բոլոր լեգիոններից առնուած զինուորներով մի նոր գունդ կազմեց։ Ընդհանրապէս բոլոր զօրքը պահպանեց հռոմէական կազմը և լատինական լեզուն, բայց լրացւում էր ոչ միայն հռոմայեցիներից, այլ քիչ ու շատ ռոմանացած գաւառացիներով։ Այն վիհը, որ սկզբում բաժանում էր յաղթական քաղաքի քաղաքացիներին յաղթուածներից, աւելի և աւելի հարթւում էր։ Տարածւում էր հռոմէական քաղաքակրթութիւնը, տարածւում էր և քաղաքացիութիւնը, իսկ Սեպտիմ Սեվերի որդի Կարակալլայի օրով կորաւ հռոմայեցիների և հռոմէական հիմնարկութիւններին հպատակւող գաւառացիների մէջ եղած վերջին պատւարը. կայսերական հրամանագրով հռոմէական քաղաքացիութիւն տուեց կայսրութեան բոլոր ազատ բնակիչներին, որոնք պատկանում էին որևէ քաղաքային համայնքի, ի միջի այլոց և գիւ-

ղական այն բնակիչներին, որոնք գրուած էին քաղաքների վրայ։ Բացառութիւն էին կազմում միայն բարբարոսները, որ ապրում էին ցեղերով և չէին ընդունել հռոմէական քաղաքների կարգերը։

Այս հրովարտակը կազմում է Կարակալլայի մեծ ծառայութիւնը։ Իսկ ընդհանրապէս նա գործում էր այն խորհրդին համաձայն, որ հայրը տուեց մահուան անկողնում նրան և եղբօրը. «առատ եղէք դէպի զինուորները, մնացածներին կարող էք արհամարհել»։ Կարակալլան եղբօրիցն ազատուեց, սպանելով նրան. հպատակներին խնայում էր Դոմիկիանոսից և Կոմմոդից ոչ աւելի, բայց զինուորների վրայ խիստ ուշք էր դարձնում և զօրքի համար հարկերը ծայրայեղ կերպով շատացրեց։ Գերման ցեղերին մի կերպ խաղաղեցնելով, նա իր բոլոր ուշքը դարձրեց արևելքի վրայ։ Նա մտածում էր արշաւել Հնդկաստան և մինչև իսկ Չինաստան և դրա համար պարթևներին առաջարկեց դաշն կապել։ Բայց նրանք սովոր չէին հռոմայեցիների հետ միասին գործել և յարձակումով պատասխանեցին։ Կարակալլան նրանց դէմ կռւում էր յաջող կերպով, բայց երևաց, որ զօրքերին արած նրա զիջումները թուլացրել էին կարգապահութիւնը. կայսրին մորթեց մի սպայ, որին նա մերժել էր աստիճանը բարձրացնել։ Մի քանի ամսով իշխանութիւնն անցաւ Պրետօրիայի պետին, իրաւաբան Մակրինոսին։ Բայց նա բանակին դուր չեկաւ և նրան ղեկավարել չը կարողացաւ։ Պարթևների դէմ վարւող կռւում անյաջողութիւններ սկսւեցին և զինուորները մեծ ոգևորութիւնով անցան Կարակալլայի քեռորդու՝ Հելիոգաբալի կողմը։ Վերջինիս բարձրանալը նշանաւոր է նրանով, որ նոր կայսրը ոչ զօրապետ, ոչ օրէնսգէտ, ոչ էլ մի ազդեցիկ հռոմայեցի էր. սա մի երիտասարդ էր, ծագումով Ասորիքից և Եփեսոսում Արևի տաճարի քրմապետը։ Կարակալլայի Հելիոգաբալ Ալէքսանդր Սեվեր։

Բացի Կարակալլայի հետ ունեցած ազգակցութիւնից, նրան առաջ քշեց եւ քրմական պաշտօնը։ *Արեւելեան պաշտամունքներն այդ ժամանակ խիստ տարածւել էին Միջերկրականի ծովի աւազանում։ Հռոմէական և յունական բազմաստւածութիւնը կորցրել էր իր ոյժը.* ազգաբնակութիւնը որոնում էր աւելի խոր կրօնական գաղափարներ եւ դառնում էր դէպի արեւելք—*դէպի եգիպտական Իզիդային, պարսկական Միհրին, ասորական Բաադին (Վաալ)։ Բայց Հելիօգաբալի Հռոմում երեւալը կրկին տարօրինակ էր և մեծամեծ անյարմարութիւններ առաջացրեց։ Նա իր հետ բերեց Եմեսոսեան սրբատեղի սրբազան քարը, որ՝ աւանդութեան համեմատ՝ ընկել էր երկնքից, ցանկութիւն յայտնեց պսակւելու մի վեստալեան կոյսի* [1]) *հետ, շրջապատեց իրան կանանցով և արեւելեան շողոքորթութիւններով, չէր արտայայտում գործերով զբաղւելու ոչ մի ցանկութիւն և ժամանակն անց էր կացնում խնջոյքներով։ Սրանով Հելիօգաբալը շուտով ոչնչացրեց հպատակների դէպի ինքն ունեցած լաւ տրամադրութիւնը—նրան սպանեցին, և նրա տեղը բռնեց իր մօրեղբօր որդին՝ Ալէքսանդր Սեվերոսը, որ սրանից տարբերւում էր բոլորովին հակառակ յատկութիւններով։ Սա մի փափուկ, բարեխիղճ և ազնիւ աշխատաւոր էր, որը հնար եղածին չափ վերականգնեց ծերակոյտի նշանակութիւնը և, բացի դրանից, կազմեց իր ամենամօտիկ պետական խորհուրդը։ Նրա ասորական ծագումը երեւում էր միայն նրանով, որ նա մեծ յարգանքով էր վերաբերւում ասիական կրօններին և, ի միջի այլոց, լիակատար համբերատարութիւնով էր նայում քրիս-*

---

[1]) *Օջախի Աստծու՝ վեստայի քրմուհիներ, հռոմէական ամենալաւ ընտանիքների աղջիկներ։ Սրանք երդւում էին միշտ կոյս մնալ։ Եթէ մի վեստալկա խախտում էր այդ ուխտը, նրան սովամահ էին անում։*

տոնեաների վրայ։ Սակայն նա շատ քիչ էր հասկանում քրիստոնէական վարդապետութիւնը և ենթադրում էր, որ Քրիստոսին կարելի է դասել կռապաշտական աստուածների շարքը։ Բանակի համար Ալեքսանդրը չափազանց խոնարհ և անվճռական մարդ էր։ Նրա օրով կատարուեց մի յեղափոխութիւն, որը պահանջում էր հէնց զինուորական ուժերը լարել․ պարսկական ազգաբնակութիւնը վայր գլորեց պարթևական հարստութիւնը, որը յունական ոգով էր համակուած։ Սասանեանների պարսկական հարստութիւնն, ընդհակառակը, վերականգնեց յոյներին թըշնամի Աքէմենեան հարստութեան աւանդութիւնները եւ կործանում էր ապառնում հելլենիստական կուլտուրային եւ հռոմէական վարչութեանն Ասիայում։ Ալեքսանդր Սեվերը պարսկական նոր թագաւորի դէմ ձեռնարկեց մի մեծ արշաւանք։ Բայց այդ արևելեան արշաւանքներն ընդհանրապէս չէին յաջողւում հռոմայեցիներին։ Այս անգամ էլ յաջողութիւնները շատ անբաւարար էին, և կայսրը միջոցներ ձեռնարկեց նոր զօրքեր դէպի Եփրատ տանելու համար։ Այդ պատրաստութիւնների ժամանակ նա սպանուեց իր զինուորներից (235 թուին)։ **235**

Հռոմէական պետութիւնը շատ ներքին խռովութիւնների էր դիմացել մինչև Ալեքսանդր Սեվերոսի ժամանակ. շատ անգամ էր ընդհատուել իշխանութեան օրինական փոխանցումը, բայց ամենից առաջ յաջողւում էր բաւական կարճ ընդհատումներից յետոյ վերականգնել կառավարութիւնը։ Ալեքսանդրի սպանելն սկիզբն էր երկարատև խառնակութիւնների, որոնք անկում էին սպառնում պետութեանը։ Բանը նրանումն է որ, ինչպէս Սեվերոսների ժամանակ դէպքերը ցոյց տուին, դէպի Հռոմը եղած զմայլանքն ընկել էր։ Ռոմանացումը տարած- III դարի խառնակութիւնները։

ւել էր լայն կերպով, բայց երեւսանց։ Միութեան գաղափարը թուլացել էր, իսկ գաւառական առանձնայատկութիւնները եւ ձգտումները առաջ էին գնացել։ *Յուրաքանչյուր բանակ և ամեն մի գավառական բանակ մի-մի կայսր էին հրատարակում։ Ընդհանուր հետևանքն եղավ մի սարսափելի խառնաշփոթություն, որի ժամանակ թշնամիները—պարսիկները, գոթերը, ալլեմանները—ներս էին խուժում կայսրության մեջ, ջարդում էին հռոմեական բանակները, կողոպտում ներքին նահանգները, 35 տարվա ընթացքում բազմաթիվ իրար յաջորդող, իրար թշնամի և զինվորների ձեռքով ընկնող «կայսրների» մեջ կային իսկական բարբարոսներ, օրինակ գերմանացի Մաքսիմինինոսը, արաբ Փիլիպպոսը, Պալմիրի թագավոր Օդենատը։*
260 *260 թվին տեղի ունեցավ մի չը լսված դեպք. Շապուհ Սասանեանը ջարդեց հռոմեական մեծ բանակը և գերի բռնեց Վալերիանոս կայսրին։ Սրանից յետոյ կայսրությունը բոլորովին քայքայվեց, և համարեա ամեն մի նահանգ գործում էր ինքն իր գլխին, ուշադրություն չը դարձնելով գրացի նահանգների վրայ։ Այս խառը շրջանն անվանեցին 30 բռնապետների ժամանակ, այսպէս կոչված «կայսրների» թվի շատության պատճառով, որոնք երևան էին գալիս Միջերկրականի ափերում ամեն տեղ։ Սակայն մի անգամ էլ միության գաղափարը յաղթանակեց. հռոմէական աշխարհը մեծ ճիգ գործ դրեց իր գոյությունը պահպանելու համար։ Կլավդիոս կայսրին յաջողվեց յաղթել գոթերին, որ քարուքանդ էին անում Բալկանեան թերակղզին և Փոքր-Ասիան։ Ավրելիանոս մեծ զորապետը* վերականգնեց մի եւ միացած կայսրութիւնը, *թշնամիների և հակառակորդների դեմ մի*
270 *շարք յաղթություններ անելուց յետոյ (270 թ.)։ Սա հռոմէական սահմանազորքը տարավ Դակիայից Դանու-*

քի միւս կողմը, որպէսզի հեշտացնէ սահմանի պաշտպանութիւնը, բայց գերմաններին էլ նորից զգացրեց հռոմէական զէնքի ամբողջ ուժը, մաքրեց երկիրն ինքնակոչներից և Պալմիրայի՝ այսինքն Ասորիքի և Միջագետքի մէջ տեղ գտնուած անապատի միջի երկիրը գրաւելով, գործողութիւն սկսեց արևելեան թշնամիների դէմ։ Յարձակումների և խառնակութիւնների պատճառով նա Հռոմը պատեց մի պարսպով, որը կարող էր դիմանալ երկար պաշարման։ Բայց զինուորների ինքնակամութիւնը չը խնայեց նոյն իսկ այս օրինակելի զօրավարին—նրան սպանեցին պարսիկների դէմ արշաւանքի պատրաստւած ժամանակը (275 թւին)։ Մի քանի միջամտու- 275
թիւններից յետոյ կայսր եղաւ Պրոբոսը, որը ներքին վարչութիւնը թողեց ծերակոյտին, իսկ ինքը բաւականացաւ զօրքերի առաջնորդութիւնով։ Նա առաջինը գործադրեց սահմանների վրայ այն միջոցը, որ մեծ ազդեցութիւն ունեցաւ կայսրութեան ապագայ վիճակի վրայ—այսինքն՝ սկսեց հռոմէական հողերի վրայ բնակեցնել գերմանական ամբողջ ցեղեր, պարտաւորեցնելով նրանց պաշտպանել սահմանի վրայի նահանգներն ուրիշ բարբարոսների յարձակումներից։ Այդ միջոցը վտանգաւոր էր, բայց անհրաժեշտ, որովհետև կայսրութեան ուժերը բաւական չէին աւելի և աւելի ուժեղ կերպով ճնշող թշնամիների դէմ կռւելու համար։ Այսպիսով Հռոմի իշխանութիւնն աւելի եւս ընդարձակւեց և տարածւեց գերմանների մի մասի վրայ եւս. բայց միաժամանակ հռոմէական կուլտուրան աւելի եւ աւելի ցածրանում, ընկնում էր, հռոմէական քաղաքացիութիւնը եւ զօրքն աւելի եւ աւելի համակւում էին օտար տարրերով։ Բանակի մէջ այդ պարզ արտայայտւում էր նրա կազմը փոխւելով. սկզբում գերակշռութիւն ստացան գաւառա-

ցիներն, իսկ յետոյ կայսրներն սկսեցին նրա շարքերի մէջ հրաւիրել բարբարոսներին։

**Բարենորոգութեան կարիքը։**

Ամեն տեղ զգացւում էր լայն բարենորոգութեան կարիքը։ Առանձին անհատներ, մինչև անգամ Աւրելիանոսի նմանները՝ չը կարողացան հասնել հաստատուն բարելաւութեան։ Ամենից աւելի պարզ էր կառավարութեան իշխանութիւնն ամրապնդելու անհրաժեշտութիւնը։ Հանրապետութեան խառնակութիւնների միջից այդ իշխանութիւնը դուրս եկաւ զօրաւոր, բայց խախուտ միահեծանութեան ձևով։ Պրինցիպատի գաղափարը—ժողովրդի ներկայացուցչութիւնը միայն մի անձի՝ կայսրի մէջ, գործնականում հասցրեց այն բանին, որ զինւորները խաղում էին բարձրագոյն իշխանութեան հետ։ Բայց կային և ուրիշ դժւարութիւններ՝ աւելի քիչ նշմարելի, բայց ոչ պակաս վտանգաւոր։ Դեռ կայսրութեան լաւ ժամանակում զարգացած մարդկանց մէջ սկսեց նշմարւել քաղաքական ոգու անկում, մի տեսակ յոգնածութիւն և զզւանք դէպի պետական կեանքը։ Պիտանի զինւորներ ստանալու համար պէտք էր դիմել ոչ թէ Իտալիայի և Յունաստանի արմատական բնակիչներին, այլ կիսավայրենի ցեղերին։ Այն հետաքրքրութիւնը և եռանդը, որով քաղաքացիները մասնակցում էին իրանց քաղաքի գործերին՝ կորչում էին. կառավարութիւնն ստիպւած էր լինում ամեն բանի մէջ խառնւել, ամենքին ղեկավարել, ամենքին հրամայել։ Կառավարութեան ծառայողները, բազմաթիւ աստիճանաւորները և օրէնսգէտներն իրանց գործով պարապում էին եռանդոտ և բանիմաց կերպով, բայց աւելի եւ աւելի յաճախ էին լսում գանգատներ, որ նրանք օտարանում են ազգաբնակութիւնից եւ նրա կեանքից, նեղում են նրան եւ իրանց իշխանութիւնն ի չարը գործ դնում։ Բարօրութեան այն արագ բարձրանալը, որ առաջացաւ Միջերկրական ծովը խաղաղեցնելով, դադարեց, երբ խառնակութիւններն սկսւեցին և բարբարոսների աճող ճնշումն զգացւեց։ Հին աշխարհը երթարկւում էր մի տնտեսական յեղափոխութեան. նորանոր տիրապետութիւններ այլ ևս չըկային. դրա հետ միասին դադարեց եւ նոր ստրուկների ներմուծութիւնը։ Կայսրութեան ստրուկ ազգաբնակութիւնը մեռնում, սերհատւում էր կամ անցնում էր ազատարձակւածների դասակարգը։ Ինքը կառավարութիւնն սկսեց

տարբեր կերպով նայել ստրուկների վրայ, և Ադրիանոսն առաջին փորձն արեց պաշտպանելու նրանց տէրերի կամայականութիւններից. Նա արգելեց նրանց սպանել առանց դատաստանի։ Դրա հետ միասին խոշոր հողատէրերն ստիպուած էին թողնել իրանց դաշտերը ստրուկների մեծամեծ խմբերով մշակելու ձևը և անցնել մի այլ ձևի—մանր-մանր հողաբաժիններ կապալով տալ մշակութեան։ Ստրուկի տեղը բռնում էր հողավարձ (կապալադրամ) տւող գիւղացին (ճորտ)։

Քրիստոնէութիւն։ Հալածանքներ։

Հոգեկան կեանքում ոչ պակաս խոր փոփոխութիւն էր տեղի ունենում։ Կորել էր միամիտ հաւատը դէպի տեղական աստուածները, հռոմէական օջախի, հռոմէական հաւատարմութեան և յաջողութեան պաշտպանները։ Սկզբում մարդիկ փրկութիւն էին որոնում եգիպտական, բաբելական, ասորական հաւատալիքների մէջ, բայց նրանք՝ բաւարարութիւն գտան միայն քրիստոնէութեան մէջ։

Մտաւոր հորիզոնի տարածւելը Հռոմից ամբողջ աշխարհի վրայ և զանազան ցեղերի կրօնների բազմատեսակ ձևերի հետ ծանօթանալը խախտել էին հռոմէական կռապաշտութիւնը։ Անդիմադրելի պահանջ էր առաջացել աւելի լայն և աւելի բացարձակ կերպով երկրպագելու աստւածութեան, և ամենքի հայեացքները դառնում էին դէպի արևելք, որտեղ աստուածպաշտութիւնը վաղուց ի վեր ունէր գրաւիչ, վեհ բնաւորութիւն։ Արևելքի բոլոր աստւածներին փորձեցին արևմուտքում—և՛ ասորական Մեծ-Մօրը կամ եգիպտական Իզիդային, ինչպէս յաւիտեան երիտասարդ սննդատու բնութեանը, որը տեսնում է բոլոր էակների մահը և երբէք չէ դադարում նոր էակներ արտադրելուց, և՛ սեմական Բաաղին (Վաալ)-տիեզերքի անեղ հրամայողին, և՛ իրանեան Միհրին, Որմզդի ուղեկցին ճշմարտութեան համար մղւող կռւի մէջ։ Վերջապէս փայլեց Քրիստոսի լոյսը վաստակեալներին և ծանրաբեռնեալներին, և նոր կրօնն առանց աղմուկի տարածւեց ամբողջ աշխարհում, սկսելով Երուսաղէմից, հրէական ցրւումով (դիասպորա) հելլենական արևելքը և ռոմանացած արևմուտքը և մինչև բարբարոսները, որ պաշարել էին կայսրութիւնը։ Քրիստոնէութիւնը վերջնականապէս կործանում էր հին պետութիւնը, ո-

րովհետեւ խլում էր նրանից կռապաշտական հիմունքը—ոչնչացնում էր կրօնական եւ քաղաքական համայնքի նոյնութիւնը։

*Բայց հռոմէական կառավարութիւնը* պէտք է զինուէր քրիստոնէութեան դէմ, որովհետեւ նա քարոզում էր հպատակուել իշխանութիւններին, բայց Կայսրինը չէր համարում Աստծունը։ *Այն ինչ պետութեան, նրա ներկայացուցչի—կայսրի և նրա պաշտօնական պաշտպանների—աստուածների երկրպագութիւնը Հռոմում քաղաքացիական և կրօնական հանրակեցութեան հաւատալիքն էր։ Հռոմէական համոզուած հայրենասէրների տեսակէտից քրիստոնեաները, որ մերժում էին այդպիսի երկրպագութիւն, Հռոմի թշնամիներն էին, ուրեմն և մարդկային ցեղի թշնամիները։ Սրանում է թագնուած քրիստոնեաներին հալածելու պատճառը։ Արդէն Ներոնը տանջում էր նրանց Հռոմի հրդեհից յետոյ։ Դոմիցիանոսի օրով սկսեց կանոնաւոր հալածանքը։ Մարկոս Աւրելիոսի օրով նահանգապետները և կռապաշտ ազգաբնակութիւնը քիչ հաւատացեալների չը կոտորեցին, և ինքը՝—կայսրը խրախուսում էր այդ հալածանքը. նա պաշտպանում էր կռապաշտ Հռոմը բոլոր յարձակումներին—ինչպէս բարբարոսների ուժից, այնպէս էլ քրիստոնեաների քարոզութիւնից։ Աղէքսանդր Սեվերը և Փիլիպպոս Արաբացին առաջինները եղան, որ փորձեցին համբերատար քաղաքականութիւն։ Բայց պետութիւնը խառնակութիւններից ազատելու փորձ անող կայսրների* [1]) *օրերով շատ անգամ հալածանքը մեծ ուժով վերըսկսւում էր. քրիստոնեաներին նետում էին կրկէսում վայրի գազանների առաջ պատառոտելու համար և ենթարկում էին ուրիշ տեսակ մահերի։ Բայց այս բոլոր յարձակումները չը կարողացան ոչնչացնել*

---

[1]) *Մանաւանդ Դեկիոսի և Վալերիանոսի օրերով։*

*պտղաբեր հողի մէջ նետուած սերմը. քաղաքների կողքին ծնունդ էին առնում նոր հաւատի ստորերկրեայ ապաստանները՝* կատակոմբները, *որոնց մէջ թաղում էին նահատակներին, կատարում էին աստուածպաշտութիւնը, հաւաքւում էին քարոզների և աղօթելու համար։ Կայսրութեան կողքին ծնւում էր եկեղեցին, որն ապստամբութիւն չէր առաջացնում և չէր սովորեցնում դիմադրութիւն,* բայց կամաց-կամաց դէպի իրան էր գրաւում հասարակութեան կենդանի ուժերը, *տալիս էր նրանց հաւատ և իդէալներ, այն ինչ կայսրութեան ձեռքում մնում էր բռնութիւնը և զինուորական ոյժը։*

---

**ԳԼՈՒԽ Թ.**

## ԿԱՅՍՐՈՒԹԵԱՆ ԱՆԿՈՒՄԸ

*Կայսրութեան համար անհրաժեշտ բարենորոգու-* Դիոկղետիանոս։
*թիւններն սկսեցին Պրոբոսի յաջորդներից մէկի՝ Դիո-*
*կղետիանոսի ձեռքով։ Նա իլլիրիայից էր և բարձրա-*
*ցաւ ամենաչնչին վիճակից՝ ազատ արձակուածներից։*
*284 թւին նա կայսր դարձաւ և իսկոյն միջոցներ* 284
*ձեռք առաւ պետական իշխանութիւնն ամրապնդելու*
*համար։ Զինուորների և ծերակոյտի ազդեցութիւնից*
*ազատ մնալու համար՝* նա աշխատում էր արմատա-
ցնել այն համոզումը, թէ կայսրութիւնը մի պաշտօն
(մագիստրատուրա) է. նա աշխատում էր տալ նրան
միահեծանութեան բնաւորութիւն, *և դնել նրան*
*արևելեան միապետութիւնների անհասանելի բարձ-*
*րութեան վրայ։ Նա շրջապատեց իրան ասիական*
*պալատական ծէսերով և ձևականութիւններով. սկսեց*
*թագ կրել, պահանջում էր, որ իր առաջ ծունկ*
*չոգէին։ Ծերակոյտն իր նշանակութիւնը վերջնակա-*
*նապէս կորցրեց։ Բայց և միևնոյն ժամանակ Դիո-*

կղետիանոսն զգում էր, որ մի մարդու համար իսկապէս դժուար է ամբողջ պետութեան սահմաններում պաշտպանել այդ ահագին իշխանութիւնը. Նահանգների մէջ տարաձայնութիւններից, բանակների մէջ ներքին կռիւներից, գլխաւոր զօրավարների ապստամբութիւններից խուսափելու համար՝ նա հրաժարւեց իշխանութեան միութիւնից եւ կայսրութիւնը բաժանեց չորս կառավարիչների մէջ. իր համար ընկեր ընտրելով ժամանակի զօրավարներից 3 ամենաարժանաւորներին։ Իր համար վերցրեց նա Ադրիատիական ծովից արեւելք եղած գաւառն՝—Աւգուստոս տիտղոսով, իսկ իր բարեկամ Մաքսիմիանոսին տուեց արեւմուտքը՝ միենոյն տիտղոսով։ Արեւելքում Դիոկղետիանոսի գլխաւորութեան տակ՝ Գալերիանոսը, կեսար տիտղոսով՝ ստացաւ Իլլիրիայի և յետոյ էլ Ասիայի վարչութիւնը. միւս կեսարը՝ Կոստանդ Քլորոսն ստացաւ արեւմուտքում Գալլիան, Բրիտանիան և Իսպանիան։ Այս բաժանման շնորհով կառավարիչներից ամեն մէկը հնարաւորութիւն ստացաւ իր ամենամօտ խնդիրներով զբաղուելու, թէև բոլոր չորսն էլ իրար օժանդակելուց հրաժարւում էին, բայց ընդհանուր կարգադրութիւնների վերաբերութեամբ միայն իրար հետ համաձայնում էին։ Այս բաւական բարդ կարգը 20 տարի գործադրուեց յաջող կերպով։ Յաջողուեց կայսրութիւնը խաղաղեցնել, գլուխ ելնել Գալլիայի, Եգիպտոսի և աֆրիկեան գաւառի ապըստամբութիւնների հետ, ջարդել ալլեմաններին և նորից նուաճել Բրիտանիան, վերջապէս՝ զգալի պարտութիւն պատճառել պարսիկներին։

Աւելի դժուար էր հասարակական կեանքի պակասութիւններն ուղղել։ Դիոկղետիանոսը, նրա ընկերներն ու յաջորդներն ուրիշ ոչ մի միջոց չը գտան, բացի ամենախիստ ստիպողականութեան եւ մի տեսակ զինուորական կարգապահութեան ենթարկելը։

Անյետաձգելի պատերազմական կարիքների պատճառով, հարկերը հասցրին ծայրայեղ չափերի, և կառավարութիւնը միշտ հետևում էր, որ բոլոր ստացւածքների վրայ հարկ դրւած լինի, որ հարկից փախուստ տալ կամ թագնւել չը լինի։ Մարդկանց մասնաւոր կեանքը և նրանց զբաղմունքները ենթարկւած էին խիստ հսկողութեան։ Վաճառականներն առևտուր էին անում աստիճանաւորների հրամանով և հսկողութեան տակ և իրաւունք չունէին փակել առևտուրը կամ փոփոխել առանց առանձին թոյլտւութեան. ունևոր տնատէրերը և հողատէրերը՝ կուրիալ (ծխական) անունով՝ կապւեցին քաղաքների հետ (առանց տեղափոխութեան իրաւունքի), որպէսզի, ինչպէս ձրի պարտականութիւն, կատարեն քաղաքային վարչութեան և հարկահանութեան գործերը. հողագործ մանր կապալառուները և ստրուկները կապւեցին այն հողաբաժինների հետ, որոնց վրայ ապրում և որոնց մշակում էին։

Կալւածատէրերն ապահովւեցին՝ —այնուհետև մշտական բանւորներ ունէին, բայց՝ միւս կողմից, վերջիններս զրկւեցին իրանց հողերի վրայ տնտեսութեան ձևը փոխելու և հողագործ ստրուկներից՝ ինչպէս հասարակ գործիքներից օգտւելու իրաւունքից։ Այսպիսով առաջացաւ ճորտերի (կոլոն) դասակարգը, որոնք հարկ էին վճարում և ձրի աշխատանքներ էին կատարում հողատէրերի համար, բայց անձեռնմխելի կերպով օգտւում էին իրանց հողաբաժիններից։ Հասարակութեան վրայ հսկողութիւնը շատացաւ, դրա հետ էլ աստիճանաւորների թիւն աճեց և նրանց իշխանութիւնն ընդարձակւեց։ Բացի դրանից՝ ոստիկանական պարտականութիւնների մի մասը տրւեց խոշոր հողատէրերին։ Միևնոյն ժամանակ զինւորական հրամանատարութիւնը ջոկ էր քաղաքացիական վարչութիւնից և դատարանից։ Ազգաբնակութիւնը կորցրեց իր հետաքրքրութիւնն ու համակրութիւնը դէպի պետական կեանքը եւ սկսեց նայել նրա վրայ իբր թշնամի ուժի վրայ, որ հարկ է առնում եւ կեղեքում,

*թէեւ ստրուկների դասակարգն անկասկած օգտւեց պետական միջամտութիւնից։*

*Կայսրութիւնը և եկեղեցին։*

*Ամենից աւելի անյաջող էր Դիոկղետիանոսի քաղաքականութիւնը քրիստոնէութեան վերաբերութեամբ։ Նա նայում էր քրիստոնեաների վրայ, իբր այլակրօնների, որ հրաժարւում էին երկրպագել պետական աստուածներին։ Քաղաքական անյաջողութիւնները ու վտանգները բացատրում էին քուրմերը հասարակութեան մէջ տիրող կրօնին թշնամի տարրերի ներկայութիւնով, մանաւանդ մատնանիշ էին անում այն բանի վրայ, որ քրիստոնեաները չէին միանում կայսրի հանճարի* (numen imperatoris) *երկրպագութեանը։ Դիոկղետիանոսը և նրա վարչակիցները հրաման հանեցին, որ բոլոր քրիստոնէական եկեղեցիները, որոնք արդէն բաւական շատացել էին, քանդւեն, եպիսկոպոսներն ու քահանաներն աքսորւեն, իսկ բոլոր քրիստոնէութեան մէջ կասկածւող անձերին առաջարկւի աստուածների սեղանի վրայ զոհ մատուցանել։ Մերժելու դէպքում ամենքին սպառնում էր բանդ և աքսոր։ Հրամանը գործադրելու ժամանակ՝ հալածողները շատ աւելի առաջ գնացին և հաւատացեալներին ենթարկեցին տանջանքների ու մահւան պատժի. առանձնապէս եռանդով էր գործում Գալերիանոսը։ Ընդհակառակը՝ Կոստանդին Քլորոսը խուսափեց հրամանը խստօրէն գործադրելուց։* Դիոկղետիանոսի հալածանքը, ինչպէս եւ նախընթաց հալածանքները, մի հետեւանք ունեցաւ — քրիստոնէական համայնքը մաքրւեց անպէտք խառնուրդներից. *խախուտ համոզմունքների և թոյլ բնաւորութեան տէր մարդիկ կեղծաւորւում էին և յետ ննում. իսկական հաւատացեալները յիշում էին Ուսուցչի չարչարանքները և աւելի մտերիմ ձևով էին ժողովւում խաչանշանի շուրջը, որի դէմ էր դարձել կռապաշտ աշ-*

խարհի կառավարութիւնը։ Հաւատացեալների հոգեկան երջանկութիւնն անարգանքների և չարչարանքների մէջ՝ գրաւում էր կռապաշտներից ամենալաւ մարդկանց, որոնք իրանց կողմն էին զգում իշխանութիւնը, յարգանքը, բաւականութիւնը — ամեն բան՝ բացի ներքին բաւականութիւնից։ Քրիստոնէական իդէալի հետ կռւի մէջ մտնելով՝ կայսրութիւնը դրանով միայն իր տակն էր փորում։ Որպէսզի նրա բարենորոգութիւնները որեւէ նպաստի հասնէին, անհրաժեշտ էր հաշտուել քրիստոնէութեան հետ եւ յենուել նրա վրայ։ Այդ բանն արեց Կոստանդ Քլորոսի որդին՝ Կոստանդիանոսը, որն իր մեծագործութիւնով արժանացաւ Մեծ անուանը և աշխարհի բաղդի վրայ Ալէքսանդր Մակեդոնացուց ու Կեսարից պակաս ազդեցութիւն չը գործեց։

Դիոկղետիանոսը հրաժարուեց կայսրութիւնից (305 թ.), որովհետև, չը նայելով արտաքին փայլուն յաջողութիւններին, իրան զգում էր յոգնած ու անբաւական։ Նրա հետ միասին հրաժարուեց և Մաքսիմիանոսը։ Կոստանդիանոս Մեծ 305

Շուտով մեռաւ եւ Կոստանդիոս Քլորոսը։ Արևելքում կառավարիչներ մնացին Գալերիոսը և Լիկինոսը, իսկ արևմուտքում Մաքսիմիանոսի որդի Մաքսէնտիոսը և Կոստանդի որդի Կոստանդիանոսը։ Ծերունի Մաքսիմիանոսը, ճըշմարիտ է, աշխատեց նորից խլել իշխանութիւնը, բայց անյաջողութիւն կրեց և՛ Հռոմում, և՛ Գալլիայում։ Ճիշտ այդպէս էլ անյաջող եղաւ Հռոմի վրայ Գալերիոսի արած յարձակումը. սա ուզում էր իր իշխանութիւնը տարածել և արևմուտքի վրայ։ Իտալիայից յետ նահանջելուց քիչ յետոյ նա մեռաւ։ Բայց մնացած կառավարիչների մէջ էլ համաձայնութիւն չը կար, և Դիոկղետիանոսի մտցրած կազմակերպութեան անյարմարութիւնները պարզ կերպով երևան եկան։ Չորս թագաւորների մէջ համաձայնութիւն յաջողւում էր կայացնել միայն իբրև բացառութիւն, իսկ սովորաբար ամեն մէկն իր շահն էր որոնում և ձգտում էր իրան ենթարկել ընկերոջը։

Կոնստանդիանոսի և միւս կայսրների մէջ պատերազմ բռնկւեց, որի մէջ նա նրանց դէմ մի բոլորովին նոր զէնք գործադրեց—քրիստոնէութիւնը։ Մինչև այդ ժամանակ քրիստոնեաները պետութեան մէջ թէ և մեծ ոյժ էին ներկայացնում, բայց քաղաքականութեան մէջ չէին խառնւում և չէին փորձում բարելաւել իրանց վիճակը դաւադրութիւններով կամ ազգամիջեան կռւով։ Կոստանդիանոսն իր հօրից ու մօրից ժառանգել էր համակրութիւն դէպի քրիստոնէական վարդապետութիւնը։ Բայց նա կայսրներից առաջինը եղաւ, որ համարձակութիւն ունեցաւ կտրել իր կապը կռապաշտութիւնից և թոյլատրել քրիստոնեայ զինւորներին Քրիստոսի անւան սկզբնատառերը ձևակերպել իրանց վահանների վրայ. վերջապէս նա ինքն էլ իր դրօշակի վրայ խաչ նկարեց։ Սա մի վճռական քայլ էր, որ չափազանց կարևոր հետևանքներ արտադրեց։ Կոնստանդիանոսի բանակը դարձաւ նոր վարդապետութեան կենտրոնատեղին և նրա զինւորական ոյժն աճեց կրօնական ոգևորութեան պատճառով։

Պատերազմը վերջացաւ Հռոմի առումով, ժամանակակիցներն այդ յաջողութեան մէջ տեսնում էին Քրիստոսի յաղ-
312 թանակը Կապիտոլեան Իւպիտերի վրայ։ 312 թւին Կոստանդիանոսը և Լիկինիոսը միասին հրատարակեցին Միլանի հրովարտակը (էդիկտ), որով կայսրութեան մէջ ամեն մարդու թոյլ էր տրւում հետևելու իր կրօնական համոզմունքին։ Քրիստոնեաների վրայից վերացւեցին բոլոր բռնութիւններն ու պատիժները, որոնց նրանք ենթարկւում էին մինչև այդ ժամանակ։ Քրիստոնէութիւնը դեռ ևս պետական կրօն չէր հրատարակւած, բայց իրաւունքներով գոնէ հաւասարւած էր կռապաշտութեան։ Այս յեղափոխութեան դէմ դուրս եկաւ Գալերիոսի քաղաքականութեան շարունակողը, Ասիայի կեսարը՝ Մաքսիմինոս Դազան։ Նրա դէմ ճակատող Լիկինիոսի զօրքերը կռւից առաջ աղօթում էին միակ Աստծուն, տիեզերքի կառավարչին։ Այդ աղօթքին կարող էին միանալ քրիստոնեաները և լուսաւորւած կռապաշտները, որոնք կորցրել էին իրանց հաւատը դէպի Ոլիմպոսի և Կապիտոլիոնի մարդանման աստւածները։

Վերջիններիս էր պատկանում և Մաքսիմինիոսին յաղթող Լիկինիոսը։ Նա մնաց արևելքի թագաւոր, այն ինչ Կոստանդիանոսը դարձաւ արևմուտքի տէրը։ Նրանք փորձեցին իրար մէջ համաձայնութիւն կայացնել, և դրա համար Լիկինիոսն ամուսնացաւ Կոստանդիանոսի քրոջ հետ։ Բայց նրանց մէջ զանազանութիւնը չափազանց մեծ էր. մէկն աւելի ու աւելի թեքւում էր դէպի քրիստոնէութեան բացառիկ նախապատւութիւնը, միւսը մնաց չէզոքութեան եւ անտարբերութեան տեսակէտի վրայ։

Մայրաքաղաքը փոխելը։

Կոստանդիանոսի և արևելեան կայսրի մէջ եղած կռիւը վճռեց սուրը. յաղթութիւնը մնաց Կոստանդիանոսին։ Դրա հետ միասին վերականգնեց Դիոկղետիանոսի փոփոխած միահեծանութիւնը. կարծես Կոստանդիանոսն ստեղծւած էր դրա համար։ Հաստատակամ, յարմարւող և ողորմած ինչպէս մարդ՝ նա անողոք էր այն գործերի մէջ, որոնք վերաբերւում էին նրա արքայական արժանաւորութեանը։ Ոչ միայն մահւան պատժի ենթարկեց իր Մաքսիմիանոս աներոջը կամ Մաքսենտիոս աներորդուն, որովհետև այդ էր պահանջում քաղաքականութիւնը, այլ և հրամայեց սպանել իր որդի Կրիսպոսին, որովհետև սա փորձ էր արել իշխանութիւնը խլելով։ Կոստանդիանոսն իր վճիռները պատրաստում էր հեռուից և գործադրում էր, չը շփոթւելով հակասութիւններից։ Պատմութիւնը ցոյց տւեց, որ նա խոր կերպով հասկանում էր համաշխարհային յարաբերութիւնները։ Լիկինոսին յաղթելուց յետոյ նա արևմուտք չը վերադարձաւ, թէև նա այնտեղ շատ ուժեր էր հաւաքել իր յաջողութիւնների համար. նա Հռոմից հեռանալու անհրաժեշտութիւն էր զգում երկու պատճառով. Հռոմում հանրապետութեան եւ պրինցիպատի աւանդութիւնները չափազանց ուժեղ էին—չէր կարելի այնտեղ հաստատել՝ ինչպէս պէտք էր՝ մի նոր, ինքնիշխան կայսրութիւն։ Այդ պատճառով արդէն Դիոկղետիանոսը հեռացել էր Հռոմից և

*բնակւում էր գլխաւորապէս Սերմիումում (Իլլիրիայում) և Նիկոմիդիայում (Փոքր-Ասիայում)։ Կոստանդիանոսի համար դրան միանում էր և մի երկրորդ պատճառ։* Նա չափազանց խիստ կերպով էր իր հաշիւները վերջացրել Կապիտոլեան աստուածների հետ եւ չէր կարող իրան լաւ զգալ կապիտոլիոնի մօտերը։ *Նա իր մայրաքաղաքը դարձրեց Բիւզանդիոնը, որը Բոսֆորի վրայ տիրելուն համար, վաղուց արդէն համարւում էր մի կարևոր քաղաք։* Բիւզանդիայում Կոստանդիանոսը գտնում էր շփման մէջ յունական զարգացման, ասիական հարուստ աշխարհի, Իլլիրիայի եւ Թրակիայի հետ, իսկ այս վերջիններս կայսերութեանը տալիս էին ամենալաւ զինուորները։ *Հիւսիսային Եւրոպայում բարբարոսների շարժումներին հետեւելու համար էլ այս կէտը յարմար էր, և Կոստանդիանոսն անձամբ սարսափելի պարտութիւններ պատճառեց Գոթերին և*
330 *Սարմատներին։ 330 թւին հանդիսաւոր կերպով օրհնեց նոր մայրաքաղաքը՝ Կ. Պոլիսը։*

*Եկեղեցական բարենորոգութիւններ։*

*Քաղաքացիական վարչութեան մէջ Կոստանդիանոսը շարունակեց Դիոկղետիանոսի քաղաքականութիւնը, բայց նրա քրիստոնեաների կողմն անցնելու պատճառով՝ առաջացել էր մի կարևոր խնդիր—կարգաւորել պետութեան յարաբերութիւնը դէպի եկեղեցին։* Կոստանդիանոսը չէր կարող մտածել կռապաշտութիւնն արմատախիլ անելու մասին, բայց նա բացարձակ նախապատւութիւն էր տալիս քրիստոնեաներին *պաշտօնեաներ նշանակելու ժամանակ և արգելում էր կռապաշտ աստիճանաւորներին պետութեան անունից զոհաբերութիւններ անել աստուածներին։ Այն պաշտամունքները, որոնց հետ կապուած էին գինարբութիւններ (օրգիա) և անառակութիւն, արգելւեցին և նրանց նւիրւած տաճարները փակւեցին։ Քրիստոնեաներից խլւած կալւածները յետ դարձւեցին,*

և պետութիւնն սկսեց հոգ տանել եկեղեցիներ շինելու և նրանց զարդարելու մասին։ Աւելորդ է ասելն անգամ, որ եպիսկոպոսների և քահանաների պաշտօնէութեան կարգը(հիէրարխիան), նրանց ընտրութիւնն, արդէն ընդունուած սովորութիւնները, նրանց իշխանութիւնը եկեղեցական գործերում՝ ճանաչւեցին պետութեան կողմից։ Դրանով եկեղեցու միութիւնն ըստացաւ արտաքին հաստատութիւն։ Կայսրութեան անտարբեր կերպով չէր վերաբերւում նաև եկեղեցու մէջ ծագած վէճերին. Կոստանդիանոսը ընդունում էր միակ մի ընկերակցութիւն, մի եկեղեցի եւ աշխատում էր նրա մէջ պահպանել ներս համաձայնութիւն։ Նա չէր խառնւում աստուածաբանական վէճերի մանրամասնութիւնների մէջ. բաց այդ միութիւն քարոզող քաղաքականութեամբ զօրեղապէս ազդեց դաւանանքի հաստատապէս կազմւելու վրայ։ Ծանր պարագաներում նա ժողովի էր հաւաքում եկեղեցու եպիսկոպոսներին և ուսուցիչներին։ Այսպէս՝ 325 թւին 325
կազմւեց առաջին տիեզերական ժողովը Նիկիայում, որ դատապարտեց Արիոսի [1]) աղանդը։ Կայսրն անձամբ բաց արեց ժողովը մի ճառով և ամեն կերպ համոզում էր ժողովականներին համաձայնութիւն կայացնել և ամբողջ եկեղեցու համար պարտադիր մի վճիռ դնել։ Ինչպէս եկեղեցու պաշտպան և նրա միութեան վերահասու, Կոստանդիանոսը սիրում էր իրան կոչել «ընդհանրական եպիսկոպոս»։ Եկեղեցու դատապարտած հերետիկոսների դէմ նա գործ է դնում աշխարհական իշխանութիւն. արքունիք էր գրաւում նրանց ստացւածքները, աքսոր էր ուղարկում նրանց։

---

1) Այս հերձւածը դէմ էր Երրորդութեան դաւանութեանը, որովհետև Արիոսը չէր ընդունում, որ Յիսուս Քրիստոսը Հօր հետ միևնոյն էութիւնն ունէր։

Կոստանդ և Յուլիանոս 337 337 թւին Կոստանդիանոսը մեռաւ, թողնելով երեք որդի, որոնք կառավարում էին կայսրութիւնը ոչ առանց կռիւների։ Միջնակը՝ Կոստանդն ապրեց միւսներից աւելի։ Նա հօրից աւելի եռանդով էր գործում կռապաշտների դէմ, բայց դրա փոխարէն եկեղեցին շատ վնասեց նրա կրօնական վէճերի մէջ միջամտելուց։ Նա բռնեց Արիոսի կողմը, դաժան կերպով հալածում էր ուղղափառներին և մանաւանդ Նիկիական հանգանակի գլխաւոր պաշտպան Աթանաս Աղէքսանդրացուն։ Նրանից յետոյ գահը բարձրացաւ հօրեղբօր որդին՝ Յուլիանոսը, որի օրով եկեղեցին ստիպւած եղաւ ենթարկւել աւելի ծանր փորձութեան։ Յուլիանոսն առաջ գնաց դեռ Կոստանդի օրով իր յաղթութիւններովն ալլըմանների դէմ, որոնք խուժել էին Գալլիա։ Նա հայրենասէր և կրթւած մարդ էր, իր համակրութիւններովը աւելի յոյն քան հռոմայեցի։ Փիլիսոփայութեան և ճարտասանութեան մշտական պարապմունքները ներշնչել էին նրա մէջ խոր յարգանք դէպի հին կուլտուրան։ Քրիստոնէութեան վրայ նա նայում էր իբրև մի օտար ուժի վրայ, որի տիրապետութիւնը դէպի կործանում էր տանում հին աշխարհը։ Իր կարճօրեայ թագաւորութեան ժամանակ (ընդամենը 1½ տարի) Յուլիանոսն ամեն բան արեց, ինչ որ իրանից էր կախւած, որպէսզի կործանէ Կոստանդիանոսի գործը. նա վերադարձրեց կռապաշտութեան իր պաշտօնական նշանակութիւնը, վերականգնեց աստուածների տաճարները, աշխատում էր դուրս քշել քրիստոնեաներին պաշտօններից և դասատւութիւնից [1])։

1) Կռապաշտութիւնը վերականգնեցնելու և քրիստոնէութիւնը հալածելու պատճառով եկեղեցին նրան անւանել է «Յուլիանոս ուրացող» կամ Չար Յուլիանոս։ Ծ. Թ.

Բայց Յուլիանոսը խոստովանում էր, որ չէ կարելի առանց փոփոխութիւնների ուղղակի վերադառնալ Դիոկղետիանոսի շրջանի կարգերին. քրիստոնէութեան ազդեցութիւնը երևում էր նոյն իսկ այդ նոր կրօնի հակառակորդի գործողութիւնների վրայ։ Այդ ազդեցությունը երևաց նրանում, որ փորձ արին կռապաշտությունից անել մի շարք այնպիսի պահանջներ, որ առաջ չէին անում։ Քրիստոնէական աստուածաբանութեան դէմ հանուեց կռապաշտական դաւանաբանությունը, որ կազմուել էր Նոր-Պլատոնական կոչուած փիլիսոփայութեան օգնութեամբ։ Այս փիլիսոփայութեան մէջ աշխարհի ստեղծողն էր հանդիսանում մի գերագոյն աստուած, իսկ մնացած բոլոր աստուածութիւնները համարւում էին նրանից առաջացած և նրանից կախում ունեցող ոգիներ. քրիստոնեաների բարոյական խիստ պահանջների դիմաց՝ մշակուեց կռապաշտական բարոյական վարդապետությունը, որ նոյն պէս պահանջում էր յաղթել զգայականութեանը։ Վերջապէս Յուլիանոսը փորձ արեց կազմելու քրմական պաշտոնների հիէրարխիան (աստիճանական կարգը), դասաւորել նրանց աստիճաններով, ենթարկել մէկը միւսին եպիսկոպոսների և քահանաների ձևով։ Բայց ինչ էլ որ լինէր, արդէն ուշ էր այդ տեսակ բարենորոգութիւններ մտցնելու համար, չըխօսելով դեռ այն մասին, որ ամեն մարդ էլ զգում էր նրանց արհեստական լինելը, հրամանի ազդեցութեան տակ եղած կազմութիւնը։

Յուլիանոսը ոչնչացաւ Տիգրիսի ափերում՝ պար- Վաղէնտիանոս և Վաղէս
սիկների դէմ սկսած մի անյաջող արշաւանքի մէջ
(363 թ.) և նրա կռապաշտութիւնը վերականգնելու 363
բոլոր քաղաքականութիւնը կործանուեց։ Յուլիանոսով
ընդհատուեց Կոստանդիոս Քլորոսի տունը։ Զօրքերն
ընտրեցին Վաղէնտիանոս Ա-ին։ Նոր կայսրի առաջին
գործն եղաւ իրան մի ընկեր նշանակել կառավա-
րելու համար։ Նա կանգ առաւ իր եղբայր Վաղէ-
սի վրայ և նրան յանձնեց արևելեան նահանգները։
Այսպիսով կայսրութիւնը բաժանելու գաղափարը նո-
րից իրականացաւ, և այս անգամ այնպիսի ձևով, որը
համապատասխան էր կայսերութեան երկու կէսերի

*հիմնական յատկութիւններին.* Միջերկրականի շուրջը տեղաւորուած եւ ռոմէական կայսրութեան ձեռքով իրար հետ միացած նահանգների խումբը բնական կերպով բաժանւում էր երկու կէսերի. արեւմուտքը ռոմանացած էր—*նրա մէջ տիրապետում էին լատինական լեզուն ու կուլտուրան, որ անցել էին Հռոմից.* արեւելքը մնում էր հելլենիստական։ *Թէև նա ենթարկւած էր հռոմէական կառավարութեանը, բայց Ալէքսանդր Մակեդոնացու օրերից վերածնւած յունական լեզուն և զարգացումը կազմում էին այնտեղ կրկին գլխաւոր կուլտուրական ոյժը։ Դրա համար էլ կայսրութեան Արևմտեան և Արևելեան մասերի բաժանւիլը հիմնւած էր ոչ թէ պատահական կամայականութեան, այլ խոր պատմական տարբերութեան վրայ։*

*Հոները և Գոթերը։*

*Կայսրների գլխաւոր ուշադրութիւնը դարձած էր բարբարոսների դէմ կռիւ մղելու վրայ, որն օրից օր աւելի էր ծանրանում։ Արևելքում գլխաւոր թշնամիները գոթերն էին։ Վաղէսը պաշտպանեց նրանց դէմ*
*375* *դանուբեան սահմանը մինչև 375 թիւը։ Այդ տարին նա ստիպւած եղաւ հռոմէական սահմանի մէջ ընդունել Վեստգոթ կոչւած մի ամբողջ ցեղ, որ դուրս էր քշւել իր բնակավայրից ժողովրդների մեծ տեղափոխութիւնով։ Թիւրքական Հոնն ցեղը շարժւում էր Ասիայից՝ հարաւային ռուսական դաշտերով, յաղթահարելով բոլոր հանդիպած ժողովուրդներին։ Կամաց-կամաց նրանց հետ միացան իրանցիներին ցեղակից ալանների, սարմատացիների, գոթերի անհագին խմբեր։ Վեստ գոթերն այս արշաւանքից փախան և ընկան հռոմէական տիրապետութիւնների վրայ։ Վաղէսն ընդունեց նրանց, հետևելով այն քաղաքականութեան, որ ամենաընդարձակ չափերով գործադրում էին կայսրները Պրոբոսի օրերից, երբ ոչ միայն բանակի համար*

պատերազմասէր բարբարոսներից զինւորներ էին ժո-ղովում, այլ և նրանց ամբողջ ցեղերով բնակեցնում էին սահմանների երկարութիւնով։ Այս անգամ գո-թերին ընդունելը մեծ դժբաղդութիւն հասցրեց. հռո-մէական աստիճանաւորների անարդարութիւններից գրգռւած՝ բարբարոսները ոտքի ելան և Ադրիանու-պոլսի մօտ (378 թւին) կոտորեցին հռոմէական զօր-քը կայսրի հետ միասին։ Բալկանեան թերակղզին ենթարկւեց սարսափելի կողոպուտի, բայց գոթերը Կ. Պոլիսը չը կարողացան առնել և Վալէնտիանոսի կողմից օգնութեան հասած Թէոդոս զօրավարը բա-ժանեց և խաղաղեցրեց նրանց։ Նա դարձաւ արե-ւելեան կայսր։

Թէոդոսի եռանդի և ճարպկութեան շնորհով IV դարի վերջին մի քանի տասնեակ տարիներում կայ-սրութիւնը յաջող կերպով դիմացաւ բարբարոսների դէմ—պէտք է աւելացնել, որ դիմացաւ նոյն իսկ ի-րանց օգնութիւնով, որովհետև առանց ֆրանկներ, գոթեր ու վանդալներ հռոմէական ծառայութեան մէջ առնելու անկարելի էր վարւել։

Թէոդոսը հալածում էր կռապաշտներին [1]) և հե- Թէոդոս Մեծ։
րետիկոսներին, վճռականապէս անցաւ Նիկիական հանգանակի կողմը և ամեն կերպ նպաստում էր ուղ-ղափառ հիերարխիան հաստատելուն։ Արևելքում և մա-

[1]) Կռապաշտութիւնն առանձնապէս ուժեղ էր Հռոմում։ Բայց դեռ Թէոդոսի կառավ[illegible]րակից Գրացիանոսի հրամանով յաղթութեան արձանը դուր[illegible] էր բերւած ծերակոյտի խորհրդի դահլիճից։ Այս բանը խոր կերպով վրդովեց կռապաշտներին. Նրանք դրա մէջ տեսնում էին Հռոմի կործանման նախանը-շանը և ամեն կերպ աշխատում էին յետ վերադարձնել ար-ձանը։ Ինքնակոչ Եւգենիոսը, յիրաւի, հրամայեց դնել ար-ձանն իր տեղը և վերականգնեցնել կռապաշտական պաշ-տամունքները, բայց նրանք միայն 3 ամիս դիմացան և կրկին Թէոդոսի ձեռքով տապալւեցին։

նաւանդ Պօլսում արիոսականները գերակշռող էին։ Թէոդոսը չը խնայեց նրանց դէմ բռնի միջոցները—եպիսկոպոսներին աքսոր, ստացւածքի արգունիք գըրաւում, քաղաքացիական իրաւունքներից զրկել և այլն—նշանաւոր դեր էին խաղում։ Բայց հերետիկոսութեան անկումն առաջանում էր եւ ուղղափառութեան հոգեկան յաղթութիւնից։ Նրա գլխաւոր պաշտպանն էր Միլանի եպիսկոպոս Ամբրոսիոսը, որը եկեղեցու նշանակութիւնն ամեն բանից բարձր էր դասում և դէպք եղած ժամանակն աներկիւղ պաշտպանում էր նոյն իսկ աշխարհական իշխանութեան դէմ։ Թէոդոսն անզամ խոստովանեց նրահովւական հեղինակութիւնը։ Դա պատահեց Սալոնիքի զարհուրելի կոտորածից յետոյ. Թէոդոսը ժողովեց ազգաբնակութիւնը եկեղեցու մէջ և զինւորներին հրամայեց կոտորել՝ առանց դատաստանի ու քննութեան։ Այս արիւնոտ կամայականութիւնից յետոյ Ամբրոսիոսը մերժեց հաղորդութիւն տալ Թէոդոսին և կայսրը զղջաց իր ոճիրը։

Եկեղեցու հասարակական դերը. Չընայելով Դիոկղետիանոսի եւ նրա յաջորդների բարենորոգումներին, կայսրութեան քաղաքացիական կազմն աւելի եւ աւելի անքաւարար էր դառնում։ Աստիճանաւորների դասակարգի թիւն ու ազդեցութիւնն աճում էին, բայց նա աւելի և աւելի էր հեռանում ժողովրդից և իր առանձնացած վիճակի մէջ, պարտութիւնների և խառնակութիւնների ժամանակ, կորցնում էր իր ծառայութեան գաղափարական ըմբռնումը, ընկնում էր նեղ ձևականութեան, զանձարանից գողութիւն անելու, կաշառակերութեան և հպատակներին ճնշելու մէջ։ Վերջիններիս աչքին պետութիւնը երևում էր իբրև մի սարսափելի մեքենայ ժողովրդի արիւնն ու ղրամը ծծելու համար։ Կուլտուրական աշխարհի ազգաբնակութիւնն սկսում էր փախչել իր կատարելագործւած պետութիւնից բարբարոսների մօտ։ Արդէն Վաղէնտիանոս Ա-ը և Վաղէսը հիմնեցին «պաշտպանների» (defensor) ընտրովի պաշտօնը. սրանք պէտք է պաշտպանէին գաւառացիներին կայսերական պաշտօնեաների կեղեքումներից։ Բայց բաւա-

*կան չէր մի պաշտօն ստեղծել թղթի վրայ—պէտք էր նրան իրական ոյժ տալ։*

Միակ ուժը, որ կարող էր սանձահարել ճնշողներին, պաշտպանել թոյլերին, բարոյական պահանջներով եւ բարձր իդէալներով դուրս գալ փչացած եսասիրութեան դէմ՝ եկեղեցին էր: *Եւ նա բառի ամենալայն մտքով՝ օգտուեց իր զօրութիւնից հանրութեան օգտի համար։ Դատաւորների խստասրտութեան և կողմնապահութեան պատճառով՝ նա սկսեց պաշտպանել կամայական ձերբակալութիւնից նրանց, որոնք փախչում, մտնում էին տաճարը, իսկ դատարաններին ներկայանալուց յետոյ՝ դիմում էր իշխանութիւններին, խնդրելով ողորմած և զիջող լինել. բարեգործութիւնը—աղքատներին, հիւանդներին, տնանկներին, օգնելը՝ համարեա ամբողջապէս նրա ձեռքն անցաւ. ստրուկների և կիսազատների վերաբերութեամբ նա հետևողական կերպով քարոզում էր այն միտքը, որ նրանք էլ նոյնպիսի մարդիկ են, ինչպէս և միւսները, և դրա համար պէտք է օգտուեն օրէնքների պաշտպանութիւնից։ Եկեղեցուն պատկանող կալուածներում բանւոր մարդկանց դրութիւնն աւելի տանելի և ապահով էր, քան մասնաւոր մարդկանց հողերի վրայ։ Վերջապէս՝ եպիսկոպոսները դարձան քաղաքային համայնքներում գլխաւոր գործիչները, որովհետև միայն նրանք կարող էին կարօտեալներին պաշտպանութիւն ցոյց տալ։ Այսպիսով՝ կայսերական վարչութեան կողքին առաջացաւ եկեղեցական վարչութիւնը, որ* բոլորովին չէր սահմանափակւում միայն հոգեւոր գործերով, այլ իր գործունէութիւնը տարածում էր դատավարութեան եւ կառավարչական բոլոր հարցերի վրայ: *Եւ այդ եկեղեցական վարչութիւնը գտնւում էր ժողովրդի հետ կենդանի կապակցութեան*

մէջ, մտնում էր նրա կարիքների մէջ և արտայայ-
տում էր նրա ձգտումները։

**Արեւմտեան հռոմէական կայսրութեան անկումը։**

Թէոդոսն իր երկու ընկերներից աւելի ապրեց և
իր կեանքի վերջին երկու տարիներում կրկին իր
իշխանութեան տակ միացրեց ամբողջ կայսրութիւնը։
395 Բայց նրա մահից՝ 395 թւականից յետոյ վերա-
կանգնւեց արեւմտեան եւ արեւելեան կէսերի բա-
ժանումը: Արեւելքն ստացաւ Թէոդոսի երէց որդին՝
Արկադիոսը, արեւմուտքը՝ կրտսերը՝—Հոնորիոսը։ Նը-
րանց թագաւորութեան օրերից սկսւում է բարբա-
րոսների յարձակումների երկար շարքը, որ շարու-
նակւում է ամբողջ V դարի ընթացքում և վերջանում
է արեւմտեան կայսրութեան անկումով։ Ամենանշանա-
ւոր յարձակումներն են՝ վեստգոթերի առաջնորդ Ա-
410 լարիքինը, որ 410 թւին առաւ և կողոպտեց Հռոմը,
և վանդալների թագաւոր Գենզերիկոսինը, որ նոյնպէս
455 կողոպտեց «յաւիտենական քաղաքը» 455 թւին։ Յի-
սունական թւերի սկզբին հոնները՝ Ատտիլայի Առաջ-
նորդութեամբ այնպէս աւերեցին Գալլիան և Իտա-
լիան, որ գերմանների նախկին յարձակումներն սկսե-
ցին չնչին երեւալ։ Իսկ Ատտիլան արժանացաւ «Աստ-
ւածային խարազան» մականւանը։ Վաղէնտիանոս III
451 կայսրի Այէցիոս զօրավարին յաջողւեց 461 թւին
ջարդել հոններին Կատալաունեան դաշտերում (այժ-
մեան Շալօն քաղաքի մօտերը, Մարն գետի վրայ)։
Բայց դա չը խանգարեց Ատտիլային Իտալիա խուժել
և գրաւել Աքւիլէան, Թերակղզու հիւսիս-արեւելքում
հռոմէական գլխաւոր ապաստանը։ Նա Հռոմի վրայ էլ
գնաց, բայց՝ աւանդութեան համաձայն, հրաժարւեց
իր մտադրութիւնից Հռոմի եպիսկոպոս Լեւոն Մեծի
խնդրանքների պատճառով։ Արեւելեան կայսրութիւնն
աւելի քիչ տուժեց արշաւանքներից, թէև նա ստիպ-
ւած եղաւ իր սահմանների մէջ ընդունել օստգոթերի

ցեղը։ Իսկ Արեւմուտքը բոլորովին քայքայւեց. *կայսր տիտղոսը դեռ մի քիչ ժամանակ էլ պահպանուեց, բայց նա գտնւում էր գերման զօրքերի առաջնորդների տրամադրութեան տակ, որ կազմում էին՝ այսպէս կոչուած՝ հռոմէական ամենալաւ մասերը։ Հերուլների առաջնորդ Օդոակրը Հռավեննայում գահընկեց արեց առանց իշխանութեան, լոկ անունը կրող վերջին կայսրին՝ Հռոմուլոս Աւգուստուլոսին. այդ դէպքը համարեա հազիւ նշմարուեց Իտալիայում. ոչ ոք սրտին մօտ չը ընդունեց։ 476 թիւը, երբ Օդոակրն ընդունեց Ի-* 476
*տալիայի թագաւոր տիտղոսը՝ պէտք է հաշուել արեւմտեան կայսրութեան գոյութիւնը դադարելու թուականը։ Կայսրութեան ամբողջ կէսը դեռ ևս դիմանում էր, բայց Իտալիան և Արևմուտքը, որտեղից դուրս էր եկել հռոմէական զօրութիւնը և որի հետ կապուած էր ռոմանական կուլտուրան, գերմանների ներս խուժելովը՝ ստացաւ բոլորովին նոր կերպարանք։ Այդ նոր հոսանքը պատկանում է արդէն միջին դարի պատմութեանը։ Վերջացնելով հին աշխարհի պատմութիւնը, պէտք է նկատել, որ* արեւմտեան հռոմէական կայսրութեան անկումն առաջացաւ նոյնքան ներքին այլասերումից, որքան եւ դրսի ճնշումից։ *Ճշմարիտ է, հասարակութեան լաւագոյն ուժերը պահպանուեցին եկեղեցու մէջ, բայց եկեղեցին չէր կարողանում պահպանել քայքայւող, լուծւող պետութիւնը և պէտք է մտածէր իր ամբողջութիւնը և իր ազդեցութիւնը բարբարոսների վրայ պահպանելու մասին։ Արշաւանքներից աւելի քիչ փչացած արևելեան կայսրութիւնը կանգուն մնաց, բայց այն տեղ էլ զառամեալ պետութեանը կեանք տալու համար անհրաժեշտ էին խոր փոփոխութիւններ։*

---

### ԳԼՈՒԽ Ժ.

# ՀՌՈՄԷԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Հռոմայեցիները և Յոյները:

*Երկու դասական ազգերի՝ յոյների և հռոմայեցիների մէջ խոր տարբերութիւն կար հոգեկանի վերաբերութեան.* հռոմայեցիները չունէին այն հնարագիտութեան, հարուստ երեւակայութեան հետքն անգամ, որով աչքի էին ընկնում յոյները. նրանք յաղթում էին մտքի հետեւողականութեամբ, գործնականութիւնով եւ բնաւորութեան տոկունութիւնով: *Պատերազմական ոգին և արհամարհանքը դէպի այն ամենը, ինչ որ չունի անմիջական նպատակ և օգուտ՝ մի քիչ մօտեցնում էին հռոմայեցիներին դաժան, խօսքերով ժլատ դորիացիներին, բայց երկրագործական զբաղմունքները և ընտանեկան սկզբունքի ուժեղ զարգացումը տալիս էին հռոմէական կեանքին նահապետական պարզութեան և ընտանեկան փակուածութեան մի առանձին կնիք, որից զուրկ էր Սպարտայի զօրանոցային կեանքը: Իսկական հռոմայեցին միշտ որոշ արհամարհանքով էր վերաբերւում յոյներին՝ նրանց շարժունութեան, թեթևսոլիկութեան, նենգամտութեան և շատախօսութեան պատճառով.* բայց դեռ շատ վաղ ժամանակներից առանց յոյների չէր կարող կառավարուել Հռոմը եւ իր զարգացման գործում բոլորովին ենթարկուեց նրանց ազդեցութեանը: *Արդէն թագաւորների ժամանակ և հանրապետութեան սկզբում այդ ազդեցութիւնը երևում է նրանում, որ հռոմայեցիները վերցրին յոյների պաշտամունքները և առասպելները (աստուածները և նրանց մասին եղած պատմութիւնները): Հռոմայեցիներն, ինչպէս արդէն տեսանք, իրանց աստուածներին տուին վերացական բնաւորութիւն և նրանց կենդանացնելու*

համար ստիպուած եղան դիմելու իրանց դրացի հարաւային իտալական յոյների օգնութեանը։ Օրինակ՝ Ցերերայի տաճարում, ուր պլեբէյական էդիլները պահում էին իրանց դիւանն ու գանձարանը, յունական քրմերն էին կատարում աստուածպաշտութիւնը։ Իսկ կենդանի կուլտուրական շարժումն սկսեց հռոմայեցիների մէջ Մեծ Յունաստանի նուաճումից յետոյ, և մանաւանդ մակեդոնական պատերազմներից և Բալկանեան թերակղզին նուաճելուց յետոյ։

Այդ ժամանակ տեղի ունեցած մերձեցումը յոյների և ասիացիների հետ երկու տեսակ ազդեցութիւն ունեցաւ հռոմայեցիների վրայ։ Արդէն ակնարկւած քաղաքական կեանքի պայմանների հետ միասին նա նպաստեց հին կազմի լուծւելուն, կեանքի ձևի միամիտ պարզութեան, անդրդւելի կրօնասիրութեան, անկաշառ հայրենասիրութեան և բարոյական դիմացկանութեան խորտակւելուն։ 186 թւին ծերակոյտն անհրաժեշտ համարեց խիստ հալածանք հանել ցոփ գինարբութեան կամ վաքխանալիայի դէմ, որ Հռոմ էր բերւել յոյների ձեռքով, որովհետև այդ տօները դարձել էին անսանձ, այլանդակ խնջոյքներ—կամ օրգիաներ։ Բայց ոչ այդ ոստիկանական միջոցները, ոչ ցենզոր Կատոնի նման հնութեան նախանձախնդիր մարդկանց ջանքերը չէին կարող կանգնեցնել սկսւած շարժումը։ Մնում էր քաղել նրանից լաւ պտուղներ, վատերին հակակշռելու համար, իսկ նրա լաւ կողմն էր գեղարուեստների եւ գիտութիւնների տարածումը։ Դրա համար էին գնահատում Յունաստանն Սկիպիոն Երէցի և Կրտսերի, Ֆլամինինոսի, Էմիլիոս Պաւլոսի նման մարդիկ։ Ամենից առաջ հռոմայեցիների մէջ արմատ բռնեց կատակերգութիւնը։ Պլաւտիոսը և Տերենտիոսը գրում էին ատտիկական աւելի ուշ ժամանակի կատակերգութեան ազդեցութեան տակ—նրանց

Յունական կրթութիւնը հռոմայեցիների մէջ։

գրուածքները հետաքրքիր են իբրև բարքերի և նիստ ու կացի պատկերներ։ Նրանց մէջ ամենակենդանի անձնաւորութիւնները հանդիսանում են ստրուկներն իրանց ստրկական խոնարհութիւնով, խորամանկութիւնով ու տէրերի վրայ ունեցած ազդեցութիւնով։ Նրանք ունէին միջազգային նշանակութիւն — միատեսակ կարևոր դեր էին խաղում ինչպէս հռոմէական, այնպէս էլ յունական հասարակութեան մէջ։ Հռոմէական հասարակութեան մէջ նրանց նշանակութիւնը մինչև անգամ աւելի զօրացաւ, որովհետև նրանք հանդիսանում էին իբրև երիտասարդ սերնդի դաստիարակներ, հռոմէական կոպիտ պայմաններում իբրև մտաւոր մշակութեան ներկայացուցիչներ։

Պատմագրութիւն։

Գրականութեան միւս տեսակը, որ նոյնպէս այդ ժամանակ ծնուեց, էր պատմութիւնը։ Թէև հռոմայեցիներն աւելի շուտ կատարում էին մեծ գործեր, քան նրանց մասին պատմում, սակայն փառքի սէրը և քաջագործութիւնների առատութիւնը պէտք է՝ շուտ թէ ուշ՝ առաջացնէին պատմագրութիւնը։ Սկզբում գործը սահմանափակւում էր նշանաւոր գերդաստանների նախնիքներին գովաբանելով, նրանց պաշտօններն, արշաւանքներն ու յաղթանակները հաշւելով։ Բացի դրանից շուտով երևան եկան չոր տարեգրութիւններ ամեն տեսակ ուշագրաւ գործերի մասին։ Յոյների հետ մօտենալն առաջացրեց կապակցուած պատմութեան առաջին փորձերը։ Ֆաբիոս Պիկտորը, ցենզոր Կատոնը թողել են այդ տեսակի ընդարձակ շարադրութիւններ։ Ներկայ դէպքում չէ կարելի լռութեան տալ և Պոլիբիոսի յունական աշխատութիւնը, որ նկարագրում է Պունիկեան պատերազմների շրջանը, որովհետև նա առաջացել է Հռոմի Յունաստանի վրայ ունեցած հակազդեցութիւնից։ Պոլիբիոսը մօտ ծանօթ էր հռոմէական կարգերի հետ — նա աքիական դաշնակցութեան երկրորդ մակեդոնական պատերազմի ժամանակ լիազօր էր հռոմէական զօրքերի մօտ և նրանից յետոյ մասնակցում էր յունական յարաբերութիւնները կարգաւորելու գործին։ Նրա նշանաւոր շարադրութիւնը ներկայանում է իբր առաջին փորձ հաղորդելու ընդհանուր պատմութեան հոսանքը՝ հակա-

ռակ լոկ ազգային պատմութիւններին. Նրա համար Հռոմի յաղթութիւնը միացնում է իր մէջ Իտալիայի, Յունաստանի, Ասիայի եւ Աֆրիկայի—լուսաւոր աշխարհի այս գլխաւոր մասերի պատմութիւնը։

Ճարտասանութիւնը։

Քաղաքացիական պատերազմների սարսափելի խառնակութիւնները բնականաբար յետաձգեցին Հռոմի կուլտուրական զարգացումը։ Յունական լուսաւորութիւնն աւելի և աւելի խոր էր թափանցում հռոմէական հասարակութեան մէջ, բայց ընդունակ մարդիկ բոլորովին կլանւել էին կռւով և չէին կարողանում իրանց ժամանակը նւիրել գրականութեան և նրա մէջ որ և է նշանաւոր բան արտադրել։ Միակ ճիւղը, որ այդ ժամանակ խոշոր յառաջադիմութիւն արեց, ճարտասանութիւնն էր, որը վաղ հասաւ փայլուն հետևանքների. այդ բանում ազդեցութիւն ունեցաւ հռոմայեցիների կեանքի մէջ քաղաքական ժողովների և դատական նիստերի աչքի ընկնող նշանակութիւնը։ Գրակքոսները, Լիկինիոս Կրասսոս Երէցը, Հորտենսիոսը, մանաւանդ Կիկերոնը հասան այնպիսի բարձրութեան, որ կարող էին մրցել մինչև անգամ յունական հռչակաւոր ճարտասանների հետ. բնական ձիրքերը, մանրազննին նախապատրաստութիւնը, մշտական գործածութիւնը, շրջապատող հասարակութեան հետաքրքրութիւնը և ճաշակը՝—ամեն բան նպաստում էր նշանաւոր հռետորների զարգանալուն։

Կայսրութեան կուլտուրական ազդեցութիւնը։

Կրթութիւնն ամենածաղկած վիճակի հասաւ կայսրութեան ժամանակ, խաղաղութիւնը հաստատւելուց յետոյ։ Իր հսկայական պատմական աշխատութեան[1] մէջ Տիտոս Լիվիոսը ուշարժաններ կանգնեցրեց հանրապետութեան փառաւոր յիշատակների համար։ Մեծամեծ պատերազմական սխրագործութիւնները, կուսակցութիւնների յամառ կռիւը, քաղաքացիական վեհանձնութեան, պարզութեան և բարքերի խստութեան ուրւագծերը նա հաղորդել է հայրենասիրական ոգևորութիւնով և ճարտասանութիւնով, որ լիքն է արժանիքով ու փայլով։ Նոյնպիսի հայրենասիրական նպատակ ունի և Վիրգիլիոսն իր Ենէականի մէջ։ Նա փորձեց հռոմայեցիների համար ստեղծել մի այնպիսի դիւցազներգութիւն, որպիսին ունէին յոյները հոմերական պօէմներում։ Ոդիսա-

[1] 142 գիրք, որոնցից մեզ հասել են 1—10 և 21—45-երորդ գրքերը միայն։

կանը ծառայում էր նրան իբր օրինակ Էնէասի թափառումները՝ Տրոյայի կործանումից յետոյ՝ նկարագրելու համար, իսկ Իղիականն՝—իբր օրինակ Էնէասի իտալական ափը դուրս գալուց յետոյ՝ լատինների հետ ունեցած պատերազմները նկարագրելու ժամանակ։ Այս արհեստական, դիտմամբ հնարուած դիւցազներգութիւնը (էպոս) չէ կարող համեմատուել Հոմերականի հետ իր զգացմունքների անմիջական անկեղծութիւնով, պատկերաւորութիւնով և դիտելու ընդունակութիւնով։ Բայց հետաքրքիր է Վիրգիլիոսի ընդհանուր հայեցակէտը. Նրա հերոսի գլխաւոր յատկութիւններն են՝ կրօնասիրութիւնը, յարգանք դէպի կրօնը եւ բարոյականութիւնը (pius Aeneas)։ Դիւցազներգութեան նպատակն է նոյն տեսակի զգացմունքներ զարթեցնել ապօրինութեան և փչացածութեան վարժուած հռոմէական հասարակութեան մէջ, իսկ գլխաւոր միջոցն է՝ կրօնական աւանդութեան և Հռոմի զօրութեան մէջ եղած կապը ցոյց տալը. Էնէասը փախցնում է Տրոյայից իր տան հին աստուածներին, և այդ աստուածներին յարգելու սովորութիւնն իր յետնորդներին հաղորդելը ծառայում է իբր գրաւական Հռոմի կեանքի մէջ բոլոր յաջողութիւններին։

Օգոստոսի ժամանակի միւս մեծ բանաստեղծը--Հորացիոսը սակաւ է դիմում այդպիսի լուրջ պատճառաբանութիւնների։ Նրա օդաները (գովաբանական երգեր), էպօդաները, երգիծաբանութիւնները, ուղերձներն արտայայտում էին ժամանակի մի ուրիշ պահանջը։ Նա մասնակցում էր վերջին քաղաքացիական պատերազմին և այն էլ՝ հանրապետականների կողմից. բայց այն օրից, երբ նա նետեց իր վահանը Փիլիպպէի մօտ եղած կռւում, նա թողեց եւ քաղաքական ասպարէզը։ Պրօսկրիպցիաների երկիւղը, հնարաւոր նոր խառնակութիւնների ահը, Սաբինիայում ունեցած իր փոքրիկ կալուածքի հետ կապուած լինելը, այն կալուածքի, որ նուիրել էր Մեկենասը, իշխանութեան առաջ խոնարհուելը—այն իշխանութեան, որ ապահովեցնում է խաղաղութիւնը և կարգը՝—ահա թէ ինչի են հասնում Հորացիոսի քաղաքական գաղափարները։ Նա ուրախանում է կեանքի բոլոր հաճոյքների համար, նուիրում է նրանց՝ զգուշաւոր ընտրութիւնով և հասկացող մարդու նուրբ ճաշակով, որ միատեսակ զգայուն է թէ դէպի հոգեկան և թէ զգայական հաճոյքները։ Նրա համար մասնաւոր կեանքի

հոգսերն ու մտածմունքներն առաջին տեղն են բռնում, ինչպէս և Օգոստոսի ժամանակի ուրիշ քնարերգու բանաստեղծների համար։

Երգիծաբանութիւն։

Սակայն չէ կարելի ասել, որ կայսրութեան ժամանակի գրականութեան միջից չքացել էր հետաքրքրութիւնը դէպի հասարակական հարցերը։ Դիւրաբորբոք Կատուլլոսը խիստ կերպով խօսեց Երէց Կեսարի դէմ։ Ներոնի օրով Պետրոնիուսը (Styricon գրւածքում) ծաղրեց գաւառական կեանքն իր հարստացած ազատ-արձակւածներով, իր պորտաբոյծներով (պարազիտ), որ կապկութիւններ էին անում հարուստներին զւարճացնելու համար, իր կոշտ ու կոպիտ փորձերով ընդօրինակելու Հռոմի ճոխութիւնն ու վայելչութիւնը։ Իւվենալի Երգիծաբանութիւնները Դոմիկիանոսի օրով շատ աւելի լայն են։ Զայրոյթով նկարագրում է նա ամբողջ հասարակութեան անբարոյականութիւնը—ագահութիւնը, նախապաշարումը, փչացած, այլասեռւած ճաշակները, ամէն հնարաւոր տեսակի ախտերը։ Նրա մաղձոտ երգիծաբանութիւնը չէ խնայում ոչ ոքի․ նա դիպչում է նոյն իսկ կայսրին և նրա պալատականներին, միայն արդէն Դոմիկիանոսի մահից յետոյ։

Տակիտոս։

Կայսրների կամայականութիւնից և հասարակութեան բարոյական անկումից առաջացած դժգոհութիւնն ամենատաղանդաւոր արտայայտութիւն գտաւ Կորնելիոս Տակիտոսի պատմական գրւածքներում, որ գրում էր Տրայիանոսի ժամանակ, բայց որը փորձել էր Դոմիկիանոսի վարչութեան բոլոր ծանրութիւնը։ Մեզ հասել են նրա տարեգրութիւնից և պատմութիւնից մի քանի գրքեր, որ նւիրւած են Տիբերիոսի ժամանակին, Կլաւդիոսի վերջին տարիներին, Ներոնին և նրա մահից յետոյ առաջացած խառնակութիւններին։ Բացի դրանցից, մնացել են՝ հռետորական արւեստի մասին մի խօսակցութիւն։ Ագրիկոլայի—Տակիտոսի աներոջ կենսագրութիւնը և գերմանների բարքերի և հիմնարկութիւնների նկարագրութիւնը։ Այդ շարադրութիւններից ոչ մէկն աչքի չէ ընկնում իր անկողմնակալութիւնով։ Տակիտոսը գրում է սրտի կսկիծով և չարութեամբ․ Նրա մէջ դեռ ևս կենդանի է ազնւական հանրապետականի անկախ ոգին, թէև նա խոստանում է միապետութեան անհրաժեշտութիւնը եւ հանրապետութեան անհնարինութիւնը։ Բայց նա անկարող է հաշտւել Ներոնի անմիտ կատաղութեան, Տիբերիոսի կեղծաւոր դաժանութեան, ծերակոյտի փոքրոգութեանը, զօրքի ինքնակամութեան, ամբողջ հասարակութեան սանձարձակու-

թեան հետ։ Իբր դաս իր հայրենակիցներին, նա իրար մօտ է դնում նրանց թուլամորթութիւնն ու ախտերը և գերման բարբարոսների անբիծ և առողջ բնաւորութիւնը։ Կասկած չըկայ, որ Տակիտոսի պատկերն ազատ չէ չափազանցութիւններից և միակողմանիութիւններից, որ նա չափազանց կենտրոնացրել է իր ուշադրութիւնը Հռոմի բարձր դասակարգերի կեանքի վրայ և արհամարհել է քիչ աչքի ընկնող գաւառները։ Նա չունի Թուկիդիդէսի ընդունակութիւնը՝ ցոյց տալ մասնաւոր երևոյթների վրայ ընդհանուր պայմանների ազդեցութիւնը. նրան մասնաւորապէս հետաքրքրում է բնաւորութիւնների, կրքերի ուսումնասիրութիւնը և, ինչպէս հոգեբան, նա դժւար թէ իրան հաւասար մէկն ունենայ պատմական գրողների մէջ։

Պլաստիքական արւեստները։ Զը վերադառնալով այն նիւթական յառաջադիմութիւններին, որոնց մասին արդէն խօսեց, հաշւենք կայսերական շրջանի խոշոր ծառայութիւնների ամբողջ շարքը։ Հռոմէական տիրապետութիւնը նպաստեց՝ առաջին՝ հելլենիստական կրթութեան տարածւելուն Միջերկրականի շուրջը եղած բոլոր երկրներում։ Եթէ Արևմուտքը ռոմանացած էր լեզւով, եթէ նոյն իսկ Արևելքում հաստատւել էին հռոմէական հիմնարկութիւնները, կրկին գիտութիւնը եւ գեղարւեստն ամեն տեղ հելլենիստական բնաւորութիւն ունէին: Ինչպէս այս մասում իրանք՝ հռոմայեցիները սովորում էին յոներից, այնպէս էլ նրանցից սկսեցին սովորել իսպանացիները, գալլերը, բրիտները, աֆրիկացիները։ Այդ ժամանակ արևմուտքում պլաստիքական արւեստները հասել էին բարձր ծաղկման, սակայն հռոմայեցիներին աւելի յաջողւում էր ճարտարապետութիւնը, քան քանդակագործութիւնը։ Վերջինս կորցրեց յունական օրինակների իդէալական բովանդակութիւնը և գեղեցկութիւնը և սկսեց դառնալ դէպի իրականութեան ճշգրիտ պատկերացումը— դէպի պատկերային արձանը և կենսական տեսարանները (օրինակ՝ Տրայիանոսի սիւնի և Տիտոսի յաղ-

թական կամարի վրայի ուռուցիկ քանդակները)։ Ճարտարապետութիւնը չը մշակեց մի բոլորովին նոր ոճ. նա օգտւեց էտրուսկների շինութեան վրայ գըմբէթ բարձրացնելու սովորութիւնից և նրա հետ միացրեց յունական սիւնազարդ շէնքերի ձևը։ Այս միացման նշանաւոր օրինակն է Պանթէոնը, որ շինել է տւել Ագրիպպասը։

Զւարճանալու մեծ պահանջը ծնեցրեց բազմաթիւ թատրոնների ու կրկէսների (ցիրկուս) կառուցումը։ Թէ մէկ և թէ միւս տեսակի շէնքերը տեղաւորւում էին բաց երկնքի տակ, ամֆիթատրոնի ձևով իրար վրայ բարձրացող նստարաններով, բեմն էլ մէջ տեղը։ Հռոմի Մեծ-կրկէսը (Circus maximus) շինւած էր 260,000 մարդու համար։ Ֆլաւիանոսի ամֆիթատրոնն իւր մեծութեան պատճառով կոլոսսէա (հսկայ) անունն էր ստացել, և նրա աւերակներն այսօր էլ կարող են գաղափար տալ այդ շէնքերի չափի, ամրութեան և փառահեղութեան մասին։ Պէտք է աւելացնել, որ Հռոմի և գաւառների յուշարձանները պարզ կերպով ցոյց են տալիս ոչ միայն I և II դարերի ծաղկեալ վիճակն, այլ և III դարից սկսած լուսաւորութեան անկումը. օրինակ Սեպտիմ Սեվերի և Կոստանդիանոսի յաղթական կամարներն իրանց զարդարանքներովը և ուռուցիկ քանդակներովն արտայայտում են աւելի և աւելի աճող վայրենացումը. մանրամասնութիւններն իրար վրայ են կուտակւում առանց ներքին կապի, կորչում է ուղիղ կերպով դիտելու և իրականութիւնը ճաշակաւոր կերպով արտայայտելու ընդունակութիւնը։

Հելլենականութեան կնիքը գիտութեան մէջ պակասԳիտութիւնը։ նշմարելի չէ քան գեղարւեստների մէջ։ Տեղեկութիւններ հաւաքելը, հետաքրքրութիւնը դէպի բնապատմական գիտելիքները շարունակւում են, թէև կայսերական շրջանը չարտադրեց այնպիսի մեծ թիւ առաջնակարգ գիտնական-

ների, ինչպէս աղէքսանդրեան կրթութիւնը II և III դարերում Ք. ից առաջ։ Պլինիոս երեցը, Ներոնի և Վեսպասիանոսի օրով իր «բնական պատմութեան» մէջ հաւաքել է ահագին քանակութեամբ հետաքրքիր դիտողութիւններ հանքաբանութեան, բուսաբանութեան, կենդանաբանութեան գիւղատնտեսութեան վերաբերեալ, թէև նրա նկատողութիւնները չեն վերածւած լաւ մտածւած մի ամբողջութեան։ Գալէնը դարձաւ գիտական բժշկութեան հիմնադիրը, որովհետև առաջին անգամ մարդու բժշկութեան եղանակը կապեց նրա բնախօսութեան (ֆիզիօլոգիայի) հետ։ Ամենախոր ազդեցութիւն ունեցան ալէքսանդրեան գիտնական Կլաւդիոս Պտղոմէոսի (ապրում էր Անտոնիոսի ժամանակ) գործերը, որ կազմեցին մոլորակների մասին եղած գիտութեան հիմքերը և մաթեմաթիքական աշխարհագրութիւնը, որ ընդունում և պահպանում էին գիտնականները նրանից դեռ հազար տարուց աւելի յետոյ էլ։ Ի միջի այլոց նա համոզւեց, որ երկրի մակերևոյթը հարթ չէ, այլ կլոր, և քանդեց այն հասկացողութիւնը, որն ասում էր, թէ ովկիանոսն ամեն կողմից շրջապատում է մարդաբնակ ցամաքը։

Իրաւունքը։

Մի ուղղութեամբ, իրաւունքի մասում, հռոմայեցիները բաց արին մի անպայման նոր ճանապարհ և մի այնպիսի գործ կատարեցին, որը մինչև անգամ մեր օրերում վճռական ազդեցութիւն է գործում։ Յունական պետութիւնները ծանօթացան մարդկանց մէջ եղած բոլոր բազմատեսակ յարաբերութիւնների հետ և նրանց կարգաւորելու համար մշակեցին իրաւաբանական շատ նշանաւոր ձևեր։ Բայց յոյները չափազանց բաժան-բաժան և փոփոխական էին, դրա համար էլ չէին կարող կազմել մի ընդարձակ և մտածւած իրաւագիտական կարգ (սիստէմա). դրա համար միայն՝ իրաւագիտութեամբ զբաղւելը նրանց մէջ ընկաւ այնպիսի մարդկանց ձեռք, որոնք շատ էլ յարգւած չէին հասարակութիւնից — սոփեստների և արհեստով ճարտասանների ձեռքը, որոնք աշխատում էին միայն հարստանալ և առաջ գնալ այդ գործով։ Հռոմէական ժողովուրդը կարծես ստեղծւած էր իրաւագիտութիւնը

մշակելու համար։ Առաջին անգամ պատմութեան մէջ երևալով, նա աչքի ընկաւ իր մտածողութեան հետևողականութիւնովն ու տրամաբանութիւնովը։ Դասակարգային յամառ կռիւը վարժեցրեց ամենաչնչին մարդիկներին անգամ հասկանալ և գնահատել իրաւական որոշումները։ Իտալիայի և գաւառների նուաճումը հռոմայեցիներին դարձրեց ամբողջ աշխարհի դատական վէճերի վճիռների գործի մէջ գլխաւոր միջնորդը։ Ամենահին իրաւաբանական սովորութիւնները կրօնի հետ անմիջական կապակցութեան մէջ էին գտնւում և պահպանւում էին քրմերի ձեռքով։ Մագիստրական (ընտրովի բարձր պաշտօնէութեան) ծառայութեան մէջ դատավարութիւնն այնպիսի դեր էր խաղում, ինչպէս և զինուորական հրամանատարութիւնը, և փոփոխւում էր նրա հետ։ Վերջապէս տիրող (պատրոնի) յարաբերութիւնը դէպի նրա հովանաւորութիւնը խնդրող ստորադրեալը (կլիէնտը)—ազնուական հռոմայեցու յարաբերութիւնը դէպի նրա օգնութեանը դիմող օտարերկրացիները և գաւառացիները—քաշում էին դէպի փաստաբանական (իրաւաբանական) գործունէութիւնը, ձըգում էին ամենանշանաւոր, ծառայութիւններ մատուցած և պետութեան մէջ յարգւած մարդկանց։

Հռոմէական իրաւագիտութեան զարգացումը։

Դատաւորները բոլորովին չէին սահմանափակւում ժողովրդի հաստատած օրէնքների կամ ծերակոյտի վճիռների (senatus consulta) գործադրութիւնով, որովհետև թէ մէկը և թէ միւսն ամփոփում էին չափազանց չնչին թւով վիճելի դէպքեր։ Հանրապետութեան ժամանակ պաշտօնի գլուխ անցնող Պրետորը (գլխաւոր դատաւոր) մի հրովարտակով (էդիկտ) յայտարարում էր, թէ ինչ սկզբունքների պէտք է հետևի դատավճիռներ անելու ժամանակ, բայց որովհետև հրովարտակով էլ չէր կարելի նախատեսել բոլոր վիճելի դիպւածները և դրա հետ միասին պաշտօնեան կարող էր իրաւաբանութիւնից շատ բան հասկացող մարդ չը լինել՝ դրա համար նա իրան օգնութեան էր կանչում խորհրդականներ—լաւ իրաւաբաններ, կամ դժւար հարցեր լուծելու ժամանակ դիմում էր իրաւագիտութեան մէջ յայտնի հեղինակութիւններին։

Որքան աւելի բարդանում էին քաղաքացիական յարա-
բերութիւնները և կուտակւում օրէնքները, սովորութիւն-
ները, հրովարտակները, վճիռները, հռչակաւոր իրաւաբան-
ների պատասխաններն՝ այնքան աւելի անհրաժեշտ կերպով
զգացւում էր այդ ահագին կոյտի մէջ մի որոշ ճանապարհ
գտնելու, հիմնական սկզբունքները որոշելու, մանաւոր
դէպքերն այդ սկզբունքներից կախման մէջ դնելու կարիքը։
Այդ տեսակ գիտական աշխատութեան առաջին նշանաւոր
ներկայացուցիչը եղաւ առաջին պլեբէյը, որը հասաւ բարձ-
րագոյն քրմի պաշտօնին՝ — Տիբերիոս Կորունկանիոս
252 (pontifex maximus, 252 թ. Ք. առաջ)։ Նա վերածեց այն ի-
րաւաբանական սովորութիւնները, որոնց պաշտպաններն
էին քրմերը։ Աւելի լայն էր Մուկիոս Սկեվոլայի մտաւոր
հորիզոնը, այն մարդու, որ ոչնչացաւ Մարիոսի Հռոմն առած
ժամանակը. Նա արդէն ուշադրութեան է առել իր աշխա-
տութեան մէջ իր ժամանակի իրաւունքի բոլոր բազմատե-
սակ աղբիւրները։

Կայսրութեան հաստատուելուց յետոյ իրաւունքն սկսեց
զարգանալ աւելի եւս մեծ յաջողութիւնով, քան հանրապե-
տութեան ժամանակ։ Կայսրութեան պարծանքը նրանումն էր,
որ նա կարգ ու խաղաղութիւն էր պահպանում կուլտուրական
աշխարհի տարացեղ ազգաբնակութեան մէջ։ Նիւթական
բարօրութեան աճումը, առևտրի կենտրոնացումը, ծառայու-
թիւնների բազմատեսակ փոխանակութիւնը, բազմաթիւ գոր-
ծառնութիւնները և պարտականութիւնները—այս բոլորը
պահանջում էին իրաւաբանների եռանդուն գործունէութիւնը,
որոնք կարող լինէին նուրբ կերպով որոշել յարաբերութիւն-
ները, որոշել և իրարից դուրս բերել հասկացողութիւնները,
եզրակացութիւններ հանել, սահմանել երկու կողմերի իրա-
ւունքները, կենսական դիպուածները օրէնքի և գիտութեան
ընդհանուր սկզբունքների տակ դասաւորել։ Յետոյ՝ հանրա-
պետութեան հետ համեմատելով՝ ստացաւ այն էական փոփո-
խութիւնը, որ կայսրութիւնն սկսեց իրաւունքի ծայրայեղ
բաժանմանը դէմ գնալ և միացնող՝ կենտրոնացնող քաղա-
քականութիւն բանեցնել։ Արդէն Օգոստոսը մի քայլ արեց
այդ ուղղութեամբ,—նա արգելեց խորհուրդ հարցնելու ամեն
մի իրաւաբանից. «պատասխաններ» տալու թոյլտուութիւնն
սկսեց տրուել կայսերական դիւանատնից որոշ փոքրաթիւ ան-
ձերի։ Ադրիանոսի յանձնարարութիւնով՝ Սալվիանոս Յու-

յիանոս զանազան պրետորական (գլխաւոր դատաւոր) հրովարտակները փոխարինեց մի «մշտական» կոչւած հրովարտակով. Նրա մէջ մտցւած էին նախընթաց հրովարտակների հիմնական սկզբունքները և դէն գցւած բոլոր աւելորդ և հակասական կէտերը։ Մարկոս Աւրելիոսի ժամանակ Գայոսը կազմեց «ինստիտուցիաներ», մի համառօտ դասագիրք, որ վերածում էր իրաւագիտութեան գլխաւոր սկզբունքները։ Այդ բանում նա աչքի առաջ ունէր ոչ թէ հռոմէական ժողովրդի առանձնայատկութիւնը կազմող սկզբունքներն, այլ այն ընդհանուր կանոնները, որոնք թւում էին բոլոր մարդկանց յատուկ բանականութիւնից և արդարութեան սկզբունքից բղխած և դրա համար էլ բոլոր ժողովրդների համար հաւասարապէս գործադրելի էին։ Այս բանական իրաւունքը կոչւում էր համաժողովրդական (ius gentium)։ Որքան որ հռոմէական քաղաքացիութիւնը տարածւում էր կայսրութեան բոլոր ժողովրդների վրայ, այնքան էլ համաժողովրդական իրաւունքն աւելի և աւելի դառնում էր քաղաքացիական իրաւունք (ius civile)։

Իրաւագիտութեան գործադրութեան մեծ նշանակութիւնը, նրա առաջնակարգ դերը կայսրութեան մէջ արտայայտւեց վերջապէս նրանով, որ գլխաւոր դատարանի անդամներ՝ հետեւաբար եւ կայսրների ամենամօտաւոր օգնականներ սկսեցին նշանակել հռչակաւոր իրաւաբաններին։ Այդպիսի՝ դիրք էր գրաւել Սեպտիմոս Սեվերի ժամանակը Պապինիանոսը, Կարակալլայի և Հելիոգաբալի ժամանակ՝ Ցուլիոս Պաւլոսը, Ալէքսանդր Սեվերի ժամանակ—Ուլպիանոսը, այս երեքն էլ հռոմէական իրաւունքի աչքի ընկնող աստղերն են, որոնց պատասխանները մեծ թւով պահպանւած են հռոմէական իրաւաբանների արած քաղւածքների ժողովածուների մէջ, որ յայտնի է Ցուստինիանոսի Դիգեստ անունով։

III դարի վերջում, կայսրութեան վերականգնումից յետոյ, հռոմէական իրաւունքի պատմութեան մէջ սկսւում է մի նոր շրջան։ Արդէն առանձին գիտնական իրաւաբաններ չեն որոշում իրաւունքն իրանց կարծիքներով. առաջնորդող դերն անցնում է ուղղակի կայսրին եւ նրա դիւանին։ IV և V դարերի օրէնքների, հրովարտակների, կանոնների մեծ մասը՝ հաւանաբար, կազմւել են լաւ իրաւագէտների մասնակցութիւնով, բայց այդ մասնակցութիւնը մնում է ան-

նշմարելի։ Դիոկղետիանոսը, Կոստանդիանոսը, Թէոդոսն, Արկադիոսը և Հոնորիոսը խօսում են իրանց անունից և տալիս են ոչ թէ կարծիքներ կամ վարդապետութիւններ, այլ հրամաններ։ Կայսրութեան ուշ ժամանակի այս աշխատութիւնն իր իրաւաբանական արժէքով ու տաղանդաւորութիւնով չէ կարող համեմատուել II և III դարերի դասական[1]) իրաւաբանների գործունէութեան հետ։ Բայց և այս շրջանին պատկանում է մի անկողոպտելի փառք. IV դարի կայսրների որոշումները բոլորովին փոխեցին քաղաքացիների դասակարգային վիճակը և շատ նպաստեցին հին կուլտուրայի խայտառակ հիմքի՝—ստրկութեան կործանմանը։

Բնական իրաւունք։

Մարդկային պատմութեան մէջ հռոմայեցիների գլխաւոր ծառայութիւնն է հռոմէական քաղաքացիական իրաւունքը։ Նրա նշանակութիւնն ամենից լաւ. պարզւում է այն հանգամանքով, որ կայսրութեան իրաւաբանների վարդապետութիւնը չէ մեռել մինչեւ այսօր—ոչ միայն չէ մեռել, այլ ճանաչւում է իբրև ամենալաւ նախապատրաստութիւն այժմեան իրաւաբանի համար և իբրև գլխաւոր հիմք եւրոպական երկրներում գործող իրաւական դրութիւնների։ Այդպիսի արտակարգ կենսունակութեան—II դարի հասկացողութիւնը XX դար տեղափոխելու պատճառները բացատրելու համար բաւական չէ մատնանիշ անել միայն հռոմայեցիների աչքի ընկնող ընդունակութիւնն իրաւաբանական մտածողութեան մէջ և այն յարաբերութիւնների առատութիւնը, որ ներկայացնում էր կայսրութիւնն իրաւաբանական մշակութեան համար։ 17 դար իզուր չէ անցել, կ կեանքի բոլոր ճիւղերում առաջացել են մի շարք փոփոխութիւններ՝ երբեմն շատ խոր. եթէ այնուամենայնիւ հռոմէական իրաւունքը պահպանել է իր կենսական ուժը, նա այդ բանը պարտական է այն բարձր հայեցակէտին, որ մտցնում էին նրա մէջ դասական իրաւաբանները. Նրանք աշխատում էին ստեղծել բոլոր ժողովրդների համար մի ընդհանուր իրաւունք և դրա համար յենւում էին ոչ թէ հռոմայեցիների, աթէնացիների, ասորիների պատահական վճիռների վրայ, այլ ընդհանրապէս մարդու բնութեան վրայ,

---

[1]) Դասական (կլասիք) բառը յաճախ գործ է ածւում համարեա «օրինակելի» բառի մտքով։

այն բանի վրայ, ինչ որ մարդկային յարաբերութիւնների մէջ բնական, բանական եւ արդարացի է։ Այդ դէպքում թէև ազգային ու դասակարգային բարդութիւնները չէին ոչնչանում, բայց բռնում էին երկրորդական տեղ. հռոմայեցին և յոյնը, քաղաքացին, ազատ-արձակուածը և ստրուկն ամենից առաջ դիտւում էին իբրև մարդ։ Դրանից է, որ մասամբ հնարաւոր եղաւ որոշ չափով այդ վաղուց մեռած ստորաբաժանումների փոխարէն գտնել նոր հասարակական համախմբութիւններ և կոչումներ—ֆրանսիացի, գերմանացի, լիակատար իրաւատէր և կիսաիրաւատէր,—և այնուամենայնիւ՝ պահպանել գլխաւորն՝ այսինքն մարդկանց բնական իրաւունքը մարդու բանական բնութեան վրայ հիմնելու փորձը։

Պէտք է աւելացնել, որ իբր ելակէտ ծառայում էին առանձին անհատի շահերն ու կամքը։ Այս բանում դասական իրաւաբանների իրաւունքը խիստ կերպով զանազանւում է ինչպէս հանրապետութեան ժամանակի հայեացքներից, այնպէս էլ կայսրութեան վերջերում տարածուած գաղափարներից։ Հանրապետական շրջանում մարդը դիտւում էր գլխաւորապէս իբրև քաղաքացի. արտօնեալ փոքրամասնութեան, այսինքն քաղաքացիների ամեն մի ներկայացուցիչն ամենից առաջ քաղաքային համայնքի՝—բարձրագոյն ամբողջութեան մի մասն է։ Աւելի շատ այդ համայնքի շահը և նրա մասերի կապակցութիւնն աչքի առաջ ունէին, քան առանձին անհատի շահն ու կամքը. և որքան աւելի հին ժամանակ ենք մենք վերցնում, այնքան աւելի ուժեղ է քաղաքի, տոհմի, ընտանիքի ազդեցութիւնը։ Միւս կողմից IV և V դարերում կայսրութիւնը խիստ կերպով իր խնամակալութեանն է ենթարկում առանձին անհատների շահը և իրաւունքը. իսկ նրա կողքին առաջանում է եկեղեցին, որը նոյնպէս որոնում է ոչ միայն առանձին անհատների փրկութիւնը, այլ նրանց սերտ միացումը մի եկեղեցական ամբողջութեան մէջ, որը Քրիստոսի մարմինն է։ Այդ երկու շրջանների միջավայրում կանգնած է առաջին երեք դարերի կայսրութիւնը, որն, իհարկէ, շատ բան էր պահանջում իր հպատակներից, բայց այնուամենայնիւ դիտում էր պետութիւնն իբրև հասարակութիւնից բարձր կանգնած և, նշանակւում է, հասարակութիւնից դուրս մի պահապան ոյժ. իսկ հասարակութիւնն ինքն՝ իբրև առանձին անհատների մէջ մշտա-

պէս առաջացող և քայքայւող յարաբերութիւնների մի շարք։ Ընտանիքը, տոհմը, խմբակցութիւնը (համքարութիւնը), դասակարգերը, քաղաքը, կրօնական համակեցութիւնն—այս բոլոր խմբակցութիւնները ճանաչւում էին՝ միայն իբրև առանձին անհատների ժամանակաւոր և պիտութիւնով պայմանաւորւած միաւորութիւններ։ Այդ միութիւններից որևէ մէկի խիստ զարգացումը համարւում էր նոյնքան վտանգաւոր ամենազօր պետութեան համար, որքան և առանձին անհատի ազատութեան բռնաբարութեան համար։ Կայսրները նրա համար էին այնպէս հալածում քրիստոնէական եկեղեցին, որովհետև նա դուրս եկաւ ընդհանուր հնազանդութեան շրջանակից և հաստատւեց բոլորովին անկախ սկզբունքների վրայ. Դասական շրջանի հռոմէական իրաւունքը գործադրում է անհատականութեան սկզբունքը—հասարակութիւնն իրար հետ թոյլ կերպով կապակցւած առանձին առանձին անհատների բաժանման սկզբունքը։

Բարոյագիտութիւն։ Հռոմէական իրաւունքների մէջ թափանցած ընդհանուր գաղափարները մշակւեցին ոչ միայն նրանց համար բարեյաջող պետական կարգերի և իրաւաբանական գիտութեան յաջողութիւնների պատճառով. Նրանց զօրեղ կերպով նպաստեց և փիլիսոփայական շարժումը, որը, ինչպէս և Հռոմի ամբողջ հոգեկան կուլտուրան, սկսւեց Յունաստանում, իսկ յետոյ տարածւեց և արևմուտքում։ Հռոմայեցիներն առաւելապէս գործնական ժողովուրդ էին։ Դրա համար նրանց աւելի քիչ էին հետաքրքրում վերացական հարցերը, քան յոյներին։ Նրանք առանձին ուշադրութիւն դարձրին փիլիսոփայութեան այն մասի վրայ, որն անմիջական նշանակութիւն ունի կեանքի մէջ—բարոյագիտութեան կամ էթիկայի վրա։ Ինչո՞վ պէտք է մարդն առաջնորդուի իր վարմունքի մէջ։ Ի՞նչ է երջանկութիւնը, որին ամենքը ձգտում են։ Առաւելապէս այս խնդիրներով էին զբաղւում հռոմէական կայսրութեան շրջանի փիլիսոփաները։ Գլխաւորապէս երկու վճիռ

էր ենթադրւում։ Էպիկուրէոս յոյնի օրերից ոմանք այն հայեացքին էին, որ երջանկութեան կարելի է հասնել՝ եթէ ոչ բոլոր, գոնէ շատ դէպքերում՝ կեանքի մէջ զւարճութեան (բաւականութեան) արհեստական ընտրութիւնով և անախորժութիւնը հեռացնելով։ Հորացիոսի ոտանաւորներից երևում է հէնց այդպիսի նուրբ զարգացմամբ մի էպիկուրէական։ Թէև հռոմէական բարձր հասարակութեան մէջ կային շատ մարդիկ, որ կեանքն այդպէս հասկանալու միտւած էին, բայց ժողովրդի բնաւորութիւնն ուրիշ տեսակ էր։ Հռոմը բարձրացաւ ոչ թէ փոքրոգի բաւականութեան որոնումով, այլ պարտականութեան անձնազոհ գործադրութիւնով, ամէն մի քաղաքացու պատրաստականութիւնով հանրութեան բարիքի համար ամէն տեսակ նեղութիւններ և վտանգներ կրելու։ Եւ մինչև անգամ երբ քաղաքացիների մեծամասնութիւնը կորցրեց իր բարոյական օրէնքը՝ լաւագոյն անձերը թեքւում էին գլխաւորաբար դէպի ստոյիկեան փիլիսոփայութիւնը, որը խոր տարբերութիւն էր դնում երջանկութեան և ցանկութիւններին բաւականացում տալու մէջ. ճոխութիւնն ու ամէն տեսակ բաւականութիւնները մարդուն չեն տալիս հանգստութիւն. Նրանց դուրեկանութիւնն արագ բթանում է և թողնում մի տեսակ դառն տականք. ընդհակառակը՝ հիւանդ, աղքատ, բոլոր արտաքին զւարճութիւններից զրկւած մարդը կարող է երջանիկ լինել—երջանիկ այն գիտակցութիւնով, որ ապրում է իր պարտականութիւնները կատարելով և ճշմարտութիւնով. անտարբերութիւն դէպի արտաքին բարիքները, անյողդողդ վերաբերմունք դէպի կեանքի պատահարները, խելացի պարտականութեան կատարումը դարձան ստոյիկեան փիլիսոփայութեան պատուիրանները։ Այս տեսակ հայեացքներ ունեցողի համար արտաքին զօրութիւնը կորցնում է իր արժէքը։ Նե-

ռոնիուսուցիչ Սենեկան աշխատում է ներկայացնել երկիրն այնպէս, ինչպէս որ նա պէտք է երևար այն մարդուն, որ շատ վեր բարձրացած կը լինէր. մեծ մասը ծածկուած է ջրերով, մի քանի նահանգներն ընկած են կիզիչ տաքութեան մէջ, միւսները սառուցով ծածկուած... Արժէ՞ արդեօք մշտապէս պատերազմել այդ պատճառով։ Ո՞րքան չնչին կերևան նրա մակերևոյթի վրա շարժւող գնդերն իրանց դրօշակներով, հեծեալ զօրաբաժինները, որ անցնում են գետերով... Միւս կողմից կորցնում է իր նշանակութիւնը հարստի և աղքատի, ազնուականի և ստրուկի մէջ եղած զանազանութիւնը։ Ստոյիկեան փիլիսոփաներից ամենաազդեցիկն էր մի հասարակ ստրուկ՝ Էպիկտետը։ Բանականութիւնը եւ պարտականութեանը ծառայելն են ազատ դարձնում մարդուն, ոչ թէ դրսից նրա վրայ դրուած պատւանշանները։ Ի՞նչ օգուտ, որ մարդ հիւպատոս է և սերւում է հիւպատոսից. նա կարող է ստրուկ լինել իր կրքերին։ Եւ ընդհակառակը՝ ոչ մի արտաքին բռնութիւն չէ կարող կապանքի տակ դնել հոգին, որովհետև մարդու հոգին աստուածային է, և ոչ մի իշխանութիւն ույժ չունի աստուածութեան վրայ։ Այսպիսով ստոյիկեանների վարդապետութեան մէջ երևում է իր ամբողջ ուժով հռոմէական իրաւունքին ուղղութիւն տւող գաղափարը, որի համաձայն մարդկանց մէջ յարաբերութեան հիմքերը պէտք է լինի մարդու բանական բնութիւնը։ Եւ Էպիկտետի, և՛ Մարկոս Աւրելիոսի մէջ նկատելի է մի ուրիշ գիծ էլ. քաղաքացին պարտաւոր է ծառայել պետութեան՝ ուժերը ներածին չափ, բայց իշխանութիւնը, պատիւը, յաջողութիւնը չը պէտք է գրաւեն նրան։ Այդ բոլորը պէտք է երկրորդական համարել, որպէսզի հնարաւոր լինի անվրդով վերաբերւել դէպի պարտութիւնը, ստորացումը, անյաջողութիւնը։ Կեանքի բոլոր պատա-

հականութիւններից ստոյիկ մարդը քաշւում է ինքն իր մէջ—ներանձնանում է և աշխատում ամենից առաջ հասնել իր սեփական ոգու անվրդովութեանը։

Կրօնական շարժումը։

Այդ տեսակ պահանջները ծանր էին մարդկանց մեծամասնութեան համար։ Մարդկութիւնը կարիք էր զգում համոզւելու, որ ամբողջ աշխարհի կեանքը ներկայացնում է մի ներդաշնակ կարգ ու վերին օրհնութիւն, որ երջանկութիւն ասելը չէ նշանակում հրաժարում ամեն տեսակ՝ ուրախառիթ եւ տխրաշարժ գրգռումներից։ Այդ տեսակ համոզում կամ հաստատութիւն կարող էր տալ միայն կրօնը։ Եւ մենք արդէն տեսանք, թէ որպիսի կամակորութեամբ որոնում էր հռոմէական աշխարհը մի նոր կրօն, թէ ինչպէս փորձեցին ամեն տեսակ կրօններ և նրանց միախառնութիւնները, որոնք առանձին առանձին տկար երևացին, տեսանք թէ ինչպէս արևմտեան՝ խելքի մօտ ու արթուն աստուածպաշտութիւնից կամաց-կամաց անցան արևելեան հզօր պաշտամունքներին։ Այս շարժման հետ միասին միշտ փիլիսոփայութեան մէջ տեղի էին ունենում յեղափոխութիւններ։ Տարածւում է մանաւանդ III դարում, Նէօ-պլատոնական կոչւած դպրոցը (Նոր-պլատոնական)։ Նա Աստծուն ներկայացնում էր իբրև համաշխարհային մի մեծ ոգի, որից բղխել, բաժանւել են երկրորդական ոգիների մի ամբողջ շարք։ Մարդը կարող է մօտենալ Աստծուն իր արդար, բարոյապէս և ֆիզիկապէս մաքուր կեանքով, զանազան ծէսեր կատարելով։ Դրա հետ միասին ամենաարդար և իմաստուն մարդիկ դեռ մինչև մահը դուրս են գալիս բնութեան սովորական օրէնքների հպատակութիւնից և դառնում են հրաշագործներ, այդպիսի հրաշագործ էին համարում Պիւթագորէսին, իսկ I դարի փիլիսոփաներից մէկի՝ Ապոլլոնիոս Տիանացու մասին դեռ իր կենդանութեան ժամանակ մի

ամբողջ շարք ասացուածքներ կազմւեցին. Նրան վերագրում էին ամենագիտութիւն, հիւանդներին բուժելու, մեռելներին յարուցանելու կարողութիւն, և այլն։

Ճգնաւորութիւն։

Վերջապէս քրիստոնէութիւնն ընդունելը մի ելք տուեց մարդկութեան լարուած կրօնական պահանջներին։ Եւ նոյն իսկ քրիստոնէութեան մէջ, բացի հերետիկոսական վարդապետութիւնները և նրանց դէմ վարուած կռիւը, նշմարւում էին երկու գլխաւոր կրօնաբարոյական ուղղութիւններ։ Դեռևս հալածանքների ժամանակ արևելքում կազմւեց մենակեցութիւնը. Ճգնաւորները հեռանում էին Թէբէական սարսափելի անապատը, հրաժարւում էին աշխարհից, փախչում մարդկանցից, մտնում էին մշտատև կուսի մէջ, մարմնական գոյութեան կարիքների և փորձութիւնների հետ, որպէսզի այդ «վարժութիւնով» (ասկէս՝ վարժութիւն. դրանից ասկէտիզմ) հասնեն լիակատար անտարբերութեան դէպի արտաքին տանջանքներն ու զւարճութիւնները և ապրեն միայն հոգու համար, Աստուածութեան վրայ մտածելով, աղօթքներով և զղջումով։ Քրիստոնէութեան յաղթանակը Կոստանդիանոսի ժամանակ ոչնչացրեց այդ ճգնաւորական (ասկէտական) ուղղութիւնը։ Կեանքն այնքան լի էր չարիքներով, հասարակութիւնն այնքան փչացած էր և լի հրապոյրներով, մարդկային բնաւորութիւնը երևում էր այնքան թոյլ և ախտաւոր, որ «աշխարհի, մարմնի եւ սատանայի» դէմ կռւելը չէր կորցրել իր նշանակութիւնը և շարունակում էր գրաւել մարտնչող սրբերին։ Մենակեցութիւնն աւելի և աւելի զարգացաւ և արևելքից արևմուտք էլ անցաւ։ Ճգնաւորների (էրեմիտներ՝ անապատականներ) ետևից երևան եկան կինովիս (հանրակեաց) կոչուածները (Koivos Bios ընդ-

հանուր կեանք), որոնք ապրում էին միասին և ենթարկւում էին որոշ ընդհանուր կանոնների։ Եկեղեցին։

Առանձին անհատների փրկութեան համար իբր միջոց ծառայող ճգնաւորութեան հետ միասին ընթանում էր հաւատացեալների ամբողջութեան կամ եկեղեցու զարգացումը։ Համաշխարհային պատմութիւնը ցոյց է տալիս եկեղեցական իդէալների ահագին նշանակութիւնը մարդկութեան կեանքի վրայ։ Կարելի է ասել, որ քրիստոնէութեան երևալուն պէս՝ աշխարհում հարց դրւեց, թէ ի՞նչ փոփոխութեան կենթարկւի դրանով ժողովրդի բաղդը, ի՞նչ ձևով եկեղեցին կարող է նպաստել արդարութեան և կարգաւորութեան թագաւորելուն երկրի վրայ։ Պակաս չէին այնպիսի մարդիկ, որոնք այդ միջամտութիւնը հասկանում էին շատ անմիջական և կոպիտ ձևով. օրինակ, սպասում էին, որ Քրիստոս կը թագաւորէ, ինչպէս երկրային թագաւոր, և ճշմարտութիւնն ու երջանկութիւնը կը մտցնէ երկրի վրայ։ Բայց եկեղեցին այդ տեսակ հայեցակէտ չունէր, նա քարոզում էր, որ իր դերն է հոգու դաստիարակութիւնը և առաջնորդութիւնը և ոչ աշխարհային վարչութիւնը, թէև այս վերջինս էլ պէտք է առաջնից որոշ կախման մէջ լինի։

Եկեղեցու հայեացքների ամենանշանաւոր մեկնաբա- Օգոստինոս.
նողն էր Երանելի Օգոստինոսը, աֆրիկական Հիպպօ քաղաքի Եպիսկոպոսը, որ ապրում էր V դարի առաջին կիսում։ Նա ստացել էր ամենալաւ հելլենական կըրթութիւն, որ այդ ժամանակներում հնարաւոր էր ստանալ, և մի քանի ժամանակ փայլեց իբրև աշխարհական մարդ և ճաշակաւոր գրագէտ։ Բայց բաւական վաղ նա մի կողմ նետեց բոլոր աշխարհային զբաղմունքները, դարձաւ ուղղափառութեան գլխաւոր մարտնչողն արևմուտքում և ամբողջովին նւիրւեց քրիս-

տոնէական իդէալների և վարդապետութեան բացատրութեան հոգսերին։

Նրա շարադրութիւնն «Աստծու Թագաւորութեան մասին» պատմական մեծ նշանակութիւն ունի։ Այդ շարադրութիւնը հիմք դրեց այն հայեացքներին, որոնցով առաջնորդւում էր արևմտեան քրիստոնէութիւնն ամբողջ միջին դարերում։ Կարևորութեան տեսակէտից նրան կարելի է դասել Արիստոտելի պետութեան մասին ունեցած վարդապետութեան հաւասար, միայն այն զանազանութիւնով, որ Արիստոտելը տալիս է գլխաւորապէս արդէն վերջաւորւած յունական զարգացման գնահատութիւնն, իսկ Օգոստինոսը որոշում է գաղափարներ ապագայի համար։ Երկու հեղինակները նման են իրար նրանով, որ գըրում են այն հասարակութիւնների աւերակների մէջ, որոնց իրանք պատկանում են։ Օգոստինոսը վկայ էր բարբարոսների սարսափելի արշաւանքներին և արևմտեան հռոմէական կայսրութեան աստիճանաբար կործանւելուն։ Նա նրան դասում է պատմութեան մեծ միապետութիւնների շարքում։ Ասորեստանի կայսրութիւնից յետոյ եկաւ պարսկականը, յետոյ մակեդոնականը, վերջապէս հռոմէականը։ Աշխարհը միացնելու այս բոլոր փորձերը նշանաւոր էին, բայց բոլորն էլ հասցրին միայն րոպէական յաջողութիւնների և վերջնական անկման, որովհետև շէնքը շինողներին պակասում էր անկիւնաքարը կամ վէմը։ Բոլորն էլ շինում էին «սատանայի Թագաւորութիւնները», որ բարձրանում էին մարդկանց կուռով, կրքերով և ախտերով։ Դրա հակառակ՝ այժմ կառուցւում է Աստծու թագաւորութիւնը, որ հիմնւած է նախախնամութեան խորհրդաւորութեան վրայ, որը կրկին ու կրկին իր գոյութիւնը զգալ է տալիս ապօրինութիւնների և բռնութիւնների մէջ։ Արդէն Հին կտակարա-

*նով մարդիկ բարձրից հրաման ստացան արդար կեանք վարելու մասին։ Փրկիչն իր աշխարհ գալովն սկիզբ դրեց ճշմարիտ եկեղեցու, որը պէտք է պահպանէ և տարածէ մարդկանց մէջ Նրա պատուիրանները։ Թող քայքայւի Հռոմի փառքը։ Նա զարդարում էր սատանայի բռնութեամբ շինուած շէնքը։* Ինչպէս որ առանձին անհատը չէ կարող փրկւել առանց եկեղեցու միջնորդութեամբ նրան Աստծու օրհնութիւնը հաղորդելու, այնպէս էլ մարդկանց հասարակութիւնը կարող է Աստծու թագաւորութիւնը դառնալ միայն եկեղեցու օգնութեամբ: *Եկեղեցին պարտաւոր է իր վրայ առնել առանձին անհատների դաստիարակութիւնը և բոլոր մարդկային հասարակութիւնների բարձրագոյն առաջնորդութիւնը։ Անկարգութիւնը և թշւառութիւններն օգտակար են, որովհետև նրանք ցոյց են տալիս, թէ ո՛րտեղ պէտք է որոնել փրկութիւնը։*

*Այսպիսով որոշւեցին աշխարհի ըմբռնողութեան միջնադարեան երկու նշանաւոր գծերը, որոնք են՝* մարդու մեղանչական բնութեան դատապարտումը եւ եկեղեցու կոչումը ղեկավարել քաղաքացիական յարաբերութիւնները:

ՎԵՐՋ

# ՑԱՆԿ

Երես